ИНСТИТУТ ИСТОРИИ АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР

МАТЕРИАЛЫ ПО ИСТОРИИ АРМЯНСКОГО НАРОДА
КНИГА ВТОРАЯ

# ПАМЯТНЫЕ ЗАПИСИ АРМЯНСКИХ РУКОПИСЕЙ XIV ВЕКА

*Составил*
*Л. С. ХАЧИКЯН*

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН · 1950

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ՆՅՈՒԹԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ
ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ



ԺԴ ԴԱՐԻ

# ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

*Կազմեց*

*Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ*



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1950

Միջնադարյան հայերեն ձեռագրերի հիշատակարանները, նման վիմական արձանագրությունների, այն կարևոր սկզբնաղբյուրներն են, որոնց հավաքումն ու գիտական սկզբունքներով հրատարակությունը նպաստելու է հայ ժողովրդի պատմության մի շարք բնագավառների ուսումնասիրությունը խորացնելու գործին: Նրանցում ուշագրավ նյութեր կան նաև հարևան ժողովուրդների՝ վրացիների ու ադրբեջանցիների, և հայկական գաղթավայրերի պատմության մասին:

Սույն ժողովածուն ընդգրկում է ԺԴ. դարի բոլոր հայերեն ձեռագրերի հիշատակարանները, որոնք մատչելի են եղել կազմողին: Ըստ որում 513 հիշատակարան քաղված է Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետ. Ձեռագրատան (Մատենադարան) ձեռագրերից և 332 հիշատակարան՝ անտիպ ու հրատարակված ձեռագրաց ցուցակներից:

Դրանց մեծագույն մասը հրատարակվում է առաջին անգամ:

Պատմության Ինստիտուտ



# Ա Ռ Ա Ջ Ա Բ Ա Ն

Ձեռագրերի գրիչներն ու պատվիրատուները, կազմողներն ու նորոգողները, ընթերցողները հիշատակության արժանանալու ակնկալությամբ, ձեռագրերի վերջում և առանձին հատվածների ավարտից հետո թողել են սեղմ ու համառոտ հիշատակարաններ։ Այդ հիշատակարաններում նրանք հայտնել են իրենց մասին որոշ կենսագրական տեղեկություններ, նկարագրել են ձեռագրերի գրչության, նորոգման կամ գնման հանգամանքները, հիշելով ժամանակի աշխարհիկ ու հոգևոր տերերին՝ ժամանակագրական տվյալներ են թողել նրանց մասին, և, շատ հաճախ, նկարագրել են իրենց ժամանակի պատմությունը՝ երկրի վիճակը, քաղաքական անցուդարձերը և այլն։

Դրանք անգնահատելի փաստալից սկզբնաղբյուրներ են ժամանակի պատմության մի շարք բնագավառների ուսումնասիրման համար։ Որպես այդպիսիք, համեմատած այլ կարգի պատմական սկզբնաղբյուրների հետ, նրանք ունեն ուշագրավ առանձնահատկություններ.

ա) Գրված լինելով պատմվող դեպքերին ականատես ու ականջալուր մարդկանց կողմից, նրանց հաղորդած տեղեկությունները վստահելի են. ժամանակագրական ու պատմական անճշտություններ ու սխալներ գրեթե իսպառ բացակայում են հիշատակարաններից։

բ) Նրանց հեղինակները, ըստ մեծի մասին, լինելով հասարակության աշխատավոր խավերից դուրս եկած գրագետներ և կամ ստորադաս եկեղեցական պաշտոնյաներ, մոտ են կանգնած եղել ժողովրդին։ Նրանք աշխատավորների կրած զրկանքների, աշխարհավեր արշավանքների, ծանր հարկերի ու բռնադատության մասսայական ու կոնկրետ փաստերի թարմ ազդեցության ներքո գրանցել են այնպիսի կարևոր պատմական տվյալներ, ինչպես և կենցաղային մանրուքներ, որ անտեսվել կամ վրիպել են միջնադարյան պատմագիրներից շատերի տեսադաշտից։

գ) Ըստ այդմ էլ, ի տարբերություն միջնադարյան պատմիչների, որոնք, լինելով գերազանցապես տիրապետող վերնախավերի և քրիստոնեական եկեղեցու իդեոլոգներ, պատմական անցուդարձերը դիտել ու մեկնաբանել են իրենց դասակարգային նեղ շահերի պարփակ ու բեկբեկուն պրիզմայի տակ, հիշատակագիրները, ընդհակառակը, երևույթներն ու պատմական անցուդարձերը դիտել են այլ դիտակետից ու տեսանկյունով։ Նրանք իրենք կրել են ժամանակի արհավիրքների դառնությունը, վշտացել են ժողովրդի վշտով, ուստի և, համեմատաբար, օբյեկտիվ կերպով են նկարագրել ու գնահատել պատմական եղելությունները։

Այս ուշագրավ ու կարևոր արժանիքների հետ մեկտեղ, հիշատակարանները, որպես պատմական սկզբնաղբյուր, ունեն մի շարք թերություններ ու բացասական կողմեր։

ա) Հիշատակարանները մեծ մասամբ գրվել են գոյություն ունեցող օրինակելի համարված կաղապարով։ Ըստ այդ կաղապարի՝ հիշատակագիրը մի ընդարձակ, երբեմն մի քանի էջ բռնող, «փառք» է ձոնում սուրբ երրորդությանը, որի բարյացակամությամբ ու խնամքով, իբր, կարողացել է ավարտել ձեռագրի ընդօրինակությունը, նա դրվատում է ընդօրինակված ձեռագրի բովանդակությունը աստվածաբանական տարտամ ու անարժեք դատողություններով։ Այնուհետև, գովեստի ու մեծարանքի սնամեջ տողերի է արժանանում ձեռագրի պատվիրատուն կամ գնորդը՝ ըստ էության աննշան մի անձնավորություն։ Ամենուրեք նա հանդես է գալիս որպես «աղքատասեր», «հեզահոգի», ընդարձակորեն դրվատվում են նրա «բարեմասնությունները», հիշատակության են արժանանում, և հաճախ մի քանի անգամ, նրա մերձավոր և հեռավոր ազգականները և այլն։ Դրանից հետո միայն գրիչը խոսում է իր մասին, հայտնում է իր ով լինելը, վատաբանում է իրեն որպես «տգետ», «անիմաստ», ու «մեղապարտ», կոչում է իրեն «փծուն» ու «անարհեստ», նույնիսկ այն դեպքում, երբ մեծ շնորհքի ու արվեստի տեր, գեղեցկագիր գրիչ է, և այլն։

Հիշատակարանի պատմական ու ամենաարժեքավոր մասը տրվում է միայն վերջում, այստեղ է, որ հիշատակագիրը համեմատաբար ազատ է դրվում իրեն ճնշող կաղապարից և ընդունված նորմերից, իր ընդունակության ու կարողության չափով գրում է շրջապատը և մի քանի տողերով նկարագրում այն դառն ժամանակը, որի ընթացքում, ծանր դրկանքների գնով, հաջողվել է իրեն ի կատար ածել տվյալ ձեռագրի ընդօրինակությունը կամ նկարազարդումը։

բ) Հիշատակարանների մյուս բացասական կողմը գրիչների սահմանափակվածությունն է։ Նրանց տեսադաշտի հորիզոնը շատ նեղ է, սակավ դեպքերում է միայն դուրս գալիս իրենց բնակավայրի կամ վանքի նեղ շրջանակից։ Քաղաքական խոշոր անցուդարձերը, պատերազմական գործողությունները, սակավ բացառությամբ, նրանց հետաքրքրում ու հուզում են այն ժամանակ միայն, երբ դեպքերի շրջապտույտը իր մեջ է առնում նաև տնտեսական կապերով արտաքին աշխարհից կտրված նրանց բնաշխարհը։ Նրանք պատմական իրադարձությունների շղթայի միայն մի օղակն են նկատում, ուստի և, շատ ավելի մեծ չափով քան միջնադարյան պատմիչները, զուրկ են դեպքերը կապակցելու, օրինաչափություններ որոնելու հնարավորությունից։

Մոնղոլ բռնակալները ծանրացնում են հարկային լուծը, կեղեքում ու մաշկում են ժողովրդին, սով ու համաճարակները հազարավոր զոհեր են կլանում, մորեխն ամայացնում է դառն քրտինքով աճեցրած դաշտերը, հիշատակագիրները այդ բոլորը, տիրող կղերական մտայնության ազդեցությամբ, բացատրում են իրենց գործած ծանր մեղքերով։ «Վասն ծովացեալ մեղաց մերոց», ահա պատրաստի այն բանաձևը, որով պատճառաբանում են հիշատակագիրներն իրենց ժամանակի բոլոր արհավիրքներն ու աղետաբեր իրադարձությունները։

Նշված բացասական կողմերով հանդերձ, հիշատակարանները, կրկնում ենք, միջնադարյան կյանքի բազմապիսի երևույթների, երկրի քաղաքական ու կուլտուրական կյանքի պատմության լուսաբանմանը նպաստող առաջնակարգ սկզբնաղբյուրներ են։

* * *

Հիշատակարանների արժեքը ավելի է մեծանում և նրանք ավելի խոշոր դեր են ստանձնում կատարելու այնպիսի ժամանակաշրջանների ուսումնասիրման համար, որոնց մասին պատմական գրվածքներ մեզ չեն հասել, կամ հասել են աննշան քանակությամբ։ Այդպիսի դարերից է ԺԴ. դարը։

ԺԴ. դարում Հայաստանի տնտեսական ու սոցիալական կյանքում տեղի ունեցան խոշոր տեղաշարժեր։ Առևտրի ու արհեստների ծաղկուն կենտրոններ հանդիսացող բազմաթիվ մարդաշատ քաղաքները՝ Անին, Կարսը, Խլաթը, Մանազկերտը, Արճեշը, Վանը, մոնղոլական էլղանության հարկային գիշատիչ քաղաքականության և քոչվորական հորդաների երկրի արոտավայրերում հաստատվելու հետևանքով, վերջնականապես զրկվեցին իրենց երբեմնի առևտրական սերտ կապերից արևելյան և արևմտյան երկրների հետ, և տնտեսական քայքայման տևական ընթացքով վերածվեցին արտաքին աշխարհից կտրված, ինքնամփոփ բնակատեղերի։ Սկսվեց քաղաքային բնակչության՝ առևտրականների ու արհեստավորների, ինչպես նաև գյուղացիական շերտերի մասսայական գաղթ աշխարհից-աշխարհ, երկրից-երկիր, հատկապես դեպի Ղրիմ, Սուլթանիա, Սարայ և այլ վայրեր։

Այդ նույն ժամանակաշրջանում մոնղոլները իրագործեցին նաև հայ ֆեոդալական տների կալվածքների գրավման ու իրավունքների սահմանափակման քաղաքականությունը։ ԺԴ. դարի կեսերին արդեն հայ ֆեոդալական խոշոր ընտանիքները՝ Օրբելյանները, Պռոշյանները, Դոփյանները, Վաչուտյանները և ուրիշները, ապրում էին իրենց հոգևարքը և երկրի քաղաքական կյանքում ակտիվ դեր չէին խաղում։ Հայ եկեղեցին միայն, ծառայագրվելով երկրի հարստահարիչներին, կարողացավ հիմնականում զերծ պահել իր տիրույթները բռնագրավումից, և, որոշ առումով, շարունակել իր գոյությունը որպես խոշոր ֆեոդալական հաստատություն։

Երկրի կուլտուրական կենտրոնները, որ դարի սկզբին, վայելելով Օրբելյանների և Պռոշյանների հովանավորությունն ու տնտեսական աջակցությունը, կուլտուրական խոշոր դեր էին կատարում, աստիճանաբար տկարացան ու մասնատվեցին։ Գլաձորյան համբավավոր համալսարանը ԺԴ. դարի կեսերին արդեն գոյություն չուներ։ Հովհան Որոտնեցին ու Գրիգոր Տաթևացին իրենց դասախոսությունները շարունակեցին շատ ավելի անբարենպաստ պայմաններում, հաճախ ստիպված լինելով վայրից-վայր տեղափոխվել։ Այնուամենայնիվ, չնայած անբարենպաստ տնտեսական ու քաղաքական կացության, ԺԴ. դարի կուլտուրական հաստատությունները կարողացան ուժեղ գոտեմարտերով սանձել երկրի սրտում բույն դրած կաթոլիկ միսիոնարների ու նրանց հայ հետնորդների ասիմիլատորական ձգտումները։

Դրությունը մխիթարական չէր նաև Կիլիկիայում, որտեղ հայ պետականությունն ապրում էր իր հոգևարքը, պայքար մղելով հյուսիսից՝ սելջուկյան էմիրությունների, հարավից՝ եգիպտական մամլուկների դեմ։ Այդ անհավասար մարտերում, 1375 թվին, վերջնական հարվածով ընկավ Կիլիկյան Հայաստանի անկախությունը։

Տնտեսական որոշ բարենպաստ պայմանների մեջ էր գտնվում Ղրիմի

հայ գաղութը, որն իր կուլտուրական կապերը պահպանելով մայր երկրի ու Կիլիկիայի հետ, դեռևս զգալի դեր էր խաղում կուլտուրական տրադիցիաների շարունակման ու զարգացման գործում։ ԺԴ. դարի հայերեն ձեռագրերի մի զգալի մասն ընդօրինակված է Ղրիմում։

Քաղաքական, տնտեսական ու կուլտուրական այս երևույթները ԺԴ. դարի հիշատակարանների նյութերով դառնում են շատ ավելի պարզ և միս ու արյուն են ստանում։

Հայտնի է, օրինակ, որ մոնղոլները, Ղազան խանի (1295—1304) ժամանակ, ընդունելով իսլամը, ծանրացնում են հարկային լուծն ու կրոնական հալածանքները Հայաստանում, սակայն հիշատակարաններն են միայն, որ հարուստ տվյալներով պարզում են աշխատավոր ժողովրդի կրած տառապանքների ծանրությունը այդ ժամանակ։

Դանիէլ Աղթամարեցի գրչի խոսքերով այդ ժամանակ «զաւրացաւ ազգն Իսմայէլի այնչափ, մինչև դարձուցին յիւրեանց ռնոտի յոյսն զամենայն ազգն նետողաց...։ Եւ նեղեն զամենայն քրիստոնեայք դառնալ ի պատիր յոյսն իւրեանց, զոմն նեղեն, զոմն սանձեն, զոմն սպանանեն, զոմանց զինչսն յափշտակեն. և ոչ այնու շատացեալք, այլ և եդին ի վերա ամենայն քրիստոնէից հարկս և նշանս նախատանաց՝ ի վերա ուսոց թիկանցն կտաւս սեաւս, զի որք տեսցեն զնոսա, ճանաչեսցեն եթէ քրիստոնեայք են և հայհոյեսցեն» (էջ 47)։*

Դրված հարկի քանակը հայտնում է մի այլ հիշատակագիր.

«Առաքեաց [ղանն Ղարբանդա],—գրում է նա,—ընդ ամենայն երկիր իշխանութեան իւրոյ դնել նշան խայտառակութեան քրիստոնէից և հարկ առնուլ ըստ մարդաթուի Խ. (40) արծաթո մինչ ի Ժ. (10)՝ ըստ կարի» (էջ 46)։

Հարկերն այնքան ծանր էին, որ ժամանակակիցների համար այլևս չկար «յոյս ապաւինի և ոչ տեղի ապաստանի», ուստի շատերը, ստիպված, ի դիմաց հարկի «վաճառեցին զաղայս իւրեանց, և ինքեանք փախուցեալ յայլևայլ տեղիս» (էջ 102)։ Հարկի դիմաց երեխաների վաճառքի մասին կարևոր է նաև Սարկավագ գրչի 1310 թվին գրած հիշատակարանի տվյալը, նա հայտնում է, որ «ի խիստ և յանհնարին հարկապահանջութենէ ծախեալ լինին ուստերք և դստերք աշխարհիս մեր, և լռղում գեղք և վանորայք՝ աւեր և անհանդիստ» (էջ 66)։

Կ. Մարքսը, խոսելով մոնղոլական տիրապետության մասին Ռուսաստանում, հայտնում է, որ այն «մի լուծ էր, որը ոչ միայն ճնշում, այլև վիրավորում ու մաշում էր նրա զոհը դարձած ժողովրդի հոգին։ Մոնղոլ թաթարները հաստատեցին սիստեմատիկ ահաբեկման մի ռեժիմ, որի գործիքն էին կողոպուտն ու մասսայական կոտորածները»։ Ինչպես ցույց են տալիս հիշատակարաններում բերված տվյալները, Մարքսի այս բնորոշումը, առանց վերապահության, վերաբերում է նաև մոնղոլական լծի տակ ընկած Հայաստանին։

Այդ լծի տակ կեղեքվող, ծայր աստիճանի թշվառության հասած ժողովրդից հարկերի գանձումը, անշուշտ, հեշտ չէր, և փախուստի դիմողների

* Հիշատակարաններից մեջ բերվող հատվածների համար ամենուրեք ցույց ենք տալիս սույն ժողովածուի էջահամարները։

ու իրենց որդիներին վաճառքի հանողների կողքին կային նաև այնպիսիք, որոնք կազմակերպում էին դիմադրություն և հրաժարվում հարկատվությունից։ Այդ իսկ պատճառով հարկահանությունը վեր է ածվում փոքր մասշտաբի պատերազմական գործողության, որին մասնակցում էին հազարից ավելի սպառազեն զինվորներ։ Այդ մասին է վկայում 1318 թվին մի հիշատակագիր, նա գրում է՝

«Դարունն առին զհարկն և աշունն ղանն [Ղարբանդա] մեռաւ
Եւ այլ եկին. ոՐՆ անուն Ալլաղու, Սինթամուր և Հասանթամուր
ՌԳԾ. (1300) մարդով և կրկին հարկ առին՝ յոյժ անչափ. և ոչ ոք
ընդդիմացաւ նոցա» (էջ 138)։

Հարկերից բացի, մոնղոլ բռնակալները նշանակում էին ամենափոքր հանցանքների համար մեծ տուգանքներ և զրպարտություններ բարդելով ռեփականում էին ունևոր մարդկանց գույքն ու ունեցվածքը։

1349 թվին Սարդիս հիշատակագիրը ողբում է «դառնացեալ ու վըշտացեալ» իր ժամանակը և հայտնում, որ մոնղոլները «զոմանց ինչս յափըշտակին, և զոմանս տուգանեն, և զոմանց տունս բուխտանաւք և հերձաւք և դուր բանիւք աւերել ջանան» (էջ 379)։

Աբու-Սայիդ ղանի մահվանից հետո (մհ. 1335 թ.) մոնղոլական էլղանությունն ապրում է իր քայքայման պրոցեսը, սկսվում է միջֆեոդալական անընդհատ պատերազմների ու բախումների մի ժամանակաշրջան։ Մեկը մյուսին հաջորդում են կարճակյաց բռնակալներ, որոնք անզոր էին խաղաղություն հաստատելու։ Այդ ժամանակ երկիրն ամենուրեք ամայանում է, տիրում է սով, գերեվարություն, կոտորած ու ավեր։

Պատերազմների և աշխարհակործան արշավանքների ոչ լրիվ սարեգրությունը ըստ հիշատակարանների պատկերվում է հետևյալ կերպ։

1336 թ.—Իկոնիայի թուրքմենները հարձակվում են Բասենի վրա և մեծ ավերածություն գործում։

— Նույն թվին Հալեպի նայիբ Ալթուն-Պուղան արշավում է Կիլիկիա, արշավանքը կրկնում է նաև հաջորդ՝ 1337 թվին։ Նրա բանակները, ինչպես հաղորդում է Ներսես Կրակցի գրիչը՝ «աւերեցին զերկիրս՝ զլեառն ու զդաշտս, ու արին բազում սպանումն, ու առին անթիւ ծառայս» (էջ 295)։

1338 թ.—Իկոնիայի թուրքմենները, Թամուրթաշի գլխավորությամբ, 4 ամիս պաշարում են Երզնկան և կոտորում ու գերում շրջակայքի խաղաղ բնակչությանը։ Այդ առթիվ Մելքիսեդեկ գրիչը հայտնում է.

«Ջի եկ ոՐՆ անուն Դամուրտաշ
Եւ արար զազգս մեր ի մաշ...» (էջ 306)։

1343 թ.—Ներսես գրչի խոսքերով՝ «Սուլայիմտն ղանն գնաց ի Յարաթնին վերայ՝ ի Սեբաստիա» (էջ 334)։

1346 թ.—«Մեծ մայրաքաղաքն Թէոդուպաւլիս անապատ եղեւ ի մարդոյ եւ յանասնոյ ի յազգէն հագարու եւ իսմայելացոցն» (էջ 346)։

1355 թ.—«Անբարեսէր մարդիկ բռնացեալ ունէին զաշխարհս ամենայն, և ամրանային ի դ[ղ]եակս, ի քաղաքս՝ մի զմիմեամբք եղանելով» (էջ 411)։

1357 թ.—Տեղի է ունենում Ոսկե Հորդայի ղան Ջանիբեկի և Ադրբեջանի բռնակալ Մելիք-Աշրաֆի (1344—57) միջև ավերիչ պատերազմ։

1360 թ.—Հալեպի ամիրա Պայտամուրը, «Մսրայ զօրօք», արշավում է Կիլիկիա և գրավում Ատանան ու Տարսոնը (էջ 451)։

1361 թ.—«Անաւրէն դատաւորն՝ տաճիկ Պաքիլն», գրում է մի հիշատակագիր, դերում է «զերկիրն Շիքարոյ և Խարբերդոյ» և գերիներին վաճառում «նման ոչխարի» (էջ 451)։

1367 թ.—Տարոնի ամիրա Մինչոքը արշավում է Կիլիկիա «բազում հիծման հինելով և այլ շատ հիտիվաքաւք, որ էին իբրև ԺԲՌ. (12000) մարդ, և այլ ավելի» (էջ 477)։

1371 թ.—Հիշատակագիր Սիմեոնը հայտնում է, որ «ազգն Պարսից եկեալ զԲերկրի գերեցուցին և զԲանդումահի թալանեցին» (էջ 499)։

1375 թ.—Եգիպտական Սուլթանի զորքերը պաշարում և գրավում են Սիսը, «Հաս Յաշէն Թամուրն զԹագաւորական քաղաքն զՍիս և եղև սուգ մեծ» գրում է մի հիշատակագիր (էջ 516)։ Այսպիսով վերջ է տրվում Կիլիկիայի անկախությանը։

1387 թ.—Սկսվում են Թամուր-Լանկի աշխարհավեր արշավանքները, որոնց մասին շատ արժեքավոր տվյալներ ու աղեկտուր մանրամասնություններ են հաղորդում դեպքերին ականատես բազմաթիվ հիշատակագիրներ (տես էջ՝ 567, 569, 573, 575, 578, 589, 599, 627—629 և այլն)։

1392 թ.—Ամիր-Եզդինը գրավում է Ոստանը։ «Շատ պակասութիւն էած քրիստոնէից» հայտնում է ստացող Սիմեոնը։

Պատերազմների ու արշավանքների հարատև այս փոթորիկների մեջ աշխատավոր ժողովուրդը մասսայաբար բնաջնջվում էր կամ ծայր աստիճանի թշվառության հասնում։ Պատերազմներն իրենց հետ բերում էին կոտորած, մահ, փախուստ, նյութական ու հոգևոր արժեքների ոչնչացում և այլ արհավիրքներ։

Հիշատակարաններում հարուստ ու հետաքրքրական նյութեր կան, որոնք լույս են սփռում ժողովրդի դառն կացության ու տնտեսության քայքայված վիճակի վրա։

Սարգիս գրիչն, օրինակ, արձանագրում է, որ 1340 թվին «մարդադէմ գազանների» 30,000-անոց մի բանակ խուժում է իր հայրենիքի սահմանները.

«Բազում գաւառս,—հայտնում է նա,—գ[ե]րեցին և աւերելով կործանեցին, և զինչս արդիւնաց ղամենայնն յափշտակեցին, և զամենեսեան զքրիստոնեայք կողոպուտ արարին, մերկ և բոկ, և ոչ թողին և ոչ մի ինչ ի վերայ անձանց քրիստոնէից, այլ զանասունս տաւարաց ջոկս ջոկս առեալ տարան՝ ոչխարաց և զեզանց, զկովուց և զցլուց, զիշուց և զերիվարաց, և զհանդերձս ի յանձնէ մերկացուցին և մերկս արարին ի տեսիլս խայտառակաց... այնպէս արարին, որ շունք ի սովոյ սատակէին, քանզի զխորս ամբարաց հացից հանէին...»։ (էջ 324)։

Սովը և համաճարակային հիվանդությունները, պատերազմների անքաժան այդ ուղեկիցները, առատ հունձ ունեին այդ դառն ժամանակներում։ 1349 թվին մի հիշատակագիր հայտնում է հետևյալ սրտաճմլիկ վկայությունը.

«Անկաւ սով սաստիկ, կոտորեցան յերից մասանց Հայոց աշ-

խարհս (իմա բնակչության $\frac{1}{3}$-ը), եւ յետ սովուս մխիթարութեան եհաս աստուածասաստ հարկութիւն ի վերայ մեր եւ անկաւ մահ տարաժամ յամենայն աշխարհս, եւ տարաւ զկէսայման աշխարհիս, եւ այս վասն ծովացեալ մեղաց մերոց եղեւ» (էջ 375)։

Ինչքան էլ չափազանցություն համարենք հիշատակարանի տվյալները, այնուամենայնիվ անհերքելի է, որ մարդկային զոհերը տասնյակ հազարների են հասել։

Անտանելի այս վիճակից փրկվելու բոլոր ուղիները գոց էին, մնում էր միայն մի ծայրահեղ միջոց՝ թողնել հայրենի երկիրը և օտար հորիզոններում որոնել աշխատանքի ու կյանքի համեմատաբար տանելի պայմաններ։ Ուստի և աշխատավոր ժողովրդի մի զգալի մասը, հատկապես առևտրական ու արհեստավորական շերտերը, բռնում էին գաղթի ճանապարհ, հեռանում օտար երկրներ։

Հիշատակարանները ուշագրավ նյութեր են հաղորդում նաև գաղթի ուղիները, նոր գաղթավայրերը և գաղթողների մի մասի բնաշխարհը պարզելու համար։ Սուլթանիայում, օրինակ, ԺԴ. դարում գտնում ենք մի փարթամ հայ գաղութ կազմված հիմնականում տնեցիներից, նրանք ունեն նաև իրենց եպիսկոպոսը (եպիսկոպոս Օրանի կամ Օրտուբաղարի), տնեցիներ հանդիպում ենք նաև Երզնկայում և այլուր։

Ոսկե Հորդայի հեռավոր մայրաքաղաք Սարայ-Բերքեում, 1319 թվին, հանդիպում ենք Խաչատուր գրչին, որը հիշատակում է իր նոր բնակավայրում հաստատված մի շարք հայրենակիցների։ «Պատուական» քաղաք Երևանից գաղթած Տերտեր դրչին հանդիպում ենք նախ Աղախում (Աղով), ապա Ղրիմում։ Սուրխաթում և Ղրիմի այլ քաղաքներում ԺԴ. դարի կեսերից արդեն մեծաթիվ հայ գաղթականություն ենք գտնում։ Հայ գրիչների ու այլ հայազգիների հանդիպում ենք նաև իտալական մի շարք շրջաններում ու քաղաքներում (Լոմբարդիա, Պոլոնիա, Պիզա, Սալեռնո, Վենետիկ, Փերուժ), Կիպրոս կղզում, Ալեքսանդրիայում, Կոստանդնուպոլսում և հայրենի երկրից հազարավոր կիլոմետրեր հեռու գտնվող այլ երկրներում ու աշխարհներում։

Հաստատվելով նոր գաղթավայրերում, առևտրականներն ու արհեստավորները զբաղվում են իրենց տիրապետած արհեստներով և կենդանի պահում հայրենի երկրի տրադիցիաներն ու սովորությունները։ Ուստի և, չնայած բուն Հայաստանում ԺԴ. դարում գրված հիշատակարանները արհեստների մասին շատ քիչ տվյալներ են հաղորդում, բայց այդ թերին ուշագրության արժանի վկայություններով լրացնում են հայ գաղթավայրերում գրված հիշատակարանները։ Նրանց մեջ, այլևայլ առիթներով, հիշատակված ենք գտնում մոտ 30 տարբեր մասնագիտության արհեստավորների և առևտրականների անուններ։ Դրանք են՝ ալրեփեց, ասպրգործ, բազազ, գինեծախ, դալալ, դանկրար, դարբին, դերձակ, էգեղան, թավկիր (ճաշարանի մատուցող), խառատ, կաշկար, կտավգործ, հյուսն, ղասապ, ճոն, մազման, մսագործ, ներկարար, ոսկերիչ, ջուլհակ, սանդրգործ, տապաղ, քարգործ, քթանագործ և այլն։

Արհեստավորների դրությունը հայրենի երկրից դուրս մխիթարական չի եղել, այս բանն ակնահայտ է թերևս այն փաստից, որ նրանցից համարյա ոչ մեկը չի հիշատակված որպես ամբողջական մի ձեռագրի դնորդ

կամ պատվիրատու. արհեստավորները, մեծ մասամբ, մուտք են գործել հիշատակարանների մեջ որպես փոքր դրամագլխով ձեռագրի գրությանը օժանդակողներ, մի հատվածի կամ մասի ստացողներ։ Որպես այդպիսիք նրանք իրավունք են ստացել հիշվելու միայն ձեռագրի այս կամ այն հատվածի ավարտից հետո, մեկ-երկու տող բռնող փոքրիկ հիշատակագրության մեջ։

ԺԴ. դարի ձեռագրերի ստացողները հիմնականում առևտրականներ, ցածրաստիճան հոգևորականներ և ունևոր գյուղացիներ են, նրանց զոհաբերությունների ու զրկանքների գնով է միայն հաջողվել ձեռք բերել որևէ ձեռագիր, որովհետև ձեռագրի նյութի ու ընդօրինակության, նկարազարդման ու կազմելու համար պահանջվել են մեծ ծախքեր։*

Հիշատակարաններում որպես ստացողներ, ինչպես և այլ առիթներով հիշատակված են նաև հայ ֆեոդալական տների մի շարք ներկայացուցիչներ, իրենց մերձավորների հետ միասին։ Նրանց տվյալներով հնարավոր է լինում ճշգրտորեն հետևել Օրբելյանների, Պռոշյանների, Դոփյանների, Վաչուտյանների և մյուս ֆեոդալական տների ժամանակագրությանը և աստիճանական տկարացման ու մանրացման պրոցեսին։

Դարի վերջում չեն հիշվում երբեմնի հզոր Պռոշյան իշխանական տան սերունդները։ Օրբելյանները, հայրենազուրկ եղած, ապաստարան են որոնում օտար երկնքի տակ։ Դոփյան իշխանական տան շառավիղներին հանդիպում ենք հայրենիքից դուրս՝ Ջղանա անապատի (Վրաստան) շրջակայքում, ըստ որում այդ տոհմից «մեծազարմ իշխան» Վեգենը խարազանազգեստ կրոնավոր էր դարձել՝ Վրթանես անունով։ Եկեղեցականի սքեմն այդ և հաջորդ դարերում այն ապաստարանն էր, որով հայ ֆեոդալներն ստիպված էին պատսպարել իրենց ժառանգական տիրույթները բռնակալների ինքնասեփականման ախորժակներից։

ԺԴ. դարում կրոնավորական սքեմով են հանդես գալիս նաև այլ ֆեոդալական տների ներկայացուցիչներ։ Փ. Սյունիքի իշխան Գրիգորի միակ որդի Սարգիսը, սոնդյա հասակից նվիրվելով եկեղեցուն, 1312 թվին արդեն Խաչենի եպիսկոպոսն էր։ Սյունյաց մետրոպոլիտական աթոռը երկար ժամանակ Օրբելյանների ձեռքին էր գտնվում։ Պատմագիր Ստեփանոս Օրբելյանին այդ աթոռի վրա հաջորդեց նրա ազգական Հովհան Օրբելը, իսկ այնուհետև՝ եղբորորդի Տարսայիճ-Ստեփանոսը։

Որոտանի ու Տաթևի տեր Իվանեի որդին էր նշանավոր Հովհան Որոտնեցին, որը լինելով Արևելյան Հայաստանի ամենաազդեցիկ եկեղեցական գործիչը, միաժամանակ տեր էր իր «հայրենեացն ժառանգութեանն»։ Հայրենատերեր էին նաև Աղթամարի կաթողիկոսները և շատ այլ բարձրաստիճան հոգևորականներ։

Հիշատակարանները հնարավորություններ են ընձեռում ոչ միայն տեսնելու այդ ուշագրավ երևույթի կոնկրետ փաստերը ԺԴ. դարում, այլ և մի շարք տվյալներ են հաղորդում, որոնք նպաստում են դրա լուսաբանմանը։

---

* Ձեռագրերի արժեքի մասին հիշատակարաններում կան մի շարք տվյալներ։ Ըստ մեծության ու արտաքին ձևավորման տարբեր գներով են վաճառվել ձեռագրերը։ Եղած տվյալների համեմատությունից կարելի է եզրակացնել, որ միջին արժեքի ձեռագիրը վաճառվել է 500–1000 սպիտակով (արծաթ դրամ), չնայած եղել են այնպիսիները, որոնց գրության համար ծախսվել է 3300 և ավելի սպիտակ։

Ընդունելով իսլամը, մոնղոլները, ինչպես ասացինք, ծանրացնում են հարկերն ու բռնությունները Հայաստանում։ Որոշ ժամանակ նրանք հարկազրկում են նաև քրիստոնեական եկեղեցուն ու կղերականությանը, բայց, ինչպես վկայում է Հակոբ գրիչ Վարագեցին՝ «առանց ղանի հրամանին» (էջ 138), այսինքն՝ առանց մոնղոլական էլղանության այդ մասին արած հատուկ կարգադրության։

Աղթամարի կաթողիկոս Զաքարիան, 1318 թվից քիչ առաջ, գնում է Մուհամեդ-Օլջայթու (Ղարբանդա) ղանի մոտ և ստանում նրանից աղեխ (ЯРЛЫК), ըստ որի, կրոնավորներն ու քահանաները հարկերից ազատ են հայտարարվում։ Դեպքերին ժամանակակից հիշատակագիրը հայտնում է, որ «Երիցս երանեալ երջանիկ հայրապետն Զաքարիայ հետ ղանին գնացեալ մինչև ի Բաբելոն ամ մի ողջոյն, և աղռեխ առեալ ի նմանէ՝ զկրաւնաւորքս և զքահանայսն ազատեաց ի հարկապահանջութենէ» (էջ 138)։

Չնայած եկեղեցու ստացած այս արտոնությունը երբեմն ոտնատակ էր արվում մոնղոլական զորավարների ու հարկահանների կողմից, և եկեղեցիներն ու վանքերը երբեմն նույնպես ավարի ու ավերածության էին մատնվում, այնուամենայնիվ, եկեղեցական կալվածքները անձեռնմխելի էին, իսկ եկեղեցականները՝ արտոնյալ ու ազատ հարկատվությունից։

Ահա այս բանի պատճառով Փ. Սյունիքի մեր կողմից արդեն հիշված իշխան Գրիգորը, իր որդի Սարգսին դարձնելով Խաչենի եպիսկոպոս, նվիրում է եկեղեցուն «ընծայս յոլով՝ գիւղօրայս, այգիս, անդաստանս» և այլ արդյունքներ (էջ 84)։

Նման բազմաթիվ տեղեկություններով հարուստ են վիմական արձանագրությունները և ձեռագրերում հաճախ հանդիպող կալվածագրերը։*

Վանքերը, որպես ֆեոդալական կազմակերպություններ, վարում էին իրենց ինքնուրույն տնտեսությունը, շահագործելով վանքապատկան կալվածքներում կախյալ գյուղացիների աշխատանքը, պահում էին խոշոր ու մանր եղջերավոր անասունների հոտեր, մշակում էին այգիներ և այլն։

Հիշատակարանների նյութերով ի հայտ է գալիս վանական պաշտոնյաների ու «գործաւորների» մի ընդարձակ ցանկ, որը լույս է սփռում վանական միաբանությունների ներքին կազմակերպության և վանական տնտեսությունների վրա։ Հիշված պաշտոնյաներից են՝ վանահայր, փակակալ, լուսարար, մառնպան, հյուրատես, եկեղեցպան, տնտես, տաճարապաս, հացկտուր, հացպան, փոմպան, հովիվ, մաճկալ, ածպան (այծարած) և այլն։

Կան նաև տվյալներ մի քանի վանքերի թեմերի սահմանների ու նրանց ենթակա գյուղերի մասին։ Այսպես օրինակ, 1302 թ. Սյունյաց մետրոպոլիտ Հովհան Օրբելու հատուկ կարգադրությամբ Վերի-Նորավանքը ստանում է «ի սեպհական ժողովուրդ և թեմ» Անկեղի, Եղիան, Եղիկանց Ձոր և Վաղցան գյուղերը (էջ 7—8)։

Քաղաքական ու տնտեսական պայմանները ԺԴ. դարում շատ աննպաստ էին շինարարական լայն գործունեություն ծավալելու համար։

---

* Մեր աշխատանքների ընթացքում ձեռագրերից հավաքել ենք մի շարք կարևոր կալվածագրեր։ Նպատակ ունենք հետագայում, ավելացնելով դրանց վրա ԺԵ. և հետագա դարերից մնացած նման փաստաթղթերը, հրատարակել դրանք հատուկ ժողովածուով։

Բնորոշ է այն, որ այդ ժամանակաշրջանում մի շարք եկեղեցիներ ամրացվել, պարսպապատվել և վեր են ածվել ինքնապաշտպանական փոքր ամրությունների: Շինարարական մեծ ձեռնարկումների միայն եզակի փաստեր են հայտնի հիշատակարաններից, բայց եղածը արժեքավոր է և ուշագրավ: Հայտնի է օրինակ, որ 1306 թվին Աղթամարի Զաքարիա կաթողիկոսը «վերստին ի հիմանէ» կառուցել է տալիս Լիմ կղզու սուրբ Գեորգի վանքը «բազում ծախիւք և աշխատութեամբ բերեալ զնիւթ քարանց սորա ի վերա մկանանց անդնդահոս ծովուն, ի յերկրէն Փաջբերունեաց, ի մեծ լեռնէն, որ կոչի Քաջաց Կայանք» (էջ 40):

Մեծ դժվարությունների ու ծախքերի հետ է կապված եղել նաև Եղվարդի ջրանցքի կառուցումը, որն իրագործեց 1318 թվին Եղվարդի տեր Աղիղպեկը, իր կնոջ՝ Վախախի հետ միասին: Ներսես գրիչն այդ առթիվ գրում է. «Եւ շրջապատեալ զլեառն Արարատեան (իմա՝ Արայեան), հասուցին զջուրն յորդառատ վըտակաւք փոյթընթաց յԵղիվարդ: Եւ զդժվարութիւն սահմանացն և զյոլով աշխատութիւնս, և զտուրս արվեստավորացն, և զամենայն ծախսն ով կարէ ընդ գրով արկանել» (էջ 141):

Հիշատակարանները առատ տեղեկություններ են պարունակում գրչության կենտրոնների, միջնադարյան համալսարանների ու դպրոցների վիճակի, նրանցում սովորող ուսանողների տնտեսական ու կենցաղային դրության, ուսուցման մեթոդների և հարակից հարցերի մասին:

ԺԴ. դարի ամենանշանավոր ու ծավալուն ուսումնական հաստատությունը Գլաձորյան համալսարանն էր, որին ժամանակակիցները կոչում էին «Երկրորդ Աթէնք», «մայրաքաղաք ամենայն իմաստից», «մեծ դպրատուն», «իմաստից տուն» և այլն:

Հայաստանի ու Կիլիկիայի հեռավոր վայրերից այնտեղ էին դիմում տասնյակ ուսանողներ Եսայի Նչեցու գլխավորած «Հայոց դպրոցում» ուսանելու և վարդապետական գավազան ստանալու համար: Սակայն ուսուցման պայմանները այնտեղ ևս մխիթարական չէին: 1314 թ. Գլաձորում սովորող Մխիթար Երզնկացին, իր ընդօրինակած ձեռագրի հիշատակարաններից մեկում, դիմում է ապագա իր ընթերցողներին հետևյալ խոսքերով.

«Որք ընթերցմամբ հայիք ի սա
Եւ հանդիպիք գանձու սորա,
Տես թէ քանի՜ աշխատեցայ
Ես՝ Մխիթար՝ գրիչ սորա.
Թուղթս անկոկ ու գրիչ չկայ,
Աւուրքըս ցուրտ ու պարզկա,
Ջարտախս բարձր ու կրակ չկայ,
Դոներս (=չոր հաց) չոր ու սպաս չկայ,
Եւ այս Գլաձորն ով գիտենայ,
Ես յույժ նեղած ու ճար չկայ,
Եւ ես պանդուխտ ու վեղար չկայ...» (էջ 103—104):

Շատ ավելի ծանր էին ուսման պայմանները ԺԴ. դարի երկրորդ կեսին: Շարունակական ու հարատև պատերազմներն արգելակում էին ուսում-

նական հաստատությունների նորմալ պարապմունքները։ Ուսուցիչներն իրենց աշակերտներով ստիպված էին հաճախ գավառից-գավառ տեղափոխվել, փախչել հալածիչներից, բացօթյա շարունակել իրենց պարապմունքները։

Մեծանուն Հովհան Որոտնեցու համալսարանի մասին 1386 թվից պահպանվել է Հակոբ գրչի մեծարժեք հիշատակարանը։ «Այլ մեք,—հայտնում է նա,—ընդ սուրբ և արեղ[եր]ահամբաւ և երանաշնորհ բաբունապետիս Հայաստանեայց և վերադիտողի տեառն Յովհաննու Որոտնեցոյ կայաք կարդալ և ի դրել ի համալսարանի սորին»։ Բայց երկար չի տևում Հակոբ դրիչի և նրա դասընկերների ուսանողության խաղաղ շրջանը.

«Եւ մինչդեռ,—շարունակում է նա,—անճառ ցնծութեամբ և բերկրալից ուրախութեամբ լցեալ կայաք, բաբունին Կ. (60) աշակերտօքն, ի բնիկ դաւառն իւր՝ յերկիրն Որ[ո]տան, կարդալով և դրելով զսուրբ մատեանս, մեղքն իմ ծովացեալ եհան զգունդս անօրինաց ի վերայ քրիստոնէից, մանաւանդ ի վերայ տանն Բուրդելի։ Որ եկին և առին զբերդն Որոտան, հայրենադուրկ արարին զպարոն Սմբատն՝ որդի Նանիկին։ Եւ կամէին ձերբակալ առնել զսուրբ բաբունիս մեր վասն հայրենեացն ժառանգութեան։ Եւ սա կամօքն աստուծոյ զերծաւ ի նոցանէ. և Բ. (2) ամ բոլոր յայլ և յայլ-տեղիս շրջէր, աշակերաօք հանդերձ՝ կարդալով և ուսուցանելով։ Եւ ես ծանրաբեռն մարմնով, զթուղթ և զօրինակ, զգրիչ և զթանաք ի յուս իմ բարձեալ ի հետ գնայի, կարդայի, և որչափ ժամանէի՝ զսուրբ մատեանս գրէի, բազում նեղութեամբ և չարչարանօք, զի ուր սկսա անդ ոչ էառ զկատարումն» (էջ 560)։

Ուսումնական հաստատությունների մասին հիշատակարաններում կան բազմաթիվ համարժեք փաստալից տեղեկություններ, որոնք, անշուշտ, նպաստելու են այդ բնագավառի մասին մեր գիտելիքների հարստացման և գրչության կենտրոնների պատմության մութ կողմերի պարզաբանման գործին։

Հիշատակարաններում առատ տվյալներ են ցրված ժամանակի նշանավոր կուլտուրական ու քաղաքական գործիչների և համեստ գրիչների, մանրանկարիչների և կազմողների մասին։ Սույն ժողովածուն կենսագրական նյութերի հարուստ մի շտեմարան է, որի օգտագործմամբ պարզվելու են բազմաթիվ վիճելի հարցեր. ճշտվելու են կարևոր դեր կատարած դեմքերի կյանքի ու գործունեության շատ մութ դրվագներ ու տարեթվեր։

Այլևայլ առիթներով հիշատակարանների մեջ մուտք են գործել ԺԴ. դարի հազարավոր, մինչ այժմ անհայտ, նշանավոր ու աննշան մարդիկ (տես «Անձնանունների ցանկ»)։ Նրանց մասին եղած տեղեկությունները նույնպես թարմ նորույթ են հայագիտության համար։

Մեծ արժեք են ներկայացնում նաև բնակավայրերի ու տեղանունների մասին եղած հիշատակությունները։ Ժողովածուի վերջում արված «Տեղանունների ցանկում» այբբենական կարգով շարադասված են այդ՝ մոտ 500, տեղանունները, որոնց մի զգալի մասը հայտնի է դառնում բանասիրությանը միայն այս ժողովածուի հրատարակությամբ։

Պատմագիտական այս կարևոր նյութերը մեզ հաղորդել են գերազանցապես ժողովրդական խավերից դուրս եկած չարքաշ գրիչներն ու մանրանկարիչները։ Շատ են եղել նրանց կյանքի ու աշխատանքի պայ-

մանները։ Հաճախ են նրանք գանգատվում իրենց առօրյայից, հաղորդում սեղմ, բայց պատկերավոր տվյալներ գրչության ծանր պայմանների ու կենցաղային անհարմարությունների մասին։

Նորմալ աշխատանքի հիմնական արգելակիչ հանգամանքը երկրի անկայուն դրությունն է եղել՝ հարատև պատերազմներն ու արշավանքները, և դրանցից բխող սովը, փախուստը, հալածանքներն ու գերությունը։

Թադեոս գրիչն, օրինակ, աշխատել է «ի դառն և ի գժընդակ ժամանակի, ձմեռան յեղանակի. բազում տառապանաւք և նեղութեամբ», գրչության աշխատանքին խանգարել են՝ ցուրտն ու ձմեռնային եղանակը («երբեմն ի ցրտոյ և ի ձմեռնային խստութենէս տառապէի»), մոնղոլ պաշտոնյաների երթևեկությունն ու խժդժությունները և երկրի ամայացումը, («երբեմն ի Թաթարի գալոյ և գնալոյ ու ի տեղացս աւերութենէն մեք փախստական լինէաք»), և նա ի վիճակի չի եղել ձեռագրի ընդօրինակությունն իր ցանկության ու կարողության համեմատ կատարելու. «ես հա;նց կամէի,—գրում է նա,—որ ամէն գիր ոսկի էր լե[ա]լ» (էջ 15), սակայն նրա ցանկությունն անկատար է մնացել։

Նույնպիսի ծանր պայմաններից են գանգատվում նաև ուրիշ գրիչներ։ «Ժամանակս անչափ դառն էր ի յանաւրինաց, որ մի ժամ չի կարելի գրել, զամէն փախած ու թաղած կու կայաք» հայտնում է Թումա Արճիշեցին (էջ 282). Հովհաննես գրիչը 1338 թվին հայտնում է, որ «ոչ կարէի գրել զգիրս», որովհետև դառն է ժամանակը, Թամուրթաշը պաշարելով Երզընկան «զերկիրն ի սուր ս[ուսերի] մաշեց, և ղոմանց զինչս և զստացուածս յափշտակեց, և ոմանք փախեան՝ և ի ձիւն և ի սառն մեռան, զի ձմերային էր ժամանակն։ Զի որ ի տան բնակէր՝ ի ձեռս նոցա մատնէր, և որ փախչէր՝ ի ցրտոյ տաչորէր. և ի յետին շունչն հասաւ երկիրս։ Եւ իմ լսէի և տեսանէի զայս և ի բազում տրտմութենէն ոչ կարէի գրել զգիրս» (էջ 305)։

Մի այլ գրիչ հայտնում է, որ չորս տարի շարունակ բռան վրա է ընդօրինակել գիրքը, որովհետև «զամեն փախստական կացինք ի կատարս լերանց՝ քաղցած և պանդուխտ, և ամենեքեան մեռեալ էինք կենդանաւին ի յահէ Թամուրին» (էջ 587)։*

Բիչ չեն խանգարել գրիչներին նաև կենցաղային անհարմարություններ, հիվանդությունները, ծերությունը և այլն։

«Ցարկն յորում կայաք,—հայտնում է Մկրտիչ գրիչը 1302 թվին,—բացակայ գոլով մածնոյր հանապազ մելանն ի յաւդոյն, ընդ որ յոյժ վշտանայի, ես և աղմուկ զրուցաց յոլով լինէր մերձ իմ, յորմէ սխալէի» (էջ 7)։

Ոսկյա Հորդայի հեռավոր մայրաքաղաք Սարայ-Բերքեյում հաստատված Ծաչատուր գրիչը նույնպես տրանջում է իր աշխատանքի պայմաններից՝ «բնական կայանք չունէի ապա ի տեղւոջէ ի տեղի կու դեգերէ[ի]. եւ այլ՝ զի սիրտս վշտացեալ էր։ Եւ այս աշխարհիս ձմեռն խիստ է, հաւայն չէ գրագրու լայէխ», գրում է նա (էջ 156)։

Գրչության արվեստով պարապողները, տարիներ շարունակ զբաղ-

---

Ձեռագրերի գրչության ծանր պայմանների մասին արժեքավոր տեղեկություններ կան նաև մի շարք այլ հիշատակարաններում։ Առաքկայական ցանկի «գրչության ծանր և անբարենպաստ պայմաններ» հարցի գիմաց ցույց են արված այդ տեղեկությունների էջերը։

վելով ձեռագրերի ընդօրինակությամբ, ձեթի ճրագի տակ՝ կիսախավարում, մարգարտաշար իրենց տառերը նկարելով, տառապում էին վատատեսությամբ (ակնոց դեռևս չկար) և այլ մասնագիտական հիվանդություններով։

Ստեփան գրիչը հայտնում է, օրինակ, որ «յոյժ պակասեալ էր ճաճանչ լուսոյ յաչացս» (էջ 169), Հովհաննես գրիչն աշխատում է «ի ժամ հասեալ ծերութեան, քանզի պատուհանք լուսարանաց պակասեալ և ձեռքս խոպանացեալ դողդոջէր» (էջ 235), Ներսես Կրակցի գրչին, բացի վատատեսությունից, այլ վշտեր էլ են մորմոքում. «ի վշտալից ժամս գրեցի,— հայտնում է նա,—որ է աչքս պակասել ի լուսի, և ստամոքցաւ յամէն ժամի, և չունէի մխիթարաւղ ոչ եղբաւրէ և ոչ յընկերոջի... եւ էր տեղիքս յորում գրէի խիստ եկ և դարձ մարդի» (էջ 274)։ 1363 թ. Խիզանում աշխատող Հովհաննես գրիչը հայտնում է, որ «յոյժ վշտալից էր տեղս ի մժեխից և ի ճանճից և յայլոց, որ սոցին նման է» (էջ 459)։

Այս և սրանց նման մյուս բազմաթիվ վկայությունները, որոնք ցրըված են սույն ժողովածուի էջերում, ուշագրավ են ոչ միայն գրիչների կյանքն ու կենցաղը ուսումնասիրելու համար։ Հայ աշխատավոր գյուղացիության զանգվածները, գրիչների ու ծաղկողների հետ ապրելով նույն միջավայրում, կրել են ժամանակի նույն դառնությունները՝ ավելի ուժգնակի, ապրել են նույն և շատ ավելի դժվար ու ծանր պայմաններում, ուստի և այս տվյալները հնարավորություն են տալիս ծանոթանալու ոչ միայն հիշատակագիրների, այլ ընդհանրապես՝ հայ աշխատավոր ժողովրդի վիճակի ու կենցաղի հետ։

«Դառն ու վշտաբեր» և «բազմաթշվառ» պայմաններում կուլտուրական արժեքներ կերտած հիշատակագիրները դեպքերի չոր ու ցամաք գրանցողներ չեն։ Նրանցից շատերը ձգտել են իրենց հիշատակարանները շարադրել պատկերավոր ու ճոխ լեզվով, իսկ ոմանք, ունենալով կարողություն և փորձառություն, բանաստեղծական գողտրիկ տողերով են հաղորդել իրենց ասելիքը։ Այս հատկություններով որոշ հիշատակարաններ թևակոխում են նաև գեղարվեստական դրականության բնագավառը։

Մխիթար գրիչ Անեցին, որին պատմական իրադարձությունները հայրենի քաղաքից հանել ու քշել էին էլղանների մայրաքաղաք Սուլթանիա, 1338 թվին, հաճախ մտաբերում ու մորմոքվում է իր հայրենիքի ու հանգուցյալ ծնողների կարոտով.

«Յիշեմ զգաւառն իմ հայրենին
Զմայրաքաղաք ամուրն Անին,
Եւ ըստ մարմնոյ իմ ծնօղին
Տէր Յակոբա և Սեգային» (էջ 310)

գրում է նա։ Այնուհետև նկարագրում է իր ժամանակը, ուշագրավ տեղեկություններ հաղորդելով Սուլթանիայի հայ գաղութի մասին, ի վերջո, հատուկ բանաստեղծությամբ, աշխույժ ու կատակախառն տողեր է նվիրում ձեռագրի գրչության պայմաններին.

«Մեծ վտանգի կամ յայս նեղուս,
Զի խիստ յաղթեց ցաւն մարմնոյս
Եւ ի ձեռացս ի դողալուս,
Այլ չեմ կարել տալ շար գրոյս,

Եւս առաւել ի յայլ շողուս
Ու ի թանաքի թանձրանալոյս,
Եւ մանաւանդ ի յայս քնուս,
Զաւր հասարակ մրափելուս,
Եւ յանիծեալ այս ճանճերուս
Ի սնավաստակ ա[յ]ն կենդանուս,
Որ միշտ նստին ի վերա դրչուս,
Ծրծեն զթանաքն գրերուս...
Եղբայր, մեղ մի դնէ ցգերուս,
Այս տառապեալ 'ւ ողորմելուս.
Ինչ հնացաւ տարիք մարմնուս
Պէս-պէս ցաւեր յայտնի ծերուս։
Օ՜խ թէ լինէր ճար այս նաւուս,
Որ հասանէր յեղր ի ծովուս...» (էջ 311—312)։

Թամուր-Լանկի աշխարհավեր արշավանքների թարմ ազդեցությամբ էպիքական շնչով է նկարագրում իր ժամանակաշրջանը Թումա գրիչը։ Ահա նրա չափածո հիշատակարանից մի հատված.

«... Շուն մի եկեալ խորասանցի, Թամուր անուն միակողմի,
Բարկութեամբ լցեալ լինի նման իժի և քարբ ւաձի...
Սուգ մեծ եկեալ Հայոց ազգի, զի նա յազգէն մուխանաթի
Ջալատ եհան նա ղղուինցի, կաշառ երետ բաղում ոսկի,
Թէ ով ոք զՔրիստոս աստուած ասի՝ բաղում չարեաւք չարչարեսցի...։
Նոքա [ա]ոին սուր երկսայրի, շրջին քան զշուն կատղած յերկրի...
Կոտորեցին անխնայելի զաղգս Հայոց և զՎրացի...։
Զչարութիւնն Թամուրի ո՞ր հողածին պատմել կարի» (էջ 589)։

Գեղարվեստական արձակի ուշագրավ բազմաթիվ նմուշներ կան հիշատակարաններում։ Ծանոթանանք դրանցից մեկի հետ. 1314 թվին Հայաստանում տարածվում է մորեխը, որը ահռելի վնասներ է պատճառում։ Սարգիս Թեոդուպոլսեցի գրիչն այդ առթիվ գրում է. «Արդ, յայսմ տարւոջս եկն մորեխ սաստիկ ի վերայ երկրի, քանզի ոչ ոք ի մերում ժամանակիս ետես այնպէս և ոչ ի հնումն պատմեցին մեզ այսպէս խստագոյնս...։ Քանզի իբրև զհեծեալքս բազում, որ երթայ զաւրն և իջևանին ի գիշերն ամենայն, այնպէս գայր յերիկունն. և ի վաղիւն, յորժամ շողանա[յ]ր արևն՝ յառնէր. և յորժամ յառնէր այնպես էր նմանութիւն նորա, որպէս սաստիկ ձիւնոյ կամ զանձրևոյ, երթայր և բարձրանա[յ]ր, որ ոչ ոք կարէր տեսանել զբարձրութիւն նորա, և ի թանձրութենէ նորա փոխէր գոյնն աբեգականն։ Գոչէր իբրև զգետ, անցանէր իբրև զքամի, և էր աշխարհ ամենայն ի տարակուսանք, լային դառնապէս, ողբային, կոծէին, զմոխիրն ընդ գլխովն արկանէին, ծեծէին զերեսս իւրեանց, և ոչ ուստէք եղև փրկութիւն...» (էջ 102)։

Հիշատակարաններն անգնահատելի աղբյուրներ են նաև ԺԴ. դարի լեզուն ուսումնասիրելու համար։ Հիշատակագիրները փորձում են, անշուշտ,

գրել գրաբար, սակայն շատ քչերին է այդ հաջողվում։ Ըստ մեծի մասին նրանք օգտագործում են խոսակցական լեզվի բազմաթիվ տարրեր, գավառական այս կամ այն խոսվածքին բնորոշ դարձվածքներ ու տերմիններ, որով և միջնադարյան խոսակցական լեզվի ուսումնասիրության համար մատակարարում են արժեքավոր տվյալներ։

Հիշատակագիրներից շատերը, դիմելով իրենց հետագա ընթերցողներին, աղերսել են մտաբերել ու հիշել իրենց՝ զոր ու գիշեր տքնությամբ ու տառապանքով մեր մատենագրության արժեքավոր գանձերը ընդօրինակողներին։

Այժմ մենք՝ սովետական մարդիկս, երախտագիտությամբ հիշում ենք նրանց, և գնահատում ըստ արժանվույն այն հարուստ ժառանգությունը, որ հասել է մեզ շնորհիվ այդ համեստ գործիչների գառն ու դժվարին աշխատանքի։

Մեր ժողովրդի պատմության այդ մռայլ ու մղձավանջային ժամանակաշրջանում ձեռագրերի ընդօրինակության միջոցով մատենագրական արժեքների բազմացումն ու պահպանումը այն մեծ ու դժվարին գործն էր, որ ի վիճակի էին կատարելու և կատարեցին ժամանակի կուլտուրական գործիչները և այնքան սիրով ու արվեստով։

Նրանց թողած բազմաբովանդակ հիշատակարանները լայն չափով օգնելու են մեր ժողովրդի անցյալի պատմությունը մարքս-լենինյան ուսմունքի լույսով շարադրելու գործին։

* * *

Հիշատակարանների մեջ առկա հարուստ նյութերի օգտագործումը պատմական ու բանասիրական աշխատություններում դարավոր պատմություն ունի։

Դեռևս ԺԷ. դարում, Առաքել Դավրիժեցին իր պատմական արժեքավոր դրվածքում* օգտագործել է հիշատակարաններ, հատկապես Հայոց կաթողիկոսների առաջին գիտական ցանկը կազմելու և այլ ժամանակագրական հարցեր պարզելու նպատակով։** Բայց նա այդ բնագավառում ունեցել է նաև իր նախորդները և բազմաթիվ հետնորդները, որոնցից հատկապես արժանի են հիշատակության Մ. Չամչյանը և Ղ. Ալիշանը։

Մ. Չամչյանը, իր «Պատմութեան» շատ մասերում, հմտորեն օգտագործել է իր ձեռքի տակ եղած հարյուրավոր հիշատակարանները, դժբախտաբար, չնշելով իր օգտագործած հիշատակարանների հեղինակների, ժամանակի և հիշատակագիրների մասին անհրաժեշտ տեղեկություններ։ Ղ. Ալիշանը, իր պատմա-աշխարհագրական «Այրարատ», «Շիրակ», «Սիսական», «Սիսուան», ինչպես և մյուս աշխատություններում, ոչ միայն բազմաթիվ տեղեկություններ է քաղել հիշատակարաններից, այլև հաճախ, մեջ է բերել պատմական կարևոր բովանդակություն ունեցող հիշատակարաններից ընդարձակ հատվածներ, և նույնիսկ հրատարակել է մի շարք հիշատակարանների լուսատիպ կամ վիմագիր նմանահանությունները։

---

* Պատմութիւն Առաքելի վարդապետի Դավրիժեցւոյ, Վաղարշապատ, 1884։

** Դավրիժեցին գրում է՝ «զհջմիածնի կաթողիկոսաց անուանս զամենեցուն ի յիշատակարանաց գրոց հաւաքեցաք...», անդ, էջ 334։

Սակայն ինչպես վերոհիշյալ, այնպես էլ մյուս բանասերները, որոնք օգտագործել են իրենց աշխատություններում հիշատակարանների նյութեր, ձեռքի տակ ունեցել են մեզ հասած հայերեն շուրջ 23 հազար ձեռագրերի միայն մի փոքր մասի հիշատակարանները։

Առաջին լուրջ փորձը համեմատաբար մեծ թիվ կազմող ձեռագրերի հիշատակարանների ժողովածու կազմելու ուղղությամբ կատարել է Ղ. Փիրղալեմյանը։ Տասնյակ տարիներ, եկեղեցական գործերով շրջելով Թյուրքիայի տիրապետության տակ գտնվող հայաբնակ վայրերում, նա անդուլ կերպով ուսումնասիրել է զանազան վանքերում ու մասնավոր անձանց մոտ պահվող հայերեն ձեռագրերը և քաղել է նրանցից հիշատակարաններ ու պատմական արժեք ունեցող այլ վկայություններ։ 1878 թվին, իր հավաքած հիշատակարաններին ավելացնելով նաև տպագիր աղբյուրներից իրեն հայտնի հատ ու կենտ նյութեր, Փիրղալեմյանը կազմել է հիշատակարանների մի հարուստ ու մեծարժեք ժողովածու, որն սկսվում է 887 թ. ընդօրինակված նախկին Լազարյան ճեմարանի ավետարանի հիշատակարանով, և ավարտվում է 1596 թ. մի հիշատակարանով։ Այդ ժողովածուն այժմ՝ 6273 համարի տակ պահվում է Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետ. Ձեռագրատանը (Մատենադարանում)։

Ժողովածուի տիտղոսաթերթի վրա գրված է՝ «Յիշատակարանք կամ Նշխարք Պատմութեան Հայոց, հաւաքեալ ի մի յոգնաջան աշխատութեամբ Նուաստ Ղևոնդ Ծ. վարդապետի Տոպեցւոյ՝ Վարագայ վանուց միաբանի...։ Ցամի տեառն 1378 և ի մերս ՌՅԻԷ. թուականի, յամսեանն 10.22 փետրվարի, յաւուրն ուրբաթու... սկիզբն արարի գրութեան (իմա՝ մաքրագրութեան) սորին, ի Մանչեսաեր վաճառաշահ քաղաքն Բրիտանիոյ...»։

Մեր Մատենադարանում պահվում է նաև Փիրղալեմյանի այդ ժողովածուի նախնական օրինակը (Ձեռագիր № 6332), որը, սակայն, չի պարունակում այն բոլոր նյութերը, որոնք կան նախորդի մեջ։

Փիրղալեմյանի օգտագործած ձեռագրերի մի զգալի մասը զոհ է գնացել թուրքական վայրագ բռնակալների հրին ու սրին՝ առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում։ Եվ եթե չլիներ նրա կազմած այս ժողովածուն, մենք այժմ տեղեկություն չէինք ունենա այն ձեռագրերի մասին, որոնք մեզնից ընդամենը մի քանի տասնամյակ առաջ պահվում էին Թյուրքիայի տիրապետության տակ գտնվող հայկական նահանգներում։ Փիրղալեմյանին հաջողվել է տպագրությամբ լույս ընծայել իր ժողովածուի միայն մի մասը՝ 1393—1467 թ.թ. հիշատակարաններով՝ «Նոտարք Հայոց» խորագրի տակ (Կ. Պոլիս, 1883 թ.)։ Հրատարակության Կանխաբանում հեղինակը հայտնում է, որ «Թէպէտ դոն ի ձեռս իմ յիշատակարանք և այլ օրինակութիւնք յառաջ քան զայդ թուական, որպէս և յամէ անդի և այսր, զորս թողաք ակամայ՝ վասն ինչ-ինչ պատճառաց, նոյնպէս և վասն ծախուց տպագրութեան»։

Մենք սույն ժողովածուն կազմելիս, օգտագործել ենք Փիրղալեմյանի և՛ ձեռագիր և՛ տպագիր ժողովածուները, քաղելով նրանցից ԺԴ. դարում գրված 55 հիշատակարան։

Փիրղալեմյանի օգտագործած ձեռագրերից շատերը, վտարանդի ու պանդուխտ հարյուր հազարավոր հայերի նման, հայրենադարձ են եղել և այժմ պահվում են մեր Պետ. Մատենադարանում։ Ուստի, մենք հնարա-

*վորություն ունենք համեմատելու նրա ժողովածուի մեջ մտած հիշատակարանների շատերը իրենց բնագրերի հետ։ Այդ համեմատությունը, ցավոք, ցույց է տալիս, որ բազմարդյուն բանասերը, ամբողջական հիշատակարանների փոխարեն, հաճախ, իր ժողովածուում տվել է միայն նրանց բովանդակության կարեոր մասերի համառոտ շարադրանքը։*

*Ցույց տալու համար Փիրղալեմյանի կատարած խմբագրությունների բնույթը, թույլ ենք տալիս մեզ զուգահեռ սյունակներով մեջ բերելու 1372 թվին Ստեփանոս գրչի կողմից ընդօրինակված ավետարանի հիշատակարանի սույն ժողովածուում հրատարակված բնագիրը և Փիրղալեմյանի ժողովածուում գտնվող նրա համառոտությունը։*

Հիշատակարան, № 622, էջ 505—506

*... Արդ, ես՝ նուաստ հոգս Ստեփանոս... շնորհիւն աստուծոյ և ողորմութեամբ նորին գրեցի բղսուբբ և գկենսունակ աւետարանս ի յիշատակ մեր և նախնեաց, և ծնաւղաց, և ամենայն երախտաւորաց մերոց, և ի պայծառութիւն սրբոյն եկեղեցւոյ և ի զուարճութիւն մանկանց նորին։*

*Գրեցաւ. սա ի թուականութեանս Հայոց ՉԻԱ. (1372), ի Դարանաղեաց գաւառիս Կամխայ, հանդէպ սրբոյ դերեզմանի լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի, ի սուրբ և գերահռչակ անապատս, որ կոչի Աւագ, և Կարապետին Յովհաննու, և բազմահաւաք սուրբ նշխարացս, որ աստ [կան]։*

*Արդ... աղաչեմ յիշեցէք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթս ձեր զվցուն և զխոշոր գրչակս զՍտեփ[անոս]...։*

*Յիշեսջիք և զծնաւղսն մեր՝ զՍտեփաննոս քահանայն և զամենայն ազգատոհմ, որք յուսով առ Քրիստոս են փոխեալ։ Յիշեսջիք զՆերսէս հարազատ եղբայր մեր։ Յիշեսջիք զճգնազ[գ]եաց, զառաքինասէր հայր Կիւրակոս՝ զառաջնորդ սուրբ ուխտիս, որ բազում բարութեանց աւիթ եղև մեզ և բազմաց, որոյ տէր աստուած վարձահատոյց լիցի ի գալստեան իւրում։ Յիշեսջիք և զմիաբանութիւն եղբայրութեանըս, որ կան աստ աւաքինի և սուրբ վարուք...։*

Փիրղ. ժողովածու. Ձեռ. № 6273, էջ 166

*Փառք անսկզբնականին հօր և որդւոյ նորա միածնի և ամենասուրբ հոգւոյն՝ եղողի նորին էութենէ. և գրեցաւ [աւետարանս ձեռամբ Ստեփանոս կրօնաւորի. ի խնդրոյ հարազատ եղբօրն իւրոյ Ներսէսի]* *ի թուականութեանս Հայոց ՉԻԱ. ի սուրբ և գերահռչակ անապաաս, որ կոչի Աւագ [վանք], ընդ հովանեաւ սրբուհւոյ Աստուածածնի և Կարապետին Յովհաննու և սրբոյն Ստեփաննոսի Նախավկային և սրբոց առաքելոցս, և բազմահաւաք սուրբ նշխարացս, և կենսակիր սուրբ նշանացս, ի Դարանաղեաց գաւառիս Կամխայ, հանդէպ սրբոյ գերեզմանի լուսաւորչին Գրիգորի, յառաջնորդութեան սրբոյ ուխտիս տեառն Կիրակոսի***

---

* *Փակագծերի մեջ առնված հատվածը Փիրղալեմյանը գրել է կարմիր թանաքով։ Այդպես է վարվում նա իր կողմից մտցված նախադասությունները և բառերը բնագրից անջատելու համար։*

** *Հմմտ. նաև № 666 հիշատակարանի հետ, նույնի հետևյալ համառոտությունը՝ «Փառք միայնում... բայց գրեցաւ սա ի դուռն սուրբ զամբարանի սրբոյն Գրիգորի Լուսաւորչին և Սաղեմա սուրբ նշանին և սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, ի թվիս Հայկազեան սեռի ՊԼ. (1381), զծողիս Տաւնեցի» (Փիրղ. Ժողովածու, ձեռագիր № 6273, էջ 169)։*

Ինչպես ակնհայտ է, Փիրղալեմյանը կաշկանդված չի զգացել իրեն հիշատակարանի շարադրանքը փոխելու և այն համառոտելու գործում, այնուամենայնիվ, նա հիշատակարանի հիմնական բովանդակությունը ճիշտ է ներկայացրել, ուստի և նրա ժողովածուի հիշատակարանները, որոշ վերապահումով, ի վիճակի են բավարար չափով փոխարինելու իրենց կորած բնագրերին։

Փիրղալեմյանը չի պահպանել նաև իր հավաքած հիշատակարանների ուղղագրությունը. այդ նրա ժողովածուի (և ընդհանրապես ԺԹ. դարում հրատարակված համարյա բոլոր սկզբնաղբյուրների) մյուս թերությունն է։ Նա, օրինակ, միշտ գրում է «յօրինեալ», «համառօտ», «տօմար» և այլն, երբ բնագրում համապատասխան բառերը գրված են «յաւրինեալ», «համառաւտ», «տաւմար» կամ «տումար» ձևերով։ Փիրղալեմյանն ավելորդ է համարել նաև նշել, թե բերվող հիշատակարանը ձեռագրի որ էջերի վրա է գրված և այլն։

Հիշատակարանների հավաքման ու հրատարակման գործում մեծ վաստակ ունի նաև անվանի բանահավաք Գ. Սրվանձտյանը։ Նա նույնպես իր շրջագայությունների ընթացքում այցելել է Թյուրքիայի հայաբնակ շրջանները (Բաղեշ, Վան, Մանազկերտ, Երզնկա, Կամախ, Ակն, Խարբերդ, Չմշկածագ, Բալու, Տիգրանակերտ և այլն), եղել է հեռավոր վանքերում ու գյուղերում և ընդօրինակել է իրեն հանդիպած ձեռագրերի հիշատակարանները, նկարագրել է պատմական ուշագրավ հուշարձանները, գրի է առել ժողովրդի երգն ու հեքիաթը։

Իր տարիների աշխատանքի արդյունքը ձեռագրերի ուսումնասիրության գծով նա հրատարակել է «Թորոս Աղբար, Հայաստանի ճամբորդ» աշխատության մեջ, որի Ա. հատորը հրատարակվել է 1879 թ. Բ. հատորը՝ 1885 թ., Կ. Պոլսում։ Մեզ համար հատկապես արժեքավոր են Բ. հատորում՝ «Ձեռագիրք և յիշատակարանք» գլխի տակ, բերված ավելի քան 350 ձեռագրերի նկարագրությունները և հիշատակարանները։

Ցավոք, Սրվանձտյանը նույնպես հիշատակարանները հրատարակել է ոչ թե անաղարտ բնագրերով, այլ տեղ-տեղ համառոտել է, տարբեր հատվածներ կցկցել է միմյանց և խմբագրել է ոճն ու շարադրանքը։

Հայերեն ձեռագրերի նկարագրության և հիշատակարանների հրատարակության գործը պատշաճ գիտական հիմքերի վրա դրեց հայագետ Հ. Տաշյանը, 1891 թվին հրատարակելով Վիեննայի նախկին կայսերական Մատենադարանի, իսկ 1895 թ. Վիեննայի Մխիթարյան Մատենադարանի հայերեն ձեռագրերի օրինակելի ցուցակները։

Նրան հետևեցին ուրիշները, և մի երկու տասնամյակի ընթացքում հրատարակվեցին հայերեն ձեռագրեր ունեցող մի շարք հաստատությունների ու մատենադարանների ժողովածուների ցուցակները (Հռոմի, Մյունխենի, Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի, Գողթն գավառի, Թավրիզի, Թեհրանի, Նոր Բայազետի, Օքսֆորդի, Բրիտանական թանգարանի, Վասպուրականի և այլ վայրերի)։ Որպես կանոն այդ ցուցակների մեծ մասում ամբողջությամբ մեջ են բերված նաև նկարագրվող ձեռագրերում եղած բոլոր հիշատակարաններն ու հիշատակագրությունները։

Հայոց պատմության ու բանասիրության հարցերով զբաղված մասնագետները, ձեռքի տակ ունենալով վերոհիշյալ ցուցակները և աշխատելով

անձամբ ձեռագրական ժողովածուների վրա, սկսեցին իրենց աշխատություններում ավելի մեծ չափով օգտագործել հիշատակարանների հաղորդած պատմական ավյալները։ Բայց հիշատակարանները ցրված էին տարբեր ժողովածուների ու ամսագրերի մեջ, և ժամանակագրական հերթականությամբ չէին դասավորված։ Այս հանգամանքն արգելակում էր, և շարունակում է արգելակել, հիշատակարանների լայն օգտագործմանը այն բոլոր հարցերի լուսաբանման համար, որոնց մասին նրանցում կան արժեքավոր նյութեր։

Բացի այդ, շնորհիվ այն բանի, որ մեր Պետ. Մատենադարանի ձեռագրերի ցուցակը մինչ այժմ չի հրատարակված, այդ հարստագույն ժողովածուի հիշատակարանների մեծ մասն անմատչելի էր գիտական աշխատանքով զբաղված մասնագետների լայն շրջաններին։

Վերոհիշյալ նկատառումներով Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Պատմության Ինստիտուտը, 1948 թվին, հանձնարարեց ինձ ի մի հավաքել և պատրաստել հրատարակության մեր Մատենադարանում պահվող ԺԴ. և հետագա դարերի բոլոր հայերեն ձեռագրերի հիշատակարանները։

Առաջնահերթ համարվեց ԺԴ. և ԺԵ. դարերի հիշատակարանների հավաքումն ու հրատարակությունը, որովհետև, ինչպես հայտնի է, դրանք մեր պատմության ամենաամուլ դարերն են։ ԺԵ. դարից մեզ հասել է միայն Թովմա Մեծոփեցու «Պատմութիւն Թամուր-Լանկի» (հրա. Փարիզ, 1860) աշխատությունը, որը, չնայած իր կարևորության, ընդգրկում է միայն ԺԴ. դարի վերջի և ԺԵ. դարի սկզբի քաղաքական անցուդարձերի պատմությունը, այն էլ աշխարհագրական ու պատմական նեղ շրջանակով վերցրած։

Ահա մեզ հանձնարարված այդ աշխատանքի արդյունքն է ԺԴ. դարի հիշատակարանների սույն ժողովածուն։

* * *

Հայերեն ձեռագրերի հիշատակարանների սույն ժողովածուի մեջ ժամանակագրական հերթաշարով դասավորված են 1301—1400 թթ. և ԺԴ. դարում գրված որոշակի տարեթիվ չունեցող բոլոր այն ձեռագրերի հիշատակարանները, որոնք մատչելի են եղել մեզ իրենց բնագրերով կամ նկարագրված են ձեռագրերի անտիպ ու հրատարակված ցուցակներում և առանձին աշխատությունների մեջ։

Ստորև նշում ենք մեր կողմից օգտագործված ձեռագրական ժողովածուները և ձեռագիր ցուցակները։

1) Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետ. Ձեռագրատան (Մատենադարանի) հայերեն ձեռագրերի ժողովածուն, բաղկացած շուրջ 10,000 ձեռագրերից։

Սույն ժողովածուի մեջ ընդգրկված 845 հիշատակարաններից 513-ը, այսինքն՝ ամբողջի ավելի քան 60%-ը Պետ. Մատենադարանի ձեռագրերից են։

2) Վրաստանի Ս. Ն. Ջանաշիայի անվան Պետ. Թանգարանի* Ձեռագրա-

* 1949 թ. հունիսին, գործուղվելով Թբիլիսի, ծանոթացա Թանգարանի և Արխիվի հայերեն ձեռագրերի հետ և կազմեցի նրանց համառոտ ցուցակը։

կան բաժնի հայերեն ձեռագրերի ժողովածուն, բաղկացած 207 ձեռագրերից, դրանցից ԺԴ. դարում են գրված 5-ը։

3) Վրաց. ՍՍՌ Պետ. Կենտրոնական Պատմական Արխիվի (ֆոնդ 233) 36 հայերեն ձեռագրերը, որոնցից միայն մեկը գրված է ԺԴ. դարում։

4) Թիֆլիսաբնակ պրոֆ. Դ. Պ. Գորդեևի սեփական գրադարանի հայերեն 12 ձեռագրերը, որոնցից 2-ը գրված են ԺԴ. դարում։

5) Ղ. Փիրղալեմյանի կազմած հիշատակարանների ժողովածուն, որի սևագիր և մաքրագիր օրինակները պահվում են Պետ. Մատենադարանում, առաջինը՝ 6332, իսկ երկրորդը՝ 6273 համարների տակ։ Այդ ժողովածուից քաղել ենք ընդամենը 55 հիշատակարան։

6) Հանգուցյալ պրոֆ. Ս. Վ. Տեր-Ավետիսյանի կազմած «Նկարագրություն Նոր Ջուղայի Ամենափրկիչ և այլ վանքերի ու մասնավոր անձանց մոտ գտնվող հայկական ձեռագրերի» անտիպ ցուցակը, որը պահվում է Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Պատմության Ինստիտուտի արխիվում (գործ № 48)։ Ցուցակում նկարագրված են 580 հայերեն ձեռագրեր, որոնցից քաղել ենք ԺԴ. դարի 20 հիշատակարան։*

7) Ե. Լալայանի «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի» աշխատության առաջին պրակի (հրա. Թիֆլիս, 1915 թ.) անտիպ շարունակությունը, որի մեջ ըստ վստահելի տվյալների, պետք է լինեին ոչ պակաս քան 1048 ձեռագրերի նկարագրություններ (№№ 481—1529), սակայն Պետ. Պատմական Թանգարանի Ազգագրական բաժնի Ե. Լալայանի արխիվում, այժմ, պահվում է միայն մի թղթապանակ (№ 134), ուր գտնվում են միայն №№ 481—708 ձեռագրերի նկարագրությունները։ Մեզ, ցավոք, չհաջողվեց պարզել, թե որտեղ է գտնվում Լալայանի անտիպ ցուցակի մյուս՝ մեծագույն՝ մասը, շուրջ 822 ձեռագրերի նկարագրություններով և հիշատակարաններով։ Ցուցակի մեր օգտագործած մասից քաղել ենք ԺԴ. դարի 5 հիշատակարան։

8) Մատենադարանի Արխիվում պահվող երկու անտիպ ցուցակները՝

ա) Ceneral Catalogue of the Armenian Manuscripts in the Bodleian Library at Oxford—Օքսֆորդի Բոդլյան գրատան 132 հայերեն ձեռագրերի մանրամասն ցուցակ (Արխիվային բաժին, «Անհատական արխիվներ» ֆոնդ, թղթապանակ 119—122)։**

բ) Catalogue of the Armenian Manuscripts in the sir John Rylod's Library at Manchester—Մանչեստրի 24 հայերեն ձեռագրերի ցուցակ (Արխիվ. թղթ. 118)։

Այս երկու ցուցակների մեջ նկարագրված ձեռագրերից ԺԴ. դարից են 13-ը։

Այսպիսով, ձեռագիր աղբյուրներից են քաղված սույն ժողովածուի 845 հիշատակարաններից 614-ը, այսինքն ամբողջի մոտ 73%-ը։

---

* Ցուցակում նկարագրված է նաև մի ձեռագիր՝ գրված 1333 թ. Խաչատուր սարկավագի կողմից, Աճանա գավառում։ Սակայն, ցավոք, այդ ձեռագրի հիշատակարանը այժմ տեղում չի գտնվում։

** Հայերեն ձեռագրերի այս ժողովածուն նկարագրել են նաև Ս. Բարոնյանն ու Ֆր. Կոնիբերը և հրատարակել են 1918 թ. Օքսֆորդում։ Սակայն հրատարակված այդ ցուցակի համեմատությամբ վերոհիշյալ ցուցակն ունի մի շարք առավելություններ, ուստի հիշատակարանները քաղել ենք նրանից։

Տպագիր աղբյուրներից օգտագործել ենք հետևյալները (սկզբից տալիս ենք աղբյուրների ընդարձակ վերնագրերի փոխարեն սույն ժողովածուի մեջ օգտագործած մեր համառոտագրությունները).

1) Ագուլիս—Նկարագրութիւն եյիշատակարանք ձեռագրաց ս. Թովմայ առաքելոյ վանուց եւ եկեղեցեացն վերին Ագուլեաց, եկեղեցւոյն Տանակերտ գեղջ եւ անձանց մասնաւորաց—«Արարատ» ամսագիր, 1911 թ.

2) Ալիշան, Այրարատ—Այրարատ. բնաշխարհ Հայաստանեայց, Վենետիկ, 1890.

3) Ալիշան, Հայապատում—վենետիկ, 1901.

4) Ալիշան, Սիսական—Սիսական (տեղագրութիւն Սիւնեաց աշխարհի), Վենետիկ, 1893.

5) Ալիշան, Սիսուան—Սիսուան, համագրութիւն հայկական Կիլիկիոյ եւ Լեւոն Մեծագործ, Վենետիկ, 1885 թ.

6) Բակուրան, Կիպրոս—Բակուրան, Կիպրոս կղզի, ա. աշխարհագրական և պատմական տեսություն, բ. Հայ գաղթականություն, Նիկոսիա, 1903.

7) Bibl. Nation.—Catalogue des Manuscrits Arméniens et Céorgiens de la Bibliothèque Nationale, par Frederic Macler, Paris, MDCCCCVIII.

8) Բրիտ. թանգարան—A Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum, by Frederick C. Conybeare, Lonbon, 1913.

9) Գողթն—Ե. Լալայան, Օրդուբադի կամ Վերին Ագուլիսի ոստիկանական շրջան և կամ Գողթն—«Ազգագրական Հանդէս», գիրք XII, Թիֆլիս, 1905 թ. էջ 109—173.

10) Գովրիկյան—Գր. Գովրիկեան, Դրանսիլուանիոյ Հայոց Մետրոպոլիսը կամ Նկարագիր Գերլա հայաքաղաքի ի գիր և ի պատկերս, Վիեննա, 1896.

11) Թավրիզ—Հ. Աճառեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թավրիզի, Վիեննա, 1910.

12) Թորոս Աղբար. Ա.—Գ. Սրուանձտեանց, Թորոս Աղբար. Հայաստանի ճամբորդ, մասն առաջին, Կ. Պոլիս, 1879.

13) Թորոս Աղբար. Բ.—Նախորդի Բ. մասը, Կ. Պոլիս, 1885.

14) Թոփճեան—Յ. Թոփճեան, Ցուցակ ժողովածուաց Դագեան Խաչիկ վարդապետի, մասն Բ. (1878—1898), Վաղարշապատ, 1900.

15) Կայսր. Մատեն. Վիեն.—Ցուցակ հայերէն ձեռագրաց կայսերական մատենադարանին ի Վիեննա, կազմեց Յակովբոս Տաշեան, Վիեննա, 1891.

16) Հալէպ, սբ. Մնկ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի Ս. Քառասուն մանկանց եկեղեցւոյ և մասնաւորաց. կազմեց Արտաւազդ Սիւրմէեան, Երուսաղէմ, 1935.

17) Հալեպ, Անթիլ և մասն.—Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի և Անթիլիասի ու մասնաւորաց, Բ. հատոր, կազմեց Ա. Սիւրմէեան, Հալէպ, 1936.*

---

* Այս ցուցակում, № 37-ի տակ, նկարագրված է մի Գանձարան, որն, ըստ հրատարակչի, ընդօրինակված է 1380 թվին։ Մենք այդ ձեռագրի հիշատակարանը չմուծեցինք մեր ժողովածուի մեջ, որովհետև իրականում այն գրված է ոչ թե 1380, այլ 1423-ին։ Հիշատակարանում գրված է «Ազգիս Հայոց թըւականին կրկին քառակ 'ւ երկու հարիւրին, ութանասուն երկու ամին գրեցաւ գանձս...»։

*18) Հռոմ—Յովհ. վրդ. Միսքճեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Վատիկանու ի Հռովմ—«Հանդէս Ամսօրեայ», 1892 թ.*

*19 Ճանիկյան—Յ. Կ. Ճանիկեան, Հնութիւնք Ակնայ, Թիֆլիս, 1895.*

*20) Մատեն. Հայկ. թարգմ.—[Գ. Զարպհանալեան], Մատենադարան Հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ, 1889.*

*21 Նռտարք Հայոց—Նօտարք Հայոց, հաւաքեալ եւ ի լոյս ածեալ ձեռամբ Ղեւոնդ Վարդապետի Փիրղալեմեան Տսսրեցւոյ, Վարագայ վանուց վանականի... Կ. Պօլիս, 1883° թ.*

*22) Ջալալեան—Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, աշխատասիրութեամբ Սարգիս վարդապետի Ջալալեանց, մասն Ա., Տփխիս, 1842.*

*23) Սեբաստիա Ս. Նշան—Թ. Գուշակեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Ս. Նշանի վանուց ի Սեբաստիա—«Հանդէս Ամսօրեայ», 1923 թ.*

*24) Սմբատեանց, Երնջակ—Մ. Սմբատեանց, Նկարագիր սուրբ Կարապետի վանից Երնջակոյ և շրջակայից նորա, Տփխիս, 1904.*

*25) Վասպ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի, կազմեց Երուանդ Լալայեան, պրակ առաջին, Թիֆլիս, 1915.*

*26) Վենետ. Ա.—Բ. Սարգսեան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հատոր Ա., Վենետիկ, 1914.*

*27) Վենետ. Բ.—Նախորդի Բ. հատորը, Վենետիկ, 1924։*

*28) Վիեն.—Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, կազմեց Յակոբոս Տաշեան, Վիեննա, 1895.*

*29) Քոսեան—Յակոբ Քօսեան, Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս, հատոր Բ., Վիեննա, 1899։*

*Վերոհիշյալ ցուցակների ցանկից բացակայում են Սևանի (1892 թ. Ն. Մառ) Թիֆլիսի Ներսիսյան հոգևոր դպրոցի (1893 թ. Ստ. Կանայանց), Կարինի Սանասարյան վարժարանի (1909 թ. Հ. Աճառյան), Նոր Բայազետի (1924 թ. Հ. Աճառյան) և այլ վայրերի հրատարակված ցուցակները, ինչպես և մի շարք աշխատություններ, որոնց մեջ կան ԺԴ. դարի ձեռագրերի նկարագրություններ ու հիշատակարաններ, որովհետև նրանց մեջ նկարագրված ձեռագրերը այժմ պահվում են մեր Պետ. Մատենադարանում և մատչելի են եղել մեզ բնագրերով։*

*Հիշատակարանների սույն ժողովածուն զերծ չէ, և չէր էլ կարող զերծ լինել թերություններից, որովհետև հայերեն ձեռագրերի ամենահարուստ ձեռագրատներից մեկի՝ Երուսաղեմի Ս. Յակոբի վանքին կից Մատենադարանի, ձեռագրերի ցուցակը մինչ այժմ չի հրատարակված*, իսկ Վենետիկի Մխիթարյան միաբանության ժողովածուի մայր ցուցակի միայն Ա. և Բ. մասերն են հրատարակված, ընդամենը 319 ձեռագրերի նկարագրությամբ։*

---

** Վերջերս, երբ սույն ժողովածուի մի մասն արդեն տպված էր, հայտնի դարձավ, որ Ա. Սուրմեյանը հրատարակել է Երուսաղեմի մատենադարանի հայերեն ձեռագրերի մայր ցուցակի առաջին պրակը և Եվրոպայի այլևայլ թանգարաններում ու գրադարաններում ցրված հայերեն ձեռագրերի ցուցակը։ Մենք հնարավորություն չունեցանք օգտագործելու այդ ցուցակներում եղող ԺԴ. դարի հիշատակարանները։ Չկարողացանք ձեռք բերել և օգտագործել նաև 1920, 21, 22, 27 և 1930 թթ.* "Revue des etudes Armeniennes" *ամսագրի էջերում Ֆ. Մակլերի հրատարակած Եվրոպայում գտնվող շուրջ 50 հայերեն ձեռագրերի նկարագրությունները։ Նրանց մեջ, ըստ տեղեկությունների, ԺԴ. դարից են մեկ-երկու ձեռագրեր։*

հավանալի է, որ մենք հնարավորություն չունեինք ժողովածուն հարստացնելու Երուսաղեմում և Վենետիկում պահվող ԺԴ. դարի բազմաթիվ ձեռագրերի հիշատակարաններով։

Հայտնի է, որ Փարիզի ազգային գրատանը, Տյուբինգենի համալսարանում, Բեռլինում, Բուդապեշտում, Լվովում և այլ վայրերում նույնպես կան ԺԴ. դարի հայերեն ձեռագրեր, հայտնի են նաև այդ ձեռագրերի մասին որոշ տվյալներ, սակայն նրանց մասին մեր ձեռքի տակ եղած աղբյուրներում հիշատակարանները չեն հրատարակված, և մենք հնարավորություն չունեցանք օգտագործելու նաև այդ հիշատակարանները։*

Անհրաժեշտ է նշել նաև, որ Վիեննայի Մխիթարյան միաբանությունը. Հ. Տաշյանի ցուցակի հրատարակությունից (1895 թ.) հետո, հարստացրել է իր Մատենադարանը հարյուրավոր նոր ձեռագրերով, որոնց ցուցակը՝ կազմված Հ. Ոսկյանի կողմից, դեռևս չի հրատարակված։

Անշուշտ. ԺԴ. դարի մի քանի ձեռագրեր պետք է լինեն Լենինգրադում գտնվող մի քանի հարյուր հայերեն ձեռագրերի շարքում, սակայն, ցավոք, մենք պատեհություն չենք ունեցել ծանոթանալու այդ ձեռագրերի հետ։**

Այսպիսով, ԺԴ. դարի հիշատակարանների սույն ժողովածուի հրատարակությամբ, որը պարունակում է 845 արժեքավոր հիշատակարաններ, չեն սպառվում այդ դարում գրված բոլոր հայերեն հիշատակարան-

---

* Նրանց մասին հետաքրքրվողը համառոտ տեղեկություններ կարող է քաղել հետևյալ աղբյուրներից 1) Catalogue des Manuscrits Armeniens et Georgiens de la Bibliotheque Nationale, par F. Macler, Paris, 1908. (ԺԴ. դարից են № 66—Շարակնոց, 1319 թ., № 67—Շարակնոց, 1341 թ., № 79—Դանձարան, 1361 թ., № 80—Գանձարան, 1380 թ., № 95—Ժողովածու, 1400 թ. № 119—Ճառք Դր. Նազիանզացու, 1319 թ. № 120—Տոնական, 1362—1380 թթ., №121—Ժողովածու, 1386 թ. № 122 -Ժողովածու, ԺԴ. դար, №180—Յայսմաւուրք, 1316 թ., № 281—Բանք չափաւ Ներսիսի Շնորհալւոյ, 1374 թ.), 2) Verzeichnis der Armenischen Handschriften der Königlichen Universitatsbibliothek zu Tübingen, von Franz Nikolaus Finck und Levon Gjandschezian Tübingen, 1907. (ԺԴ. դարից են՝ №-Ma XIII. 2—Ավետարան, 1313 թ., № 10—Մեկնութիւնք, 1313 թ., № 22—Շարակնոց, 1316 թ. № 52—Թուղթ ընդհանրական, 1313 թ.) 3) Սրվանձտյանցի «Թորոս Աղբարի» Բ. հատորում տեղեկություններ կան Արղնի բարձրահայաց սուրբ Աստուածածնի վանքի ԺԴ. դարի ö ձեռագրերի մասին (դրանք են № 44—Վարք Նւագրի հգնաւորի «գրեալ ի թվ. ՉԿԸ (1319), ի գաւառս Վայոց ձորոյ, ի վանս Գլաձորս», № 67—Աւետարան «գրեալ ի թվ. Հայոց Գ. (1351)... ի Հռոմկլայ», № 113-Աւետարան «գրեալ ի թվ. ԳԺ. (1361), ի քաղաքն Համիթ», № 119—Աւետարան «գրեալ յԱղթամար ի թվ. ԳԺԲ. (1363)», № 120—Մեկնութիւն գործոց առաքելոց, 1310 թ.), 4) Ս. Քոլանջյան, Ռումինահայոց մաքի գանձարան «Հայ մշակույթի տունը»—«Էջմիածին», 1948թ. հոկտեմբեր-դեկտեմբեր, էջ 60—61. (համառոտ տեղեկություններ է տալիս մի շարք հայերեն ձեռագրերի մասին, որոնցից ԺԴ. դարի են երկուսը՝ 1313-31 թթ. Կարապետ գրչի կողմից Երուսաղեմում գրված մի Ճաշոց և 1351 թ. Կաֆայում գրված մի Աւետարան)։

Սրանցով, անշուշտ, չեն սպառվում զանազան պարբերականներում և բանասիրական աշխատությունների մեջ, այլևայլ առիթներով հիշատակված ԺԴ. դարի հայերեն ձեռագրերը։ Դրանց թիվը շատ է, իսկ չոր թվարկումը՝ մեր նպատակների տեսակետից անօգուտ։

** Մոսկվայում՝ Լենինի անվան գրադարանի ձեռագրական բաժնում, Պատմական թանգարանի ձեռագրական բաժնում և Արևելյան արվեստների թանգարանում, պահվում են շուրջ 40 հայերեն ձեռագրեր։ 1947 թվին ծանոթացել ենք այդ ձեռագրերի հետ և կազմել նրանց համառոտ ցուցակը։ Դրանց շարքում ԺԴ. դարի ձեռագրեր չկան։

ները։ Պետք է հուսալ, որ վերը նշված բոլոր հավաքածուների օգտագործմամբ հնարավոր կլինի այդ թիվն ավելացնել և հասցնել առնվազն 1000-ի։*

* * *

Հիշատակարանները սույն ժողովածուի մեջ շարադասված են ժամանակագրական հերթականությամբ։ Գրության թվականները որոշելիս, ամենուրեք, առաջնորդվել ենք «Հայոց մեծ տոմարի» թվականով, որի առաջին տարին համընկնում է մեր թվարկության 552 թվին։

Այդպես ենք վարվել, որովհետև հիշատակարանների ճնշող մեծամասնության մեջ գրության ժամանակը ցույց է տրված միայն Հայոց թվարկությամբ։

Անշուշտ կան, և ոչ քիչ թվով, հիշատակագիրներ, որոնք հայոց թվականին զուգահեռ նշել են նաև տարեթիվն ըստ փրկչական թվականի։ Սակայն նման դեպքերում նույնպես առաջնորդվել ենք «Հայոց թվականի» տվյալով, որովհետև մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում բոլոր քրիստոնյա ժողովուրդների կողմից համատարած գործածության մեջ գտնվող թվարկություն գոյություն չուներ։ Այս հարցի կապակցությամբ ուշագրավ է Մարկոս գրչի հիշատակարանը, որի մեջ ձեռագրի գրչության տարեթիվը հայտնված է այսպես՝ «ի թվաբերութիւնն ի ծննդենէն Քրիստոսի ըստ Հայոց հաշուի ՌՅՂ . (1390), եւ ըստ Յունաց՝ ՌՅՂՉ. (1396), եւ ըստ Ֆռանգաց ՌՅՁԸ. (1388), եւ ըստ Ասորոց՝ ՌՅՀԺԱ. (1381*), և ըստ Հաբեթական տոմարիս հայոց՝ ՊԼԷ. (1388)» (էջ 575)։

Ինչպես ակնհայտ է, Մարկոս գրիչը շատ որոշակի տարբերել է քրիստոնեական թվականը «ըստ Հայոց հաշուի», «ըստ Յունաց հաշուի», «ըստ Ֆռանգաց հաշուի» և այլն։ Բայց ոչ բոլոր հիշատակագիրներն են տարբերել այդ, ինչպես և ոչ բոլոր բանասերները, որոնք ժամանակագրական ու տոմարագիտական հարցերով են զբաղված։** Այսպիսով, ստեղծվել է մի խառնաշփոթություն, որից դուրս գալ կարելի է միայն առաջնորդվելով «Հայոց մեծ տոմարի» թվականով, գումարելով նրան 551։

Հիշատակարաններում ամսաթվերը, մեծ մասամբ, հայտնված են կամ ըստ հուլյան տոմարի (հունվար—դեկտեմբեր) և կամ ըստ Հովհան Սարկավագի մշակած անշարժ տոմարի։ Սարկավագադիր տոմարի ամանորը՝ նավասարդի 1-ը, միշտ համապատասխանել է հուլյան տոմարի օգոստոսի 11-ին (այս համադրությամբ են կազմված եկեղեցական գրքերը՝ «Գանձարանները», «Յայսմաւուրքները» և այլք)։ Սակայն, հակառակ բանասիրության մեջ ընդունված կարծիքի, ըստ որի 1318 թվից հետո հայկական շարժական տոմարը գործածությունից դուրս է եկել, ԺԳ. դա-

---

* Լենինգրադում պահվող հայերեն ձեռագրերի հիշատակարանները և ԺԴ. դարի մի քանի այլ հիշատակարաններ հնարավորություն կունենանք հրատարակելու հիշատակարանների ժողովածուի հաջորդ հատորի (ԺԵ. դար) հավելվածում։

** Միջնադարյան պատմական ու ժամանակագրական աղբյուրներն օգտագործելիս, միշտ պետք է հիշել, որ հայերի կողմից օգտագործված քրիստոնեական թվարկությունը, այժմ համատարած օգտագործման մեջ գտնվող թվարկությունից երկու տարով առաջ է ընկած եղել, ուստի որևէ պատմական դեպքի ժամանակը որոշելիս, եթե նրա թվականը «ըստ Հայոց հաշվի» է տրված, պետք է առաջարկված թվականից երկու տարի դուրս գալ։

րում կան հիշատակագիրներ, որո՛նք համառորեն կիրառում են կամ միայն հին՝ շարժական տոմարը և կամ ամսաթիվը հայտնում են երկու կամ մի քանի տվյալներով՝ ըստ շարժական և ըստ անշարժ տոմարների։

Այսպես, օրինակ, № 412 հիշատակարանը գրված է «ի թվ. ՉՂԱ. (1342). ի մարտի Է. (7), սահմի ի ԺԲ. (12)» (էջ 332). 1342 թվին Նավասարդի 1-ը շարժական տոմարով համընկել է դեկտեմբերի 26-ին, ուստի և սահմի ամսվա 12-ը, իրոք, համապատասխանում է մարտի 7-ին։ № 687 հիշատակարանը գրված է 1384 թվի «յաւգոստոս ԻԷ. (27), ահկի ԺԶ. (16)՝ Մեծ Հայոյն, և Եբրայեցւոց Թ. (9), և Սարկաւագին՝ Նաւասարդ ԺԷ. (17)» (էջ 551)։ Այստեղ «ահկի ԺԶ. (16)»-ը շարժական տոմարի ամսաթիվն է, իսկ «Նաւասարդի ԺԷ. (17)»-ը՝ սարկավագադիր կամ անշարժ։*

Այսպիսով, հիշատակարաններն օգտագործելիս պետք է ի նկատի առնել նաև այս հանգամանքը, և ամեն մի կոնկրետ դեպքում որոշել, թե ինչ տոմարով է առաջնորդվել հիշատակագիրը։

Ժողովածուի մեջ, միևնույն տարեթվի հիշատակարանները շարադասելիս նույնպես առաջնորդվել ենք ժամանակագրական սկզբունքով, իսկ երբ հիշատակարանների ամսաթվերը հայտնի չեն եղել, արժեքավոր ու հետաքրքիր տվյալներ պարունակող հիշատակարանները դրել ենք մյուսներից առաջ։

ԺԴ. դարում գրված, բայց որոշակի տարեթվեր չունեցող հիշատակարանները մասամբ գտել ենք իրենց գրության հավանական կամ մերձավոր տարեթվերը պատմվող հայտնի քաղաքական դեպքերի կամ ծանոթ գրիչների, ծաղկողների և հիշատակված այլ անձանց միջոցով։ Իսկ այն հիշատակարանները, որոնց գրության մերձավոր ժամանակի որոշման համար որևէ կռվան չենք գտել, այդպիսիք տեղադրել ենք ժողովածուի վերջում՝ «ԺԴ. դարի անթվական հիշատակարաններ» խորագրի տակ։ Այս բաժնում հիշատակարանները շարադասված են հիշատակագիրների անվանց այբբենական կարգով։

Հիշատակարանների ուղղագրությունը պահպանել ենք նույնությամբ, առանց նույնիսկ աննշան շեղումների։**

Տառասխալները մատնացույց ենք արել օգտագործելով շղագիր տառեր։

Բոլոր կարգի համառոտագրություններն ու հապավումները (պատվագրեր, գաղափարագրեր և այլն) բաց ենք արել, առանց նշելու այդ մասին։

Հիշատակագիրների մեծագույն մասը գործ է ածել անկանոն, նույնիսկ արտառոց, կետադրություն։ Անփոփոխ պահպանելով նրանց գործածած կետադրությունը, մենք կդժվարացնեինք հիշատակարանները հասկանալու և նրանցից օգտվելու գործը։ Ուստի, համոզված լինելով, որ կետադրության պատմությամբ հետաքրքրվող մասնագետները գերադասելու են միշտ անձամբ դիմելու ձեռագրերին, մենք, սակավ բացառությամբ ամբողջովին փոխել ենք հիշատակարանների կետադրությունը։

---

* Ուշագրավ տոմարական զուգահեռներ կան նաև 576, 594 և այլ էջերում։

** Տպագիր աղբյուրներից քաղած հիշատակարանների ուղղագրությունը նույնպես պահել ենք հարազատությամբ, չնայած որոշ հրատարակություններում, համոզված ենք, փոխված է ուղղագրությունը և հարմարեցված ԺԹ. դարի ուղղագրական կանոններին։

Հիշատակարանների սկզբի մասը («Փառք»-ը), որը զուրկ է պատմական արժեքից՝ չենք հրատարակել, բաց ենք թողել նաև բացարձակ կրկնությունները և աստվածաբանական անբովանդակ ու անարժեք դատողությունները, որոնք որոշ հիշատակարաններում շատ ընդարձակ տեղ էին բռնում։ Դուրս ձգած մասերը ցույց ենք տվել բազմակետերով։

Մաշվածության, պատռվածության և այլ պատճառներով անընթեռնելի դարձած տողերը, բառերը և վանկերը ցույց ենք տվել երեք ուղղահայաց գծիկներով՝ | | |։ Եթե այդ գծիկները դրված են հիշատակարանի վերջում, այդ նշանակում է, որ ձեռագրից թերթ է ընկել, շարունակությունը չի պահպանվել։

Հիշատակարանների օգտագործումը հեշտացնելու նպատակով, հայկական այբուբենի տառանիշերով դրված թվերի կողքին, ամենուրեք, շեղ փակագծերի մեջ՝ ( ), տվել ենք նույն թիվը՝ արաբական թվանշաններով արտահայտած. այսպես՝ ԾԵ. (55) և այլն։ Հայկական մեծ տոմարով դրված տարեթվերի կողքին տվել ենք ոչ թե նրանց թվաբանական համարժեքը, այլ, գումարելով 551, վեր ենք ածել մեր թվարկության սիստեմին և ստացված թվականն արտահայտել ենք արաբական թվանշաններով։ Այսպես՝ ՊԺԱ. (811) թվականին կից, փակագծերի մեջ, գրել ենք 1362, այսինքն՝ 811+551։

Ուղղաձիգ փակագծերը՝ [ ], օգտագործել ենք, երբ ըստ իմաստի կամ ենթադրաբար ստիպված ենք եղել վերականգնել որևէ անընթեռնելի տառախումբ, բառ կամ նախադասություն։ Երբեմն, բնագրի իմաստը պարզելու, կամ սխալ գրված բառը ճշտելու նպատակով ավելացրել ենք որոշ բառեր կամ տառեր, այդ հավելումները նույնպես առել ենք ուղղագիծ փակագծերի մեջ։

Սակավ դեպքերում օգտագործել ենք նաև սուրանկյուն փակագծեր՝ < >, դրանց մեջ առնված են այն բառերը կամ տառերը, որոնք սխալմամբ կրկնված են հիշատակագիրների կողմից և կամ դրված են թյուրիմացաբար։

Ամեն մի նոր տարեթիվ սկսվում է նոր էջից, էջի վերևում ունենալով գլխագիր: Էջերը տեխնիկապես ձևավորված են հետևյալ կերպ. վերին ձախ անկյունում տրված է տարեթիվը հայկական տոմարով և հայկական թվանիշերով արտահայտած, աջ անկյունում՝ նույն տարեթիվը ըստ մեր թվարկության, արաբական թվանիշերով արտահայտած։

Յուրաքանչյուր հիշատակարան ունի իր հերթական համարը ( 1-ից մինչև 855)։ Համարից հետո, շատ համառոտ կերպով, տրված է այն ձեռագրի վերնագիրը, որից քաղված է տվյալ հիշատակարանը։

Վերնագրին հաջորդող տողում տրված է ձեռագրի հասցեն՝ որտե՞ղ և ի՞նչ համարի տակ է պահվում այն և կամ որ հրատարակված կամ անտիպ աղբյուրում է նկարագրված։ Այսպես, օրինակ, էջ 16-ում, 17 համարի տակ գրված է «Աստվածաշունչ» (ձեռագրի վերնագիրը), հաջորդ՝ մանր տառերով տպված տողում՝ «Երևան 182», այդ նշանակում է, որ ձեռագիրը պահվում է Հայկ. ՍՍՌ Մինիստրների Սովետին կից պետ. Ձեռագրատանը(Մատենադարանում) № 182-ի տակ։ Նույն տողում, փակագծերի մեջ դրված է՝ «Տես նաև 1658 թ.», որ նշանակում է, թե նույն այդ ձեռագրում հիշատակարան կա նաև 1381 թվից։ Այնուհետև տրված է հիշատակագրի անունը

(Մարտիրոս) և նրա առնչությունը ձեռագրին (գրիչ)։ Հաջորդ տողում տրված է ձեռագրի գրչության վայրը («վայր՝ Գոներ»)։

Եթե միևնույն ձեռագրում նույն տարեթվին գրված մի քանի հիշատակարաններ կան, ապա նրանք անջատված են միմյանցից հայկական թվահամարներով՝ ա, բ, գ և այլն, և յուրաքանչյուրի համար տրված է հիշատակագրի անունը ու գրչության վայրը, եթե, իհարկե, այլ մարդու կողմից է գրված և այլ վայրում։

Էջերի ձախ ընդերկայնական լուսանցքում գրված թվանշանները ցույց են տալիս ձեռագրի էջահամարները։ Էջը փոխվելու դեպքում, նոր էջից սկսվող հատվածի առաջին բառի սկզբից դրել ենք ուղղահայաց երկու գծիկներ՝ ||, իսկ այդ տողի դիմաց՝ ձախ լուսանցքում՝ նոր էջահամարը։

Մեր ծանոթագրությունները, որ տրված են անմիջապես էջերի տողատակերում, հիմնականում տեքստաբանական և որոշ չափով նաև աղբյուրագիտական հարցեր են շոշափում։ Խուսափել ենք պատմա-բանասիրական ծանոթագրություններով բնագիրը ծանրաբեռնելուց։

Վերջում տվել ենք ընդարձակ ցանկեր։

Առարկայական ցանկում, բացի երկրի քաղաքական ու տնտեսական պատմությանը վերաբերող հարցերից, հատուկ ենթագլուխների տակ, բերված են՝ հիշատակարաններում գործածված բոլոր տիտղոսները, պաշտոնական ու ադմինիստրատիվ տերմինները, արհեստները և այլն։

Տեղանունների ցանկում մեջ են բերված, որոշ կոմենտարներով, հիշատակարաններում գործածված բոլոր (շուրջ 500) բնակավայրերի ու աշխարհագրական վայրերի անունները։

Անձնանունների ցանկում ամփոփված են հիշատակարաններում այլևայլ առիթներով նշված բոլոր հայտնի և անհայտ անձինք, ըստ որում կան հարյուրավոր տարբեր բնագավառներում աշխատած գործիչներ, որոնք առաջին անգամ են տպագիր խոսքով մատչելի դառնում մեր բանասիրությանը։

Այս ժողովածուն աղբյուրագիտական խոշոր ծավալի մեր առաջին աշխատությունն է, որը, հարկավ, զերծ չէ թերություններից։ Սիրով սպասում ենք մեր մասնագետների քննադատական խոսքին ու խորհուրդներին, հաջորդ դարերի հիշատակարանները անթերի ու կատարյալ հրատարակելու համար։

Լ. ԽԱՉԻԿՅԱՆ

20.X.1950 թ.



**ՉԾ** **1301**

1.

## ԱՒԵՏԱՐԱՆ.

*Վասպուրական, 76. Լալ. ծուց. սյուն. 139—142.*

*Գրիչ՝* Խաչատուր
*գրչության վայր՝* Լիմ

ա

*... Եւ ես, յողնամեղ և փցունս ի գրչաց* Խաչատուր, *տեսեալ զփափագ և զսէր սորա* [Աստուածատուր *քահանայի*], *յանձն առեալ ըստ իմում կարի՝ յանգ հանեալ կատարեցի շնորհիւք և ողորմութեամբն աստուծոյ, յամի* ՉԾ. *(1301): Գրեցաւ սա յանապատիս, ի կղզիս, որ կոչի* Լիմն. *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետի և սուրբ Գէորգա զաւրավարի, և ի հայրապետութեան Հայոց աստուածահաճոյ և սրբասնունդ հայրապետին տէր* Զաքարիայի *և յառաջնորդութեան սուրբ ուխտիս պատուական եպիսկոպոսին՝ Տէր* Յովան:

*Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովք աստուծոյ՝ զընթերցաւղսդ և զլսաւղսդ, յիշման արժանի առնել զվերոյասացեալ պատուական քահանայն՝ զստացաւղ տառիս և զծնաւղս իւր...։*

*Ընդ նոսին և ես՝ ամենամեղս ի գրչաց սուտանուն* Խաչատուր *աբեղայս, յերեսս անկեալ աղաչեմ զհանդիպեալսդ սմա, յիշել և զիմ անարժանութիւն և զծնաւղսն իմ, զեղբայրն իմ զ*Պարոնիկ *և զպապն իմ զ*Մարտիրոս *և զքեռին իմ զ*Սարգիս *և զերիս քորսն իմ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս...*

*Ստացող՝* Աստուածատուր

բ

*Ի թուականութեանս Հայոց* ՉԾ. *(1301) ես,* Աստուածատուր *քահանայ, ըստացայ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց առ ի յիշատակ հոգւո իմոյ և ծնողաց իմոց, ընդ նմին և ամուսնոյ իմո* Մարթայի *և զաւակաց իմոց՝* Սեդրակի *և* Միսաէլի *և* Հռիփսիմեայն: *Արդ, որք կարդայք կամ գաղափար առնոյք ի սմանէ, մեղաց թողութիւն հայցեցէք յամենառատ պարգևողէն Քրիստոսէ ինձ և ծնողաց իմոց և ամենայն ննջեցելեաց մերոց...։*

*Զստացող սուրբ աւետարանիս՝ զ*Խաչատուր *քահանայն և զաւակսն՝ զ*Կարապետ *քահանայն և զամենայն արեան մերձաւորսն յիշեցէք ի*

*Քրիստոս և առաւած ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն*։*

## 2.

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Փիրղ. 6273, էջ 102 (Ամասիայի սուրբ Աստուածածին եկեղեցի)*

*Գրիչ՝* Յովհաննէս
*վայր՝* Բերկրի

*... Արդ, գրեցաւ Նամակս աստուածային... ի թուաբերութեանս յոբելեան տոմարիս ՉԾ. (1301), ի քաղաքիս* Բերկրի, *ընդ հովանեաւ սուրբ Նահատակիս Գէորգեայ զօրավարի, ի թագաւորութեան* Ղազան *ղանին, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *ըստ խնդրոյ և փափաղանաց հաւատարիմ և ուղղափառ պատուական պարոնին* Դանիէլի *... և ի վայելումն որդեկին իւրոյ և պատուական քահանայի* Մարտիրոսի... *ձեռամբ* Յովհաննէս *սուտանուն գրչի...*

## 3.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Երև. 1527 (տես նաև՝ 1303 թ. և 1379 թ.)*

*Գրիչ՝* Վարդան
*վայր՝* Կիլիկիա

ա

608 ա *Զմեծ պարոնն և զորքայորդին Հայոց զ*Աւշինն, *հանդերձ եղբարբք և ծնաւղաւք, աղաչեմ յիշել ի տէր Յիսուս։ Այլ և զ*Բարսեղ *քահանա* Լեռնեցի՝ *ստացաւղ կտակիս յիշեսջիք ի Քրիստոս, և զամենայն եղբայրութիւն սրբոյ անապատիս։ Եւ զողորմելիս* Վարդան *գր[աղիր] յերեսս անկեալ աղաչեմ յիշել՝ հարբ և եղբարբք և քերբ* Թեփանոի[ս], *որ յոյժ սպասաւորէ մեզ։ Եւ որպէս պարգևէք, նոյնպէս և ձեզ տացէ Քրիստոս՝ որդին աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Զ*Աւշին *դպիր՝ մեր աշակերտ այլ յիշեցէք աղաւթիւք և աստուած զձեզ յիշէ։*

բ

616 ա *Յայսմ ամի, ՉԾ. (1301) մեծ թուականիս Հայոց, յապրիլի ամսոյ ի յերկու աւրն, ի մեծի զատկի յարութեան կիւրակէին, հանգեաւ ի Քրիստոս* Բարսեղ Լեռնեցին, *ստացաւղ սուրբ գրոցս, ոչ ժամանեալ յաւարտ գրչութեանս, որոյ ողորմեսցի Նմա Քրիստոս և թողցէ զամենայն զսխալանս նորա, զի ո՞վ է մարդ, որ կեցցէ և ոչ մեղիցէ։ Այլ և զախտապաշար անպիտան ծառայի՝ տեառն* Վարդանա *գրա[գրի] և ամենեցուն սրոց ամէն ասեն, ամէն**։*

---

* *Ձեռագիրը 85 համարի տակ պահվել է Լիմ անապատի Մատենադարանում։ Հիշատակարանը համառոտակի արտագրված է նաև Ղ. Փիրղալամյանի ժողովածուում. տես Երև. 6273, էջ 102։*

** *«Ամէն» բառը գրված է փակագրով։*

## 4.

### ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ ԵՒ ԿԱԹՈՂԻԿԵԱՅ ԹՈՒՂԹՔ

Հռոմ, 10 (Cod. Arm. X)

Գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Փերուժ

89 բ Արդ, գրեցաւ գործք Առաքելոցն և Կաթողիկէք ձեռամբ յոգնամեղ Դաւթի, ի թուիս ՉԾ. (1301), ի մայրաքաղաքիս Փերուժ [Perugia] կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոյն Մատթէոսի Բառնաբա։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք կարդայք կամ օրինակէք, յիշեսջիք և մեղաց թողութիւն խնդրեսջիք ինձ՝ մեղաւորիս Դաւթի և ծնողաց իմոց։ Այլև յիշեսջիք զՅակոբ քահանայ և զԳրիգոր միայնակեց Պետոն կոչեցեալ, որք են առաջնորդ տանս։ Ընդ նմին և զսպասաւորք սուրբ եկեղեցոյս՝ զմեծ Յակոբ և զՄաթէոս, որք են քահանայք։ Յիշեսջիք զգործաւորքս՝ զՅովհաննէս սարկաւագ և զՊարոնիկ միակեց և տէր աստուած յիշողացդ ողորմեսցի, ընդ նմին և զՆերսէս սարկաւագ։

## 5.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑ ՊՕՂՈՍԻ

Ն. Ջուղա, Ամենափրկիչ. 202. Տ.—Ավետիսյան, Ցուցակ, էջ 1270—1271 (տես նաև 1602 թ.)

Գրիչ՝ Թոր[ոս]
վայր՝ Հուպ առ Բարձրբերդ

ա

326 բ ...Ազգանազգեանըս դըրոհի
Թուաբերութեանըս համարի
Եւթնհարիւր ընդ յիսնեկի (1301)
Ջըրաւ եղև այսմ տառի,
Ի գաւառըս Կիլիկեի,
Հուպ առ դղեկիս հռչակելի;
Որ և անուամբ Բարձր կոչի։
Մովսէս մեղաւք մեռեալս ոգի,
Որ սպասաւոր գոլով բանի,
Ստացաւղ եղէ այսմ մատենի,
Ցարդեանց այլոց ձրից պարգևի։
Ցերես անգեալ միշտ ամենի,
Մաղթեմ ղեկեալըդ մեր զըկնի
Յիշել ի տէր յայսմ վայրի
Ջերախտաւորս այս մատենի.
Եւ դուք լիջիք ի նոյն բաբի,
Ցանեղ աւուրն աներեկի.
Եւ տէրն աւրհնեալ յամենայնի,
Ամէն, ամէն [և] եղիցի

Ո՛հ, աղաչեմ յիշել զմեղաւք դատապարտեալ զծաղկողս զԹոր[ոս] և զրաբունին Մով[ս]էս, հանդերձ ամենայն զարմի[ւ]...։

բ

177 բ Զմեղաւոր Մարտիրոս աշակերտ գրոց յիշեա ի տէր, ո՛, իմաստուն ընթերցաւղ։

6.

## ԼՈՒԾՄՈՒՆՔ Ի ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

Երև. 8132

Գրիչ՝ Թո[րոս]

ա

60 բ Զսրբասէր եպիսկոպոսն և զկրովիմաստ րաբունն զտէր Ստեփանոս՝ զհանգուցեալն առ Քրիստոս, որոյ շնորհաւք գիրքս ձեռակերտի, որ վայելէք, յարաժամ յիշեցէք, աղաչեմ։*

բ

133 բ Ո՛վ, վայելող սուրբ տառիս, զսակաւ գծիկս ընկալ և զանհմուտ և զնորուսումն մանուկս զԹո[րոս] դպ[իր]** մի մոռանար, այլ յիշեա, աղաչեմ, և տէր ըզձեզ [յիշէ], ամէն։

* Համանման բովանդակության հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 29 ա, 32 ա և 72 ա էջերում։

** Հավանորեն նախորդ հիշատակարանի գրիչ Թորոսն է, ուստի անթվական սույն հիշատակարանը տեղադրում ենք նրան առընթեր։





## 7.

### ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

*Ե. Լալ. անաիպ, 581 (Լիմ 241)*

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամա՞ր

*Ի Թու. ՉԾԱ. (1302) գրեցաւ. Գրակքս Առաքելոց ձեռամբ Դանիէլի անարժան[ի]. ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց և ի վայելումն որդոյ իմոյ Գրիգորին և քահանայապետին [*], զորս փրկեսցէ Քրիստոս յամենայն փորձութենէ, ամէն...։*

## 8.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Երևան 6558*

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Գլաձոր—Թեղենեաց ուխտ

*...Որում յոքնատենչ ըղձիւք բաղձացեալ քաջահանճար փիլիսո-*
637 բ *փայն և բանիբուն ճարտարն, միջամուխ մակացուն ‖ աստուածայնոց տառից, աստուածիմաստ և տիեզերալոյս բաբունապետն Եսայի, որ ի նուաղեալ ժամանակիս առաքինասէր վարուք պայծառացեալ և աստուածաշունչ կտակարանացն իմաստիւք գերալրացեալ իբրև զարեգակն փայլէր յաշխարհի, որ և ի վերա ամենայն մասանցն բարեաց, որով բոլորն կատարի առաքինութիւն, և ղուսուցչապետութեանն ևս զգործ ի կիր արկեալ ընդ առնելն լծակցելով և զամենայն եկեալսն առ ինքն յաստուածային ուղղէր ճանապարհ, աղբիւրաբար բխելով զհոգւոյն սրբոյ վարդապետութիւնս ի լսելիս աշակերտելոցն։ Զոր տէր Յիսուս շնորհեսցէ զսա եկեղեցոյ սրբոյ ընդ երկայն ժամանակս խաղաղական կենաւք։ Որոյ կցորդեալ կամացն, բարեսէր յաւժարութեամբ և ձեռնտու աւժանդակութեամբ հոգւոյն շնորհաւք ծաղկեալ, սրբազան և աստուածապատուեալ արհիեպիսկոպոսն տէր Յովհաննէս, որ ունէր զվերատեսութիւն այցելականն դիտման քահանայականն դասու կատարողապետութեան Այրարատեան նահանգիս, նիստ կայանի ունելով զամուրն Բջնի, որ է ամենայն առաքինութեամբ զարդարեալ։ Զորս խնամքն աստուծոյ պահեսցէ զնա խաղաղական կենօք, շնորհելով եկեղեցոյ սրբոյ ընդ երկայն աւուրս։*

*Բայց առաջին սկիզբն գրութեան սորա եղև ի գաւառին Վայոցձոր կոչեցեալ, ի սուրբ և ի գերահռչակ ուխտն Գլաձոր անուանեալ, որ է երկրորդ Աթէնս, ձեռամբ ուբուսն սրբազան քահանայի՝ առն իմաստ-*

նոյ և ճարտարի, որ էր ամենայն աստուածաշունչ կտակարանաց
վարժեալ՝ սպասաւոր գոլով բանի, մերձ ի կատարելութիւն, Յովհան-
նէս անուն, որ էր ի հռչակաւոր քաղաքէն Եզնկայ կոչեցեալ։ Արդ,
զկէս Մեկնչի Սաղմոսին գրեաց սոյն այր, և ապա սակաւ ինչ այլ ոմն
Վարդան անուն, ի նահանգէն Կիլիկիոյ, որոց զվարձս հատուցէ տէր։

Եւ ապա, ըստ պատահման ինչ, դիպեցաւ վեր յիշեցեալ րաբու-
նապետին ելանել յիւրոյն կայանէ և երթեալ շրջէր յԱյրարատեան
գաւառն, ի վանօրայսն, որ յայնմ նահանգի, աղաւթից պատճառաւ։
Եւ զամ մի ողջոյն այսր անդր շրջեալ, դառնա վերստին ի Վայոց ձոր՝
յիւրն մենաստան, և հրամայեաց իմում անարժանութեանս զպակասն
ի յերկուց գրչաց, որք նախ քան զմեզ գրեցին, զթերին հասցեալ ի
նոցանէ՝ լնուլ. զոր և յանձն առեալ գրեցի փցուն մատամբ և անար-
հեստ գրչաւ, ուպէս և ի ստորակայէս յայտ երեակ ցուցանի։ Արդ, ոչ
եթէ իբրու ճարտար գրչով յարհեստ գրչութեան յանձնապաստան յա-
մարձակութեամբ ձեռնամուխ եղէ ի գործ, որ ի վեր էր քան զկարն
638 ա իմ, այլ ի յոլով խնա ‖ մս վայելեալ նախայիշեցեալ սուրբ րաբունա-
պետին և անխճահ վար[կու]ցեալ զանց առնել զպատկառեցուցիչ հրա-
մանաւ նորին, զխարխուխ յուսոյն յառաուած ընկենլով, ձեռն ի գործ
արկի։

Եւ եղև աւարտ գրչութեան սորա յԱյրարատեան նահանգիս, յաս-
տուածաբնակ և ի գերահռչակ սուրբ ուխտս Թեղենեաց, ընդ հովանեաւ
մաւրս լուսոյ և սրբոյ կաթողիկէիս և այլ աստուածակիր նշանացս,
ձեռամբ Թարմատար և անարհեստ գրչի Մկրտիչ կոչեցեալ. անուամբ
միայն րաբի, ի սոյն անապատէ։ Եւ հրեշտակակրաւն եղբարքս սիրով
սպասաւորէին մեզ, ես առաւել հոգևոր հայ[ր]ս Դաւիթ, որ էր առաջ-
նորդ սուրբ ուխտիս, որք լցին զամենայն պէտս կարեաց մեր, որոց
տրիտուր հատուցմանն ի տեառնէ պարգևեսցի, զորս խնամքն աս-
տուծոյ հաստատուն և անշարժ պահեսցէ զմիաբանութիւնս զայս մինչ
ի միւսանգամ գալուստն իւր սուրբ։ Եւ էր շրջագայութիւն ամանա-
կաց թուաբերութիւն հայկազեանս տումարի յարաբարդեալ ամաց
հինգետասան յիսնեկաց ընդ միակի շարամանելոյ (15.50+1+551=
1302), յորում ժամանակի ունէր զաթոռ հայրապետութեան հայոց
տէր Գրիգորիս մակհորջորջեալ Անավարզեցի, որ էր համանուն սրբոյ
լուսաւորչին մերոյ, այր մեծիմաստ և հոգնահանճար, ի բռնակալու-
թեան կողմանցս արևելից բաժնին Անիոյ, ի վերա հոլովից տիրեալ
ազգաց խուժադուժ և բարբարոս ազգին նետողաց, որոց զլխաւորին
անուն Ղազան կոչի։ Ընդ սոյա գրաւեալ ծառայութեամբ ծանրագոյն
լծոյ հարկապահանջութեան յոքունց ազգաց, ես առաւել տունս Հա-
յոց, որպէս երբեմն Իսրայէղի, ի ժամանակս անիշխանութեանն։ Ի սոյն
ամանակի վարէր զառաջնորդութիւն թագաւորութեանն Կիլիկիոյ Հե-
թում որդի Լևոնի, այր աստուածասէր և հեզ հոգի, կատարեալ ամե-
նայն բարեացն արդասիւք, զոր խնամքն աստուծոյ պահեսցէ խաղա-
ղական կենաւք հանդերձ հարազատովքն իւրովք, որ էր և նա [Հե-
թում] մտեալ ընդ վերասացեալս հարկաւ։

Արդ, աղաչեմ զամենայն պատահեալսդ սրբոյ մատենիս, որք աւգտիք ի սմանէ ընթեռնլով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրամատոյց յաղաւթս ձեր զվերադրեալս ի սմա՝ զհոգեհանճար և զգերիմաստ րաբունապետն իմ՝ զհայրն հոգևոր զՆերսէս, զստացօղ սուրբ կտակիս, զոր տէր Յիսուս խաղաղական կենաւք պահեսցէ զնա յաստիս, և զկնի ելիցն յաշխարհէ՝ ի դասս սրբոց վարդապետացն ընկալցի ի խորանսն լուսեղէնս և անթառամ պսակաւքն պսակեսցէ, հանդերձ ծնողօք իւրովք և ամենայն արեան մերձաւորաւք, յարազուարճ բերկրիլ յանտրտում ուրախութիւնն։ Նաև առաւել զհոգևոր հայր սորին և զվարժապետն աստուածային իմաստից, զայն աստուածազգեաց և
638 բ երանաշնորհ զշտեմարանն աստուածային գանձուցն՝ զհոգե ‖ կիր րաբունապետն Ներսէս, զհանգուցեալն առ Քրիստոս, զի կայանս իմանալեացն ընկալցի զնա ընդ որդիս անդրանկաց վերին Սիովնի, ընդ նոսին պարել զիմանալի գեղապարութիւնն, զոր աղաչեմ յիշման բարւոյ արժանի առնել ի մաքուր աղաւթս ձեր։

Աստանաւր յերեսս անկեալ կրկնապատիկ մաղթեմ զխումբս ընտրելոցդ սրբոց, որք միանգամ պատահէք հոգևորական բերկրանաց տեսութեամբ ինչ կամ մտաւորական վերծանութեամբ սրբոյ մատենիս, սխալանաց զրչիս ներեցէք, իբրու տկար բնութեան, վասն զի, որպէս յառաջն ասացի, ոչ ներհուն գոլով մեր յարհեստ գրչութեան, որպէս պահանջէ մեծաւքոյն այսր իրողութեանս վարկ, սակայն և ոչ ըստ կամաց եղև մեզ դիպիլ տեղւոյ, քանզի յարկն յորում կայաք բացակայ գոլով, մածնոյր հանապազ մելանն ի յաւդոյն, ընդ որ յոյժ վշտանայի, ես և աղմուկ զրուցաց յոլով լինէր մերձ իմ, յորմէ սխալէի, վասն որոյ և ոչ կարողանայաք ճահողակի հանդիպիլ ի գործ արհեստիս, վասնորոյ թախանձեմ աղերսիւ, զի բարի մտաւք յիշեսջիք յաղաւթս ձեր զհոգենամեղ գրիչս և ծնողն իմ և զեղբարսն, զի թերևս արժանի լիցուք աղաւթիւք և ամենայն սրբոց մասն ողորմութեան գտանել յաւրն վերջին։ Եւ զսխալն սիրով ուղղեսջիք, զի և զձեր սխալանսն ջնջեսցէ ամենագութ տէրն։ Յիշեսջիք, աղաչեմ և զՅովհաննէս և զՎրթանէս սրբասէր քահանայք, որք և հարազատք [են] իմ և սպասաւորք, ես և զպատանիս՝ զՍարգիս դպիր, որ յոլով սպասաւորեաց մեզ՝ յիշեսջիք աղաւթիւք, զի յիշեցեալքս և յիշողքդ առհասարակ արժանի լիցուք ողորմութեանն Քրիստոսի աւրհնելոյն յաւիտենս, ամէն։

9.

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԻՔԱՅԵԼԻ ԱՍՈՐԻՈՅ

Ն. Ջուղա, Ամենափրկիչ, 243, Տեր-Ավետիսյան, էջ 1787

Յովհաննէս Օրբել
վայր՝ Նորավանք

232 բ Ցանուն ամենակալին աստուծոյ, ես տէր Յովհաննէս, յազգէ Աւրպելեանց, պռաւտոթրանտէս Հայոց մեծաց և մետրապաւլիտ Սիսակ[ան] նահանգի, եկայք ի Վերին Նորավանս, առ վարդապետն

Դաւիթ և Արճայ. խնդրեցին ի մէնջ ժողովուրդ ինքեանց ի սատար սուրբ ուխտիս, և մեք տուաք սոցա ժողովուրդ զԱնկերի, զԵղիան, զԵղիկանց Ձոր, զՎաղցան ի սեպհական ժողովուրդ և՛ թեմ, որ զամենայն հաս և զիրաւունք սոքա սոցա տացին։

Եւ սոքա կարգեցին ի տարին Գ. պատարագ, ի աւուր ծննդեան։ Եւ մի ոք իշխեսցէ հանել զսոսայ ի սուրբ ուխտէս, ի մերոց կամ յաւտարաց։ Եւ որ ոք հակառակի կամ հանել ջանայ ՅԺԸ. հայրապետացն նզոված եղիցի, մասն և բաժին զՅուդայ[ի]ն և զԽաչահանուացն առցէ և ինքն ելցէ ի շնորհացն աստուծոյ, ամէն։ Գրեցաւ ի թուականիս Հայոց ՉԾԱ. (1302), առաջի սուրբ Սիոնիս և վարթայպետիս Դաւթի։ Հաստատ է գիրս կամաւն աստուծոյ։*

## 10.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ժմրատեանց, Երնջակ, էջ 230—238 (տես նաև 1676 թ.)

Գրիչ՝ Յովհաննէս [Օրբէլ]
վայր՝ Սիւնիք

ա

...Սիրոյ աւրինացն յոյժ տեղեակ գոլով հոգևոր տեառնդ, զի զաւրաւորք են և ուժեղք, մինչ զի անհնարինս ձեռնարկել տա և մոռացանս արկանել մահուն այնոցիկ, որք զուգնաքեայ իմն յաւժարութեամբ նմա հետևին և ներանձնիցն ըղձանօք ջանայցեն նմա հասանել, և այս կրկին ունելով տեսութիւն՝ երկնաւոր և հոգևոր, ըստ մասինս և երկրաւորս, բայց յոլով իրաւք տարբերեալք ելով ի միմեանց, յաղթող երևի հոգևորն ըստ պատշաճին իւրում։ Քանզի երկրաւորն առժամանակ մի է և անկատար, իսկ որ ըստ այն է ոչ ունելով խափանումն և ի ձևսյն ոչ երբէք անկանի, ըստ առաքելոյ՝ թէպէտ և ամենայն ինչ խափանի և լռէ։ Որ և իմ անարժան անձինս պատահեաց սակաւիմաց և տխմար մտաց տեսութեամբ, որ հոգևորն է սիրով** աստուածային գլխ[աւոր] տէրդ Ստեփաննոս, որդի փառաւոր իշխանաց իշխանին Տարսայիճին, զի հարկեալ ի հրամանատրութեան ձերոյ բարձրութենէ և ի սիրոյ և ոչ յանձին կարողութիւն վստահանալով, ձեռնարկեցի այս գործառնութեան և տառակերտեցի նշանախեցիւք։ Բայց դու ընկալ զձերոյ հրամանատարութեանդ կատարումն, թէպէտ և ոչ ըստ կամաց և պարագայց ամաւք վայելելով դուարճօրէն բարձրութեամբ, զյետինս ի ծանօթից ձերոց՝ զՅովանէս՝ որդի եղբօր ձերո և խբաստու և բանին ծննդեամբ՝ ծառայ և որդի ձերումդ սրբութեան, յիշեա բարի յիշատակաւ ի Քրիստոս, որ և դուք լիջիք

* Ձեռագիրն ընդօրինակված է, հավանորեն, ԺԴ դարավերջին։ Ստացողն է Դավիթ վարդապետը, որի մասին 246ա էջում պահպանվել է հետևյալ հիշատակությունը. «Զստացող սուրբ գրոյս Միխայէլիս զՆեասմ (երևի՝ զՆսեամ) ոգի Դթ. ստսկանուն վպ. աղաչեմ յիշել սրտի մտաւք»։

** Տպված է «սերով»։

յիշեալ բարեաւք առաջի ամենասուրբ երրորդութեան, հանդերձ ծնողօք և զարմիւք ձերաւք։ Եւ թէ սխալ գտանէք, թարց մեղադրութեան թողցես զմեզ, անյիշաչար տէր, ուսեալդ ի մարդասիրէն Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Թանաքին արուեստն չգիտացաք։ Ստացողին և գրչին յիշումն բարի պահանջեմ։*

Բ

Զգերաբուն բանի սպասաւորն և զարեգակնափայլ լուսատուն հողոց՝ զմետրապօլիտն Սիւնեաց՝ զտէր Ստեփաննոս ստացող, յիշեցէք ի տէր։

Ծաղկող՝ Մոմիկ

Գ

Աղաչեմ զհանդիպեալքդ այսմ աստուածաբան տառիս յիշել զանիմաստ նկարողս Մոմիկ և սխալանացն անմեղադիր լինել, զի թէպէտ անհմուտ էի, այլ ժամանակս ծմեռն էր և տունս նեղ, և աստուած զյիշողսդ յիշէ յիւր անբաւ ողորմութիւնն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։ Ի թվիս ՉԿԱ. (1312)։

Թերին լրացնող՝ Գրիգոր

Դ

Գոհութիւն հաւր անեղին
և միածին նորա բանին,
Րամից գոյից արարողին,
հոգւոյն որբոյ զարդարողին,
Ի յաղաւժէտ անձնէ՝ կրկին
աւետարանս գրողին։
Գրեալ էր նախ սա Օրբէլին,
Սիւնեաց արհի մետրապօլտին,
Որ էր իշխան նա վիճակին,
տանն Սիւնեաց մեծ նահանգին,
Րարուն արի քարտուղարին
և քաջաբան վարդապետին։
Վասն խնդրոյ Ստեփաննոսին՝
իւր հօրեղբաւրն և Բիւրթէլին,
Արի և քաջ վարդապետին
և Սիւնեաց եպիսկոպոսին,
Րամեալ և իմ դիրս ընդ նմին,
Գրիգորիս տէր Աւրբէլին,
Դասակից լինել նմին,
աղքատս յետին՝ անփարթամին,
Աստուածաբան վարդապետին
և քաջիմաստ հռետորին,

* Վերջին երկու տողը գրված է կարմիր թանաքով։

*Պետ և արհի հայրապետին*
*Սիւնեաց աթոռոյ* Տաքնին,
*Եւ անպիտան յամենայնի՝*
Գրիգոր *գծող այսմ տառի,*
*Տեսի զկըտակս ցանկալի՝*
*զաւետարանս Քրիստոսի,*
*Ի թուականիս ութհարիւրի*
*յիսուն ու հինգ ամ աւելի (1406)։*
*Էտու քաջալերս իմ սրտի,*
*աշխատութեամբ գծագրեցի։*
*Աւետարանս էր այս թերի,*
*միայն Ցոհան էր ի կարգի,*
*Ցերից զլխոց սակաւ ունի*
*զսկիզբն և զաւարտն ի պատշաճի։*
*Սակս սրոյ հոգս ինձ արարի,*
*յաւժար կամաւք զթերին լցի։**

11.

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Փիրղ. 6273, էջ 103 (Վանի Ս. Նշան եկեղեցի)*

*Գրիչ՝* Սերոբ

*... ՉԾԱ. (1302) Թուականութեան Հայկազեան տումարիս, ի հայրապետութեան տեառն* Գրիգորոյ *հայոց վերադիտողի և կաթուղիկոսի, ի ժամանակիս* ՂազաՑ *ղանին՝ որդւոյ* ԱրղուՑին*... Ցիշեսջիք զտրուպ գրիչս զ*Սերոբս*** ի շնորհարաշխ յաղօթս ձեր և զծնողսն իմ փոխեցեալսն ի Քրիստոս, զ*ԼիպաՑՑ *հայրն իմ և զմայրն իմ զ*ՏիրացՑ *և զեղբարսն իմ՝ զ*ՊարոՑյուսՑ*՝ զնահատակեալսն ի ձեռաց անօրինաց վասն սիրոյն Քրիստոսի...։*

---

** Տողերի սկզբնատառերով կազմվում է «Գրիգոր վարդապետի է այս»։ Ձեռագրի մասին Մ. Սմբատյանը տալիս է հետևյալ ծանոթությունը. «Աւետարան պատկերազմի անանեալ, փոքրագիր բոլորագիր. Տերունական ոսկեզօծ նուրբ և ընտիր պատկերք, բերեալ ի Մեծոփայ վանից Վասպուրականի, ընդ ձեռն գաղթական Խաչատրոյ և Խութեցւոյ Գրիգորեան, առ որս և գտանի աւետարանս, գրեալ ի վերայ մագաղաթի և ի անգիր—անդին ամբակեայ թղթի»։*

*** Հիշատակարանի ընդօրինակող Ղ. Փիրղալեմյանը կարմիր թանաքով ավելացրել է «քահանայ», հավանաբար հիմք ունենալով հիշատակարանի չարտագրված մասի, կամ նույն ձեռագրում եղած մի այլ հիշատակագրութեան, համապատասխան տվյալը։*

12.

ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, Ս. Նշան, 18. ՀԱ, 1924. էջ 515—516

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Եկեղեցեաց գաւառ

327 ... Ի թվ. ՉԾԱ. (1302) գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Կարապետի մեղաւորի, թշուառական կրաւնաւորի, ի յանապատիս, որ կոչի Տիրաշէն, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և կենսակիր սուրբ Նշանիս և այլ վեհագոյն սրբոցն, ի հայրապետութեան տէր Գրիգոր հայոց կաթողիկոսի և ի թագաւորութեան Հեթմոյ բարեպաշտի, և ի յառաջնորդութեան գաւառիս Եկեղեաց տէր Ներսեսի, թոռին տէր Սարգսի. եղև ցանկացող այսմ Քրիստոսի մատենիս պատուական և սրբասնեալ քահանայն Ղուկաս և յաւժարութեամբ | | | *

* Թերթ է ընկած։



**ՋԾԲ** **1303**

## 13.

### ԳԷՈԳԱՑ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՑ ԽՄԲԱԳԻՐ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾՈՑ ԱՌԱՔԵԼՈՑ

*Երևան, 1364*

*Վայր՝* Սիւնիք

ա

46 ա *Զստացող գրոցս, զերջանիկն ի վարդապետս, զերից երանե[ա]լն* զՅովհաննէս *մականուամբ* Աւրբէլ *յիշեցէք ի Քրիստոս, աղաչեմ։*

բ

60 ա *Բարեխաւսութեամբ սրբոյն Ստեփաննոսի, Քրիստոս աստուած, աւգնեա* Յովհաննիսի, *և պահպանեայ և ընդ աջեայսն դասեա զմեծափառ իշխանն* զԼիպարիտն *և* զՆանայն՝ *զծնողսն սորա, ամէն, եղիցի։*

գ

*Քրիստոս, յոյս հաւատացելոց, քո սուրբ և երջանիկ առաքելոց բարեխաւսութեամբ, յերկար ժամանակաւ և պարագայծ ամաւք պահպանեա զսուրբ րաբունին* ‖ զՅովհաննէս՝ *ստացող սորա, և ողորմեայ երկիւղալից և աստուածահաճոյ ծնողաց նորա, մեծափառ իշխանաց իշխանին* Լիպարտի՝ *հաւր սորա և ամենաւրհնեալ սուրբ դշխոյին* Նանային՝ *մաւր սորա, ամէն և եղիցի։**

142 բ

## 14.

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹՈՎՄԱՅԻ ԱՐԾՐՈՒՆՒՈՅ

*Թիֆլիս, 1017 թ., էջ 517—520 և Փիրգ. 6273, էջ 105—107*

*Գրիչ՝* Դանիէլ
*վայր՝* Աղթամար

*...Շնորհօք ամենակալին աստուծոյ հօր և միածին Յիսուսի Քրիստոսի և սուրբ հոգւոյն ճշմարտի, աստանօր յանգ ելեալ աւարտեցաւ գեղեցկայարմար պատմութիւնս այս, զոր արարեալ ստուգաբանութեամբ անյաղթ և գիտնական վարդապետին* Թովմայի, *սկսեալ*

---

** Հովհ. Օրբելյանը Սյունյաց մետրոպոլիտ էր 1303—1324 թ.թ. (տես՝ Խաչիկյանք կամ Գոշյանք, էջ 187—8)։ Այս ձեռագիրն ստանալու ժամանակ նա դեռևս սոսկ վարդապետ է և ոչ եպիսկոպոս, ուստի ամենայն հավանականությամբ այս հիշատակագրությունները գրվել են մինչև նրա մետրոպոլիտ դառնալը՝ այսինքն մինչև 1303 թվականը։*

*ի յԱղամայ մինչև ցՆոյ. և անտի եկն աստիճանաւ վերուստ ի վայր, մի առ մի, և բազում աշխատանօք ճշգրտարար եկն եհաս ի յազգն* Արծրունեաց, *և միըստմիոջէ շարակարգեալ զազգն և զիրն և զպատճառս նոցա. և թէ որպէս բազում ջանք և աշխատութիւն կրեալ նոցա հանդերձ պատերազմաւ ընդդէմ այլազգեաց և բարձին զչարութիւն նոցա ի բազում տեղեաց, որչափ և կարողութիւն նոցա եհաս. ես առաւել աստուածապսակ և բարեպաշտ և ամենիմաստ Թագաւորն Հայոց* Գագիկ, *որ իմաստութեամբ և ուղղափառ վարուքն իւրովք և կամօքն աստուծոյ տիրեաց բազում աշխարհաց, զոր կայ յիշատակեալ ի սմա, և խաղաղութեամբ պահեաց զամենայն աւուրս կենաց իւրոց ի հինից թշնամեաց և եղև առիթ շինութեան եկեղեցաց, ես առաւել գերահռչակ և սքանչելագործ սուրբ եկեղեցոյս սուրբ Խաչիս* Աղթամարայ. *ընդ որոյ հովանեաւ շարագրեցաւ պատմութիւնս այս ի Թուականութեանս Հայոց յեօթնհարիւրերորդի յիսներորդի երկրորդի (1303), և յաշխարհակալ Թագաւորութեանն* Ղազանի, *հրամանաւ և ծախիւք աստուածապատիւ և երջանիկ երից երանեալ ամենիմաստ հայրապետիս Հայոց տեառն* Զաքարիայի, *որ է յոյժ բարի և առատամիտ և աղքատասէր և աստուածային ձրիւքն բարգաւաճեալ, և ի խնդրոյ աստուածարեալ գիտնական և արդիւնական վարդապետի, միանգամայն և արհիական աստիճանի արժանացելոյ տեառն* Ստեփաննոսի, *որ է ակն արևելեան և աթոռակալ մեծի Սիւնեաց տանն։ Եւ եթէ նախնականօքն քննեսցուք զնա՝ ոչ ոք է յիշխանացն և յիշխեցելոց արևելից կողմանցն բարձրագոյն քան զնա, զի ամենեցուն քաջայայտ է ազգն և նախնիքն նորա, և նա այնպէս է ի մէջ նոցա փառաւորագոյն և պայծառ, որպէս զարեգակն ի մէջ աստեղաց։ Եւ նա վասն սիրոյն աստուածային խնդրեաց զպատմութիւնս ի մերոյ սուրբ լուսաւորչին ի տեառն* Զաքարիայէ. *իսկ սա մեծաւ ջանիւ ետ գծագրել զսա յաղագս խնդրոյ նորա։ Եւս առաւել կամեցող եղեալ այսմ գործոյ ամենիմաստ և բարեմիտ, հեզ և խոնարհն, հարազատ եղբայր տեառն Զաքարիայի* Ամիր Գուրգին, *զոր տէր աստուած զնոսա ընդ երկայն աւուրս արասցէ, անփորձ պահելով յամենայն որոգայթից թշնամեաց՝ յերևելեաց և յաներևութից, հոգւով և մարմնով զամենայն աւուրս կենաց իւրեանց, ամէն։*

*Եւ ես ամենամեղս և անարժանս և անյիշելիս ի կարգս գրչաց և կրօնաւորաց* Դանիէլ *անուն, ըստ իմում տկարութեանս յանձն առի գրել զսա, ի դուռն մեծ և պանծալի սուրբ Խաչիս* Աղթամարայ, *զոր վերագոյնն յիշեցաք. և դարձեալ յերես անկեալ աղաչեմ զբարի ընթերցողսդ և անմեղադրութիւն խնդրեմ վասն սխալանաց գրոցս, եթէ աւելի կամ պակաս գտանիցի ի սմա, եթէ կէտ, եթէ տուն և եթէ ստոր և եթէ յայլ ինչ բառ, ի Խէ կամ ի Հոյ. զի գիտնականքն քաջ գիտեն, որ ի հին գրեանք այսպիսեացս ոչ ինչ փոյթ է արարած. և ես անհմուտ գոլ սոցա՝ զոր ինչ լսեալ էաք յեկեղեցական գրոց ի բաւիցս յայսցանէ՝ զնոյն գրեցաք, և զոր արտաքոյ սոցա էր՝ ոչ գիտելով թէ որպէս էր. և ի ձէնջ խնդրեմ, զի ըստ աստուածասէր կամաց*

ձերոց՝ միայն զաստուած ողորմին շնորհէք մեզ և ծնօղաց մերոց, զի դուք գտջիք զողորմութիւն յաստուծոյ յաւուրն աներեւ գալստեան նորա։ Եւ ինքն եղիցի օրհնեալ, զովեալ և բարեբանեալ յամենայն արարածոց՝ յիմանալեացն և ի զգալեացս, այժմ և հանապազ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Դարձեալ կրկին աղաչեմ և զուսուցիչն իմ զՍիմէոն պատուական քահանայն, որ ի բազում արուեստից իւրոց զսակաւ գիրս մեզ ուսոյց, և զնա յիշել ի տէր սրտի մտօք և զծնօղսն նորա։ Եւ Քրիստոսի աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։

15.

ՀԱՒԱՔՈՒՄՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՄԱՐԳԱՐԷՈՒԹԵԱՆՆ ԵԶԵԿԻԷԼԻ. ԵՍԱՅԵԱՅ ՆՉԵՑՒՈՅ

Երևան 5566

Հեղինակ՝ Եսայի Նչեցի
վայր՝ Գլաձոր

356 բ ...Արդ, ըստ հայցման հաճութեան բարեաէր կամաց երջանիկ և գերիմաստ Նախասացեալ արհիականին [Ստեփաննոսի Օրբելեանց] յաւրինեալ շարադրեցի զտեսութիւն աստուածաբան մարգարէիս կարճ և համառաւտ տեսութեամբ, ի թուիս Հայկազեան տոհմիս տումարի ըստ հոլովման ամաց եւթնհարիւր յիսուն և երկուց (1303), ի դառն և անբարի ժամանակիս, որ տատանեալ ծփիմք ամենանեռհակ արկածիւք ի ներքուստ և արտաքուստ, որ ափշութիւն գործէր տեսականին և ընդմիջումն գործոյս քննութեան։ Սակայն ըստ կարի իմոյս անարգութեամբ հարկեցուցիչ հրամանաւ, ի ձեռնտուութենէ հոգւոյն, գրեցի զսա աղքատ և չքաւոր սեղանով զծառայակիցսն կերակրելով, և հայցեմ յամենայնէ ներումն գտանել սխալանացս, որ աստ գտանի։ Իսկ եթէ յաւգուտ ումէք լինիցի՝ շնորհակալութիւն հոգւոյն շնորհաց եղիցի և կաթ աղաւթից ձերոց ցուղեսցի ինձ ի աապան իմ գերեզմանի։ Եւ եղկելի մատանցս այս վաստակ մտերիմ և խոհեմ քննողացդ ի վայելս մեծ և յաւգնութիւն եղիցի։ Նաև զաշխատասէր և զառատամիտ վարդապետն Յոհաննէս*, զծնեալ որդեակն իմ ի Քրիստոս, ի ձեռն որոյ սրբագրութիւն տառիս եղև, յիշեցէք բարի** կամօք, զի ըստ աշխատանացն զհատուցումն ընկալցի ի տեառնէ։ Եւ դուք, ո՜վ աշակերտք բանի, որք պատահէք այսմ աստուածային հանդիսի, աւրինակելով զսա, գրեսջիք և զսակաւ զայս արձան յիշատակին մերս տաժանմանցս զի մի լինիջիք բազմիս առօղ և սակաւին ոչ տուօղ, այլ ընկալեալ

* Լուսանցքում, նոր ձեռագրով, գրված է՝ «որ է Որոտնեցին» սխալ ծանոթությունը։
** Հիշատակարանի շարունակությունը, վերջին թերթի կորուստի պատճառով չի պահպանվել այս ձեռագրում, պակասը լրացրել ենք Երևանի № 1241 ձեռագրից, էջ 313 ա։

ի ձեռաց մերոց յըղկեալ վէմս այս կենդանի յամայիս արգելանի, առեալ գիցի ի հիմունս Նոր Սիոնի, որով աւրհնեալ փառաւորեսցի ամենասուրբ երրորդութիւնն, անբաժանեալ ի ներկայս և յապառնին և յանսպառ յաւիտեանին, ամէն։

## 16.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԴԱՆԻԷԼԻ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 3606 (տես նաև՝ 1337 թ.)

Գրիչ՝ Թադէոս
վայր՝ Նռնաւնից վանք

ա

Ցորժամ գրեցաւ և յանկ ելեալ աւարտեցաւ բացայայտութիւն դպրութեանս աստուածախաւս երկոտասան մարգարէիցս, դիտապետք Հայոց տէր Գրիգոր, տէր Զաքարէ և տէր Ստեփանոս Աղուանից և
275 բ վարժապետ Եսայեայ ‖ և ստացաւղ սորին՝ պատուական և աստուածախաւս բաբունին Յոհանէս և թագաւոր՝ Հեթում՝ այր բարեպաշտ և իմաստասէր և մանաւանդ աստուածասէր և կայսր՝ աշխարհակալ խազան գան՝ յազգէն նետողաց, տիրելով Հայոց և Ասորոց, Վրաց և Աղուանից, Մարաց և Պարսից, Թուրքաց և Հագարացոց։ Բայց գրեցաւ հրամանաւ վերասացեալ առնն աստուծոյ Եսա[յեայ] բաբունապետի, ի խնդրոյ Յոհանէս վարդապետի և ձեռամբ Թադէոսի անարհեստ գրչի, ի թուիս Հայոց ՉԾԲ. (1303), ի գաւառիս Այրարատեան, ի վանքս, որ կոչի Նռնաւնից, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ կենսակիր սուրբ նշանացս։ Այլ և գրեցաւ ի դառն և ի դժընդակ ժամանակի. ձմեռան յեղանակի, բաղում տառապանաւք և նեղութեամբ։ Երբեմն ի ցրտո և ի ձմեռնային խստութենէս տառապէի, երբեմն ի թաթարի գալոյ ու գնալոյ ու ի տեղացս աւերութենէն մեք փախստական լինէաք ու մխիթարութիւն ոչ ունէաք. ու ես հայնց կամէի, որ ամէն գիր ոսկի էր յե[ա]լ. ապա մեր կորողութիւնս այդ չափ էր, աստուծոյ սիրոյն համար անմեղադիր լերուք. որոց՝ հանդիպելոցդ սմին հայցեմք ի ձէնջ յիշատակել բարի յիշատակաւն Քրիստոսի ստացող սորին Յոհանէս վարդապետ և աշխատողքս, ի փառս աւրհնեալոյն յաւիտեանս, ամէն։

276 ա Եւս և զաղախինն տեառն՝ զԱռուդայն յիշեսջիք ի Քրիստոս, քանզի ի նորա սակս յիշատակի տուեալ եղև գծագրել զսայ, ի վարժս աւգտի մանկանց նորոյս Սիոնի։ Աւգտեալքդ յայսմ տառէ զվեր յիշատակեալ զաղախինն աստուծոյ զԱռուդայն յիշեսջիք ի տէր։

Գրիչ՝ Մխ[իթար]
վայր՝ Գայլիձոր

բ

330 ա Գրեցաւ վերլուծութիւնս Դանիէլի մարգարէի յանապատիս Գայլիձոր անուանելոյ, ի թուի ՉԾԲ. ներորդի (1303), աւժանդակութեամբ մերոյս սրբազան և արդիւնական Եսա[իաս անուն առաջնորդի, ի ստացումն և ի խնդրոյ պատուական և աստուածահաճոյ Յոհ[անէս] վարժապետի և իմս հոգւոյ հարազատի, ձեռամբ անպիտան և անարժան Մխ[իթար] պիտականուն վարդապետի. և որք հանդիպիք այսմ սոփերի արգասաւորի զՔրիստոս Աստուած Ողորմեցին անյապաղ հառաւսջիք մերումս հոգւոյ, որումն յաւէտ կարաւտիմ։

333 բ Բայց սատցեալ եղև մատեանս աստուածախումր, յիշատակ աղախնոյն աստուծոյ Ասողա կոչեցեալ, վերափոխելոյն ի Քրիստոս տղա և տհաս հասակաւ, ժամանեալ մինչ յաւուրս քսանամենից՝ աւելի կամ նուազ, վախճանեալ զկեանս իւր, փոխեցաւ ի Քրիստոս յոյժ աղէտ և ողորմ թողեալ ծնողացն իւր, քանզի միայն ունէին զնա։ Արդ, պատահողք այսմ տառի՝ զվերառացեալ աղախինն Քրիստոսի զԱսողայն յիշեսջիք ի Քրիստոս, զի յիշեցելոյն և յիշողացդ եղիցի ողորմութիւն յամենառատ ողորմութենէն Քրիստոսի աստուծոյ մերոյ՝ աւրհնելոյն յաւիտեանս, ամէն, եղիցի։

17.

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 182 (տես նաև 1658 թ.)

Գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Գռներ

ա

238 ա ԶՄարտիրոս վարդապետ աշակերտ Գէորգեայ Սկևռացւոյ՝ զգրաւղ գրոցս յիշեցէք ի տէր, ընդ նմին և զվարդապետն իմ և զուսուցիչ զԳէորգ րաբունապետ, նաև զծնաւղսն իմ և զամենայն ազգատոհմն, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն և ինքն եղիցի աւրհնեալ յաւիտեանս, ամմէն, ամմէն։

բ

205 ա Ես Մարտիրոս՝ սպասաւոր բանի և աշակերտ գրոց, ըստ ըղձի և փափաքման սրտի գրեցի զսա ի վանքս հռչակելի, որ Գռներ կոչի, մերձ ի Բարձրն կոչեցեալ Բերդ, ի մեծ թուականիս Հայոց ՉԾԲ. (1303), ի յամսեանն մայիս ըստ Հոռոմայեցւոց անուանց ամսոցս, որ աւր ԺԷ. (17) էր սորին ամսոյ, յորում լուաք ի նոյն աւրս չար համբաւ, զի տէր երկրիս մերում չոգաւ ի Շամբն կոչեցեալ աշխարհ

հանդերձ մուղալն կոչեցեալ զաւրաւք և ընդ մեղաց մերոց յաղթեալ յանաւրինաց, փախստեա եղև յաշխարհն Բաբելացւոց, առ խանն Խազան կոչեցեալ. և է աշխարհս մեր յոյժ ի տարտարոսի։

գ

265 բ ԶՄարտիրոս վարդապետ և զգրիչ սորա յիշեցէք յաղաւթս, ո՜ եղբարք, որք հանդիպիք։ Գրեցաւ սա ի Դռներս. ի թվականիս Հայոց յութնհարիւր յիսուն և երկուքն, յուլիս ԻԹ. [29]։

դ

671 ա Զմեղապարտ վարդապետ Մարտիրոս աղաչեմ յիշել ի Տէր Քրիստոս։ Գրեցաւ սա ի թուականիս ՉԾԳ. (1304), յամսեանս յուլիս, յերկիրս Կիլիկիոյ, մերձ ի Բերդս Բարձր, յանապատս Խաչատրոյ, ի վերայ գետոյս Սղրդայ, ի քարանձաւ և ի նեղ անդիս, ի դառն ժամանակիս, յորում ամսեան եկին մահմետական զաւրքն ի Նամբեճ և առին սիրով զբերդն Թիլ և ուխտազանց եղեալ դաշանցն՝ կոտորեցին զորս գտին անդ. և բազումք, փախստական եղեալ ի նոցանէ, գետասոյզ եղեալ ի մեծ գետն Ջահան, և այս ամենայն վասն մեղաց իմոց։*



18.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԺՈՂՈՎՈՂԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՑ

Շուշի, 18. Թոփճեան, Ցուց. Խաչիկ վրդ. Բ. էջ 47

Գրիչ՝ Խաչատուր Երզնկացի
Վայր՝ Արատես մենաստան

132 ա ...Գրեցաւ ի թվին Հայոց ՉԾԲ. (1303), ընդ հովանեաւ սուրբ մենաստանիս՝ մականուն կոչեցեալ Արատես...։

Զարհիեպիսկոպոսն... զտէր Ստեփաննոս, զփառաւոր իշխանին որդին զՏարսայիճն՝ ստացող սուրբ տառիս... յիշեցէք... զգրիչ զԽաչատուր Երզնկացիս։**

19.

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ՆՈՒՐԲ ԳՐԵԱՆՑ ՅԱԿՈԲԱՅ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Երևան 598

213 բ ...Ո՜վ սուրբ հարք և եղբարք, որք պատահիք այսմ փցուն տառիս, որ է սա լուծմունք սուրբ և ընտրեալ վարդապետին տեառն Յակոբա, զոր արարեալ ի Հարցողաց Գրոցն, զոր գտի զսա յոյժ պիտանի ի շահ աւգտութեան մանկանց Սիոնի և յոյժ տարփմամբ սիրո

* Այս հիշատակագրությունն ամբողջապես գրված է կարմիր թանաքով։
** Ձեռագիրը պատկանել է Ավետիք Բահաթրյանին։



113—2

գրեցի զսայ փցուն և զողղոջեալ ձեռօք, որպէս ի գրէտ ճանաչես։ Սրտի յաւժարութիւնն զլխելոց զօրութիւնն տանի, քա՞ զխաւէ։ Արդ, յերես անկեալ աղաչեմ, անմեղադիր լերուք՝ կրկին աղաչեմ, ապա թէ դտանես կամ կէտ ի վերա գրի, կամ ստորակէտ, կամ այլ ինչ՝ զակնարկութիւնն յօրինակն տար, որ էր սա գրեալ ձեռամբ Ստեփ-[աննոս] վարդապետին, որ նա ինքն է Կանտիառսն, այն աստուծոյ ուրհնել հոգին հայնց անսխալ էր գրեալ, որ մին գիր չգտի սխալ, դուք այլ զինքն յիշեցէք յաղօթս ձեր։ Ընդ նմին և զիմ վարդապետս՝ Յովհաննէս Երզնկացի, որ և զիս իբրև զսահակ ծառա քարշէ ի վերա երեսաց, թերևս զերծուցէ ի հեղգանալոյ, և ոչ թէ կարիս ինչ ունելով առ այս ճշտորել գիրս, զայս մի ոք վարկցի, զի այնքան երագ էր ի գիր արուեստին, որ ոչ զիպաւ աւրինակի. և ճշմարտութիւն բանիս նոքա վկայեն, որք մերձ եղեալ հանդիպեցան նմայ. վասն որս աղաչեմ յիշել զվարդապետն իմ ի մաքրափայլ աղօթս ձեր, և զիս՝ զանարժանս յամենայնի յիշել աղաչեմ սրտի մտօք ի մեղաց թողութիւն. և որ մեզ բանիւ հայցէ, նմա գործով եղիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, յօրհնելոյն յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ ի թուիս ՉԾԲ. (1303), ի փառս Քրիստոսի։

## 20.

## ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ՄԽԻԹԱՐԱՅ ԳՈՇԻ

**Երևան 2593**

Վայր՝ Երզնկա՞

231 բ ...Գրեցաւ գիրքս այս խրատ անը | | | ոմ]անց՝* յիրաւունս և ամանց ի սաստ և ի յանդի[մանութիւն]. և մեր հայեցեալ ի բանս աւգտութեան սորա.յ | | ՛ է ես Նուաստս Ֆառնկ և ետու զսա գրել | | | և ի կրթութիւն ուսման տկար անձին իմոյ և ի սէրս | | | աց իմոց և ի պատճառս սգաստութեան ճանաչել և | | | անթիւ համարս երախտեաց իմոյ արարչին և | | | յա]րաժամ մատուցանել զգոհաբանութիւն դերադ | | | եաց, այլ և ի յիշատակ ինձ և զաւակաց իմոց և յա | | | իմ յաշխարհէ և ի ծնողացն իմոց պարոն Կար[ապետ]ին և պարոն Ընծկուն և նախնե[աց իմոց հա]նդուց[ելոց ի Քրիստոս]։

Արդ, գրեցաւ սայ ի մայրաքաղա[քս Երզնկա՞յ], ընդ հովանեաւ կաթողիկէ եկեղեցւոյ, ձեռամբ | | | քահանայի, ի թվիս հայոց ՉԾԲ. (1303), ի հայրապետութեան [տեառն] Գրիգորիոսի և յառաջնորդութեան Երզնկայիս՝ տէր Ն[երս]ես[ի], [ի թա]գաւորութեան Հեթմոյ աստուածասէրի և բարեպաշտի և [ի ժա]մանակս աշխարհակալ և մեծ ղանին Ղազանին:

232 ա Արդ, աղաչեմք զամենեսեան, || որ ոք հանդիպեսցի սմայ ըն-

* Թերթի եզրերը չափազանց մաշված վիճակում են, ըստ կարելիության վերականգնում ենք բնագիրը. երեք ուղղահայաց գծիկներով ցույց ենք տալիս անընթեռնելի տեղերը։

թերցմա[մբ] կամ աւրինակով [յիշ]ել [աղաւ]թիւք զստացող սորա զպարոն Ֆռանկ և խնդրել երկարամեա կեանք ի Քրիստոսէ իւր և ծընընդոց իւրոց՝ սըրաան[եալ] զաւակաց ե աղանց և ծնողացն իւրոց, հանգուցելոցն [ի Քրիստոս], խնդրել քաւութիւն և թողութիւն յանցանաց. և յիշողք[դ յիշեալ լի]ջիք յողորմութիւնն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 21.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՑ

Երևան 1527 (տես նաև՝ 1301 և 1339 թ.թ.)

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Կիլիկիա

667 ա Կատարեցաւ մեկնութիւն սաղմոսացըս, արարեալ տեառն Ներսեսի Տարսոնի եպիսկո[պո]սի* Լամբրունեցւոյ, սրբազան առն և հանճարեղ վարդապետի, ի թուականիս Հայոց ՋԾԲ. (1303), ի հայրապետութեանն Գրիգորի և ի թագաւորութեանն Հեթմոյ և Լևոնի, ծախիւք ե հրամանաւ Բարսղի քահանայի, որ ոչ ժամանեալ ի կատարումն գրչութեանս, զորոյ զփափ[ագ] նորա ելից քուերորդին իւր՝ Գրիգոր, և ստիպեաց զմեզ յաւարտ հանել զաստուածապատում տառս, որոց ողորմեսցի Քրիստոս որդին աստուծոյ յառաջասացեալ ծերունի քահանային Բարսղի Լեւոն[կցոյ] և ցաւղեսցէ ցաւղ ողորմութեան ի յոսկերս ն[որա] և թողութիւն արասցէ զաղտնեաց կ| | |նորա և վայելել տացէ դսայ Գրիգորի սարկաւագի, որ զպակասութիւն դրոցս [ելից] յաւժարութեամբ և ընաւին զար[մից յանգուցելո]ց ի տէր՝ հարց և եղբարց և որք | | |տրաւք ողորմութեան ի գիրքս | | |եղ]բայրութեան սըրոյ անապատ[իս | | |առաջ]նորդաց և միեղէն եղբայ[րութեանս], նաև անարժանի Վարդ[անայ գրագրի ող]որմեսցի Քրիստոս՝ ծնողաց և եղ[բարց] և Աւշնի դպրի. և որք յա[ղաւթս յիշեն], տացէ նոցա Քրիստոս ըստ կամաւ յի[շմանն] յաւի[տեանս, ամէն]։

## 22.

## ԿԱԹՈՂԻԿԵԱՑ ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

Երևան 5343

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Ռշտունի՞ք

254 ա ...Գրեցաւ սուրբ և Քրիստոսաձիր տառս աստուածայնոց փողոյն և տիեզերաց վարդապետին Պաւղոսի... ի թուականութեանս Հայոց ՋԾԲ. (1303), յամսեանն արաց ԻԴ. (24), յաւուր շաբաթի...։

---

* Ուղղագիծ փակագծերում տալիս ենք այն տառերը, որոնք ձեռագրի նորոգութեան ժամանակ մնացել են լուսանցքին փակցրած թղթի տակ, չեն ընթերցվում և կամ բոլորովին բացակայում են ձեռագրի սույն՝ 667 թերթի մաշված լինելու պատճառով։

Արդ, աղաչեմք զամենեսեան զսուրբսդ զընթերցողսդ՝ զստացաւղ զրոցս աստուածտւին, որ ստացաւ զսա յարդար վաստակոց իւրո[ց]՝ զԳրիգոր աբեղայն և զծնողսն և զեղբայրն՝ զԳրիգոր կրաւնաւոր որբ-բասէր քահանա և զհայր վանուց զԽաչատուր և զեղբայ[ր]ն նորա զՎարդան յիշեցէք աղաւթիւք ի Քրիստոս և նոցա մեղացն թողու-
254 բ թիւն || խնդրեցէք. Թերևս տացէ նոցա Քրիստոս աստուած զարքայու-թիւն իւր... Թողցէ զբազում մեղս և սխալանս զԳրիգոր աբեղաին, զծնողի և զեղբաւր նորա և արեան մերձաւորաց նոցա և զնոցին միաբանաց եղբարց և ծնողաց նոցա, սպասաւորաց սուրբ ուխտին Վարդանաց սրբոց[*] և զաշխատողացն։ Մկրտիչ սուտ կրաւնաւորս, որ զգիրքս գրեաց... Խնդրեցէք ի Քրիստոսէ աստուծոյ մերս զթողու-թիւն մեղաց ամենայնիւ սրբեցելով և տալով մեզ մասն ինչ առ ոտս ձեր յարքայութիւն աստուծոյ...։

23.

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4052

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Արճէշ

258 բ Փառք... որ ետ զաւրութիւն ախմար և անիմաստ գրչի՝ Ստեփա-նոս սուտանուն սարկաւագի հասանել ի կատարումն այսմ աստուա-ծաբանիս տառիս, զոր բազում ցաւաւք կատարեցի ես և եղբայր մեր հոգեւր, որայ անուն Յակոբ կոչի։

Բայց գրեցաւ ի քաղաքիս, որ կոչի Արճէշ, ընդ հովանեաւ սրբոյ
259 ա Սարգսի զաւրավարի, ի թաղս, որ կոչի Հռոոմվոնք || ... Աղաչեմ զձեզ, ով սուրբ քահանայք, որ ընթեռնոյք սուրբ աւետարանս, յիշեցէք սրտի մրտաւք զՎարդան սրբասնեալ քահ[անայն], որ կամակից եղև սմա և ընդ հովանեաւ ժողովեաց զմեզ, որպէս հաւ, զի ժողովէ զձագ[ս] իւր ընդ թեաւք իւրովք... Դարձեալ աղաչեմ յիշեցէք զԽաչատուր գր[ագիր], որ ի սմանէ աւգտեցաք ի դրչական արուեստից սակաւ մի...։

Ի թվիս ՉԾԲ. (1303)։

24.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Երևան 1106

Գրիչ՝ Դանիէլ

344 ա Ի թուականութեանս Հայոց ՉԾԲ. (1303) գրեցաւ իմաստատիպ հանճարունակ աստուածախաւս մատեանս այս սրբոյ առն աստուծոյ

---

[*] Սույն հիշատակարանը, փոքր ինչ համառոտ, ունի նաև Ղ. Փիրղալեմյանը (Ձեռ. 6273, էջ 104), ըստ նրա Սուրբ Վարդանանց ուխտը կարող է լինել այն, որ ընկած է «ի մէջ Նարեկայ և Գոտականից... Ոշտունեաց գաւառին»։

*Սողոմոնի, ի թարգմանութիւնս արարեալ քրիստոսակիր հոգիընկալ անձին* Ներսիսի *եպիսկոպոսի նշանաւորն* Տարսոնի *Կիլիկեցոյ, հրամանաւ խոտչակրաւն և խաչաբարձի և հետևողի որդոյն աստուծոյ բարունին* Յովհաննիսի, *ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց, որում աստուած վարձս բարեաց հատուսցէ կրկին կենաւք։ Յիշեսջիք և զգրիչս* Դանիէլ՝ *ի հոգևորն ունայն և ի ձեռագործս յանդգնութեամբ մատեալ և ոչ յիմաստութենէ։ Աղաչեմ զսրբասնեալ ընթերցողսդ ոչ ձանձրանալ ի յիշել զպատժեալս յայնմ ահաղին ատենին և զծնողսն մեր, ասելով սուրբ բերանով ձերով՝ Աստուած թողցէ նոցա զյանցանս իւրեանց. և ամենայն սխալանաց անմեղադիր լինել, զի բազում պատճառս կայր, բայց ոչ՝ այլ ես և տգիտութիւն իմ, որ ոչ աշխատեցա ի վերա արուեստիս, աղաչեմ անմեղադիր լինել, զի ձեզ յիշողացդ և յիշեցելոցս անմեղադիր լինի բաշխողն պարգևաց յիւրում գալստե[ա]նն, ամէն, ամէն։*

ՉԾԳ 1304

## 25.

### ՄԱՇՏՈՑ ԱՌՕՐԵԱՅ

Երևան 966

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Վժանա վանք

235 բ ...Եւ արդ, ես նուաստս յամենայնի Ներսէս սուտանուն գրիչ յերեսս անկեալ աղաչեմ յիշման արժանի արարէք զիս և զաշակերտն իմ | | | և զծնողսն մեր | | |։

Եւ էր թիւս Հայոց ՉԾԳ. (1304)։ Ծրեցաւ ի վանքս Վըժանայ, և աւանդեցաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Նշանիս, ի փառս Քրիստոսի աստուծոյ, որ է աւհնեալ, յաւիտեանս։*

## 26.

### ՔԱՐՈԶՔ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

Երևան 714

Գրիչ՝ Աւագերեց

Եւ արդ, սկսայ և կատարեցի զգիրքս քարոզութեան Վարդանայ վարդապետի, որ ի Մարաղոյ. և է հայ թուականիս ՉԾԲ. (1303) ՉՂԹ.** գրեցաւ, ի հոռոմի ամիս դեկտեմբերի ԺԸ. [18] աւրն։

81 ր Զմեղաւոր տառապեալ և գնտաբեկեալ և զմեղաւք լցեալ սուտանուն տէր Աւագերեց, զի քահանայ անունս ելել, զահագին աւրն չէմ հիշել, ոչ տէր մեղայ եմ ասացել, զերթ խոզ ի տիղմ եմ թաւալել...։

## 27.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վասպ. 77. Լալ. Ցուց. Սյուն. 141—143.
(տես նաև 1374 թ.)

Գրիչ՝ Զաքարիայ
վայր՝ Վասպուրական

...Արդ, ընդ ընթացից արեգական ըստ չափոյ բերման հայկազեան տումարիս հաւթնհարիւրից և յիսուն և երից ամաց (1304)

* Այնուհետև, 14 տողերով, գրիչը խնդրում է «յիշել ի Քրիստոս» գըքի ստացողին և այլոց։ Հիշատակարանի այդ սյունակի աջ մասը պատռվել է, որի պատճառով անհնար է վերականգնել ստացողի անունը և այլ մանրամասնություններ։

**Դժվար է որոշել թե կողք կողքի գրված սույն՝ ՉԾԲ (1303) և ՉՂԹ (1350) թվա-

*դրեցաւ սուրբ աւետարանս ի Թագաւորութեանն Ղազան ղանին, որ է Թագաւոր իմաստուն և բարեխորհ և անկեղծ կանգնող, որ տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ, ի Թագաւորութեան Հայոց Հեթմոյ, ի վերայգլխողութեան տեառն Զաքարիայի կաթողիկոսի, ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի Զաքարիայի և նկարողի և կազմողի, ի վայելուչս [Թումայի] քահանայի և Հայրապետի, Գորգոյ և ղաւակաց իւրեանց, [որ] ստացաւ զսայ ի [հա]լալ և յարդար վաստակոց իւրեանց և յիշատակ հաւրն իւրեանց՝ | | | ոն քահանայի և մաւրն իւրեանց | | | տիկնայ...***

*Եղբարք, աղաչեմ զձեզ, որք հանդիպիք այսմ տառի՝ անմեղադիր լինիք սխալանաց, զի ոչ կայր աւրինակ և յոյժ վշտացայ վասն աւրինակի, որ ոչ գոյր։ Եւ իմ առեալ զտետրակն ստա և անգ բազում աշխատութեամբ գրէի։ Եւ կայր մեղ այլ դիրս գրելոյ հաղտետրակն** և շարակնոցս երկուս, առնէի զտոտրակս հաղին և գրէի երես մի և դնէի առ ի ցամաքել, ապա յշարակնոցի զտետրակն և ապա յետոյ զաւետարանի տեսարս։*

*Եւ տեսանէի զիւրաքանչիւր դրիչքն, որ ոչ լինէին ողջ, այլ աւերեալ և ջարդեալ. վասն զի ոչ կայր մեղ տեղի առանձին և հաստատ։ Եւ իմ վշտացեալ և ձանձրացեալ, բազում աշխատութեամբ գրեցի զաւետարանս։ Աղաչեմ զձեզ յիշելոյ մի մոռանայք, ողջ լերուք***։*

28.

## ԱՒԵՏԱՐԱՆ, ԻՆՔՆԱՏԻՊ ՄԱՆՐԱՆԿԱՐՆԵՐՈՎ ԵՒ ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐՈՎ

**Երևան 3722**

*Գրիչ՝* Յակովբ
*վայր՝* Նախիջաւան

*...Ասաանաւր յանգ եկեալ աւարտեցաւ լուսալից և աստուածապատում աւետարանական հրամանս մարմնացելո բանին աստուծոյ...*

*Զոր և իմ՝ եղկելոյս* Յակովբա, *իմացեալ զանհամեմատ փար-*
355 ր *Թամութիւն || սորա, մեծաւ յուսով և եռափափագ տենչմամբ բուռն հարի զաստուածակերտ կտակարանէս, վասն զի լոյս են և լոյս տան աչաց։ Գրեցի զսա մեծաւ աշխատութեամբ ի լոյս հոգւոյն և ի Թեթեւութիւն. մարմնոյ, ի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց, հաւր իմոյ՝* Յոհաննիսի *և մաւր իմոյ* Աննայի, *եղբարց իմոց՝* Ալեքսիանոսի, Զաքեոսի *և* Գրիգորի՝ *հանգուցելոցն առ Քրիստոս և դստեր իմս* Եղիսեին,

*կաններից որն է ճիշտ։ Ենթադրել, որ ձեռագիրը սկսել են գրել 1303 թվին և ավարտել 1350 թվին, անհավանական է։ Հիշատակարանը դնում ենք 1303-ի թվաշարքում կասկածանքով։*

** Դուրս ենք թողնում մի քանի եղծված տող։*

*** Իմա «Թաղ տետրակ» կամ «խազտետր» (մանրուսմունք)։*

**** Հիշատակարանն անդամահատված վիճակում արտագրված է նաև Ղ. Փիրղալեմյանի ձեռագիր ժողովածուի մեջ (Երևան, 6273, էջ 107)։*

*կենակցի իմոյ՝* Փառանձեմայ *և մաւր իւրոյ՝* Ծաղկանց *տիկնոյ և միւս զաւեր իմոյ՝* Մարթայի *և որք աշխատ եղեն ի սմայ և սպասաւորեցին մերում տկարութեանս, որոց վարձս հատուսցէ տէր աստուած ամենեցուն հարիւրապատիկ, բիւրապատիկ աստ և ի հանդերձելումն։*

*Արդ, վերաւարտեալ եղև սայ ի թուաբերութեանս ըստ յարեթական տումարիս հրնդետասան յոբելենիս յաւելեալ եռակի թուով (ԺԵ. 15+3+551=1304), և ի յելանելոյ նախաստեղծին ի վաևլչութեան*

357 ա *վայրէն և ծաղկազարդ բուրաստանէն մինչև* ‖ *ցսոյն ամ յարաբարդին միահամուռ միանդամայն ամք իբրև ՉՒ. և Զ. յաւելեալ քառակի թուով (6704). Եւ ի կենտրար յայտնութենէն աստուծոյն բանի մինչև ցսոյն ամ շարժամանեալ պարփակին ամք իբրև ՌՅ. և Զ. (1306), յորում և թուականս Հայոց ՉԾԴ. (1304) էր։ Ի թագաւորութեանն Հայոց Մեծաց երիցս երանեալ և խաչադրանագդեաց ճգնաւոր կրաւնաւորին մեծին* Հեթմոյ։

*Ի սոյն ամի ինքնակալն* Ղազանն *վճարեցաւ ի կենացս և սուգ մեծ եհաս ամենայն տանս արևելից, մանաւանդ նեղեալ ազգացս քրիստոնէից, որոյ յիշատակ նորա աւրհնութեամբ եղիցի և ընդ սրբոց թագաւորացն դահակալեսցի. վասն զի ի սորա ժամանակս խաղաղացաւ երկիր իբր զդրախտ աստուծոյ, բարձաւ ամենայն հարկապահանջութիւն աշխարհաց։ Սմա եւտ տէր աստուած, ըստ Սաղմոսողին, զիրաւունս արքայի, վասն զի սա էր որդի* Արղուն *զանին՝ իրաւարար արքային, և թէ՝ պատիւ արքայի*** *զիրաւունս սիրէ։*

357 բ *Ի սոյն ժամանակս բարձրավիզ և հպարտպարանոց,* ‖ *խայտաբղետ և գռող ազգն Իսմայելի գլխակորեալ ընկրկեցան և բարձրացաւ եղջիւր եկեղեցւոյ սրբոյ, աճեցին ձայնք սաղմոսաց և երգք ալելուաց, պայծառացան հաւատք քրիստոնէից։ Աստանաւր կատարեցաւ բանք ամովսածնին Եսայեայ, որ ասէ՝ գայլք և գառինք ի միասին ճարակեսցին։ Առնէր սա իրաւունս այրեաց, եբարձ զտոկոսիս պարտուց և զարձոյց զզրկանս զրկելոց։ Եբարձ սայ զերթևեկութիւն դեսպակաց, ելչեաց և արդուչեաց և կարգեաց յամենայն տեղիս սուրհանդակս, որ են չքրիկք. և սակս արդար իրաւանցն, զոր առնէր, փակեաց տէր աստուած զամենայն թշնամիս սորայ ի ձեռս սորայ։*

*Գնաց սայ մեծաւ ուժով և ձիախրոխտ որոտմամբ, բազմախուռն նիզակաւք և խառնիճաղանջ բազմութեամբ. յոքնախումբ խմբիւք, էառ նուաճեաց զամենայն տունն* Շամայ, *եհար կոտորեաց մեծ և սաստիկ պատերազմաւ զզաւրոն* Մսրայ *և արեան ճապախիս ոչ սա[կ]աւ գործեաց, մինչ զրեթէ մարմինք մարդկան և անկեալ դիակացն ի վերայ արեանցն տարաբերել զաւղիւր, որպէս տերևս թզենոյ.*

358 ա *և հետամուտ եղեալ* ‖ *մինչև ի մուտս արևու անյագաբար ի սուր սուսերի մաշեցին զնոսայ։ Եւ դարձաւ մեծաւ ուրախութեամբ ի թագա-*

---

* 356-րդ թերթը 357-ի կրկնությունն է, դժվարանում ենք բացատրել թե ինչու գրիչը երկու անգամ է արտագրել այդ թերթի բովանդակությունը, իսկ եթե պարզապես սխալվել է, հապա ինչու է կրկնված թերթը թողել ձեռագրի մեջ։

** Կրկնված՝ 356 էջում՝ «թագաւորի»։

ւորանիսան Թռեավրիժ։ Եւ այսպիսի քաջութիւնս բազումս գործեաց, զոր ոչ կարեմք պատմել միըստմիոջէ, և որ լսեքդ՝ աւրհնութիւն զնա արձակեցէք։

Բայց գրեցաւ սայ ի մայրաքաղաքիս, որ կոչի Նախիջաւան, մեծ նահապետին Նոյի շինեալ ձեռամբ տունս իւր։ Եւ կատարեցաւ նաղաշութիւն սորայ ի մեծ դաստակերտն Աստապատ կոչեցե[ա]լ, առ ափն հեղաշարժ և ծիածաւալ գետոյս Երասխայ։

Եւ որք հայիք ի սա, թողութիւն մեղաց խնդրեցէք գծողի սորա Յակոբայ. Ո՜հ, ո՜հ, այոյ, այոյ, աղաչեմք յիշեալ ի բարի մասին՝ զծաղկողն և զկազմողն՝ զՍիմէոն ասեմ, հեզ և հանդարտ կրաւնաւոր և բաշխող գասինն անարատ մարմնոյ տեառն, զի բազում աշխատեցաւ։ Եւ որ յիշէքդ զմեղ սրտի մտաւք, թողութիւն հայցելով ի տեառնէ, և արարիչն աստուած՝ բևեռեալ մեսիէն թողութիւն արասցէ ամենայն յանցանաց ձերոց, ամէն, ամէն։

## 29.

## ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑՒՈՑ

Երևան 3770

Գրիչ՝ Մկրտիչ
Վայր՝ Կարփի

314 ա ...Արդ, գրեցաւ սա ի գաւառս Այրարատեան, ի գեղաքաղաքիս Կարփի, ընդ հովանեաւ մաւրս լուսոյ սրբուհոյ Աստուածածնիս։ Արդ, հայցեմք յամենեցունց, ի ձէնջ, ո՜վ լուսերամիցդ դասք, որք լուսաւորիք ի սմանէ և շահաւետիք, յիշել ի սուրբ յաղաւթս անմոռաց զստացող սուրբ տառիս՝ զհաւատարիմ ծառայն աստուծոյ զԱրզուն և զզուգակիցն իւր | | | զի ջերմեռանդ սիրով ստացաւ զսա, և զծնաւղսն իւրեանց՝ զՏուրքն և զՏիկնանցն և զհարեղբայրն իւր զԽնդրիկն և զԱրքայն և զամենայն ազգայինսն իւրեանց։ Ընդ սոցին յիշեսջիք վասն սիրոյն Քրիստոսի և զեղկելիս զՄկրտիչս և զծնաւղսն իմ, նաև զսպասաւորսն իմ. և որք յիշէքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ յաներեկ մեծի աւուրն, ուր բանք սպասին և գործ[ք] թագաւո-
314 բ րեն, || այլ մեզ յիշելոյս և ձեզ յիշողացդ եղիցի ընդ բարեգործ ծառային մուտ յուրախութիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Յիշեսջիք և զԱստուածատուր երէց, որ յաւժարեցոյց ի գործս բարիս զստացաւղ սորա։

Իսկ յորում ամի աւարտեցաւ տառս էր թուականս ՉԾԳ. (1304)։ Յայսմ ամի նստաւ յաթոռն փաշահ ղանն, որ կոչի Խարպանդայ. տացէ նմա Քրիստոս թագաւորն բարեպաշտութեամբ և քաղցրութեամբ խնամել ազգիս քրիստոնէից, ի փառս Քրիստոսի աստուծոյ աւրհնեալոյն յաւիտեանս, ամէն։

Արդ, վերստին աղերս մաղթանաց առ բարեմիտ ընթերցաւղսդ՝ յիշել զպատուական և զբարեսէր տիկինն զԹեմնայն, խնդրելով ողոր-

մութիւն և քաւութիւն մեղաց ի Քրիստոսէ և համարձակութիւն՝ մտանել յարքայութիւնն աստուծոյ, և որ տոտան է մեզ և ձեզ ողորմեսցի, ամէն։

30.

ԳՐՈՒԹԻՒՆՔ ԵՊԻՓԱՆԻ ԿԻՊՐԱՑՒՈՑ

Երևան 4730

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Աւանս գիւղ

356 ա ...Արդ, գրեցաւ ի հայրապետութեանն անառն Զաքարիի Աղթամարայ և յառաջնորդութիւն դերայնոչակ և սուրբ ուխտիս Վարագայ* Յոհանն վարդապետի յոյժ իմաստասիրի, հեզի և խոնարհի, և յաշխարհակալութեան ազգի նետաւղի, ի հայկազեան տումարի և թուաբերութեամբ Հայոց մեծաց ՉԾԳ. (1304). վասն զի յայսմ ամի վճարեալ եղև ի կենաց աստի բարեյաղթն և իբրաւարարն և խնամակալն ազգիս Հայոց Ղազան ղանն և սուգ մեծ եթող քրիստոնէից. և փոխան նորա նստեալ եղև յաթոռ աշխարհակալութեան եղբայր նորա, որ կոչի Խարպանդաւղըլ. նոյնպէս և նա ցուցանէ բարի մարդկան ազգի։ Արդ, աղաչեմ զամենեսեան, ոյք ընթեռնոյք, յիշեսջիք ի Քրիստոս զստա-
356 բ ցող սուրբ տառ || իցս, զառաջասացեալսն զՍիմէոն և զորդի իւր՝ զերջանիկ քահանայ զԶաքարիա, համազգայնիւ ք...։

Ընդ նոսին յիշեսջիք ի Քրիստոս զերից երանեալն և զհոգիացեալն՝ զՅոհան վարդապետ և զհարազատ եղբարսն իւր, որ առաջնորդ եղև մերում տկարութեանս և զաւրինակն պարգևեաց...։ Եւ ես աղաչեմ, ընդ նոսին յիշեսջիք ի Քրիստոս զաշխատողս և զփցուն գրիչս զՅովաննէս քահանա և զծնաւղսն իմ և Քրիստոս աստուածն բոլորից համայնից ողորմեսցի մեզ և ձեզ, ընթերցաւղացդ և լսաւղացդ, ամէն, ամէն։

Գրեցաւ և կազմեցաւ ձեռամբ մեղապարտի Յովհաննէս քահանայի ի դաւառիս Վանա, ի գեաւղս, որ կոչի Աւանս, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցայցս՝ սուրբ Յովաննու Կարապետի և սուրբ Գրիգորի Հայոց Լուսաւորչի։ Արդ, աղաչեմք զամենեսեան, ոյք հանդիպիք այսմ տառի, խոշորութեան գրոցս և սխալանացն, որ ի սմա լինի, անմեղադիր լինել և եղբայրաբար ուղղել և վարձս բարեաց ընդունել ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

31.

ԱՒԵՏԱՐԱՆ

Օքսֆորդ, Ms. Arm. D. 3. Տիրայր վրդ. 51. թղթ. 120. էջ 877—878

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Կիլիկիա°

297 ա Փառք... որ արժանաւորեաց զիս հասանել յաւարտ դծիս սուրբ աւետարանիս։ Շնորհաւք սկսայ և ողորմութեամբ տեառն կատարեցի

* Բնագրում՝ «Վերագայ»։

զլուսատու և ղպատուական մարգարիտս զայս, յաղքատ և ի դառնաբեր ժամանակս, բաղում ջանիւ և խանդաղակաթ սիրով, գծագրեցի և դարդարեցի զանազան ծաղկովք և գունակ գունակ դեղաւք. ես Կարապետ մեղաւոր և անարժանս ի քահանայս. ըստ փափաքման իմոյս սկսա, զի թէպէտ ու գոյին ինչք [պա]տրաստականք ըստ մեծամեծ նիւթից, սակայն սէր աստուածային բարեացն առատապէս շնորհեաց դծախոն սուրբ աւետարանիս։

Եւ ես մեղուցեալ ծառայս Մարգարէս, յետնեալ ի քահանայս տո[ւ]ի դրել զսուրբ աւետարանս և զսայ ունելով բարեխաւս և յիշատակ ինձ և ծնողաց իմոց...

Կատարեցաւ սուրբ աւետարանս ի թուականութեանս Հայոց ՋԾԳ. (1304), յունիսի ամսոյ ԻԵ. (25), ի կաթողիկոսութեան տեառն [Գ]րիգորի և. ի [թ]ագաւորութեան Հեթմոյ:

ԶՍամուէլԸ՝ զպատուական քահանա[յ]ն, յորս հանդուցանէ* զնայ Քրիստոս ի դասս հրեշտակացն, և զոքանչն իմ, որ սիրով ընդունէր դիս, յիշեսջիք ի սուրբ աւետարանս, և զԱմիրխեր ոսկերիչս, որ զարդարեցի զաւետարանս և մարն իմ, որ երետ զարծաթն, որ զարդարեցաւ, յիշեսջիք ի սուրբ աւետարանս...։**

## 32.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6253 (տես նաև 1419 թ.)

Գրիչ՝ Սարգիս

366 ա ...Յամի Չ. երորդի Ծ. երորդի և երրորդի (1304) թուականութեան Հայկազնեան տոմարի կատարեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ
Սարգսի յոգնամեղի ի մայրաքաղաքս | | |*** առ դրան սրբուհոյ
Աստուածածնիս, ընդ հովանեաւ սըբոց առաքելոցս Պետրոսի և Պաւ-
ղոսի, ի ստոյգ և ի լաւ աւրինակէ։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք
կարդայք և կամ աւրինակէք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր
զախմար գրոգս՝ զՍարգիս և զհայրն իմ զՍամուէլ և զմայրն իմ՝ Սա-
ՇաՇիկՇ**** և զեղբայրն իմ զՅովեաՇՇէս և զամենայն ազգաինս իմ
և զսիրելիսն հանդերձ ծնաւղաւք իւրեանց, նոյնպէս և զուսուցիչսն
366 բ մեր։ ‖ Աղաչեմ զձեզ. անմեղադիր լերուք սխալանաց սորա, զի անհմուտ էի գրչի, բայց զփափաքն և զսէրն ունեաք և յուսալով յաստուած սկիզբն արարաք և յանկ ելաւ ողորմութեամբ նորա։ Քանզի սա եղիցի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց։ Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զձեզ մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ և ծնաւղաց իմոց, զի և դուք

* Ձեռագրում «հանգցնէ»։

** Վերջին պարբերությունը գրված է այլ ձեռագրով, բայց ըստ Տիրայրի մասն է կազմում ամբողջի։

*** Քաղաքի անունը քերված է։

**** 111ը էջի հիշատակագրության մեջ այս անունը բերված է «Մանանեակ» ձևով։

յիշեալ լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ. աղաչեմ զձեզ յիշեսջիք զՆերսէս քահանա, զհողեոր եղբայրն մեր, որ զմեզ հմտացոյց գրիս և ծաղկեց զաւետարանս և գլխագրեց, նաև զայլ հոգև[որ] եղբարսն մեր՝ զԳրիգոր քահանա և զՍարգիս քահանա. որ մականուն կոչի Խաչենեցի, նոյնպէս և զՅակոբ միակեցն, քանզի սոքա բազում անկամ աշխատել են ի հետ մեր ու զապրիկն ու զկտորակն պատրաստել են մեզ...։

## 33.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետ. 109 (516), Ցուց. հտ. Ա. էջ 488

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Տփխիս

316 ա Փառք, Քրիստոս աստուած ճշմարիտ, որ արժանի արարեր զմեղաւոր և զչարագործ ծառայս՝ զսուտ գրչակս զԽաչատուր՝ հասանել ի յետին գիր ձերում հիազաւր հրամանաց...։

Եւ արդ, տէր իմ Յիսուս Քրիստոս, ողորմեա ծառայի քո Մարտիրոսի՝ ստացաւղի սուրբ աւետարանի քո, որ ստացաւ զսա ի բարեխաւսութիւն և ի յիշատակութիւն ծնաւղաց իւրոց։ Ո՜վ մանկունք լուսոյ, յորժամ հանդիպիք այս աստուածաշունչ գրիս, յիշեցէք սրտի մտաւք յաղաւթս ձեր զծնաւղսն իմ՝ զՏէկիկն և զՔեմեբն, զԱստուածատուրն և զՄինա տիկինն և զիս՝ զմեղուցեալ Մարտիրոս և զկողակիցն իմ զԹարէան և զեղբարսն իմ զՅակոբ և զԳրիգորն, և աստուած զձեզ յիշեսցէ և ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն...։

Արդ, գրեցաւ սա ի Թագաւորական քաղաքս ի Տփխիս, ձեռամբ Խաչատուր սարկաւագի, մեղուցեալ և անպիտան գրչի, ի վայելումն Մարտիրոսի որդւոյ Աստուածատրի | | | ընդ հովանեաւ սուրբ տիրուհո և Մարիամու Աստուածածնի և այլ սրբոցս։ Գրեցաւ ի Թվիս Հայոց ՉԾԳ. (1304), ի յաւղոստոս Թ. (9), ի Թագաւորութեանն Հայոց Հեթմոյ և վրաց՝ Դաւթի, ի հայրապետութեանն տեառն Գրիգորի Հայոց կաթուղիկոսի, ի յաշխարհակալութիւնն Խարպանդին՝ եղբաւր Ղազանին, որդւոյ մեծի Արղաւնի ինքնակալի...։

## 34.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4018 (տես նաև 1318 թ.)

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Վժանայ վանք

ա

203 բ ...Գծաղրեցաւ աստուածարեալ և պատուելի և պաշտելի գանձս և պատուէր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի հրամանաւ և արդեամբք Սարգսի անապատաւորի և միայնաւորի, որ կոչի Գրակազմ, ի վանս Վժանայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Նշա-

նիս և յայլ սրբոցս, ձեռամբ մեղապարտ և սուտանուն գրչի Ներսիսի. ի յողոմպիադի ի ստեղծման Ադամայ [Զ]ՈՈԶԲ. (6682) և ի մարմնացելո բանին [Ռ]ՅԺԶ. և Բ. ամի (1318°) և մերս թուականիս ՉԾԳ. (1304) և նորոյ շրջանիս ՄԻԱ. (221)։

Արդ, որք կարդայք և որք հայիք ի սուրբ յաւետարանս, յիշեսջիք զստացող սորայ զՍարգիս գրակազմ և զհայր իւր զՏիրատուր և զմայր իւր և զամենայն ազգականս, զի ողորմեսցի նոցայ Քրիստոս յանբրեակ աւուրն։ Յիշեսջիք և զիս զՆերսէս, զծնաւղսն իմ և աստուած յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի։

Ծաղկող՝ Բարդղասիմէ

Բ

253 ա Զծաղկող և զնկարիչ սուրբ աւետարանիս, զանպիտան Բարդղասիմէ, յիշեցէք ի բարի[ն և Քրիստոս աստուած] յիշեսցէ ըզձեզ ի գալըստեանն իւրում, եղի]ցի]։

35.

ԱՒԵՏԱՐԱՆ

Թորոս Աղբար, Բ. էջ 421 (Տիգրանակերտ)

Գրիչ՝ Աւետիք
Վայր՝ Երզնկայ

Գրեալ ի թվ. Հայոց ՉԾԳ. (1304), յաստուածազարդ հայրապետութեան տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի և ի քրիստոսապսակ թագաւորութեանն Հայոց Հեթմոյ և յարժ[անապատիւ] եպիսկոպոսութեան սրբասէր և աստուածամեծար արքեպիսկոպոսիս մերոյ տէր Ներսիսի։ Գրեցաւ սա ի գաւառիս Եկեղեցեաց, ի մայրաքաղաքիս Երզնկայ, ձեռամբ նուաստ և անպիտան գրչի Աւետեացս քահանայի. նաև տեղի հանգստեան մերոյ յորում գրեցաք, յանապատիս, որ կոչի յանուն սուրբ եկեղեցւոյս Սուրբ Կիրակոս, ընդ հովանեաւ Սուրբ Նշանիս և Սուրբ Կիրակոսիս, և ի հայրապետութեան Ստեփաննոսի և ծեր Ստեփաննոսի և այլ միաբան եղբարցս առհասարակ, որ կանք՝ Մխիթարն և Դաւիթ, Կարապետն և Կոստանդին և հաւատարիմ սպասաւորն մեր Վահանն... յիշեսջիք... զԱւետիք աբեղայս և զհայրն իմ զՎասիլ։

36.

ԱՒԵՏԱՐԱՆ

Վասպ. 78. Լալ. Ցուց. Սյուն. 145—146

Գրիչ՝ Սիմեոն
Վայր՝ Արճէշ

...Արդ, այսմ զաղափարութեան [ցանկացեալ] երջանիկ ոմն և աստուածային ձրիւքն բարգաւաճեալ, որոյ անուն իշխան Շնոփոր յորջորջի՝ աստուածասէր և բարեպաշտ...։

*Եւ ես, յոգնամեղս և փցունս ի գրչաց, յանձն առի, այլ ըստ իմում կարի յանդ հանել կատարեցի շնորհաւք և ողորմութեամբն աստուծոյ, յամի ՉԾԳ-երորդի թուաբերութեանս Հայոց (1304), ի դառն և ի վշտաբեր ժամանակի, ի քաղաքիս* Արճէշ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակովբա։*

*Ու. արդ, աղաչեմ զձեզ տէրամբ՝ զընթերցաւղսդ և զլսաւղսդ, յիշման արժանի առնել զբարեբարոյ ստացաւղդ տառիս,* զՍնռփոր *և զամենայն արեան մերձակայս իւր և զհամբարձեալս ի Քրիստոս զծնաւղսն իւր՝ զպարոն* Ֆռանք...։ *Ընդ նոսին և ես, ամենամեղս ի գրչաց* Սիմէոն, *յերեսս անկեալ աղաչեմ յիշել և զիմս անարժանութիւն և զծնաւղսն իմ և զայնոսիկ, որք յանձնեցին զինքեանս յիշել ի տէր...։*

## 37.

## *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

***Երևան 7928 (տես նաև 1337 թ.)***

*Ստացող՝* Ըռստակէս

*Ի թվ. Հայոց ՉԾԳ. (1304), ես* Ըռստակէս *երէցս ստացա զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց*
237 բ *և զաւակաց իմոց՝* Ներսիսի *և* Գրիգորիսի *և* Վրթանիսի || *և ամենայն ազգատոհմից իմոց՝* Յունանի *և զաւակաց իւրոց* Ահ[ա]րոնի *և* Թորոսի *և եղբաւր նորին* Գրիգորիսի *և* Մեն-տիկնա՝ *կենակցին* Յունանի *և այլ ազգայնոցն...։*

## 38.

## *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

***Վասպ. 79 Լալ. Ցուց. Սյուն. 147—148 (տես 1585 թ.)***

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Վանկա՞յ

ա

211 ա *...Ի թուականութեանս մեծ Հայկազեան տումարիս ի Չ. երորդի յիսներորդի երրորդի (1304), գրեցաւ գերարփիս այս, գերալոյս և աստուածախաւս աւետարանս ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի տէր* Գրիգոր *քահանայի* | | |*

*Ստացող՝* Ուստոյենց խաչօ

բ

228 ա *Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս* զՈւստոյենց խաչօն, *որ մասնակից եղաւ* զՎանկայ *աւետարան, որ գերի էր բերած անօրէնքն ի* Ջուլֆիկ.

* *Երկու տող ջնջված է։*

*և հանդիպաւ նոր օրհնեալ Մալխասն, որ և փրկեց զսայ, յիշատակ իւր և ծնողացն և եղբարցն և կողակցին և որդոցն։ Աստուած ի յօրն ահեղին զձեզ ի չար սատանայի ⁊դերուԹենէն ազատէ, ամէն։*

39.

*Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Ալիշան, Սիսական, էջ 134*

*Գրիչ՝* Ոսկան
*վայր՝* Գլաձոր

Ոսկան *ոՄն վարդապետ յամի 1304 ընդօրինակելով աւետարան մի «ի վանս* Գլաձոր *Ս. Ստեփանոսին», ասէ «ժամանակն «ի դաստիարակուԹեան Հայոց զպրոցի՝* Եսայի *վարդապետին»։*

40.

*ԱՌ ՈՐՍ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ*

*Երեւան 4149*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Եզնկայ

ա

*...Շնորհիւք ամենակալին սկսա և նորին ողորմուԹեամբն կատարեցի սուրբ և գերայհռչակ պատվական մարգարիտս ե զղանձս աստուածականս, որ կոչի Առ Որս [Գրիգորի] Աստուածաբանի, ի հայրապետուԹեան տեառն* Գրիգորի *ե ի Թագաւորութեան* Հեթմոյ, *ի մայ-*
131 ա *րաքաղաքիս* Եզնկայիս, *առ սրբոյ ԿաԹուղիկէիս։ || Ի Թվականիս Հայոց ՉԾԳ. (1304), ի նոյեմբերի ԺԵ. (15), ի խնդիր պատուելի և իմաստուն դերահռչակ հաւրն* Ահարոն *վարդապետին։ Եւ ետ գրել ինձ՝ մեղապարտ ծառայիս* Կարապետ *երիցու։ Աղաչեմ զձեզ, ով դասք լուսերամից, մանկունք վերին առագաստի, որ աւգտիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով, յիշեոջիք զիս՝ զմեղուցեալ գրագիրս՝ զ*Կարապետս *և զծնաւղսն իմ, զառ ի* Քրիստոս *հանգուցեալսն և ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս ողորմեսցի մարգասէրն աստուած, որում փառք յաւիտեանս, ամէն։*

բ

*[Աւրհնութեամբ երկրպագութիւն ամենասուրբ Երրորդութեանն],*
131 բ *որ և մեր տկարուԹեանս աւժանդակեալ աւգնեաց սկիզբն առնել մատենիս և ի լրումն հասանել ի Թվականիս Հայոց ՉԾԴ. (1305)**, *և*

* *Այսպիսով, ձեռագրի ընդօրինակությունը սկսվել է 1304 թ. նոյեմբերին և ավարտվել է 1305 թվականին։*

ի Հայրապետութեան անառն Գրիգորի և ի թագաւորութեան բարե-
պաշտին Հեթմոյ և ի վերակացութեան մայրաքաղաքիս Եզնկայի
տէր Ներսէս եպիսկոպոսի. որ վախճանեցաւ ի սմին ամի, որոյ ողոր-
մեսցի Քրիստոս աստուած, որ է տէր ամենայնի, և թողցէ զյանցանս
սորա՝ զգալի և զհայտնի: Ի սմին քաղաքիս եղև կատարումն գծա-
գրութեան մատենիս, որ է Առ Որս Աստուածաբանն[ի], կամաւք և ծա-
խիւք յեաւին և նուաստ սպասաւորի բանին Ահարոնի, մականուն յոր-
ջորջել՝ Գրիգորի: Արդ, որք աւգտիք ի սմանէ ընթերցմամբ կամ գա-
ղափար առնելով սակս մակագրութեան, սրտի մտաւք և կորակցու-
թեամբ յիշեցէք յաւղաւթս ձեր առաջի աստուծոյ զվերոյգրեալ ստա-
ցաւղ սորա՝ զԱհարոն վարդապետ, որոյ ողորմեսցի տէր աստուած և
232 ա թողցէ զյանցանս || նորա: Յիշեցէք և զհայրն իւր՝ զՍատարէ և զեղ-
բաւ զքոյրսն իւր՝ զառաջագոյն վախճանեալսն ի Քրիստոս, մեղաց
նոցա թողութիւն խնդրեսջէք: Յիշեցէք և զպաշտխարող մայրն իւր
զՄեծտիկինն. որ ի թվականին հայոց ՉԽԷ. (1298) վճարեաց զմարմ-
նաւոր զկե[ա]նքս իւր և յաւելաւ ի հոգեսրն առ Քրիստոս, յամսեանն
հոկտեմբերի ԺԸ. (18), յերեքշաբաթի գիշերի, չորեքշաբաթի լոյս, որոյ
ողորմեսցի Քրիստոս աստուած և թողցէ զյանցանս նորայ:

...Յիշեցէք և զկրաւնաւոր և զծեր եղբայրն իւր զՄտրտիւրոս
քահանա, որ ի թվականին Հայոց ՉԾԲ. (1303), յամսեան նոյեմբեր
ԻԲ. (22), յուրբաթ գիշեր, որոյ շաբաթն լուսանայր, վախճանեցաւ
մարմնով և աւանդեաց զհոգին իւր ի ձեռն աստուծոյ...:

Յիշեցէք և զայնոսիկ, որ աւգնական են եղել ի ծախս գրոցս
մեզ և որ ընակութեամբ հանգուցել են զմեզ և երախտաւորք են մեզ
ի տուրս պարգևաց:

233 ա ...Յիշեսջիք և զիս, զանարժան և զյետնեալ զրաղիրս զԿա-
րապետ երէցս և զծնաւղսն իմ՝ զԳրիգոր և զՀազրեարդ, զառ ի Քրիս-
տոս հանգուցեալսն, և զաստուածատուր զպատանեակն իմ զԹորոս ի
ձեր մաքրափայլ աղաւթս...: Եւ զերիցկինն իմ զՄուլքեր, որ ի* մարմ-
նաւորս է կենակից իմ, աղաչեմ, որ յիշման արժանի առնէք:

Գ

262 ա Տէր աստուած, ողորմեա ստացողի գրոյս Ահարոն վարդապետի
և ինձ գրողիս՝ մականուն Սարքսիս, ամէն:

Դ

389 ա Տէր աստուած, ողորմեա ստացողի գրոցս Ահարոն վարդապետի
և փծուն գրչիս Շահինշահի**, ամէն:

---

* Բնագրում՝ «էջ»:

** Ձեռագրի գրչության մեջ մասնակցություն են ունեցել երեք գրիչներ՝ Կարապետ, Սարգիս և Շահինշահ:



ՉԾԴ 1305

41.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Եուեանի Ս. Սարգիս եկեղեցի, Տ.—Ավետիսյան, Ցուցակ Ն. Ջուղայի ձեռագրերի, էջ 135—136*

Գրիչ՝ Եղբայրիկ

ա

350 *... Աստանօր յանկ ելեալ աւարտեցաւ աւետաբեր սուրբ կըտակս գեղաքաղաքս, որ կոչի* Սիմեոն *երից յիշեցուք* [ ], *ընդ հովանեաւ գերահռչակ սուրբ տաճարիս, որ է անուանակիր փրկչին, ձեռամբ նուաստ աբեղաի* Եղբայրիկ *կոչեցեալ, ի թվ. ՉԾԴ. (1305), ի հայրապետութեան Հայոց տեառն* Գրիգորիսի, *և ի թագաւորութեան* Հեթմս *բարեպաշտ արքայի, ի փառս կաթուղիկէ եկեղեցոյ և ի հրճուանս մանկանց Նոր Սիոնի...։*

*Արդ, աղաչեմ զամենեսին, որք ընթեռնուք և լուսաւորիք ի հոգևոր փարթամութենէ սորա, զնուաստ գրողս յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր և զծնողսն իմ. և զեղբայրն իմ զ*Ստեփանոս *քահանա, որ ի ծաղիկս աշխատեցաւ։ Եւ զպարկեշտ քոյրիկն իմ զ*Տղատիկին, *որ բազում զթով սպասաւորեաց մեզ, և զհոգևոր եղբայրն իմ զ*Ստեփանոս, *որ շատ սիրեցոյց մեզ...։*

*Ո՜վ եղբարք, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զստացող սուրբ աւետարանիս զ*Սիմեոն *երէց* Բերդակեցի, *և զկենակիցն իւր զ*Խոնդն, *և զդստերքն իւր՝ զ*Եղիսաբեթ *և զ*Մատարջան [°]. *և զհանգուցեալ որդիքն իւր՝* Եսայի *և զ*Աստուածատուր, *և զհայրն իւր զ*Ռեհանես, *և զմայրն իւր զ*Բուրաստան, *և զեղբայրն իւր զ*Պապն, *և զորդիքն իւր՝ զ*Խոդրշայ *և զ*Դուլարշայ *և ամենայն արեան մերձաւորք իւր. և զվարպետն իւր զ*Յակոբ *կրաւնաւոր և զ*Սադոն։ *Որ և տեսեալ զսուրբ աւետարանս քաջահաւատ երէց* Սիմեոն *յոյժ փափագմամբ և սիրով էառ ի յարդար վաստակոց իւր, յիշատակ հոգո իւրոյ, և յետ ատեացս ելանելոյ՝ բարեխաւս առ աստուած։*

*Հետ, ստացող՝* Մխիթար

Բ

*Շնորհիւ [և] ողորմութեամբ Քրիստոսի...* Մխիթար *անուն պատուական և աստուածասէր, զարդարեալ ամենայն առաքինութեամբ, ստացաւ զկենաց կտակս զայս ի հալալ արդեանց, յիշատակ հոգոյ իւրոյ և ի վարժումն որդոց իւրոց։ Արդ, որք լուսաւորիք յայսմ աստուածախաւս սուրբ աւետարանիս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զ*Մխիթար *քահանա, և զզուգակիցն իւր զ*Խվթիկն, *և զանդրանիկ*

որդին իւր զՍտեփանոս, և զքահանա որդին իւր զԽաչգենդն, և զԳրիգորն, և զՎահանն, և զամենայն ազգային իւր՝ զկենդանիս և զմեռեալս։ Յի-շեսջիք և զԹուերն, որ ձեռնտու եղեն ի ծախսն, և զՄխիթարիչն, և զԱմեն-տիկին, և զԽաց-տիկին, և զՎասակ, և զՍասուայս, և զՄամ-տիկին, զՓոքր-տիկին, զԹամարն։

## 42.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Վիեն. 321. Ցաշ. Ցուց. էջ 771

Գրիչ՝ Տիրացու
վայր՝ Կիլիկիա, Խորին անապատ

162 ա ... Արեամբ տեառն գնեալք և ի մաքուր յարգանդէ եկեղեցո, հոգս հաւասար ծառայս ձեր, մեղապարտ գծող ժողովածոյ գրոցս, ըստ կարի աղքատութեամբ ի մի ածեալ հաւաքեցի Տիրացու անարժան կրաւ-նաւորս...։ Եղբարք, յիշեցէք ի տէր զորբասէր և հեզ և խոնարհ հոգի կրաւնաւոր և զարժանապատիւ քահանայն զՈվաննէս և իւր և ծնօղաց իւրոց մեղաց թող[ութիւն] խնդրեցէք, որ զգիրքս է կապել | | |։*

Արդ, եղև գրաւ ցանկալի այսմ տառի ի նահանգիս Կիդիկէի, յա-նապատի առակելի, որ անուն Խորին ճանաչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և Գրիգորի մերոյ Լուսաւորչին, ի թուականութեան Հայկազնի ՉԾ. և չորրորդի (1305), և ի հայրապետութեանն տեառն Գրիգորի, և ի թագաւորութեանն Հեթմի, ի դառն և ի չար ժամանակի, նեղեալք յազգէն Իսմայելի, որ ի յայսմ ամի եմուտ զաւրք Եգիպտոսի, ի յաշխարհս Կիլիկէի, վասն գործոց իմոց չարի, բազում տեղիս մատնեաց անողորմ պատուհասի, դերիասարդսն և զողայսն տարեալ գերի. Մնացեալքս կամք ի տագնապի, զարհուրեալք ի տուէ և ի գի-շերի...։

## 43.

## ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ

Երևան 6609

Գրիչ՝ Յոհան
վայր՝ Խաղտեաց գաւառ, Բերդակ մենաստան

85 բ Աստանաւք յանգ ելեալ կատարեցաւ տառս աստուածաշունչ բարձրաքարոզ սուրբ մարգարէին Եսայեա ի գաւառիս Խաղտեաց, ի հռչակաւոր սուրբ մենաստանս, որ կոչի Բերդակն, ընդ հովանեաւ հրաշագործ և գեղեցկաշէն տաճարի, որ յանուն սրբո[ւ]հոյ Աստուա-ծածնին և սուրբ Լուսաւորչին Գրիգորի Հայաստանեաց, ի ստոյգ և ընտիր աւրինակէ, որ կոչի Բագնայրեցի, զոր սուրբ վարդապետին Յովսէփայ գտեալ թարգմանչացն գրած ի մայրաքաղաքն Հաղբատ, ձեռամբ հոգնամեղ և թարմատար գրչի Յոհ[աննու], ծախիւք և արդ-

* Մոտ կես էջ քերված է։ Շարունակությունը չափածո է։

համբք առաքինազարդ կրաւնաւորի Մարուգէի կուսակրաւն աբեղայի,
ի փրկութիւն հոգւոյ իւրոյ և ի դաստիարակութիւն անձին իւրոյ։
Արդ, աղաչեմ զսուրբ դասս լուսերամից, որք աւգտիք ի սմանէ կամ
86 ա գաղափարէք, յիշես || ջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՄարուգէ...
Գրեցաւ ի Թու[ականիս Հայոց] ՉԾԴ. (1305), ձեռամբ Յոհան աբեղայի և մեղապարտ գրչի, յիշեսջիք աղաչեմ ի տէր Յիսուս։

44.

## ԹՈՒՂԹ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 500

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Կիլիկիա

ա

239 բ Զարժանապատիւ հայրապետն Հայոց զտէր Գրիգորիոս՝ ստացաւղ գրոցս, աղաչեմ յիշել ի տէր, ծնողաւք, քերբք, և եղբարբք, և բնաւին զարմաւք, որպէսզի ողորմեսցի նոցա Քրիստոս. ընդ նոսին և մեղաւոր գրչիս Վարդանա, և իմոց ծնողացն, և որոց ամէն ասեն։

Նվիրող՝ Գրիգոր կաթողիկոս

բ

380 բ Տէր Գրիգորիս ծառայ աստուծոյ և ողորմութեամբ նորին կաթողիկ[ոս] ամենայն Հայոց ընձայեցի զգիրքս Եսայի վարդապետին, ի ձեռն մեր հաւատարիմ լիկտրին՝ տէր Կոստանդեա արքեպիսկոպոսին Կեսարու, առաքեալ յարևելս ի Թվիս ՉԾԴ. (1305)։

Հետ. ստացող՝ Եսայի Նչեցի

գ

446 ա Եսայի վարդապետին է գիրքս. յաղագս որոյ միշտ յիշել աղաչեմ յողորմութիւնն աստուծոյ։

45.

## ՄԱՇՏՈՑ

Երևան 2839

Ստացող՝ Յովհաննէս

231 բ Յամի Չ. և Ծ. և Դ. (1305) Թուականիս Հայոց, ի Թագաւորութեանն ազգին նետողաց Խարպանդի, ի հայրապետութեանն տեառն Ներսէսի: Արդ, յայսմ ժամանակի քահանայ ոմն, անուն կոչեցեալ Նմա Յովհաննէս, ցանկացող եղեալ այսմ տառի ի տղայական հասակի, և ստացաւ զսա յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց, և զաւակի իւր յետ իւր։ Արդ, վայելել տացէ Քրիստոս աստուած զտառս զայս Յովաննէս քահանայի, առողջ անձամբ և խաղաղական կենաւք, ամէն։ Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի տէր զՅովաննէս և զծնողսն իւր, աղաչեմ։

## 46.

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 2744*

*Գրիչ՝* Սիմեոն
*վայր՝* Արճէշ

ա

299 բ ... *Արդ, այսմ գաղափարութեան [ցանկացեալ] երջանիկ ոմն,*
*աստուածային ձրիւքն բարգաւաճեալ, աստուածապատիւ կարգաւ տէր*
Սիմոն, *ախորժական կամաւք, մեծաւ տենչմամբ ստացաւ զսա անջրն-*
*ջելի արձան ի մխիթարութիւն անձին և յոյս փրկութեան։ Եւ ես՝*
*յոգնամեղս և փցունս ի գրչաց, յանձն առեալ ըստ իմսւմ կարի, յանգ*
*հանեալ կատարեցի շնորհաւք և ողորմութեամբն աստուծոյ ի թուա-*
*կանիս Հայոց ՉԾԴ. (1305), ի քաղաքիս* Արճէշ, *ընդ հովանեաւ սրբոյն*
*Յակովբայ։*

*Եւ արդ, աղաչեմ զձեզ տ[երամ]ը՝ ղընթերցաւղող և ղսաւղսդ, յիշ-*
*ման արժանի առնել զվերոյստացեալ զտէր* Սիմոն *ստացաւղ տառիս, և*
300 ա *զծնաւղսն իւր, և զեղբարս իւր, ես առ ‖ աւել ի ժամ սուրբ և սոսկալի*
*պատարագին, զի արժանասցին ողորմութիւն ի Քրիստոսէ աստուծոյ*
*մերոյ։ Ընդ նոսին և ես, ամենամեղս ի գրչաց* Սիմէ[ոն], *յերեսս անկեալ*
*աղաչեմ յիշել և զիմս անարժանութիւն և զծնաւղսն իմ՝ զհանգու-*
*ցեալսն ի Քրիստոս...*

*Ստացող՝* Տէր Սարգիս
*վայր՝* Վարագ

բ

*Եւ արդ, ես՝ տէր* Սարգիս, *առաջնորդ սուրբ ուխտիս* Վարագա
*միաբան եղբայրութեան դասուս, ըստ կանոնական սահմ[ան]ի կար-*
*գեցաք հաստատուն հրամանաւ, որ յամէն տարի նոր կիւրակէն Բ.*
*(2) ժամ առնենք ստացողի սուրբ աւետարանիս, մի՝ տէր* Սիմոնի, *և*
*մի՝* Յոհանէս *իրիցու. և որ յետ մեզ լինին առաջնորդք և եկեղեցայ-*
*պանք, անխափան արասցեն զպ[ատարագն...]։*

## 47.

## ՇԱՐԱԿԱՆՈՑ

*Վիեն. 212. Տաշ. Ցուց. էջ 535*

*Գրիչ՝* Գրիգոր

ա

309 ա ... *Գրեցաւ եղանակաւոր տառս թուականիս Հայոց ՉԾԴ. (1305),*
*ի թագաւորութեանս Հայոց* Հեթմոյ *և ի հայրապետութեան տեառն*
Գրիգորի, *ձեռամբ* Գրիգորի *սուտանուն[ի], ի խնդրոյ պատուական*
*սարկաւագի* Ստեփաննոսի, *ի վայելումն անձին և ի յիշատակ հոգւոյ և*

*ծնաւղաց իւրոց։ Արդ, աղաչեմք զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ կամ ընդաւրինակէք՝ յիշասջիք զ*Ստեփաննոս *սարկաւագ և զծնաւղս սորին, որ ստացաւ զսա յարգար վաստակոց իւրոց։ Ընդ նմին և զիս զանարժանս՝ զգծողս սորա՝ զ*Գրիգոր *քահանայ, և զծնողս իմ ի տէր աղաչեմ յիշեսջիք։*

*Ստացող՝* Ստեփաննոս

Բ

*... Արդ, ես՝ նուաստս* Ստեփաննոս *սարկաւագ, վերջինս յորդիս եկեղեցոյ, ցանկացայ բաղցմամբ սիրոյ այսմ եղանակաւոր տառիս... ստացա զսայ յոյժ աշխատութեամբ ի տառապեալ կեանս իմ, ի քրտնաջան վաստակոց իմոց, զի լինիցի ինձ աւժանդակ ճշմարիտ կենաց, և համասնունդ հոգևոր եղբաւրս իմ* Յակոբ *քահանայի, և ծնօղաց իւրոց, որ միտխորհուրդ կամաւք կամք աւտարացեալ ի գաւառէն մերմէ...։*

## 48.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4819 (տես նաև 1423 թ.)*

*Գրիչ՝* Սիմէոն
*վայր՝* Արճէշ

*Փառք անպարագիծ էին... որ տրամադրեաց զմատունս մեղսամած վերջացեալ տկար ոգւոյ* Սիմէոնի *նուաստ քահանայի գրեալ և կարդեալ զճառս երախտեաց աստուածագործ սքանչելեացն...*

303 ա *... Արդ, այսմ գաղափարութեան [ցանկացեալ] երջանիկ ոմն և աստուածային ձրիւքն բարգաւաճեալ, որոյ անուն իշխան* Շնոփոր* *յորջորջի՝ աստուածասէր և բարեպաշտ, սա ախորժական կամաւ և մեծաւ տենչմամբ ելեալ ի խնդիր աստուածեան հրամանացս, որ կեանս տայ կամայորդոր լսաւղաց, ստացաւ զսա անջնջելի արձան ի մխիթարութիւն անձին, ՉԾԴ. երրորդի թուաբերութեանս հայոց (1305), ի դառն և ի վշտաբեր ժամանակի, ի քաղաքիս* Արճէշ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակովբայ...։*

## 49.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

*Փիրդ. 6273, էջ 107 (Կարնոյ Սբ. Աստուածածին եկեղեցի)*

*Գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Քաջբերունեաց գաւառ

*... Արդ, գրեցաւ սա ի թուականութիւնս Հայոցն ՉԾԴ. (1305), ի գաւառիս* Քաջբերունւոյ, *յանապատիս, որ կոչի* Սուրբ Կուսանէ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչի* Սարգսի, *ի խնդրոյ որբասէր և ժրաջան կրօնաւորի* Թէոդոյ, [*որ*] Հռիփսիմայ *կոչի, որ փափագէր հանապազօր այսմ տառի։*

* *«Շնորհաւոր» անվան բարբառային ձևերից է։*

## 50.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՐԱԳԻՆ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՑ

*Ն. Ջուղա, Ամենափրկիչ, 18. Տ.—Ակինեան, Ցուցակ, էջ 1638*
*(տես նաև 1573 և 1689 թ. թ.)*

Գրիչ՝ Յորդանան
վայր՝ Տարօն, սբ. Կարապետի վանք

411 բ *... Յամի ութնհարիւրերորդի յիսներորդի չորրորդի (1305) եղև կատարումն սուրբ և աստուածային մեղսաքաւիչ պատարագի մեկնչիս ձեռամբ* Յորդանան *աբեղայի՝ ապիկար և պիտականուն կրաւնաւորի, զոր ետ գրել սուրբ և երջանիկ բաբունին մեր* Ստեփաննոս *վարդապետ, տեսուչ և վերադիտող* Տարաւնո *սուրբ Կարապետին, յիշատակ իւր, և ծնողաց, և եղբարց իւրոց, և ամենայն ազգատոհմին իւր, և սուրբ հովուապետին, հեղահոգի և ճշմարիտ դիտին տէր* Յովանիսի, *առաջնորդի սուրբ ուխտին սրբոյ Կարապետին և ամենայն զարմից իւրոց...։*

## 51.

### ՍԱՂՄՈՍ

*Բրիտ. Թանգ. 25* (Add. *11,857), Կոնիբ. Ցուց. էջ 47 (տես նաև 1590 թ.)*

Գրիչ՝ Բարսեղ

ա

181 ա *... Արդ, գրեցաւ աստուածային տառս մարգարէին Դաւթի թվին Հայոց ՉԾԴ. (1305), ձեռամբ յոգնամեղ գրչի* Բարսղի:

բ

181 ա *Ողալ և չփոթումն եղև, զի աւրինակն այսպէս էր, և միտքս չէր ի վերայս, և զյետին գուբլայն մոռացայ։*

## 52.

### ԳՐՈՒԹԻՒՆՔ ԵՒԱԳՐԵԱՑ ՊՈՆՏԱՑԻՈՑ

*Մատենադարան Հայկ. Թարգմ. էջ 427*

Գրիչ՝ Մխ[իթար]
վայր՝ Մեծոփայ վանք

*... Գրեցաւ հոգիընկալ և աստուածազարդ մատեանս առ ի յԵւագրէ սրբոյ անապատաւորէ արարեալ սատար օգնականի հոգւոց մերոց, ի թուի ՉԾԴ. (1305), յաստուածաբնակ անապատիս* Մեծոփայ *վանք առձայնելոյ։ Քանզի նախ այսմ մատենի ի սոյն տեղւոջ սկիզբն արարեալ գծագրութեամբ, յայլում տեղի փոխելով, և անդուստ դարձեալ յայլում վայրի զսայ ընդ մեզ կրելով. իսկ դարձեալ, ըստ նախախնամելոյն աստուծոյն իմոյ Յիսուսի, ի սոյն տեղի եկաւորութեամբ զսա յանգ հանեալ կատարեցաք, ընդ հովանեաւ սուրբ մաւրս*

լուսոյ Աստուածածնիս, յառաջնորդութեան տեառն Սարգսի և վերակացուի հոգւոց մերոց։ Դրեալ եղև ձեռամբ անպիտան և յետին սպասաւորի բանի Մխ[իթար] պիտականուն վարդապետի...։

53.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

Երեւան 1180

Գրիչ՝ Մխ[իթար]

115 բ Զստացող աստուածային դանձուցս՝ զԲ̂արսեղ սպասաւոր բանին, և զծնողս իւր յիշեսջիք ի տէր Յիսուս, ընդ նմին և զախմար դրիչ Մխ[իթար]ս]*

* Այս Մխիթարին նույնացնում ենք նախորդ հիշատակարանի նույնանուն գրչի հետ, ըստ այդմ հիշատակարանը տեղագրում ենք նրան աշխատանքներ։





## 54.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՅՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Փէրգ. 6273, էջ՝ 108—111 (Աղթամար)*

*Գրիչ՝* Դանիէլ
*վայր՝* Աղթամար

*...Աստանօր սկզբնաւորեալ այս հոգևոր և աստուածային գանձս եկեղեցւոյ, զոր աստուածապատիւ և առաքելաշնորհ հոգիացեալն ի հոգւոյն օծմանէ, երջանիկ և աստուածային ձրիւք ջորգաւաճեալ տէր* Զաքարիա *կաթուղիկոս Հայոց ցանկացող եղեալ... աստուածունակ տառիցս... և շնորհեաց զսա ի յաղթող քաջ նահատակն՝ ի սուրբ Գէորգն* Լըմաճ*, *զոր և վերստին ի հիմանէ հաստատառոյց շինութեամբ արձանացոյց՝ սրբագործ խաչագրոշմ յօրինմամբ, ամենիմաստ հնարաւոր ձևակերպութեամբ։ Զոր բազում ծախիւք և աշխատութեամբ բերեալ զնիւթ քարանց սորա ի վերտ մկանանց անդնդահոս ծովուն, ի յերկրէն* Թոջբերունեաց, *ի մեծ լեռնէն, որ կոչի* Թաջաց Կայանէ. *և կատարեալ զսա մեծաւ զօրութեամբն աստուծոյ...։*

*Եւ արդ, զգեղեցկութիւն հսղենոլոզ հարստութեան տեառն* Զաքարիայի, *զարի և զքաջ հովուապետիս բարեձևութիւնն ո՞ պատմեսցէ, զբանս բարիս և զամենունակ առատականս, զսիրտ սուրբ և զհոգին խոնարհ, զաղքատասէրն և զզարմանիչն կարօտելոց, զիմաստունն և զհանճարեղն, զտեսիլն բարեձև և զպատկերն գեղեցկայարմար։ Վասն որոյ մեծաւ փափագմամբ յօրինեաց զտաճարն աստուածընկալ և ստացաւ զսուրբ գիրքս ի վայելումն անձին իւրոյ՝ յարաժամ և յերկար ժամանակս, և յետ ելից յաստեացս՝ յիշատակ բարի ինքեան և ծնողաց իւրոց՝ բարեպաշտ պարոն* Սեֆեդնի, *և աստուածասէր տիկնոջն* Մարիամու, *և գեղեցիկ բարեմիտ շառաւիղին եղբօրն պարոն* Գորգոյ, *և դարձեալ երկուց եղբարցն՝ տէր* Ստեփաննոսի *կաթուղիկոսի և պարոն* Կուռճի Բէկի, *և քեռն՝* Թագուհոյ *և* Մարթայի՝ *հանգուցելոցն ի Քրիստոս։*

*Եւ արդ, ես՝ ունայնս և թափուրս ի գործոց բարեաց...* Դանիէլ *անարժան գրիչ և մեղուցեալ կրօնաւոր, ներողութեամբ նորին սկսայ և ողորմութեամբն կատարեցի զաստուածախօս տառս ի յաստուածընակ հայրապետանիստ աթոռս, որ կոչի* Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչի և սուրբ Նշանի, ի նոյն հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *և ի թուականիս Հայոց* ՉԾԵ. *(1306)-երորդի, և*

---

* *Իմա՝ Լիմ անապատի։*

թագաւորութեան Հայոց Կիլիկիոյ կողմանց երկրին Հեթմոյ, և յաշ-խարհակալութեան Նետողական ազգին, յորում միահամուռ ամենե-քեան ընթացան զհետ ոչընչին և գտանին ոչինչ, դարձան ի մոլար օրէնսն Մահմեդի, որ արձակ ճանապարհաւ տանի ի կորուստ. և բռնադատեն զամենեսեան դառնալ ի սնոտի և ի պատիր յոյսն իւր-եանց. հալածեն, նեղեն և տառապեցուցանեն՝ զոմանց զինչսն յափշ-տակելով, զոմն տանջելով, զոմն հայհոյելով, զխաչ և զեկեղեցի նախա-տելով, և այս ամենայն վասն մեղաց մերոց…

Յիշեցէք ի սուրբ աղօթս ձեր զստացող սուրբ գրոցս զվերոյիշեց-եալսն տէր Զաքարիայ…։ Ընդ նմին և ամենամեղս ի գրչաց՝ Դա-նիէլ, յերես անկեալ աղաչեմ յիշել և զիմ անարժանութիւնս… և ծնողսն իմ՝ զՍահակն և զԹամարն… ի տէր հանգուցեալսն. նաև զու-սուցիչն մեր՝ զպատուական և զերջանիկ քահանայն զՍիմէոն, և զծնողսն նորին,… և զբազմերջանիկ կրօնաւորն զԽաչիկ և զծնողսն իւր,… զի յոյժ և բազում աշխատանք կրեաց յաղագս շինութեան սուրբ եկե-ղեցւոյս [Լմայ] սուրբ Գէորգեայ։

## 55.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Թորոս Աղբար, Բ. էջ 253 (Բաղէշ, ի Վանս Խնդրակատար սբ. Աստուածածնի), տես նաև 1444 Թ.*

Գրիչ՝ Աբրահամ
Վայր՝ Լիմ կղզի

Սրբասէր և իմաստուն քահանայ Խաչատուր… ստացաւ զսա անջնջելի արձան ի մխիթարութիւն անձին իւրոյ եւ յոյս փրկութեան անձին իւր եւ ննջեցելոց իւրոց։ Ես յոգնամեղս եւ փցունս ի գրչաց Աբրահամս… յանձն առեալ կատարեցի…։ Գրեցաւ ի կղզիս Լիմն, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, եւ սուրբ Կարապետին, եւ սուրբ Գէորգայ զաւրավարին։ Յիշեցէք զ | | | եան Զաքարիա, որ զհաւատս Հայոց նոր գնեաց ի յանաւրէն առաջնորդաց, եւ զեկեղեցիքս ազատ-եաց աստուծոյ տեսչութեամբն եւ ձեռաւք իւրովք։ Ընդ նմին եւ զառաջնորդս տեղւոյս յիշ[եցէք]՝ տէր Յոհաննէս. ի թուիս ՉԾԵ* (1306)-երորդի հայկազեան սեռի, ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, յորում ամի եւ ըստ մեղաց մերոց այս ամենայն հարկապահանջու-թիւնս եկն ի վերայ մեր…։

* Տպված է ՋԾԵ=1506, ուղղում ենք ՉԾԵ., որովհետև ա) 1506-ին Աղթամարի կա-թողիկոս էր Ատոմը, բ) Լիմ անապատի առաջնորդ Յովհաննէսը ԺԴ դարու սկզբի մարդ է և հիշատակվում է 1315 թվականին Աբրահամ գրչի կողմից ընդօրինակված ձեռագրի հի-շատակարանում (տես), գ) Զաքարիա Ա. Սֆեդինյան կաթողիկոսը (1296—1336), իրոք գնել է «զհաւատս հայոց… ի յանաւրէն առաջնորդաց», ինչպես նշված է սույն հիշատա-կարանում, և գ) Փիրղալեմյանը իր հիշատակարանների ձեռագիր ժողովածուում (Երևան № 6273, էջ 108), ընդօրինակելով սույն հիշատակարանի համառոտությունը, տալիս է ՉԾԵ. և ոչ ՋԾԵ. թվականը։

## 56.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Գողթն, Ազգ. հնդ. գիրք XII. 1903, էջ 171

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Եղեգիս

ՉԾԵ. (1306) *Թուին* Դանիելի *պատուերով գրեց է* Սարգիս *կրօնաւորը. «Ի մայրաքաղաքիս* Եղեգիս, *ընդ հովանեաւ Երից Տաղաւարացս, սուրբ Կաթողիկէիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Նախավկայիս, ի յաշխարհակալութեան ղան* Խարբանդին, *զոր ազգն Իսմայէլի սուլթան անուանին, ի թագաւորութեան Հայոց* Հեթմա, *և իշխանութեան այսմ նահանգի իշխանաց իշխանի, բարեպաշտ և ամենաւրհնեալն* Բուրթելին *և* Բուղդայի, *որդոց քրիստոսասէր և փառազարդ իշխանաց իշխանի* Էլիկումին, *որդո մեծին* Տարսաիճին, *զոր աէր Յիսուս յերկար ժամանակեա արասցէ մեզ ընդ երկայն աւուրս: Ի հայրապետութեան աստուածապատիւ տեառն* Գրիգորի Անաւարզեցոյ *հայոց կաթողիկոսի, ի վերադիտողութեան տանս սուրբ Սահակայ՝ սուրբ և ընտրեալ քաջ հռետորի և անյաղթ փիլիսոփի տէր* Յովհաննէսի Ուրպէլ *արքեպիսկոպոսի, որդոյ իշխանաց իշխանի* Լիպարիտի, *յաջորդող և աթոռակալ գլխի տեառն* Ստեփանոսի, *զոր տացէ զնա մեզ տէր ընդ երկայն աւուրս ուղիղ վերակացութեանն»:*

## 57.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4806. նաև՝ Վաստ. 80. Հավ. Ցուց. Սյուն. 148—150

Գրիչ՝ Յովսիան
վայր՝ Բերդակ գյուղ

ա

367 ա *...Արդ, այսմ աստուածապատում կտակիս... տենչացեալ ամենիմաստ և խոհական քահանայիցս՝* Սախիկ *քահանայիս և* Թումայիս, *յաղագս փափաքանաց նոցա ի վեր քան զկարն արարին մտաբեր ինձ, որով մակագրեցի զսա վասն փրկութեան հոգոց և մարմնոց նոցա և ննջեցելոց իւրեանց, և ի վայելումն նոցին և զաւակաց իւրեանց...:*

*Արդ. ընդ ընթացից արեգականն ըստ չափոյ բերման Հայկազեան տումարիս* ՉԾԵ.* (1306) *ամաց գրեցաւ սուրբ աւետարանս ի թագաւորութեանն* Աւլջաթու *սուլտանին, որ է թագաւոր իմաստուն և բարեխորհ և անգելոց կանգնող, որո տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ զնայ, ի կաթողիկոսութիւն տեառն* Զաքարիայի *և վե-*

* *Վերջին թվանշանը գրված է այնպես, որ կարելի է կարդալ նաև «Է», այդ դեպքում հիշատակարանի գրության տարեթիվը կլինի 1308-ը:*

բաղխողի, ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի Յովսիան նուաստի և նկարողի և կազմողի, ի յերկրիս Տարբերունի, ի գեղ Բերդակ, ընդ հովանեաւ սուրբ և կենսաբեր Նշանի խաչին Քրիստոսի, և սուրբ զաւրավարացն՝ սրբոյն Գէորգեա և սրբոյն Սարգսի դաւրավարի, որ և բարեխաւս իսկ են վասն մեր և ամենայն քրիստոնէից առ Քրիստոս միշտ և հանապազ:

Աղաչեմ զձեզ, ով սուրբ քահանայք և բաշխողք աստուածային
367 բ խորհրդոյն, յորժամ ի վեր ամբառն|այք զկառկառեալ ձեռս ձեր և զաստուած բոլորովին ի մտին ունելով և քաղցրաբարբառ ձայնիւ պռաւսխումէ նուաղաբանէք և զարարիչն ընդ արարածս հաշտեցուցանէք, կրկին աղաչեմ զձեզ, ի նմին ժամու իմոյ, յանցանացս մեղաւք լցեալ ոգւոյս Յովսիան նուաստի, և ծնողաց իմոց Շիրկանն և Հռիփսիմոյն, և եղբաւր իմոյ Յակոբա, և քուրոչ իմոյ Աւաք տիկնօ և Շնաւխվորի, և զաւակաց իմոց Թաթուլի և Զաւհարի, և այլոցն առհասարակ, և տղայատիպ հասակաւ ի Քրիստոս փոխելոցն՝ Մարեմի և Մեծացի, Յովաննի և Թաթլեվարդի, և սուրբ ճգնազգեստ կրաւնաւորի Աստուածատրոյ՝ վարդապետի իմոյ, և Վարդիկ կրաւնաւորի, և բարեմիտ և պատուական եղբաւրն մերոյ Մերչոյ, որ և փոխեցան բարի մահուամբ ի Քրիստոս, և ինձ՝ անարժանիս յանձին արարին գրել զանուանս
368 ա նոցա ի մատենիս, վասն յիշելոյ զինքեանս ի սուրբ և || ի մաքուր յարժանացեալ յաղաւթս ձեր, աղաչեմ զձեզ, վասն սիրոյն Քրիստոսի յիշել զնոսա և զմեզ...:

Բ

368 բ Ես՝ Մերչես ու ես՝ Տնգիկս ու ես՝ Մարգարէս, մեք՝ Խամկա որդիքս ու Սաղկանս, գնեցինք զսուրբ աւետարանս յիշատակ մեզ, և ծնողաց մերոց, և զաւակաց մերոց, և ննջեցելոց մերոց յայսմ աշխարհիս, և յետ աստի կենացս՝ ի հանդերձեալ յաշխարհին և ի կեանսն յաւիտենական, և տուաք ի ձեռն քահանային Թումաի, որ քանի որ այս աւետարանս կենա՝ առ Թումա իրիցուն կենա, և իւր զաւակացն, և իւր ազգին, ու մեզ յիշատակութիւն առնեն անխափան, զծառզարդ[ար]ի կիրակի ժամն անխափան կատարեն, առ ով որ այս սուրբ աւետարանս լինի. և մի ոք իշխեսցէ հանել զսա ի Թումա երեցուէն, ոչ մեք և ոչ աւտարք: Եւ եթէ ոք յանդգնի ու աւելի պակաս առէ և կամ յիշատակարան կտրէ՝ կապած և դատապարտած լինի յաստուծոյ և զինքն Քրիստոս ջնջէ ի դպրութենէ կենաց...:

## 58.

## ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Երևան 2520

Գրիչ՝ Յոհաննէս Երզնկացի

143 բ Կարգիս և զանձն իմ եզկելի
Եւ մեղսանէրկ արհեստ գրչի,
Զոր և մատամբ ծրագրեցի

Ես՝ Յոհ[աննէս] աղքատ ոգի,
Տառապանօք թանձրագունի,
Կարօտութեամբ անպատմելի,
Սակայն փափաք յոյժ տենչալի
Եւ ախորժանք անքննելի
Զիս յորդորեաց յայս գործ իբր՝
Զսա շարել ի քարտիսի.
Զի յայս տեղիքս յորում էի
Էր դպրութիւն հրաշալի.
Եւ ես կարօտ այսմ տառի,
Զի յիւր տեղին սա հասանի,
Շտապեցա յաւէտ կարի,
Բայց իւր տեղոջն ոչ հասուցի,
Զի եկն եհաս սա ի կարգի,
Ընթեռնելոյ ի հանդիսի,
Տակաւ կիսով չափ է թերի,
Հանդէտ գոլով սա աւարտի։
Զոր աղաչեմք, որք հանդիպի
Աստուածախօս այս մատենի,
Յիշման գոլով զմեզ արժանի
Զենման գառինըն առաջի
Եւ մաղթանք աղերսալի
Խոշորութեանս ներելի։

Բ

344 ա Դարձեալ յիշեսջիք ի Քրիստոս և զիս՝ զաարժանեալ մեղսաներկ ոգիս՝ զնուաստս Յոհ[աննէս] Եզընկայեցի սպասաւոր բանի, որ հարեալ ցանկութեամբ սիրոյ ի փափաք սորին, գրեցի իմով իսկ տխեղծ մատամբս ի մխիթարութիւն վշտացեալ հոգւոյ իմոյ, և ի վարժ կրթութեան երկասէր անձին բանասիրի, և ի յիշատակ արձանի հոգւոյ իմոյ և ամենայն նախնեաց, փոխեցելոց ի Քրիստոս արեան մերձաւորաց, և համօրէն ամենայն երախտաւորաց՝ հոգևորաց և մարմնաւորաց, զի և զուք յիշեսջիք ի Քրիստոսէ աստուծոյ յուսոյն մերոյ՝ օրհնելոյն յաւ[իտեանս]։

Գրեցաւ ի թիւ. ՉԾԵ. (1306), ի քսանևինն մարտի ամսոյ։

## 59.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ՊՕՂՈՍԻ

Երևան 5606

Գրիչ՝ Անդրէաս

213 ա ...Գրեցաւ... ի թուականութեանս Հայկազնեան տումարի ‖ և յամս աստուածապատիւ տեառն Զաքարիայի Հայոց վերադիտողի, ՉԾԵ. (1306)։ Արդ, աղաչեմ... յիշեսջիք... զՅովհաննէս վարդապետ ծնողիւք

իւրովք հանդերձ, ընդ նմին և զստացող գրոցս զՊետրոս ճգնազգեաց քահանայ և զծնօղսն իւր... ընդ նմին և զգծող գրոցս՝ զանարժանս զՄխիթար...: Թողութիւն գրիս անմեղադիր [լերուք] և պակասութիւն, զի այս էր կար մեր. քիչ մի շտապեցա, խոշոր եղև։ Եւ Քրիստոսի փառք յաւիտեան[ս] յաւիտենից, ամէն։

## 60.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 2806**

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Մոկաց գաւառ, սբ. Խաչ վանք

291 բ ...Բայց գրեցաւ լուսազարդ աւետարանս ի թուիս հայոց ՉԾԵ. (1306), ի գաւառիս Մոկաց, ի վանքս, որ կոչի սուրբ Խաչ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և այլ բազմաժողով մասանցս։

Եւ եթէ կամիցիք գիտել, թէ ով եղև առիթ, կամ Էր աղագաւ ստացաւ զսա, Կարապետ սրբայսէր և պատուական քահանա, ի գեղջէ, որ կոչի Ածկոր....

...Եւ զիս՝ զսուտանուն կաւնաւոր զՎարդան՝ զգրող սորայ, աղաչեմ յիշել և մեղաց թողութիւն խնդրել, և աստուած յիշողացդ ողորմի, ամէն, ամէն։





## 61.

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑԻՈՑ

**Երևան 3674**

Նախագաղափարի գրիչ

80 ր *Ի ժամանակի յորում էր թուականս մեր ՉԾԶ. (1307), ի պակասել արդարութեանց և ի բազմանալ անօրէնութեանց մերոց, առաւել բազմացաւ բարկութիւն և սաստկացաւ չարութիւն ազգին նետողաց ի վերա մեր՝ ազգիս քրիստոնէից, քանզի եւ տղայ հասակաւ այր մին ի Խորասանայ միականի, համանման Ներոնին, որ գալոցն է, անուն նորայ Խարբանդա, որ թարգմանի իշու ծառայ, որդի Արղունին որդո Հուլաւունին։ Սա բառնալ կամեցաւ զքրիստոնէութիւն աշխարհէս Հայոց և Վրաց, զոր խափանեաց տէր և ոչ կատարեցաւ չար խորհուրդ նորայ։ Ցետոյ այլ բանս մտաւ ածեաց աբրանեկն սատանայի, առաքեաց ընդ ամենայն երկիր իշխանութեան իւրոյ դնել նշան խայտառակութեան քրիստոնէից և հարկ առնուլ ըստ մարդաթուի Խ. (40) արծաթո մինչ ի Ժ. (10)՝ ըստ կարի։ Ցայս ի դառն ժամանակի եղե աւարտումն սորա, ձեռամբ...։**

## 62.

### ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՑՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ

**Երևան 4881 (տես նաև 1696 և 1723 Թ.Թ.)**

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամար

272 ա *Աստանաւր սկզբնաւորեալ անկողոպտելի գանձս եկեղեցոյ, յաստուածարնակ և ի հռչակաւոր սուրբ ուխտս* Աղթամար *կոչեցեալ, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչի և սուրբ Նշանի, և աստուածամուխ սուրբ Գեղարդեան, ի հայրապետութեան ուրբ և անբիծ տեառն* Զաքարիայի, *զոր տէր աստուած անսասան և անդրդուելի պահեսցէ զսոսա յերկար ժամանակաւք ի վերա աշխարհի, աղաւթիւք ամենայն սրբոց։*

*Իսկ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց յեւթնհարիւրերորդի յիսներորդի վեցերորդի (1307), ի խնդրոյ աստուածարեալ և երջանիկ կրաւնաւորի* Մխիթարայ. *վասն զի վառեալ սիրովն աստուծոյ և ելեալ*

* *Հիշատակարանի արտագրությունը թողնված է թերի։*

ի խնդիր այս անջինջ արձանիս, զոր քաջ ախոյեանն՝ սուրբ Հայրապետն Կիւրղիոս դրեաց յըմբերանումն աստուածամարտից հերձուածողացն, որք ոչ հաւատան ուղղափառ հաւատով զտնաւրէնութիւն աստուծոյ բանին՝ միածնի որդւոյն աստուծոյ, զոր ի վախճան աւուրցս կատարեաց վասն մերոյ փրկութեան։

272 բ Իսկ սա՝ ընտրեալ կրաւ || նաւորս Մխիթար, ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց, յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց՝ Փոքրկայ, և Նազխաթունի, և եղբաւրն Գրիգորոյ և Վարդանի միայնակեցի՝ հանգուցելոյն ի Քրիստոս, և ազգայնոցն ամենեցուն՝ կենդանեաց և ննջեցելոց. և ետ զսա նուէր ի նոյն աստուածաբնակ ի սուրբ Խաչս Աղթամարայ, ի վայելումն մանկանց սորա...

Եւ արդ, ես՝ ունայնս և դատարկս ի գործոց բարեաց, ներփանաք և փցունս ի գրչաց Խաչիկ սուտանուն կրաւնաւոր, եղեգնագիծ դրոշմեցի զսա իմով մեղսամած մատամբս ըստ իմում տկարութեանս, ի դառն և ի տարտարոս ժամանակիս, յորում զաւրացաւ ազգն Իսմայէլի այնչափ, մինչև դարձուցին յիւրեանց սնոտի յոյսն զամենայն ազգն հետողաց, որ ոչ մնաց մի ի նոցանէ, որ ոչ հաւատաց սուտ և խաբեբայ հաւատոցն նոցա, որ արձակ ճանապարհաւն տանի ի կորուստն։ Եւ նեղեն զամենայն քրիստոնեայք դառնալ ի պատիր յոյսն իւրեանց, զոմն հեղեն, զոմն տանջեն, զոմն սպանանեն, զոմանց զինչսն
273 ա յափշտակեն. || և ոչ այնու շատացեալք, այլ և եդին ի վերա ամենայն քրիստոնէից հարկս և նշանս նախատանաց՝ ի վերա ուսոց թիկանցն կտաւս սեաւս, զի որք տեսցեն զնոսա՝ ճանաչեսցեն եթէ քրիստոնեայք են և հայհոյեսցեն. և ամենևին ջանան, զի մի երևեսցի քրիստոնէութիւն ի վերա երկրի։ Եւ այս ամենայն վասն մեղաց մերոց, զի ոչ դառնամք և ապաշխարեմք զանուղ[ղ]ա գործս մեր, այլ աւրըստաւրէ զառածանիմք և յաւելումք ի չարիս, վասն զի փոխանակ սիրելոյ և ցաւակից լինելոյ միմեանց՝ ատեմք և անտես առնեմք, և փոխանակ պատուելոյ զեղբարս և մեծարելոյ՝ անարգեմք և մորոս կարդամք, և բիւր ազգի ազգի մեղաւք կուրացեալ կամք, և ոչ իմանամք, զներողութիւնն աստուծոյ, զի քաղցրութիւն նորա զմեզ յապաշխարութիւն ածէ։

Եւ արդ, դարձեալ աղաչեմ զամենեսեան զհանդիպեալսդ սմա՝ զընթերցողսդ և զլսողսդ, յիշեսջիք յաղաւթս ձեր զվերոյ յիշեցեալն
273ª բ զՄխիթար սրբասէր կրաւնաւոր՝ ստացող սորա, և զը || ծնողսն իւր զոր յիշեցաք, նաև զիս, զանարժան և զմեղուցեալ գրիչս զԽաչիկ, և զծնողսն մեր զՇահապ և զԹամար՝ զհանգուցեալսն ի Քրիստոս և զամենայն ազգատոհմն մեր՝ զկենդանիքն և զննջեցեալսն։ Նաև զերախտաւորքն մեր և զսրբասէր քահանայն զՍիմէոն՝ զուսուցիչն մեր, և եղբայրս մեր զՍտեփաննոս կրաւնաւոր, որ աւգնական և ձեռնտու եղև մեզ ի նիւթ թղթիս, աղաչեմ յիշելոյ արժանի առնել ի Քրիստոս Յիսուս, որպէս զի աղաւթիւք ձերովք և ամենայն սրբոց ողորմածն աստուած ողորմեսցի ամենեցուն առհասարակ՝ յիշողացդ և յիշեցելոցս, կրկին կենաւք և երկու աշխարհաւք, ամէն...։

274 ա Յիշեցէք յաղաւթս ձեր զծերունի հոգևոր հայրն մեր զՍտե-փաննոս սրբասնեալ կրաւնաւորն, որ առիթ և միջնորդ եղև այսմ գոր-ծոյ, նաև զծնողսն իւր, աղաչեմ։

63.

ԱԻՆՏԱՐԱՆ

Վասպ. 81, Հայ. Ցուց. Սյուն. 151—154*

Գրիչ՝ Խաչեր
Վայր՝ Բերկրի

ա

...Կատարեցաւ համաշչունչ սուրբ և կե[ն]սաձիր** աւետարանս ի մայրաքաղաք***, որ կոչի Բերկրի, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին և սրբոյն Յակոբայ Հայրապետին, ի թուաբերութիւն Հայոց ՉԾԶ. (1307), ի թագաւորութիւն**** ազգին Նետողաց, ի ժա-մանակին, յոր և եղին նշանս ի վերայ քրիստոսական հաւտին*****, ի հայրապետութեան տէր Զաքարիայի և յառաջնորդութիւն տէր Յո-վանիսի։ Որք կարդայք յիշեսջիք ի մաքուր յաղօթս ձեր զպարոն Նէքնէք****** և զծնաւղսն, որ են՝ զՎասոս և զԹամսեր, զի արժանի արասցէ Քրիստոս անմահական սեղանոյն, և զգրողս զԽաչեր քահա-նայն և զծնաղսն իմ։

Յիշեսջիք ի մաքրափայլ և ի մեղսաջքաւիչ յաղաւթս ձեր զպա-րոն ՆէքՆէքն, և ծնաւղսն իւր, և զգաւակսն՝ զԱւագ պարոն, զՇահնա-դինն և զԱզիզ տիկինն, եւս առաւել զԱմիրն և զծնողսն իւր, քանզի բազում փափագանաւք զսուրբ աւետարանս ստացաւ ի հալալ յար-դեանց յիշատակ պարոն ՆոքՆէքին և ծնողաց և զաւակաց իւրոց...։

Դարձեալ ես ամենաշարող ողորմութեամբն Քրիստոսի, և հաւրն նորին, և հոգոյն, ես պարոն ՆէքՆէք, որ ստացայ զաստուածաշունչ պատգամս աւե[տե]աց աւետարանիս ի հալալ արդեանց իմոց, իմով յաւժարութեամբ ընծայեցի զսայ մաւրն Քրիստոսի Աստուածածնին Աղթամարա...

Արդ, սպասաւորք սուրբ Աստուածածնին յանձն առին յամեն տարի Դ. (4) աւր վասն մեր պատարագել զՔրիսաոս. մինն հաւր իմոյ՝ Վասոսի, երկրորդն մաւր իմոյ՝ Թամսերի, և եր[ր]որդն ինձ՝ ՆէքՆէքի, և չորրորդն կենակցին իմոյ՝ Սուրուխին։

* Թերի կերպով արտագրված է նաև Ղ. Փիրղալամյանի ձեռագիր ժողովածուում (№ 6273, էջ 113)։

** Փիրղալամյանի մոտ «կե[ն]սարեր»։

*** Փիրղ. «մայրաքաղաքս»։

**** Լալայանի մոտ «ի թուաբերութեանն», «ի թագաւորութեանն»։

***** Փիրղ. «հօտին»։

****** «Նէքնէք» անունից հետո Փիրղ. գրում է «[ստացող աւետարանիս] և զգրող՝ Խա-չեր քահանայ», որով և վերջանում է հիշատակարանը նրա մոտ։

*հատուցիչքն աւր՚նին յաստուծոյ, և խափանիչքն և ըստունդա-նօղքն, որպէս խաբեբայ, դատապարտին յաւուրն Քրիստոսի։ Եւս և թէ ոք յանդգնի գողանալ զսայ, կամ վաճառել, կամ գրաւել, կամ ինչ և է պատճառի հեռացուցանելոյ ի դրանէ Աստուածածնիս* Աղթամարայ, *ինքն հեռացեալ եղիցի յողորմութենէն Քրիստոսի և մասն և բաժին զՅուդային և զԽաչողացն տացէ, ո ոք և է, թէ երէց, թէ աշխարհա-կան, թէ այր և թէ կին, զի սուրբ Աստուածածնին է սայ անպատ-ճառ...։*

*Այլ և ժամին սպասաւորքն, որ դան զկնի, զնոյն կատարիցեն։ Թվ. ՉԾէ. (1308)։ Ապա թէ ոչ, ընդ նոյն դատապարտութեամբ են։**
*Այլ և զ*Ամիրճ *յիշել յաղաւթս հանդերձ ծնաւղաւք։*

*Գերութիւնից ազատող՝*
*ըռես* Կարապետ

Բ

*Դարձեալ յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զ*Վանեցոյ *քաղաքի ըռէս* Կարապետն *և զծնողք իւր՝ զ*Ամիրխան *և զ*Խա-խաթուն, *և զկենակիցն իւր՝ զ*Գուլաբաթն, *և զորդին իւր՝ զ*Ամիրխան, *և զայլ ամենայն արեան մերձաւորքն իւր, և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք նոցա, որ ազատեաց զսուրբ աւետարանս ի ձեռաց անօրինաց և ետ դարձեալ ի դուռն սուրբ Խաչին Աղթա-մարայ...։*

*Գերութիւնից ազատող՝*
*ըռէս* Ատոմ

Գ

430 ե *Յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղօթս ձեր զ*Անկզոյ *ըռէս* Ատոմն, *և ծնողքն, և զազգն ամենայն, և աստուած ողորմի ասացէք նոցա, որ զսուրբ աւետարանս ազատեաց ի ձեռաց յանօրինաց, արարիչն աստուած զինքն ազատէ ի ձեռաց սատանայի և ի փորձանաց, ամէն։*

## ԱՒԵՏԱՐԱՆ

### 64.

*Վրաց. Թանգարան, № 18*

*Գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Արճիշի գավառ, Տիճամեջ գյուղ

ա

*...Եւ արդ, նուաստս ի քահանայիցս* Մկրտիչ *անուն, ցանկացող եղեալ հրամանաց փրկչին, փափագանաւք և խնդութեամբ սրտի և յաւժարութեամբ կամաւ գրեցի զհրամանս փրկչին Յիսուսի Քրիստոսի*

* Ն. Լալայանի Ցուցակում հատվածները հրատարակված են խառնիխուռն դասա-վորությամբ։ Կատարեցինք որոշ շտկում։

ի վայելումն անձին իմոյ, և ծնողաց իմոց Պաղտօու | | | յոյժ աշխատաւոր և սնուցանող, և ամենայն ազգականաց իմոց, և ամենեցուն, որ աւգնել են ի սուրբ աւետարանս, բարեխաւսութեամբ աւետարանչացս, ամէն։

Արդ, կատարեցաւ սուրբ աւետարանս և հրամանքն Քրիստոսի ձեռամբ մեղաւոր և փծուն գրչի Մկրտչի քահանաի, ի գեաւղս, որ կոչի Շիճամեց, ընդ հովանեաւ սրբոյ Սիմէոնի և սրբոյ Դանիէլի, յերկիրս Քաջբերունեաց, որ է Արճէշ, ի թուաբերութեանս Հայկազնեան տումարի եւ թնհարիւրերորդի յիսներորդի [վեց]երորդի (1307). Աղաչ[եմ | | | ընթեռնոյք աստուածահրաշ և զհրամանս փրկչին ի ձեռն սուրբ առաքելոցն ի սուրբ պատարագի և յամենայն ժամ, յայնժամ յիշեսջիք զգրողս սորա զՄկրտիչ քահանա, և զծնողսն իմ, և զաւգնիչսն ի սուրբ աւետարանս։ Եւ որ զմեզ յիշեն ե յիշման արժանի արասցեն և նոցա ողորմեսցի Քրիստոս ի միւսանգամ գալստեանն իւրոյ, ամէն, ամէն։

Խոշորութիւն գրոյս և պակասութեան մի մեղադրէք, զի յառաջին գիր է և ես չէի հմուտ արվեստի։

Ի թագաւորութեանն նետողական ազգի որում անուն Խարպանդայ էր և Իսմաէլացոց սուլտան անուանեցին | | | *

Բ

Տէր աստուած Յիսուս Քրիստոս, բարեխաւսութեամբ ամենայն սրբոց քոց, ողորմեա ամենեցուն, որք աւգնեցին ի սուրբ աւետարանս, և բազմամեղ ողոյ Մկրտիչ քահանայի և վարդապետին իմոյ Ստեփանոսի, որ հարազատ եղբայր է իմ։ Եւ որ կարդայք, ձեզ ողորմեսցի Քրիստոս։ Ի թվ. ՋԾԶ. (1307)։ Հայոց մեծ վիշտ էր։

Գ

Տէր աստուած Յիսուս Քրիստոս, բարեխաւսութեամբ սուրբ աւետարանչիս Մարկոսի, ի միւսանգամ գալստեան քո ողորմեայ Մխիթարա և ամուսնոյն իւրոյ Թամթայի, ամէն։

Եւ փծուն գրչի Մկրտիչ քահանաի և ծնողաց իւրոց | | |

Ստացող՝ Կարապետ

Դ

Այլ և ես՝ յետինս ի կարգաւորաց և թափուրս յամենայն բարեաց Կարապետ քահանայ, ստացա զսուրբ աւետարանս ի հալալ վաստակաց իմոց, յիշատակ ինձ և ծնօղաց իմոց.։**

---

* Մի տող ջնջված։

** Ունի նաև հետագա ստացող Անդրէասի հիշատակարանը։

## 65.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան, 4210 (տես նաև 1357, 1554 և 1730-ական թ. թ.)

300 ա ... Արդ, ի կարճեալ աւուրս և երեկոյացեալ ժամանակիս, յայսինքն ի վերջի դարուս, յորժամ [յ]ազգս ծովացեալ մեղաց աշխարհիս, իբր երեզալեան իմն մրրկեալ տատանեալ ծփէր ի բռնութենէ սրոյ ազգին Նետողաց, զոր յոլով ժամանակաց աւե[րեց*] սաստկացեալ տիրէր համայն ամենայն երկրի, սկսեալ յելից արեւու ի ծովէն Կասբից, շրջապատեալ զհիւսիւսիւ մինչև զա, հասանէ ի ծովն Պոնտոսի, և դարձեալ, ի միւս կողմամբն հարաւայնոյ պատ առեալ, պարունակեալ զաշխարհն Եգիպտացւոց և զհամայն զԱսորիս և զԿուլի[կ]եայ, մինչև ցնոյն ծովն Պոնտացւոց աշխարհին, զբոլոր մէջերկրայս, զտոհմս և զլեզուս բա-
300 բ զումս || [ընդ ին]քեամբ կալեալ ունէր չար լուծ ծառայութեան նոցա, ըստ նախատեսութեանն մեծ հայրապետութեան Ներսէսի Հայոց [կաթողիկոսի]։ Եւ պակասեալ, նուազեալ գայր հայրապետութեան սեռի սուրբ Լուսաւորիչն Գրիգորի և թագաւորութիւն ազգին Արշակունեաց, ըստ տեսլեան սրբոյն Իսահակայ։ Եւ սակս անդարձութեան մերոյ ոչ դարձաւ բարկութիւն նորա, այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է ի պատժել [և] ի պատուհասել, և մեր ոչ զղջացեալ, մինչև ծուրեալ և ծըղեալ, հիւծեալ մաշեցան ամենայն կեանք մեր, ի մահ և դժոխս մերձեցան անձինք մեր, քանզի թողին զազանաբարոս և այլազէմ և այլալուսու ազգին Նետողաց զհայրենի աւրէնս իւրեանց, թողին և հետևեցան չար աղանդոյն կարապետ նեռին Մահմետի, և ևս քան զևս ընդ նեղութեան և ընդ հալածանաւք արկին զազգս քրիստոնէից։

Արդ, յայսմ դառն և ի դժնդա ժամանակի, յորում խաւար անլոյս և մեք անմխիթար, տարածեալ մածեալ ունէր զամենայն...։*

## 66.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7601 (տես նաև 1451)

Ստացող՝ Վարդան
վայր՝ Կիլիկիա

448 բ Կամաւք աստուծոյ հաւր կենդանւոյ և կարողի յամենայնի, և միածնի որդւոյ իւրոյ կենարարի... ես | | | ի վերջ հասեալ քահանայից, մեղաւոր և անարժան ծառայ աստուծոյ, ցանկացաւղ եղէ այսմ լուսափիղձ և կենսակիր սուրբ կտակիս և զի անձեռնհաս էի վասն աղքատութեան։ Փափաքն ստիպէր զիս և յոյժ ըղձայի. և հանդիպեալ

---

* Հիշատակարանը հասել է մեզ ԺԷ. դարի ընդօրինակությամբ. պահպանվել է միայն այսքանը։ Գրված պետք է լինի մոնղոլների մահմեդականություն ընդունելու ժամանակ, որ տեղի է ունեցել 1306—1307 թվականներին։

աստուածապաշտից ոմանց և արարին ինձ ողորմութիւն, և հանապազ
449 ա գթա || ցին ի յիս զուարթամիտ առատութեամբ։ Ոմն, որում անուն
կոչիւր Թաւտաւրէ, որ եղև առ իս բարեմիտ, վասն աստուածասիրու-
թեան իւրոյ և վասն յիշատակի հանգուցելոյ զուգակցի իւրոյ, և բա-
րեպաշտ աներոյ իւրոյ Առաքելի, գործակցութեամբ և յաւժարամտու-
թեամբ զոքընչի իւրոյ Թեմանայ, և այլ ոմն՝ անուն Ծուան, որ և նա
բարեմտաբար հանապազ գթացել է յիս, որոց արդեամբք ստացայ
զայս փափաքելի կենսունակ սուրբ կտակս, որոյ ես միայն միջնորդ
եմ ստացուածոյս։ Եւ ոչ թէ յիմ արդեանց ստացայ, այլ ի վերոյգրեալ
449 բ աստուածապաշտիցն արանց. և ես միայն զայս արարի՝ || զոպելով զիս
ի յաւելորդացն, միայն հարկաւորաւն բաւականացայ։ Եւ ետու գրել
և աւարտել քահանայի ո[ւ]րումն գրչի, որոյ անուն Լևոն, ի ստոյգ և
յընտիր աւրինակէ, զոր յոյժ բաղձանաւք և յոդնատանջ տենչանաւք,
մեծաւ աշխատութեամբ ստացայ զսա ի լուսաւորութիւն մանկանց
եկեղեցւոյ և յիշատակ ինձ և ծնողաց իմոց, հաւրն՝ Թորոսի և մաւրն
իմոյ Տարի, և եղբաւրն իմոյ Անդրէասայ քահանայի, և այլ եղբարցն՝ իմոց՝
Յովանիսի և Աւետեաց, և քեռոյն իմոյ տէր Վարդանայ, և այլ ամենայն
զարմից իմոց՝ կենդանեաց և ննջեցելոց։ Վասն ո || րոյ աղաչեմ զսուրբ
450 բ հարս և զեղբարս... յիշեսջիք զստացաւղն զվերոյգրեալն || զՎարդան
ծերունի քահանայ և զայլ երախտաւորսն, և զարդիւնարարն՝ զՅակոբ
Մուղտսի, և զկին ոմն պարկեշտուհի և սգաստ որոյ անուն Տալիթա, որ
և նա արար արդիւնք ի սուրբ կտակս, և զսակաւ աշխատաւղս ի սմա
վասն ուղղութեան՝ զմեղաւոր հողս Ստեփաննոս Գոյներիցանց, և երկրա-
հուպ դիմաւք հայցեմ ի հանդիպողացդ ողորմութիւն խնդրել ի Քրիս-
տոսէ յահեղ աւուրն համառաւտի ընդ ամենայն սուրբս իւր, որ է
աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Եւ զկարաւտս ողորմութեանն աստուծոյ զԼևոն սուտանուն քա-
451 ա հանայ, որ ոչս եմ արժանի այսմ աստիճանի, || յերեսս անկեալ աղա-
չեմ զսուրբ հանդիպողսդ՝ զհարս և զեղբարս, զի արժանի առնէք յիշ-
ման առաջի զէնման անմահ գառինն Քրիստոսի զիս՝ զմեղուցեալ
գրիչս, և զծնաւղսն իմ, և զամենայն ազգատոհմն, և աստուած զձեզ
յիշէ, ամէն։

Գրեցաւ ի թուա[կանութեան Հայոց] ՉԾԶ. (1307), ի թագաւո-
րութեանն տղայ թագաւորին Լևոնի, որդւոյ Թորոսի, թոռին Լևոնի։

## 67.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փերդ. 6273, էջ 112 (Լիմ)*

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Մեծոփայ վանք

ա

Յանկ ելեալ կատարեցաւ աստուածախաւս աւետարանս... ի թուի
Հայկազեան տոհմիս տումարի ՉԾԶ. (1307), յանապատիս Մեծոփայ

վանք առձայնելոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, յառաջնորդութիւն սրբազան և պատուական հայրապետիս տեառն Սարգսի, ձեռամբ անարժան և պիտականուն Մխիթար վարդապետի*, ի սաացուցն մերոյ հարազատի՝ ումեմն Աւետիս քահանայի և կուսակրօն աբեղայի, պատճառ և առիթ երկնային և անթառամ պսակացն։

Բ

Ես՝ պիտականուն Մխիթար վարդապետ, գրեցի զսուրբ աւետարանս իմով ձեռամբ, և վաճառեցի զսա ընդ աշխատանաց իմոց Ստեփաննոս քահանայի, յիշատակ նորին և ծնողաց իւրոց, և բարեխօս առ որդին միածին, այլում խօսք և դատաստան ընդ նմա ոչ դոյ ընաւ։

68.

## ԳՐՈԽՈՐՈՆԻ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՏԵՍԼԵԱՆՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ

Մատենադարան հայկ. թարգմ. էջ 673, և Փիրղ. 6273, էջ 111—112
(Բրիտ. թանգ. 19,728)

Գրիչ՝ Ստեփան
վայր՝ Մլիճի վանք, Կիլիկիա

ա

...Գրեցաւ գիրքս այս, որ կոչի Գրոխոռն, որ ունի առ ինք հաւաքեալ զամենայն բանս և զգործս Յովհաննու աւետարանչի՝ եղբաւր տեառն, ի սուրբ ուխտս Մլիճի, ընդ հովանեաւ Տիրամաւր սուրբ Աստուածածնի և այլ սրբոցս, մաւտ յանառիկ դղեակս Պապառոնի։ Արդ, ստացաւ Կոստընդին քահանայ յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և ամենայն զարմից իւրոց։ ...Գրեցաւ ի թվ. Չ. երորդի յիսներորդի վեցերորդի (1307)։ ԶԿոստանդին քահանայ զստացող գրոցս յիշեսջիք ի տէր, ընդ նմին և զեղկելի Ստեփան՝ զգրող սորա, և աստուած զձեզ յիշէ յիւրում արքայութեան, ամէն։ Եւ արդ, որ ժառանգէք [զգիրքս] յետ նորա, թողութիւն յաստուծոյ խնդրեցէք Կոստանդեայ քահանային, և մօրն իւրոյ Վալուրջի, և հօրն իմոյ Կոստանդ քահանայի, և զքոյրն իմ զՇահանդուխտ, և զքեռին իմ զԳրիգոր կրօնաւորն, և զքոյրորդին իմ զԹորոս՝ զտարաժամ փոխեալն առ Քրիստոս։ Եւ զհոգևոր մայրն իմ զԹեփանոս յիշեսջիք ի մաքուր յաղօթս ձեր։**

* Մխիթար Սասնեցի կամ Կերմանեցի մատենագիրն է (1260—1337), որ «յոյժ հմուտ էր յարուեստ գրչութեան և ի ծաղկագարդ նկարակերտութիւնս գրոց» (տես՝ «Մխիթար Սասնեցի», էջ՝ 30)։

** Թվականից հետո եղող հատվածը քաղել ենք Փիրղալեմյանի ընդօրինակությունից։

Գրիչ՝ Աւետիք

Բ

...Անապատելոց բըժիշկ բարի,
Կենաց տըւող ամենայնի,
Քաւիչ մեղաց լեր Թորոսի
Եւ հալածիչ ախտից ժանտի,
Ոչ այնու միայն, որ երեւի,
Այլ և ներքնոյն, որ իմանի.
Հանգոյն շնորհին այնըմ մեծի,
Զոր արարէր անըաւ բարի,
Պարգեւս անճառս անպատմելի
Դու՝ Արքայրու Թագաւորի,
Ընդ նմին և ինձ անարժանի,
Եւ արուպ քո ծառայի.
Աւետեաց մեղաւորի
Եւ սուտանուն քահանայի։

## 69.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ՊՕՂՈՍԻ

Հալէպ. Սբ. Մնկ. 142. Սիւրմ. Ա. 247

Գրիչ՝ Ղազար
վայր՝ Արճէշ գաւառ, Ասպիսնկայ վանք

442 Գրեցաւ... ի թուականութեան Հա[յ]կազնեան տումարիս ՉԾԶ. (1307), յանապատիս Ասպիսնկայ*, ի հայրութեան Ստեփաննոս վարդապետի՝ ժրի և ամբծի։ Ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յարութեանս, և այլ սրբոց։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք կարդայք կամ աւրինակէք, զստացողս սորա՝ զՍիմէոն կրաւնաւոր և զիս զսուտ[՝] միայնակեաց փցուն գրիչ Ղազար [յիշեցէք]...**

## 70.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. 6273, էջ 113 (Մեծոփայ վանք)

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Այրիձոր

...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի հռչակաւոր մենաստանիս, որ կոչի անուամբ Այրիձոր, ի թուաբերութիւն Հայոց ՉԾԶ. (1307), գրեցաւ ընդ հովանեաւ սուրբ Ցարութեանս, և այլ համօրէն ամենայն

* Տուրուբերանի Արճեշ գավառի մեջ Ասպիսակ գյուղի մոտ նշանավոր վանք։
** Ձեռագրի հաջորդ թերթն ընկած է, հիշատակարանը մնում է թերի։

*սրբոց իւրոց...։ Ցիշեսջիք զտացող սուրբ աւետարանիս՝ զԱստուածատուր... և զիս զամենամեղ անձամբս կորուսեալս՝ գծող և եթ անուանիմ՝ Ներսես կոչեցեալ։*

71.

## ՅԱՌԻՔ ԲԱՐՍՂԻ ԿՆՍԱՐԱՑԻՈՅ ԵՒ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

**Երևան 4234**

*Գրիչ՝* Խաչիկ

36 բ *Զմեղուցեալ ծրողս զԽաչիկ սարկաւագ և սպասաւոր բանի յաղօթս յիշեցէք, ո՜վ սուրբ ընթերցողք, և ողորմեսցի Քրիստոս ձեզ. և ողբալանացն ներուն հայցեմ, զի այսքան է կար մեր։ Ի թուիս ՋԾԶ. (1307), ի հրոտից ի Ժ. (10)։*

72.

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

**ՀԱ. 1922. էջ 154***

*Վայր՝* Կիլիկիա

*Ի թուականիս Հայոց ՋԾԶ. (1307), ի նոյեմբերի ի ԺԷ. (17) աւրն սպանաւ աւագ պարոն Հայոց Հեթում և գեղուղէշ և ամենաբարի պատանին, եղբաւր որդին իւր՝ Լեոն, որդի պարոն Թորոսի, ի ստորոտս Անարզաբու, յանաւրէն Պելարղոյէ, և սուգ մեծ թողին ազգիս Հայոց։ Արդ, աղաչեմք զամենեսան, յիշեցէք սրտի մտաւք զվերոյասացեալ պարոն Հայոց զՀեթում և զբարեպաշտ թագաւորն զԼեոն, որք նահատակեցան ի վերայ ազգիս Հայոց, զի դասեսցէ զնոսա յաջակողմեանն իւրում Քրիստոս աստուած, որ աւրհնեալն է յաւիտեանս, ամէն։ Նայ և զնահատակակիցս նոցին՝ զՕշին՝ ասպարապետն Հայոց և զպարոն Վասակ՝ հաւրեղբայրն իւրեանց։*

* Ձեռագիրը պատկանել է Ժաք Մաթոսյանին, գրված է 1283 թ. Լևոն Գ. թագավորի համար։ Հիշատակարանը հրատարակված է լուսատիպ նմանահանությամբ։





## 73.

## Շ Ա Ր Ա Կ Ն Ո Ց

*Երևան 1590 (Տես նաև 1522 թ.)*

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Սիս

*...Գրեցաւ եղոյնակաւոր աւետս ի թուականութեանս Հայոց ՉԾԷ. (1308), ի պարոնութեանս Հայոց* Աւշնի *և եղբաւր իւրոյ* Ալինախի, *և ի հայրապետութեանս տեառն* Կոստանդեայ Կեսարացոյ, *ի մայրաքաղաքս ի* Սիս, *ձեռամբ բազմամեղ գրչի* Գրիգորի *դպրի, ի խնդրոյ պատուական քահանայի* Վասիլի. *ի վայելումն զեռաբոյս որդւոյ իւրոյ*
296 ա Ներսէ ‖ սի *դպրի։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ տառի և աւգտիք ի սմանէ, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զպատուական քահանայն զ*Վասիլ, *զաստուածատուր որդին իւր՝ զ*Ներսէս *դպիր, և զմարմնակիցն իւր՝ զ*Մարեմքազ, *և զերկուս այլ որդիսն իւր ըստ աշխարհի՝ զ*Թորոս *և զ*Գրիգոր, *որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց։ Ընդ նոսին և զիս, զեղկելի գրիչս զ*Գրիգոր. *և զծնաւղսն իմ, աղաչեմ յիշել ի տէր, քանզի կարողութեամբն աստուծոյ գրեցի և զարդարեցի ոսկով։ Դարձեալ աղաչեմ յիշել ի տէր զհայրն իմ և զուսուցիչ՝ զ*Յոհաննէս *քահանայ և զմայր իմ։ Եւ վասն խոշորութեան և սղալանաց, որ գտանի ի սմա, աղաչեմ անմեղադիր լինել, քանզի ի դառն և ի դժուարին ժամանակիս գրեցաւ, որ յայսմ ամի անաւրէն գլխաւորն* Պուլարղու՝ *յազգէն նետողաց, պատրանաւք եսպան զդեռաբոյս մանուկն և զնոր աւծեալ թագաւորն* Լեոն, *և զաւագ պարոնն* Հեթում, *և զայլ իշխանսն։ Եւ աստուած յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի ի միւսանգամ գալստեանն իւրում, և նմա փառք յաւիտ[եանս], ամէն։*

## 74.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՑ ԹՂԹՈՑՆ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՑ

*Երևան 4673 (տես նաև 1790 թ.)*

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Վանայ գաւառ, Աւանս գիւղ

677 ա *Արդ, այսմ հոգևոր և աստուածային գանձարանիս ցանկացայ ես՝ մեղուցեալ և անարժան ծառայս աստուծոյ* Յովանէս, *ի ձեռն* Յոհաննէս *քահանայի, հոգևոր եղբաւր մերոյ, որ առաջնորդ եղև այսմ գործոյ...։*

577 բ ...Ի թուականութեանս Հայկազեան տումարիս ՉԾԷ. (1308) գրեցաւ և կազմեցաւ ձեռամբ մեղաւորի և անպիտանի Ծովանէս քահանայի, յաշխարհակալութեան ազգին նետողաց Խարպանդուղըլ ղանի, և ի հայրապետութեանն տեառն Զաքարէի Աղթամարայ Հայոց կաթողիկոսի, և յառաջնորդութիւն գերայնռչակ և սուրբ ուխտիս Վարագայ՝ տէր Սարգսի, որ ղաւրինակն երետ, շնորհեսցէ նմա տէր աստուած զանվախճան կեանսն, ամէն։ Բայց գրեցաւ ի գաւառիս Վանայ, ի գեաւղս, որ կոչի Աւանս, ընդ հովանեաւ սուրբ Յովաննու Կարապետի և սուրբ Գրիգորի հայոց լուսաւորչի, որք են բարեխաւս առ տէր վասն մեր...։

## 75.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7649 տես նաև 1338)

Գրիչ՝ Վարդ
վայր՝ Թէոդոպաւլիս

ա

242 ա Կատարեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ մեղուցեալ և անմար գրչի Վարդ երիցո, ի թուաբերութիւն Հայոց ի ՉԾԷ. (1308), ի մայրաքաղաքիս Թէոդոպաւլիս. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս։ Արդ, աղաչեմ զամենեսան, որք կարդայք, յիշեցէք ի Քրիստոս զմեղաւք լցեալս, զի և Քրիստոս ձեզ ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Հետ. ստացող՝ Թանկ Յազիզ

բ

312 բ Ես Թանկ Ցազիզ, որ գնեցի զաւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց և զաւակաց իմոց, որք կարդայք կամ ընդաւրինակէք յիշեցէք ի Քրիստոս, և յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի առհասարակ. ամէն։

## 76.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Շուշի 11. Թոփճեան, Ցուց. Խաչիկ վրդ., Ի., էջ 46

Գրիչ՝ Ղազար
վայր՝ Ասպիսնկայ վանք

ա

Գրեցաւ... ի թուիս ՉԾԷ. (1308), յանապատիս, որ կոչի Ասպիսնկայ, ընդ հովանեաւ սուրբ Ցարութեանս... յառաջնորդութեան Ստեփաննոս

*վարդապետի։ Գրեցաւ ձեռամբ Ղազարի սուտանուն կրաւնաւորի... ի վայելումն Հայրապետի։*

Բ

*... Զվերջին ստացող, ծաղկող և նորոգող սուրբ աւետարանիս տէր Կիրակոս քահանայ և Ծերուն ծաղկող յիշել։*

77.

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

**Երևան 183**

Գրիչ՝ Կար[ապետ]

428 բ *Զմեզաւք զատապարտեալս՝ զփցուն զբրիչ աւետարանիս՝ զԿա-ր[ապետ] և զծնաւղսն իմ՝ զփոխեալսն ի Քրիստոս, յիշեա աղաչեմ, ո՜վ սուրբ բարունի։*

573 ա *Գրեցաւ ի Հայոց թուիս ի ՉԾԷ. [1308]։*



ՉԾԸ **1309**

78.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սեբաստիա, Ս. Նշան, 21, ՀԱ, 1924, էջ 518—519*

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Կիլիկիա

ա

68 *Յաստիս ի վայելս և յաւուրն Քրիստոսի ի պարծանս եղիցի սուրբ աւետարանս աստուածասէր պարոնիս մերոյ տիկին* Զապլունի, *և աստուածատուր որդւոց, պարոն* Հեթումին *և* Վասիլին *և* Աւշինին, *և իւրոց դստերաց* Շահանդուխտին *և* | | |

բ

189 *Զաստապեալս բարեաւք և զփարթամս չարեաւք, զեղկելիս ոգւով և զթշվառականս մարմնով, զծառայից ծառայ* զՍտեփաննոս *սարկաւագ, աղաչեմ զձեզ, սուրբ հարք և եղբարք մեր ի Քրիստոս, ցաւակցաբար յիշեցէք զանպիտանս ի բարին Քրիստոս, հանգիստ և ողորմութիւն գտանել մեզ և մերոցն յաւուրն այցելութեան. և ըստ հաւատոց ձերոց առնոյք զփոխարէն ի յայն, որ զոր կամի կարէ տալ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

*Զստացող սուրբ աւետարանիս, զքրիստոսասէր և զթագազարմ տիկինն, զդուստր սպարապետի ամենայն հայոց՝ զտիկին* Զապլուն, *որդաւք իւրովք և բնաւին զարմիւք, յիշեցէք աղաւթիւք առ տէր, ո՛վ մանկունք Սիոնի։*

գ

384 *Որք յաստուածապատում սուրբ տառիս լուսաւորիք՝ հարք մեր և եղբարք մեր ի Քրիստոս, զստացաւղ սորա, զտիկին* Զապլուն, *զդուստր գունդստապլի Հայոց, և զաստուածատուր որդիք իւր՝* զՀեթում *և* զՎասիլ, զԱւշին, *և զերկու դստերսն իւր՝* զՇահանդուխտ *և* զԱկայ, *ծնողաւք նորին, և համայն ընտանեաւք, և ամենայն բնաւին զարմիւք, յիշեցէք ի բարին Քրիստոս...։*

*Եւ ապիկար գծողիս սորա* Ստեփաննոսի *սարկվարգոյս, ողորմեա տէր իմ, տէր։*

դ

*Ով, զնուաստ կազմաւղ աստուածախաւս մատենիս,* զՅակոբ Մեծպարոնեայ *աղաչեմ յիշել ի տէր Յիսուս, ո՛վ աստուածասէր ընթերցաւղք, և աստուած զձեզ յիշեսցէ. և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Ի թվ. ՉԾԸ. (1309) կազմեցաւ սայ ընդ հովանեաւ Տղայ սուրբ Գորգոյ։*

## 79.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 3393 (տես նաև՝ 1367, 1383, 1553 և 1657 թ.թ.)*

Գրիչ՝ Տիրատուր
Վայր՝ Գոլիձոր

258 ա ...*Գրեցաւ սուրբ աւետարանս ի թվ. ՉԾԸ. (1309), ի մեծ դպրատանս, որ կոչի* Գոլիձոր, *ի վարժապետութեան մեծիս* Եսայեայ *և եռամեծին* Դաւթայ, *ձեռամբ անիմաստ գրչի* Տիրատուր Կիլիկեցոյ: *Արդ. աղաչեմ զհանդիպաւղսդ յիշել յարժանաւոր յաղաւթս ձեր զանպիտան ռոչակս և ինքն՝ տէրն ամենեցուն, յիշէ զյիշողսն մեր յիւրում արքայութեանն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

## 80.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Թորոս Աղբար, Ա. էջ 57—63*

Գրիչ՝ Տիրատուր

ա

... *Սուրբըդ Մաաթէ՝ նախ մաքսաւոր*
*Եւ ի յետոյ աւետաւոր,*
*Յիշեա առ քո տէր երկնաւոր,*
*Զիս* Տիրատուր *յոյժ մեղաւոր։*

բ

*Աղաչեմ զեղկելի գրիչս* զՏիրատուր *յիշել ի տէր աստուած։*

## 81.

## ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1751*

Գրիչ՝ Տիրատուր

131 բ *Յիշեցէք յաղօթս ձեր զմեղուցեալ անձն իմ՝* զՏիրատուրն՝ *Տէրն տան, որ չափով որ չափէք՝ յոլովիւք առնուցուք զփոխարէնն, ամէն։**

## 82.

## ՏՕՆԱԿԱՆ

*Երևան 3931*

Գրիչ՝ Յոհանէս

ա

273 ա ... *Գրեցաւ Ջ Նամակ Տաւնակիս հրամանաւ <և> արդիւնագործ սուրբ բաբունոյն* Կիրակոսի, *ձեռամբ իմով՝* Յովանէս *գծողի։ Արդ,*

* *№№ 80 և 81 հիշատակարանների գրիչ Տիրատուրին նույնացնում ենք նախորդ հիշատակարանի համանուն գրչի հետ. և ըստ այդմ, սույն անթվական հիշատակարանները տեղադրում ենք 1309 թվաշարքում, № 79-ին առընթեր։*

աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, անմեղադիր լինիք խոշորութենն և խալաթութեանն, զի անհմուտ էի գրոցս այս, ես առաւել աւրինակիս, որ չէի ամենեին լսել դսայ։

Բ

344 բ Ո՛վ, եղբայր Կիրակոս, խոշորութեան և սխալանաց անմեղադիր լեր, զի Բ. դաս առաջի եդեալ կայ, տագնապիմ, ըՖն. ՉԾԸ. (1309) դրեցաւ։

## 83.

## ՈՍԿԵՓՈՐԻԿ

Վենետ. 268, Սարգս. Ցուց. Բ. էջ 882

Գրիչ՝ Յովհաննէս

291 ա Ո՛վ, արքա իմ և տէր, բարունի բարի և իմաստուն, համայն ցանգալի Կիրակոս, զսակաւ գծեալս ընկալ ի մէնջ և զքո աղքատս հոգով Յովհաննէս մի մոռանայր ի մաքրափայլ յաղօթս քո, իսկ դրոյս անմեղադիբ [լեր], զի կար իմ այսչափ էր։*

## 84.

## ՃՍԱՑԻ ՆՒ ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ

Սեբաստիա, Ս. Նշան № 3, ՀԱ. 1923, էջ 72—74 (տես նաև 1380)

Գրիչ՝ Դանիէլ

վայր՝ Աղթամար

703 Աստանաւր սկզբնաւորեալ աստուածային տառս այս աստուածընկալ սուրբ առաքելոյն Պաւղոսի, ի ստոյգ և յընտիր աւրինակէ, ի կղզին Աղթամար կոչեցեալ, ընդ հովանեաւն ամենայաղթ սուրբ Խաչի և սուրբ Նշանի և աստուածամուխ սուրբ Գեղարդեան, ի հայրապետութեան տէր Զաքարիայի, զոր տէր աստուած զնա ընդ երկայն աւուրս արասցէ, ամէն։

Եւ գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՉԾԸ. (1309), ի խնդրոյ աստուածարեալ և հոգիազարդ կրաւնաւորի Գրիգորի, զոր յոյժ փափագմամբ ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց, ի վայելումն անձին իւրոյ, իսկ յետ ելից յաստեացս՝ յիշատակ անջինջ հոգոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց և եղբարցն և ազգայնոցն ամենեցուն, կենդանեաց և հանգուցելոց։ Եւ ես ամենամեղս և ամենարժան Դանիէլ սուտանուն կրաւնաւորս, տեսեալ զփափագ և զսէր սորա, որ առ հոգեորսն, և ըստ իմում կարի յանձն առի և գրեցի զսա մեղսամած մատամբ իմով։ Իսկ դո՛ւք, հանդիպեալքդ սմա տեսութեամբ, կամ աւրինակաւ, կամ

* Անթվական սույն հիշատակարանի գրիչ Յովհաննեսին նույնացնում ենք նախորդ հիշատակարանի գրչի հետ, և ըստ այդմ հիշատակարանը տեղադրում ենք 1309-ի թվաշարքում։

ընթեռնլով, կամ լսելով, հարք և եղբարք պատուականք և սրբասէրք, աղաչեմ յիշեցէք յընդունակ աղաւթս ձեր զստացաւղ սուրբ գրոցս, զերիցս երանեալ կրաւնաւորն զԳրիգոր, և զծնողսն իւր, և զեղբարսն, և զորդիսն ամենայն, որպէս զի աղաւթիւք ձերովք և ամենայն սրբոց ողորմեսցի Քրիստոս աստուած հոգոյ նոցա, և յահաւոր գալստեան իւրում թողութիւն շնորհեսցէ նոցա և արքայութեան արժանի արասցէ, ամէն։ Ընդ նոսին և զիս զանարժան և զմեղաւք լցեալս՝ զանյիշելի գրիչս զԴանիէլ, յիշելոյ արժանի առնել... Նաև զծնաւղս մեր, զհանգուցեալսն ի Քրիստոս, և զքոյր մեր՝ զՆուար, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս...։

85.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7832

Գրիչ՝ Տիրանուն

վայր՝ Բասենոյ գաւառ, Պատժուան դղեակ

230 ր ... Արդ, եղև աւարտումն գրութեան սուրբ աւետարանիս ի թուականիս Հայոց ՁԾԸ. (1309), յաստուածազարդ հայրապետութեանն տեառն Կոստընդնայ հայոց կաթողիկոսի, և ի քրիստոսապսակ թագաւորութեանն Հայոց՝ Աւշինի, և յարժանապատիւ եպիսկոպոսութեանն սրբասէր և աստուածամեծար արքեպիսկոպոսին՝ տեառն Աստուածատուրի, որ ի գաւառիս Բասենոյ, կոչեցեալ նաև տեղի հանկըս[տեան | | | մերոյ. յորում | | | է, ի դղեակս, որ կոչի Պատժուան, ընդ հովանեաւ սուրբ կաթողիկէիս Աստուածածնի. զոր, աւգնականութեամբն աստուծոյ և քրիստոն[է]ից և աշխատութեամբ անձին իւրոյ, նորոգեալ էր վերստին, և աստուածասէր և ազգատասէր յիշատակ բարեաց նմա**, և ծնաւղաց իւրոց, և ազգատոհմից, և բարեխաւս հաշտութեան առ աստուած՝ պարգևիչն ողորմութեան, որոց լուսալիր տաճարացս այժմ ոպասաւոր եմ ես՝ մեղուցեալ ծառայս և անիմաստ և փցուն գրիչս Տիրանուն անարժան կրաւնաւորս...։

86.

ԱՒԵՏԱՐԱՆ

Հալեպ. Սր. Մնկ. 47 Սիւրմ. Ա. 93—94

Գրիչ՝ Հայրապետ

վայր՝ Կիլիկիա, Փոս անապատ

496 ... ՁԾԸ. (1309) թուականիս Հայոց գրեցաւ սուրբ աւետարանս յաշխարհիս Կիլիկեցւոյս. յուխտս Փոս կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ

* Հիշատակարանը, որոշ հապավումներով, ունի նաև Գ. Փիրղալամյանը (Երևան № 6273, էջ 113—115), նրա արտագրության մեջ կա «զպատուական քահանայն զՍիմէոն՝ զուսուցիչն մեր» նախադասությունը, որ բացակայում է ՀԱ.-ի հրատարակությունից։

** «Նմա» բառից հետո տողերի արանքում, այլ ձեռագրով ավելացված է մի տող՝ «Խամաթին մեղաց թողութիւն»։ Խամաթը, ամենայն հավանականությամբ, ձեռագրի հետագա ստացողներից է։

Աստուածածնի՛ն և սուրբ Գրիգոր Լուսաւոր[չ]ի՛ն մերոյ, ի թագաւորութեան Աւշնի, և ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեա. որք յայսմ ամի աքսորեցին զմեզ ի կղզւոյն Կիպրոսի, վասն ոչ հնազանդելոյ աւանդիցն Քաղկեդոնի։

Մասն մի գրեալ էր Յովհաննէս քահանա, տացէ նմա տէր աստուած վարձս բարիս։ Ու այլս աւարտեցաւ ի վայելումն մաքրամիտ և ընտիր կուսակրաւն քահանայի Պետրոսի, ի վայելս անձին իւրոյ Վասլի, և յիշատակ նոցին ոգւոց և զարմից իւրեանց, որոց ողորմեսցի Քրիստոս աստուած մաղթանաւք բոլոր սրբոց իւրոց, գրելով զանուանս նոցա ի դպրութեան կենաց։ Մաղթեմ ընթերցողացդ և ես՝ կրկնախաւար գրաւղս Հայրապետ, յիշել և զիմ անարժանութիւնս և զիմսն ամենայն ի բարի, և բարութեանցն աղբեր զձեզ յիշեսցէ ի նոյն, և ինքն է և եղիցի աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 87.

## ՃԱՇՈՑ

**Երևան 4911**

Գրիչ՝ Խաչատուր

207 բ Փառք ամենասուրբ երրորդութեանն, հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, որ աւարտեաց դհոդիարուխ տառս ձեռամբ յոգնամեղ և բցուն ղրչի Խաչատրոյ, ի խնդրոյ պատուական քահանաի Վարդանա, որ ստացաւ զսա յիշատակ իւր և ծնողաց իւրոց և ի զուարճումն մանկանց իւրոց։ Արդ, աղաչեմ զամենեսեան, ոյք լուսաւորիք ի սմանէ, յիշեցէք զՎարդան քահ[անայ]. և զծնողսն, և զեղբարսն, և զամենայն արեան մերձաւորսն իւր ի տէր։ ‖ Ընդ նմին և զմեղապարտ ծրող, և
208 ա զմերսն ամենայն. և որք յիշէք, յիշեալ լիջիք յանյիշաչար տեառնէ մերմէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Ի թվիս ՉԾԸ. (1309)։

## 88.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 2174**

Գրիչ՝ Աւագ

ա

184 բ Աղաչեմ անմեղադիր լինել վերջին ճառիս, զի աւրինակ տխմարագիր էր և ես անարհեստ էի։ ՉԾԸ. (1309) թվիս գրեցաւ, յամսենս աւգոստոս, ձեռամբ մեղապարտ և անարժան իրիցու տէր Աւագի. յիշատակ ինձ և իմոցն ամենայն. որք կարդայք կամ աւբինակէք, մեղաց թողութիւն խնդրեցէք և Քրիստոս զձերն թողու, ամէն։

Բ

227 ա Զմեղուցեալ ե ղանարժանս ի քահանայս՝ զաէր Աւագ գրողս յիշեցէք աղաւթիւք, ո՜վ սուրբ հայրք և եղբայրք, ե անմեղադիր լէք* խոշորութեան գրոյս և սխալանաց, զի ծով աշխարհի տարակուսեալ ծփէի ի մէջ մեղաց. և Քրիստոս, որ առատն է ի տուրս բարեաց, մեզ և ձեզ ողորմեսցի՝ գրողիս, և կարդացողացդ, և լսողացդ, և աւրինակին շնորհաւղին, ամէն։

* Իմա՝ «լերուք»։





89.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 380 (տես նաև՝ 1443 թ.)

Ստացող՝ Մամախաթուն, գրիչ՝ Սարկաւագ
վայր՝ Ցոնցովանք

309 բ …Որպէս և ես, անարժան աղախինս Քրիստոսի Մամախաթուն, ազատազարմ և իշխանուհի գոլով այսու կենաւքս, մտաբերեցի զանցաւոր և զունայն կենցաղս, և ստացա զսուրբ աւետարանս առաջնորդ ինձ անանց կենացն, և բարեխաւս աննաչառ և անկաշառ դատաստանին Քրիստոսի, և յիշատակ հոգւոյ իմո յետ ելից իմոց, և ծնաւղաց
310 ա իմոց, և եղբարց՝ ազատաց և ազատազարմաց, ‖ և ի լուսաւորութիւն մանկանց նորածնելոց նոր Սիոնի։

Արդ, ով սուրբ հարք և առաքելագումար դասք քահանայից, յորժամ վայելէք ի քաղցրաճաշակ յեզեմատունկ առատածառոյդ վտակաց… յիշեսջիք զաղախինս Քրիստոսի զՄամախաթունն և զբարեպաշտ ամուսին իմ՝ զպատուելի իշխանն Չաչուռ, որ թէպէտ ազգաւ վիրացի
310 բ գոլով, այլ կամաւք բարեկամ ‖ ամենայն եկեղեցեաց, և զծնաւղոն իմ՝ զՍուպայն և զՏիկնանն, և զեղբարսն իմ՝ զՀազարբէկն, զԿուկորն և զԱմիրն, և զքոյրն իմ, և զլաւակսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն. հանդերձ ամենայն զարմիւք՝ կենդանեաւք և ննջեցելովք, զի կենդանիքն պարագայց ամաւք անփորձ պահեսցին, և հանգուցելոցն հանգիստ և ողորմութիւն շնորհեսցի յամենառատ բարերարէն աստուծոյ. զի ձեզ յիշողացդ և մեզ յիշելոցս առհասարակ, ողորմեսցի բարեգութն աստուած, ամէն։

Արդ, գրեցաւ գիրս ձեռամբ ամենամեղ անձին՝ Սարկաւագիս, յ[ը]նտիր և յատուկ աւրինակէ, առաջնորդութեամբ երջանիկ և ընտրեալ
311 ա բարունոյն Պետրոսի, զի յոյժ աշխատ եղև աւգնականութեամբ ‖ և ծախիւք մինչ ի վերջ բանիս, որոյ Քրիստոս աստուած, աղաւթիւք ամենայն սրբոց, վարձս բարիս պարգևեսցէ։ Ի թուականիս Հայոց ՉԾԹ. (1310), յաշխարհակալութեան ազգին Նետողաց Ղարպանտա ղանին, և հայոց թագաւ[որութեան] Սլինախին, և ի դասապետութեան մեծ իմաստնոյ Եսայոյն: Ի գաւառս Այրարատու Անբերդ կոչեցելոյ, ի սուրբ և յաստուածաբնակ հանգիստարանիս Ցոհանովանք, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս և մեծափառ Կաթուղիկէիս դրեցաւ, յեպիսկոպոսութեան և յառաջնորդութեան աթոռայս տէր Ներսէսի՝ սրբափայլ և ճգնազգեաց զուարթնոյ, և յիշխանութեան մերոյ գաւառիս Քրդին, որդոյ Տայիրին, թոռն մեծին և բարեպաշտ Քրդին:

311 բ Բայց զաղէտ և դողք տարակուսանացս մ || պատմեսցէ, զի ի խիստ և յանհնարին հարկապահանջութենէ ծախեա[լ] լինէին ուստերք և դստերք աշխարհիս մեր, և բազում դեղք և վանորայք աւէր և անհանդիսա, և քահանայք տարաշխարհիկ լինէին. և այս ամենայն վասն մեղաց մերոց։

Եւ դարձեալ կրկին աղաչեմ զձեզ, ով դասք սրբազանից, վերստին յիշման արժանի առնել զվերոյգրեալքս ի սմա, զամենաւրհնեալ բարի տիկինն զՄամախաթունն՝ ստացող գրոցս, և զծնաւղսն նորին, և զամենայն արեան մերձաւորսն, և զվարդապետն Պետրոս Ուշոյ վանացն, որ առաջնորդ և կատարումն եղև բանիս, և զիս զՍարկաւագս՝ ապիկար և յետին գրչաւղակս և կազմող, և զսպասաւորս իմ, որ յոյժ յուսով
312 ա սպասաւորեաց. և || խոշորութեան և սխալանացն անմեղադիր լինիք, զի յոյժ ի տագնապ ժամանակ էաք. և Քրիստոս, որ տէր է պարգևաց և տուող ողորմութեան, ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշելոցս ողորմութիւն պարգևեսցէ, ամէն։

Յիշեսջիք և զվարդապետն իմ զԿիրակոս:

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս հրամանաւ և ար[դ]եամբք ամենաւրհնեալ Մամախաթունին և ընծաեցաւ Ուշոյ սուրբ զաւրավարին Սարգսի, մի ոք իշխեսցէ հանել և հեռացուցանել ի վկայարանէ սուրբ զաւրավարին, և թէ ոք հանդգնի գողանալ, կամ ծախել, կամ այլ ինչ պատճառ՝ զատի յաստուծոյ և մեր մեղացն տէր լինի։

## 90.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4446

Գրիչ՝ Պաւղոս
Վայր՝ Յարատես վանք

ա

132 բ ...Գեղազարդ և գերամաքուր սուրբ և երանաշնորհ քահանայն Տէրունականն. և գերապատիւ և քրիստոսասէր հայր նորա Սախաթան... ետուն գրել զսա իմոյ՝ մեղաւք լցեալ հոգւոյ Պաւղոսի սուտանուն վարդապետի, որով իմ՝ հայեցեալ ի յեռափափաք սէր նոցա, որ առ աստուած, ետու զանձն յաշխատութիւն, և [ի] ծերացեալ ժամանակի | | | * ձեռաւք գրեալ աւարտեցի զսա, ընդ հովանեաւ ամենազաւր աջոյն Յիսուսի, ի դրունս սուրբ Սիոնի, և սուրբ Աստուածածնի, և սուրբ Կարապետին, և կենսակիր սուրբ Նշանացս, ի վանս, որ յորջորջի Յարատես, ի թվականիս ՉԾԹ. (1310), ի խանութեանն Թաթար[ին]** Խարվանդին, և ի թագաւորութեանն Հայոց Աւշինին, և ի հայրապետութեանն Կոստանդեայ, որոյ թողեալ զկարգ և զաւանդութիւն սուրբ հարցն մերոց ընթացաւ զկնի փռանգաց և հոռոմոց, զոր ինքն տէր Յիսուս

* Մեկ տող ջնջված է։

** Փակագծի մեջ առնված՝ «ին» տառերը աղոտ են պահպանվել, կարելի է կարդալ նաև «Թաթար[այ]»։

հոգացէ, և ի վերադիտողութեան Սիւնեաց նահանգիս տեառն Յովհաննիսի մականուն Ուրպելի՝ արհիական եպիսկոպոսի և ճշմարիտ և
133 ա սուրբ իմաստասիրի, | զոր պահեսցէ Քրիստոս աստուած սուրբ և անբիծ յերկար ժամանակաւ, ի պարծանս և ի լուսաւորութիւն կաթուղիկէ սուրբ եկեղեցոյ, և յիշխանութեան այսմ գաւառի երկու հարազատացն՝ պարոն Բուրթելին և պարոն Պուղտային և պարոն Ջալալին, զորս պահեսցէ զնոսա Քրիստոս աստուած պարագայց ամաւք՝ զաւրաւոր և յաղթող ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի։

Եւ արդ, աղաչեմ զամենեսեան սիրողս աստուծոյ, որք կարդայք և լուսաւորիք յաստուածախաւս տառէս, յիշեսջիք աղաւթիւք և պատարագաւք զստացաւղքս սորա՝ զսուրբ և զաստուածազարդ քահանայն, զպատուեալն և զզարդարեալն ի հոգւոյն սրբոյ զՏէրունականն... և զհայր նորա՝ զԱսդւոբան, և զմայրն նորա՝ զԹախտաւորն, և զկողակիցն իւր՝ զՄամռուկի, և զաստուածատուր որդին իւր՝ զԳրիգոր, և զհարազատսն իւր...։

Յիշեսցէ բարեգութն աստուած զպատուելի տանուտէրն զՄխիթար։

Ջեռնտու՝ Սուզայ

Բ

Ես, աղախին և ծառայ տեառն աստուծոյ Սուզայ, ուղնական եղէ ի գին սուրբ աւետարանիս Ճ. [100] սպ[իտակ], և խնդրեցի, զի յամենայն ամի Ա. աւր պատարագաւ յիշեսցէ զիս Տէրունականն | | |*

133 բ Արդ, աղաչեմ զամենեսեան սիրողս աստուծոյ, ես նուաստ աշխատաւղ սորա Պողոս, յիշեսջիք աղաւթիւք և զիս ի մեղաց թողութիւն, ծնաւղաւք մերաւք և ամենայն զարմիւք...

91.

## ՄԱՇՏՈՑ

Փիրզ. 6273, էջ 116 (Լիմ)

Գրիչ՝ Աբրահամ
վայր՝ Լիմ կղզի

...Իսկ կատարեցաւ սա ի յարմարական և ի գեղեցիկ մենաստանիս՝ ի կղզիս, որ կոչի Լիմն, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և սբբոյն Գէորգեայ նորակազմ տաճարիս, և ամենայնաղթ Աջիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, որ է ամենեւին բարի, աննենգ և անցասումն, նմանեալ աթոռակալին իւրոյ սուրբ Գրիգորի խոնարհութեամբն և համբերութեամբն, որ և նա ի մէջ թունաւոր օձիցն համբերեալ հնգետասան ամ, նոյնպէս և սա ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, ի մէջ անօրինաց և արիւնարբու գազանաց ազգին նետողաց, որ հանապազ խոցեն և վիրաւորեն ի

* Երկու տող ջնջված է։

հողի և ի մարմինս։ Զոր տէր աստուած հալածական և նկուն արասցէ զամենայն թշնամիս իւր՝ զերևելիսն և զաներևոյթոն, և ինքն ընդ երկայն աւուրս արասցէ ի փառս իւրում և ի պարծանս մեր, ամէն։ Եւ ի թուաբերութեանս հայոց ՋԾԹ. (1310), ի յառաջնորդութիւնն սուրբ ուխտիս պատուական եպիսկոպոսի տէր Յովհաննու, որ ի յառաջնորդութեան իւրում մեզ հանդիստ շնորհեաց։ Եւ ստացայ զսա ի յարդար վաստակոց իմոց [ես]՝ Աբրահամ կրօնաւոր, և իմ մեղսամած մատամբ պծագրեցի և ընծայեցի զսա ի դուռն սուրբ Գէորգեայ տաճարիս, ի պայծառութիւն և ի վայելումն մանկանց Սիոնի, զոր վերստին նորոգեաց բարի հովիւն և հովուապետն տէր Զաքարիա, որ է կաթուղիկոս ամենայն Հայոց։

92.

## ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

*Կերլա, ԼԲ.—Գովրիկեան, Դրանս. Հայոց Մետրոպոլիսը, էջ 342—346*

Գրիչ՝ Ստեփ[աննոս] Գոյներիրիցանց
վայր՝ Կիպրոս կղզի, Մաղուսայ

ա

...Գրեցաւ պրակք սուրբ Առաքելոցն, Կաթողիկէիւքն հանդերձ, հրամանաւ աստուածասէր եւ բարեպաշտ պարոնին տիկին Ալիծին, մաւրքաւր թագաւորացն Հայոց, ի մխիթարութիւն կենաց իւրոց եւ յիշատակութիւն հոգւոյ իւրոյ, ի ձեռն իմոյ Նուաստիս Ստ[եփաննոսի] Գոյներիրիցանց: Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զհանդիպաւղսդ՝ յիշել զարժանին յիշատակի՝ զաստուածասէրն եւ զբարեպաշտուհին, հանդերձ ամենայն նախնիւքն իւրովք եւ ծննդովք, այլ եւ զտառապեալ զբազմամեղ գրչիս, եւ աստուած առհասարակ ձեզ և մեզ ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ի թու. ՋԾԹ.(1310) գրեցաւ, ի բազմաթշուառ ժամանակի, որոց տարակուսելոցն այց արասցէ մարդասէրն աստուած, բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածնին, ամէն։

բ

...Գրեցաւ աստուածաբան աւետարանս Յոհաննու ի հրամայական խնդրոյ աստուածասէր եւ բարեպաշտուհի պարոնին տիկին Ալիծի ռինեջալեսի Կիպրոսի, որ էր դուստր պարոն Հեթմոյ, որ տէր էր Լամբունին՝ յիշատակն նորա աւրհնութեամբ, եւ ողորմեսցի նմա Քրիստոս աստուած, ամէն։

Արդ, վերոյգրեալ բարեպաշտուհի պ[ա]ր[ոնն] բազում ամս խնամարկեաց զիս բազում եւ մեծ գթով, գրեթէ որպէս որդեսէր ծնաւղ զանդրանիկ իւր, այնպէս գթաց ի նուաստս եւ յանարժանս։ Եւ ես՝ յետնեալս յամենայն բարեաց, սուտանուն Ստեփ[աննոս], որ ամաչեմ

ի գերագունէ քահանայ անուամբ կոչիլ, այլ մականուամբ՝ Գոյներիրիցանց: Վասն որոյ, որպէս յոյժ պարտական նորա անճառ բարեացն՝ յերեսս անկեալ աղաչեմ զառհասարակ հանդիպաւղսդ, յիշել ի բարին զվերոյգրեալ բարեպաշտուհի պ[ա]ր[ոնն], ծնողիւք իւրովք եւ ամենայն զարմիւք։ Այլ եւ զմեղաւոր հողս՝ զտառապեալ գրիչս, ծնողիւք իմովք եւ ամենայն զարմիւք։ Եւ Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս, առհասարակ ողորմեսցի ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս, ամէն։

Գրեցաւ ի Թու. ՉԿԱ. (1312), ի դեկտեմբ. ԻԹ. (29), ի Կիպրոս կղզի, ի Մաղուսայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին։ Արդ, աղաչեմ, որ ոք հանդիպեսցի սմա՝ մի եպերեսցէ զիս վասն ճապաղ ցանկիս, թէ երբ զայլ աւետարանսն չէ գրեալ, նա ոչ էր պիտոյ սմա ցանկ ճապաղ, այլ ես ոչ կամեցայ յիմ ձեռահիւսս պակաս իրք թողուլ, զի ի գեղեցկութիւն՝ պակասն է նախատելի եւ ոչ առաւելութիւնն. ահա յայտնի է, որ ուղիղ մտաւք որոնէ՝ բաւական է իմաստնոց։ Այլ յինէն, ծերացելոյս մարմնով եւ մտաւք, հազիւ այսչափս ծրագրեցաւ, զգեղեցիկն վեհքն ծրագրեն, զտեսանաւղքդ աղաչեմ, մեր յանցանացն թողութիւն շնորհել, եւ աստուած ձեզ, ամէն։

93.

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա, Ամենափրկիչ 38, Տ.—Ավետիսյան, Ցուցակ, էջ 138—139 (տես նաև 1629)

Գրիչ՝ Տիմաւթ
վայր՝ Հռոմ

ա

334 բ ...Ցամի էՃ-երորդի Ծ-երորդի իններորդի թու. հայկազնեան տումարի (1310) աւարտագործեալ եղև աստուածախաւս և կենսատու սուրբ աւետարանս...։ Զոր իմ՝ մեղապարտ և սուտանուն քահանայի Տիմաւթի, ցանկացաւղ եղէ այսմ աստուածախօս մատենի և ստացա զսա ինձ զանձ անկողոպտելի և փրկանս մեղուցեալ հոգոյ իմոյ, ընդ նմին և ծնաւղաց իմոց, և տամ զսա ի տունն Հայոց Փիրուժ քաղաքին, յիշատակ անջինջ ինձ և իմսցն ամենայն...։

Բայց արդ, գրեցաւ սա ձեռամբ հոգնամեղ և սուտանուն և փցուն և յետին գրչի Տիմաւթի, ի լաւ և յընտիր աւրինակէ, ի հռչակաւոր մայրաքաղաքս Հռոմ, ի հանգստարանս Հայոց, առ դրան սուրբ առաքելցն Պետրոսի և Պաւղոսի, և սրբուհոյ Աստուածածնիս, և որ մերն է Լուսաւորիչ [Գրիգորի] և այլ սրբոցս։

Հետ. ստացող՝ պարոն Ամիր Կաֆացի

բ

326 ա ...Աստուածաշունչ աւետարանս... անկեալ էր գերութիւն. նայ

պր. Ամիր Կոփացի գնեց զինքն իւր արդար ընչաւք, ու պատարագեց յաւժար կամաւ. ի վայելումն հաճատկատար Աստուածածնիս։ Իր յի-շատակ է, և իւր ծընաւղացն, և իր պսակաւոր կողակցուն՝ Դուխտար Մելիքին, յաւիտենից յիշատակ իւրեանց ծնողացն։ Սուրբ քահանայք, յորժամ ընդերնուք, ձեր մաքրափայլ ազաւթքտ յիշէք պր. Ամիրին ծընաւղքն՝ զհայրն Փրանկշայ և մաւրն՝ անուն Խաթու-Մելիքն յիշէք, և դուք յիշեալ լինիք սուկալի ատենի։

Գրեցաւ աստուածայշունչ աւետարանս թվ. ՊՂԱ. (1442)։*

Ռ. է. [Ր] Դ. Մ. Թ. որ գրեց։**

94.

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ ԵՂԻՇԷԻ

Երևան 4809

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Վա՞ն

212 բ Եւ արդ ես՝ մեղաւոր և անարժանս Վարդան, ցանկացող եղէ այս սուրբ տառիս՝ չարչարանաց սուրբ Վարդան[ան]ցն, զոր ունէի փափագ ի բազում ամաց, և կամաւ կամեցողին բարեաց յանկ ելեալ աւար-տեցի զսա բազում աշխատանաւք, և ետու զսա ընծա սուրբ [Գէորգայ Զաւրավարի],*** որ է ի Վան քաղաքի, հանդէպ սուրբ ուխտին Վա-րագայ:

Բայց դրեցաւ սա ի թվականութեանն Հայոց ՉԾԹ. (1310), ի նեղ և յանբարի ժամանակի։

Արդ, որ կարդէք կամ աւրինակէք, մեղաց իմոց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, և ծնողաց իմոց, և եղբարց, և համաւրէն ննջե-ցելոց իմոց, և երջանիկ վարդապետին իմո Տիրացու սուրբ և խաչըն-դուս կրաւնաւորին...

213 ա Եւ արդ, չիք ոք որ ունի իշխանութիւն՝ ի վերա սորա, ոչ յիմոց և ոչ յաւտարաց։ Բայց աէր և իշխեցող սորայ աստուած է և սուրբ Առաքեալքս...։

Բայց եթէ խնդրեսցէն զսա վասն կարդալո կամ աւրինակելո, մի խնաեսցեն, վասն զի զսա այսր աղաղաւ եմ դրել, զի ամենեքեան աւգտեսցին և մեղաց իմոց թողութիւն խնդրեսցէն յաստուծոյ, որում փառք յաւիտեանս, ամէն։

* Խոսքը սույն հիշատակարանի գրության մասին է։

** Փոխարինագիր ծածկագրով կարդացվում է «Աւ[ե]աիք» անունը։

*** Հիշատակարանում ամենուրեք ջնջված է նվերը ստացող վանքի անունը և ավե-լացված ձեռագրի հետագա տեր «Պետրոսի և Պաւղոսի Առաքելոց» վանքանունը, նախկին սեփականատիրոջ անունը մատիտով գրված է տողամիջում մեզ անհայտ ձեռագրով։

## 95.

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՅԱՂԱԳՍ ՄԱՐԴԵՂՈՒԹԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ

*Մատենադարան Հայկ. Թարգմ. էջ 196*

Գրիչ՝ Յոհան
Վայր՝ Վանայ գաւառ, Աւանց գիւղ

...Գրեալ յիշատակ Գէորգ կրաւնաւոր քահանայի... ձեռամբ Յոհաննու գծադրող քահանայի, ի հայրապետութեան Զաքարիի Հայոց կաթողիկոսի և յառաջնորդութեան գերահռչակ սուրբ ուխտիս Վարագայ համաշունչ եղբարց՝ տէր Սարգսի և տէր Պետրոսի, որք հեզութեամբ և հանդարտութեամբ հովուէին զբանաւոր հաւտս...։ Գրեցաւ ի գաւառիս Վանայ, ի գիւղն Աւանց, ընդ հովանեաւ սուրբ Յովհաննու Կարապետին և սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչին։*

## 96.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երեւան 280 (տես նաև 1314 Թ.)*

Գրիչ՝ Աւագ
Վայր՝ Բաբերդ

263 ա ...Արդ, ես նուաստս և անարժանս ի քահանայս և տխմարս ի
յարհեստ դպչական [Աւագ], աւգնականութեամբ կամեցող բարերարին
աստուծոյ, որ հանապազ զբարիս կամի կամարարաց իւրոց, բազում
ըղձիւ ես և մանկունք իմ Աւագ Պարոնն և Յուսիկն ցանկացող եղաք,
264 ա և իմոյ ձեռամբ գրեցի զսուրբ աւետարանս... || ... ի վայելումն դեռա-
բոյս զաւակաց իմոց Աւագ Պարոնին, Յուսկանն, Ղազարին և Գրիգո-
րոյ, զորս տէր աստուած ի կամս իւր պահեսցէ զսոսա մինչ ի խորին
ծերութիւն։

...Բայց գրեցաւ սուրբ աւետարանս ի ՉԾԹ. (1310) Թուական-
նութեանս Հայկազնեա տումարիս, և ի գալստենէ կենարարին ՌՅԲ.
264 բ (1302°) ամ, ի ձեռն անաշխատ և նուաստ երիցու || ի դղեակս, որ
կոչի Բաբերդ, ընդ հովանեաւ սուրբ Յոհնու և սուրբ Սիոնի աստուա-
ծածնակ տաճարաց, ի լուսաւորութիւն մանկանց նոր Սիոնի։

Յիշեսջիք զարժանաւորս ամենայն բարեաց՝ զխոհեմ և զհանճարեղ, զշնորհազարդ եպիսկոպոսն մեր՝ զտէր Սահակ, որ՞ լինել կրկին կենդանութեամբ և պարագայից ամաւք, զի շնորհեաց մեզ աւրինակ ընտիր։ Յիշեսջիք և զքրքասէր քահանայ զՍամուէլն և զաւակն իւր, որ ետ կրկին այլ աւրինակ, որ ստոյգեցաք, և զԿարապետ քահանայն, որ միւս աւրինակ այլ շնորհեաց, որ կոչի Մուրղանեցի, քանզի յերկուց և յերից վկայից հաստատի ամենայն բան։ Զի յորժամ յաւարտումն հասաւ, եղաք դերիս ընդիր և անուանի աւետարանքս և ստոյ-

* Նոյնը տպված է նաև Սրվանձտյանի «Թորոս Աղբար»-ում (հա. բ., էջ 411)։

զնցօղք, որ մին շառաւեղաւք էին գրած. և մի հայիք ի յախմարու-թիւն իմ և զանարհեստ գիրս, զի բազում աշխատանս կրեցի մինչ ի ձեռն բերի զաւրինակերս և ստացեցի, որոց՝ շնորհօղաց աւրինակացն, շնորհեսցէ Ք(րիստո)ս աստուած զիւր արքայութիւնն աստ և ի հան-դերձեալն, ամէն։

97.

ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ ԵՒ ԹՈՒՂԹՔ ՊՕՂՈՍԻ

Ն. Ջուղա, Ամենափրկչ. 101. Տ.—Ակինեան, Ցուցակ, էջ 60—61

Գրիչ՝ Թում[այ]
վայր՝ Գաւդայոյ վանք

ա

223 ...Ի թվ. Հայոց ՉԾԹ. (1310) կատարեցաւ, յամսեանն արաց ի Ժէ. (17), յաւուր հինգշաբթի, ի պայծառութիւն սրբոյ եկեղեց-ւոյ և ի վայելումն մանկանց նորին՝ Սահակ կրաւնաւորին, յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և եղբարց իւրոց, և ազգականաց իւրոց...։

Արդ, աղաչեմ զամենեսեան զընթերցօղսդ, որք աւգտիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք զՍահակ կրաւնաւոր և զիւրսն ամենայն... և զԹորոս՝ զկարեոր իւր, որ աւգնական եղև ընոց գրոյս, ամէն...։

Ընդ նմին և զմեղապարտ գրօղս զԹում[այ] և զծնօղսն իմ, զհայրն իմ զԳորգ երէց. և զմայրն իմ զՄեծաց տիկին, և զեղբայրն իմ զՍիմոն, և զքեռոյ որդին իմ զԳրիգոր, և զհաւրեղբայրն իմ զԻշան [...] անուն, և զայլ ազգատոհմսն...։

բ

25 բ Ի թվ. Հայոց ՉԾԹ. գրեցաւ առաքելական սուրբ տառս ձեռամբ Թու[մայի], ի յանապատիս Գաւդայոյ վանք կոչի, ընդ հովանեաւ սուրբ Խաչի, և սուրբ Աստուածածնի, և այլ սրբոցս՝ սրբոյն Սարգսի, և սրբոյն Յակոբա, և այլ սրբոց, որ կան հաւաքեալ ի յայսմ տեղոջ...։

գ

115 ա Թորոս, որ զգինս ետ զգրոցս, յիշեալ լիցի ի տէր, ամէն։ Աստուած թողու. զիւր յանցանս, ամէն։

98.

ԱՒԵՏԱՐԱՆ

Թորոս Աղբար. Բ. էջ 445—446 (Տէգրանակերտ)

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Դարանաղեաց գաւառ, Մանէ այր

ա

Գրեալ ի թվ. ՉԾԹ. (1310), ի գաւառին Դարանաղեաց, ի սուրբ եւ հռչակաւոր ուխտս Սուրբ Գրիգոր, մերձ առ գամբարան սուրբ Լուսաւորչին, ի լերին Սեպուհ եւ Մանէ այր կոչեցեալ... ձեռամբ ռու-

տանուն Գրիգորի...: Ստացաւ զսա... եղբայրն մեր Տաւճակեան յիշատակ իւր եւ ծնողացն իւրոց...

Բ

Յիշատակ է աւետարանս Խոսրովեաց Զորենցւոյն, որ առաւ յիւր հալալ վաստակոյ եւ ետ յիշատակ ի դուռն Կարմիր խաչին*:

99.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3985 (տես նաև՝ 1403 թ.)

Գրիչ՝ Սերոբէ
վայր՝ Թէոդուպոլիս

290 բ ...Գրեցաւ սուրբ և աստուածային տառք բարձրաբան սուրբ աւետարանչացն ձեռամբ անարժան և յետնորդ քահանայի, որ Սերոբէ անուն կոչի։ Արդ, աղաչեմ զդասս լուսերամից յիշման արժանի առնել զմեզ, և զբազմաշխատ ծնողսն մեր՝ զՊետրոս քահանայ, և զբարեպաշտութեամբ լցեալ մայրն իմ, և զհամաւրէն մերձաւորս մեր, և որ սրտի մտաւք զամէնն ասասցէն, նոքա եւս յիշեալ լիցին ի տեառնէ։ Գրեցաւ սայ ի հռչակաւոր աւրինակէ. Թվ. ՉԾԹ. (1310), ի քաղաքիս Թէոդուպոլիս, ի դրան սուրբ Կարապետիս և սուրբ Զաւրավարիս։

100.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5556 (տես նաև 1557 թ.)

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Եզնկա

281 ա Արդ, ի թուաբերութեան հայկազեան տումարիս, որ է թիւս եկեալ ի ՉԾԹ. (1310) կատարեցաւ, ի թիւ յունվարի ամսոյն, ի յաւուրն, որ է Ը. (8), ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ և ի թագաւորութեան Աւշինի, ի մայրաքաղաքս [illegible]. առ աթոռակալութիւնս տեառն Սարգսիս, ընդ հովանեաւ սուրբ Կաթուղիկէիս՝ աստուածաբնակ սուրբ տաճարիս, ձեռամբ իմոյ՝ մեղուցեալ և անարժան քահանայիս Կարապետիս, յետնեալ անիմաստ և փցուն գծագրիս...։

101.

ԴԱՆՁԱՐԱՆ ՀԻՆ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՄԲ

Երևան 2061

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Տիրաշէն

117 ա ...Արդ, գրեցաւ գանձտետրս ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնիս և կենսակիր սուրբ Նշանիս, ի Տիրաշէնն, ձեռամբ յոգնամեղ և

* «Դրցնէ գեղին մօտ կը կարծուի Կարմիր խաչ» (ծանօթ. Գ. Սրվանձայանի)։

*տիմար գրչի* Կարապ[ետի]. *ՉԾԹ. (1310)։ Արդ, ստացաւ զսա* Ներսէս *քհ[անայ] ի* Մղաչրու, *յիշատակ իւր և <իր> զարմիցն իւրոց՝* Շահին *և* Թանկշահին, *իւր ամուսնոյն՝* Թիմա *տիկնայ, և իր փեսին՝* Արեշահին։ *Ամենայն սրբոց բարեխաւսութեամբ Քրիստոս աստուած թողու դիւր-եանց յանցանքն յիւր միւսանգամ գալուստն։*

102.

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 7034*

*Գրիչ՝* Իգնատիոս
*վայր՝* Կիլիկիա, Զորոյ վանք

*300 բ* *...Գրեցաւ եղանակաւոր տաղս ի թուիս ՉԾԹ. (1310), ձեռամբ ան-պիտան և անարժան քահանայի* Իգնատիոսի, *ի մենաստանիս, որ կոչի* Զորոյ վանք, *ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնիս, ի վայելումն մանկանց Նոր Սիոնի[ի], ի լաւ և յընտիր աւրինակէ։ Որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ գաղափարաւ, սրտի մտաւք յիշեսջիք զգծող սորա* զԻգնատիոս *և զազգայինսն մեր, և աստուած յիշողացդ ողոր-մեսցի ի միւսանգամ գալուստն, ամէն։*

**ՉԿ** **1311**

## 103

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Էջմիածին ամսագիր, 1946 Թ., № 8—10, էջ 40**

*վայր՝* Այրիձոր

*Արգ, գրեցաւ սուրբ աւետարանս ի հռչակաւոր մենաստանի, ի Թուիս Հայոց ՉԿ. (1311), յանապատիս, որ կոչի անուամբ* Այրի Ձոր, *ընդ հովանեաւ սուրբ Յարու[Թեան || հանգստարա]նոցի որբոց։ Բայց գրեցաւ սուրբ աւետարանս ստուգեալ և ընտրեալ, յամենայնաւ աւրինակէ։*

## 104

### Կ Ա Թ Ո Ւ Ղ Ի Կ Ե Ա Յ Ց Թ Ո Ւ Ղ Թ Ք

*Երեւան 154*

*Ստացող՝* Վարդան
*վայր՝* Կիլիկիա Գերմաղբեւր

298 բ *.... Որում ցանկացաւղ եղէ ես՝* Վարդանս, *ի վերջ հասեալ քահանայից, որ բնակեալ էի ի սուրբ ուխտն* Դրազարկն։ *Եւ փափագեցի տեսութեան սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի, և սրբոյն Յակոբայ, և սուրբ Աստուածածնին. և մեծաւ աշխատանօք գնացեալ տեսի սուրբ տեղիսն, և յոյժ փորձութեան հանգիպեցայ ի ծովու և ի ցամաքի։ Եւ դարձեալ անտի եկի ի հռչակաւոր և յականաւոր քաղաքն՝ ի* Հռովմ։ *Եւ անտի դէմ եդեալ եկի ի* Կիպրոս *կղզի և անտ հանգիպեցայ բարեպաշտ արանցն, որ վերոյգրեալ կան ի սուրբ աւետարանս՝* Թաւտաւրէ *և* Ծուանի, *և մեր յոյժ երեխտաւորին* Սարգսին, *և բարեպաշտ իշխանին պարոն* Պաղտնին, *որ է այժմ մարաջախտ հայոց, զոր խնամեսցի տէր աստուած դնա ե գհարազատ եղբարք իւր, որք բարեմտութեամբ և հողաբարձութեամբ հանգուցին զիս, զոր հատուսցէ նոցա տէր։*

*Եւ իմ՝ ցանկացաւղ եղեալ սուրբ աւետարանի, և վերոյգրեալ բարեպաշտ արանցն ընչիւք, և ոչ յիմ գոյից, ետու գրել։ Եւ հանդիպեցայ քահանայի միոյ գրչի և ետու գրել աւետարան, և ոչ հաւանեցայ վասն*

** Ձեռագիրը բնյրութարնակ Կ. Բիդեճյանի սեփականությունն է կազմում։ Քաղել ենք «Իններորդ դարի ձեռագրական մի հատակոտոր...» հոդվածից։*

*անվարժ գրելոյն, և նիւթոյն թանձրութեան, և ծաղկին անպատեհու-թեան։ Եւ վասն երկրիս անհանգստութեանն և գերելոյն յանաւրինաց վասն մեղաց մերոց բազում ժամանակս կացաք անտ, և այլ մաղա-ղաթ ճարկեցի բարեպաշտ արանցն ընչիւք։ Եւ գիմեալ եկի յերկիրս՝ յառաջին բնակչութիւնն իմ, ի սուրբ ուխտն ի Դրազարկ, յո և իմ խորհուրդ առեալ եկի ի սուրբ ուխտն Գերմաղբիւր, յորում բնակեալ էր նախածանութ և յոյժ սիրելի եղբայր իմ, քահանայ ոմն Թորոս անուն Հռոմկլայցի, հմուտ գրչութեան։ Եւ յոյժ աղաչեցի զնա յանձն առնուլ և գրել զնոր կտակարանքն ի լման ի մէկ տունի, և նա յանձն էառ. և ես, ոչ յիմոց ընչից, այլ ի վերոյգրեալ աստուածասէր արանցն և յայլ պարոնացն. ետու գրել։ Եւ թէպէտ այլոց ընչիւք ետու գրել, այլ ես յոյժ աշխատեցայ ի գալ և ի գնալ։ Եւ արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, ոյք աւգտիք ի սմանէ, յիշել ի սուրբ և ի մեղ-սաքաւիչ աղաւթս ձեր զիս՝ ստացաւղ գրոցս զՎարդան, և զհարազատ եղբայրն իմ զԱնդրէաս կրաւնաւոր քահանայ, որ սրով կատարեցաւ, և զծնաւղսն իմ՝ զԹորոս, և զմայրն իմ՝ զՇար, և զեղբարսն իմ՝ զԱւե-տիք և զՅովաննէս, և զփոքրիկ եղբայրն իմ Եղփինաս կոչեցեալ, և զքորսն իմ՝ զգնացեալսն առ Քրիստոս։ Յիշեսջիք և զմաւրքոյրորդին իմ զԹորոս կրաւնաւոր քահանայ, յիշեսջիք և զքեռին իմ զտէր Վար-դան, յիշեսջիք և զսնուցաւղն իմ և զմաւրքոյրն Ոսկեցող կոչեցեալ, աղաչեմ յիշել և զամենայն ազգատոհմն իմ՝ զկենդանիս և զհանգու-ցեալս։*

*Յիշեսջիք և զՎահէ քահանայ Հռոմկլայցի և զամենայն արդիւ-նաբարսն, ոյք աւգնական եղեն ընչիւք իւրեանց ի սուրբ գիրքս յայս։ Յիշեսջիք և զյոյժ երախտաւորն իմ զՀայրապետ վարդապետն՝ գնաց-եալն առ Քրիստոս և զՍտեփաննոս կրաւնաւոր քահանայ։ Յիշեսջիք և զառաջնորդ սուրբ ուխտիս զգրասէր րաբունին՝ զտէր Կոստանդին, և զփակակալ սուրբ ուխտիս...։**

*Գրեցաւ ի Թվականիս Հայոց էՃ. և Կ. (1311)։***

105.

## ՅԱՍՄԱՒՈՒՐՔ

*Բակուրուն, Կիպրոս կղզի, էջ 107—109*

*Գրիչ՝* Կոստանդին եպիսկոպոս
*վայր՝* Սիս—Ծոխաք—Ջորոյ վանք

*... Արդ, եղև աւարտումն մատենիս ի մայրաքաղաքս Սիս, որ է առ ստորոտով աստուածապահ զղեկիս, զոր տէր Յիսուս անդրդուելի պահեսցէ միշտ և հանապազ։ Եւ վասն զի ոչ գոյր սոցայ տեղի ան-գորելոյ ի մի վայր, գրեալ եղև մասն ինչ ի Սիս և մասն ի Ծոխաքն,*

* Հիշատակարանը թերի է, ձեռագրից թերթ է ընկել։
** Սույն տողը գրված է նույնագույն նոտրգրով ներքին լուսանցքում։

որ է վանք ասորոց ազգին. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և մասն ինչ ի սուրբ ուխտն Ջորոյ կոչեցեալ վանք, ընդ հովանեաւ սուրբ Նշանացն, և սուրբ Աստուածածնին, և Սիսնի։ Ի թուականութեանս Հայոց մեծաց ՉԿ. (1311), ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ Կեսարացոյն և ի թագաւորութեան Աւշնի աստուածասիրի և բարեպաշտի, որդոյ Լեւոնի, որդոյ Հեթմոյ, զորաւրինակ՝ որպէս ի հնումն զԴաւիթ ընդրեաց աստուած յորդիան յԵսսէ, սոյնպէս և զԱւշինն ի նորումս ընդրեաց ի մէջ եղբարց իւր, և էած թագաւոր տանս Թորգոմայ և ազգիս Հայկայ, յոր և համարձակ կարասցէ կարդալ զաստուածայնուագ մարգարէին բանս, թէ՝ Փոքր էի ես յեղբարս իմ և կրսեր ի տան հաւր իմոյ։ Ցոր թէև ոչ արածէր սա զխաշինս հաւրն, որպէս զԴաւիթ, բայց զաւծումն և զթագն ընկալաւ յաստուծոյ, և խաղաղութեամբ արածէ զբանաւոր հաւտս Հայոց ազգիս, զոր յայլ և յայլ ժամանակս նեղէին յանաւրինաց, յոր և զերկնայինն ի խաղաղութիւն ինքն ընգալցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, երկար ամաւք և բազում ժամանակաւ։

Արդ, աղաչեմ զհանդիպեալսդ վերոյգրեալ յիշատակացս հաւաքեալ բազմաչարչար վկայից, որ ի սուրբ մատենիս յաւէտ, որ յետ մերոյ ելիցս յայտեայցս վայելէք ի սոյ հոգևոր մխիթարութեամբ, սրտի մտաւք յիշել յաղաւթս ձեր զիմս նուաստութիւն, զԿոստանդին եպիսկոպոս եւս, և զՔրիստոս հանգուցեալ քեռին իմ և զյոյժ երախտաւորն իմ զՅովհաննէս Կարմիրվանեցի. և զքաղցրիկ մայրն իմ զԱդվոր տիկին, ընդ նմին և զհայրն իմ զՎասիլ, և զարեամբ նահատակեալ հայրազատ եղբայրն իմ զՍարգիս, որ մինչդեռ մանուկ էր տիաւք խողխողեալ եղև յանաւրինաց, և զԱւշին, որդի նորին, որ յանցեալ ամի հանգեաւ խաղաղութեամբ ի Քրիստոս, և է ի պահեստի ի սուրբ ուխտն Ծիխաքն, յամսեանն յու[նուա]րի յիրեք աւրն, որ էր շաբաթ աւրն։ Ընդ ոցայ յիշեսջիք և զհանգուցեալ հայրն Յակոբայ՝ զՍարգիս, և զմայր նորին՝ զՄիհամ խաթուն, և զհայրազատ անդրանիկ եղբայր ժառանգողի մատենիս Յակոբայ՝ զՍտեփանոս, որոյ տէր հատուսցէ զանսպառ բարիսն աստ և ի հանգերձելումն, և յիշելոցս և յիշողացս առհասարակ միայնպէս ողորմեսցի ի մեծի աւուրն ահագին ժամուն, յորժամ ճարտասանութիւնքն, բանքն սպառին և գործքն թագաւորեն, միայն ունելով բարեխաւս զբազմութիւն աստ հաւաքեալ սրբոցն իւրաքանչիւր յանուանէ ի Քրիստոս Յիսուս տէր մեր...

Բ

Կազմող՝ Յակոբ

Ո՛հ, զմեղաւոր դատապարտեալ կազմող սորա զՅակոբ երէց՝ զորդի Մեծ-պարոնին, և զեղբայրն իմ զՅոհանէս, և զհանգուցեալ եղբայրն իմ ի Քրիստոս զԿոստանդին, հանդերձ ծնաւղաւք՝ կենդանեաւք և հանգուցելովք, յիշեցէք ի տէր Յիսուս Քրիստոս, աղաչեմ, ով աստուածասէր ընթերցողք։ Ընդ նմին աղաչեմ յիշել ի տէր զպատուական ծերուն[ի] զՎասիլ քահանայն և զծնողսն իւր. աղաչեմ յիշել ի տէր զուսուցիչն իմ զԹորոս քահանայ՝ զՄնական... կոչեցեալ Երկար։

## 106

## ՄԱՑՐ ՄԱՇՏՈՑ ՍՍՈՑ

*Հալէպ. Անթիլ. ե մասն. Սիւրմ. Բ. 31—32*

*Մագաղաթ յղող՝* Թումաս

ա

436 *Երթա մագաղաթս ի* Վենժու *առ կաթողիկոսն ամենայն [Հայոց] ի տէր* Կոստանդին, *ի* Թումասայ* *եպիսկոպոսէ* Իքալիոյ:

*Ստացող՝* Կոստանդին Կեսարացի

բ

434 *Նըւաստ* Կոստանդին *կաթողիկոս գտայ զշարագրութիւնս Հայրապետացն հայոց, գրեալ ձեռամբ[ս]ուրբ հաւրն մերոյ Ներսէսի արքեպիսկոպոսի Տարսոնի, և ետու գրել սաս...*

*Կազմող՝* Ծառային

գ

*Երկըորդ լուսաւորիչն Հայկազան ազգին տէր* Կոստ[անդին], *զանարժան և զմեղաւոր ծառայս ձեր՝ զկազմօղ սորայ* զԾառայինս, *յիշեա առաջի Քրիստոսի տեառն մերոյ։*

դ

*Ի թուականիս Հայոց ՉԿ. (1311), յամսեանն սեպտեմբերի ի ԺԴ. (14) եղև սինհոդոս, հրամանաւ սրբասնեալ և երջանիկ կաթողիկոսին Հայոց Մեծաց տեառն* Կոստանդեայ, *յեկեղեցիս, որ կոչի սուրբ Սոֆիայ, հարցաքննութիւն և հրաւէր եղեալ յաստուածասէր եպիսկոպոսաց և ի սրբասէր քահանայից և սարկաւագաց, սրբասնեալ եպիսկոպոսն* Հռմոյն *տէր* Ստեփաննոս, *արքեպիսկոպոսն* Տարսոնի *տէր* Յովանէս, *եպիսկոպոսն* Ատանու *տէր* Ստեփաննոս, *եպիսկոպոսն* յԻկոնիոյ *տէր* Սարգիս։ *Որոց ի միասին ժողովեալ, քննութեամբ և ընտրութեամբ հրաւիրեցին արժանապէս* զԳրիգոր *քահանայ յեպիսկոպոսութիւն* Սալմաստու։**

---

* *Տպված է «Թումասայ»*

** *Սույն Ձեռագրի տարբեր էջերում զանազան ժամանակներում Սսի կաթողիկոսները նշանակել են իրենց գահակալության թվականները։ Այդպիսի հիշատակություններ թողել են՝ Կոստանդին Բ. Լամբրոնացի (1380), Յովհաննէս (1486), Յոհաննէս Թուլկուրացանլն (1489), Յովանէս (1525), Սիմեոն Զեյթունցի (1536), Ղազար Զեյթունցի (1545), Թորոս կաթողիկոս (1548), Խաչատուր (1551), մյուս Խաչատուր (1560), Ազարիա Ջուղայեցի (1584), Տիրատուր (1586), Յովհաննէս Այնթապցի (1601), Պետրոս Բերիացի (1608), Սիմէոն Սեբաստացի (1633), Թորոս Սսեցի (1784), Թորոսի եղբորորդի Կիրակոս (1797) և այլք։*

107

## ՃԱՌՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԱՆԴԱԿԱՆՒՈՅ

**Երևան 5077**

Գրիչ՝ Յակոբ Կիլիկեցի

287բ ... Սակս որոյ բարեմիտ և կուսակրաւն քահանայն Յովանէս.
ծայրիւ մտաց մատին ճաշակեալ ի քաղցրութենէ իմաստից որ աստ
ղումարեալ գոյ։* ոգջախոհ իՑ մոլութեամբ և յաւէտ տենչմամբ՝ ըստ
յատուկ և առանձին բանական բնութեանս և որ կա ի սմայ զաւրու-
թիւն. միշտ արդիւնական գործս պիտոյից իմաստաւոր խորհով ի
կիր արկանել։ յայսպիսի իմանալի դարաստանս վարեալ բերաւ՝ որ
լաւագոյն է քան զականս պատուականս։ Ըստ ումեՑ վիպելոյ ի
հնոցն՝ եթէ ոչինչ է լաւագոյն քան թէ բոլոր ոգով զաստուածային
տիպս աւրինաց ընդունել։ Յաղագս որոյ թախանձեմ զնուաստու-
թիւնս իմոյ Յակոբայ [կի]լիկեցւոյ առ ի ծրագրել զայս բա[նս] որ աստ
դոյով ոգեշահք և իՑ | | | եցեալ ի բազում յաւժարութիւն նորին. և
288ա յոգջախոհ և իմաստուն տ[են] ‖ չուՑ բերա յայս հանդէս։ Ոչ եթէ լա-
ւագոյն գոլով իմ յայս արհեստ գրչութեան՝ այլ փցուն և վատթար։
Վասն որոյ ղպարտութիւն խոստովանիմ, քանզի յաղթեալ եղէ ի սի-
րոյ նորին և երկիւղ իրաց քեցեցի։ Գծագրելով զսա ի յիշատ[ակ]
հոգւոյ Յովհան[նէս] քահանայի և ծնողաց նորին։ Դարձեալ ծանու-
ցեանեմ զայս ինչ՝ զի գաղափար սմին աներաժիշտ և անհարմար ելով
ըստ առոգանութեանցն արհեստի, մանաւանդ ըստ կետիսըս, քան զի
ոչ գոլով ի նմա աւարտակէտ, կամ ստորակէտ, կամ միջակէտ՝ այլ
խառնափնդոր շփոթեալ ըստ յոռեգոյն խոհա[րարի]. և իմ տեսեալ
զայսպիսի իրս ըստ նուաստութեանս իմոյ ուշ եդի մակածական ելով՝
զի թերևս ի վերայ հասից կետիցն։ Եւ տեղեկանայի էր զոր առ տ[ե]-
288ա ղեաւն, և էր զոր Բ., կամ Գ., կամ ես աւելի տող գրելով ‖ և կամ գէմ
մի, կամ թուղթ մի։ Եւ էր զոր ոչ կարէի առ ժամայն՝ թողլով իմ ի
միւս աւրն և կամ յերկուս՝ և ապա տեղեկանայի։ Վասն որոյ աղաչեմ
զձ՟ս հղաւրագոյնսդ և զնազելի ուշիմսդ՝ եթէ գուցէ գտանելով ձեր
սխալ ինչ՝ ոչ մեղադրէք՝ զի բազում ջանիւ ըստ տկարութեան իմոյ
այդ էր կարն իմ։

Արդ եղև աւարտ գրչութեան սորա ի թվ [ականին] Հայոց ՉԿ.
(1311), յանապատեր սրբոյն Գրիգորի ընդ հովանեաւ սրբոյ Կարապե-
տին, և սրբոյն Մինասա, և Նորաշէն սուրբ Աստուածածնին՝ որ յայսմ
ամի՝ բազում ջանիւ և աշխատութեամբ շինեալ եղև ի գերահռչակ
բաբունապետէն Մովսիսէ. աղաչեմ զամենեսեան զի նախասացեալ
ստացաւղ սորին զՅով[հաննէս] աբեղայն յակքարմամբ [ ] սրտիւ յիշ-
ման արժանի առնէք տէր-ողորմայիւ և զծնաւղսն իւր, նմև զվերոյ-

* Սույն հիշատակարանի կետադրությունը պահել ենք անփոփոխ, զի հմուտ գրիչը մտածված կետադրություն գործածող մեկն է։ Նրա գործածած երկու կետերը շատ փոքր են, գրվում են տողից վերև և չունեն մեր վերջակետի նշանակությունը։

289ա ասացեալ || բարունին Սոփոէս. և դայլ ճգնաւոր եղբարսն մեր, որ անդ զոլով, զմիայնակեացսն և զաբեղայսն, զի բազում յաւժարութեամբ աւժանդակ եղեն մեզ։ Եւ աստուած, որ առաան է ի տուրս բարեաց, ձեզ ողորմեսցի, և նմա փառք յամենայնի։ Դարձեալ ես մեղսամակարթ և վատթարս ի բարեաց՝ որուպս Ծակյօքյ, կականմամբ ձայնիւ իբր առաջի կալով ձերում պարկեշտութեանդ ոգել զայս ինչ։

Յերեսս անկեալ աղաաաւալի,
Բոլոր մաղթեմ միշտ ամենի։
Այլ և ուշիմքդ նազելի,
Որք պաաահէք այսրմ տառի։
Կապեալ սիրոֆն բնականի,
Ս[եռ՞]ն և յրստակ ըստ Յիսուսի
Ոգել բանիւ տէր-ողորմի,
Ինձ և ծնողացն իմ և զարմի,
Բարեաց տըւաւղն ամենայնի
Քրիստոս աւրհնեալ միշտ եղիցի։

108.

ԱՒԵՏԱՐԱՆ

Թավրիզ, Բերդաթաղի Ս. Աստուածածին եկեղեցի. 1. Աճառեան, Ցուց. էջ 70—74

Գրիչ՝ Տեր

ա

342 ա ... Ցամի հարիւրից ութեանց և տասանց վեցից տարբերութեանն Հայոց տումարիս (1311), ես՝ յոգնամեղ և տառապեալ գրիչս Տեր քահանայ, յանկ հանեալ աւարտեցի զսա բազում ջանիւ և մեծաւ աշխատութեամբ, յամենալաւ և ի ստոյգ աւրինակէ, զոր ի բազմաց վկաեալ, ստացա զսա գանձ անապական յերկինս, ուր ոչ գող մերձենա և ոչ ցեց ապականէ, ի վայելումն մանկանց եկեղեցոյ նոր Սիոնի, յամս աստուածապատիւ տեառն Կոստընդի հայոց կաթողիկոսի։

բ

268բ Որբոց աւետարանչացն բարեխաւսութեամբ, Քրիստոս աստուած, ողորմեա ինձ՝ մեղապարտ գծողիս Տեր քահանայի, և ծնողաց իմոց, և ազգականաց։ Ցիշեսջէք ղաւակն իմ զՄարգարէ, և զեղբաւրորդին զՅակոբ, ես առաւել զՆերսեսվոր, որ բազում աշխատանք կրեաց ի վերա մեր, ազատեսցէ ի մեղաց, և ծնողաց և ազգականաց թողութիւն շնորհեսց[է] Քրիստոս աստուած, ամէն։

Ծաղկող՝ Թորոս

Գ

22ր Զանպիտան Թորոս սարկաւագ՝ զնկարող սուրբ պատկերացս, աղաչեմ յիշեա ի տէր Յիսուս Քրիստոս։*

109.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրդ. 6263, էջ 117 (Զմիւռնիայ, սր. Ստեփաննոս եկեղեցի)

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Ակներ

... Արդ, աւարտեցաւ սուրբ աւետարանս... ի սուրբ և ի գերահռչակ ուխտս Ակներ կոչեցեալ, ի թուաբերութեանս Հայոց ՉԿ. (1311), ձեռամբ Գրիգորի անարհեստ գրչաւորի, ի խնդրոյ Գրիգոր միայնակեցի... ստանալով զսա ի յարդար վաստակոց իւրոց և ... պարգևելով ի հռչակաւոր ուխտն Խոչկայ կոչեցեալ, զի կացցէ հանապազ ի սուրբ տաճարին՝ զոր յանուն սրբոյն Գէորգայ զօրավարին շինեալ է։ Յիշեցէք յաղօթս ձեր զստացող սորա զԳրիգոր միայնակեացն, այլ և զառ ի Քրիստոս հանգուցեալ զհայրն իւր՝ զՎասակն... ի ժամանակիս այսմիկ էր թագաւոր աշխարհին Կիլիկիոյ Աւշին և կաթողիկոս Կոստանդին Կատաղովկեցին, որոց տէր առաջնորդեսցէ զհոգևոր առաջնորդութիւն և զմարմնաւորն ընդ երկայն աւուրս։

110.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Թորոս Աղբար, Ի. էջ 433 (Տիգրանակերտ)

Գրիչ՝ Կոստ[անդին]
վայր՝ Խորնի Ձոր

Գրեալ ի Ձորս Խորնի, ընդ հովանեաւ սուրբ Տիրամաւր և սուրբ

* Ձեռագրում կան բազմաթիվ այլ՝ թվականով և անթվական հիշատակագրություններ, նվիրաբերական ակտեր և կալվածագրեր («Վախմ»-ի գրեր), որոնցից մի քանիսը ԺԴ. դարի են։ Այդպիսի վավերագրերը մտադիր ենք հրատարակել առանձին։ Դրանցից այստեղ բերում ենք մի նմուշ. «Ո՛վ դաս լուսերամից, յիշեցէք ի մեղսալքաւիչ յաղաւթս ձեր և ի մաքրափայլ, զիս զանարժան ծառայս աստուծոյ զՔութլուն, ու զիւր զեռայրուս նորածին տղայն՝ զԱմիր Սարգիսն, և զիւր հայրն և մայրն. և միաբանեցայ սուրբ աւետարանիս, որ յամէն տարի անխափան տամ Ա. լրտ. [իմա՝ լիտր] ձէթ յեկեղեցին։ Ով որ զայս գիրս ջնջէ, ինքն ջնջի ի դպրութենէ կենացն։ Եւ զիս զանպիտան և զանարժան ծառայս աստուծոյ զտէր Զաքարիէս, և աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն, ամէն։ Ի թվ. Հայոց ՉՀԳ. (1324), ի համբարձման տաւնիս» (էջ 344 բ)։



113—6

Նշանացն, ի լոբցկան մխոջ, որ է հարաւակողմն պերճ անապատիս, ի խնդրոյ սուրբ և ընարեալ կրաւնաւոր քահանայի Պետրոսի, ձեռամբ պիտականուն քահանայի Կոստ[անդեայ] և ողորմելի դերւոյ Հեթմընցւոյ, Թվ. ՉԿ. (1311),*

### 111.

### ՄԱՍՈՒՆՔ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ

Երևան 282 (Տես նաև 1558 և 1657 Թ.Թ.)

Գրիչ՝ Յով[հաննէս]

192ա Շնորհիվ տեառն սկսա և ողորմութեամբ նորին կատարեցի զաստուածաշունչ տառս զայս, զոր հոգին սուրբ տա բարբառել սրբոյ առաքելոցն։

Արդ, գրեցաւ սայ ձեռամբ անպիտան և փծուն գրչի Յով[հան-նիսի], յիշատակ հոգւոյ իմոյ և ծնաւղացն իմոց, որ ի Քրիստոս փոխեցան, և եղբարցն իմոց։

Արդ, ով կարդայք կամ ուրինակէք, մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ աստուծոյ մերմէ, և աստուած հայցողացդ և հայցելոցս առհասարակ ողորմութիւն պարգևեսցէ, ամէն։

Ի թուական Հայկազեան տումարիս Չ Կ. (1311)։

Կարաւտ եմ աստուծոյ ողորմութեանն և սիրոյն, և եմ տառապեալ, և յոյժ մեղաւոր, և յանցաւոր աստուծոյ պատուիրանին։ Աստուծոյ սիրոյն համար, ով հանդիպիք այսմ տառի, զաստուած-ողորմին անյապաղ շնորհեցէք Յով[հաննիսիս] և ծնաւղաց իմոց։

### 112.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ «ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔ»-ԻՆ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ ԵՒ ՄԵԿՆ.ՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ ՎԱՐԴԱՆԱՅ

Երևան 1460

Գրիչ՝ Կիւրիոն

296ա ... [Յիշեցէք] նաև զարժանին յիշատակի զբազմերախտ բարունապետն իմ զՅոհ[աննէս]՝ զծնողն երկամբք հոգւոյ. և զըստ մարմնոյ ծնողսն իմ՝ զՎարդան քահանայ || և զեղբարսն իմ՝ զՄխիթար քահանայ և զԽաչատուր կրօնաւոր և զՄխիթարիչ, և յիշողացդ տէր ողորմեսցի։

Էր թվականութեանս Հայոց Չ Կ. (1311), յորում աւարտումն եղև ծրագրութեամբ, ձեռամբ յոգնամեղի Կիւրիոնի՝ սպասաւորի բանի։

Զբազմերախտ հոգևոր հայրն մեր զՆշխան յիշեցէք ի Քրիստոս։

* Հիշատակարանը համառոտված ու սրբագրված է երևում հրատարակիչ Գ. Սրվանձտյանի կողմից։

## 113.

## ՑԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ ՄԱՐԴՈՑ ԵՒ ՑԱՂԱԳՍ ԿԱԶՄՈՒԹՑԱՆ ՄԱՐԴՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՑ

*Երևան 3463*

*Գրիչ՝* Կիւրիօն

*Զբաղմավեր անձն հեքոյս* Կիւրօնի՝ *ծրողի սորին, յիշեա ի թօ-ղութիւն մեղաց, և զ*Մխիթար *քահանայ, և զ*եաչատուր *կրօնաւոր, և զբարունապետն իմ* Յօվհաննէս, *ամէն։**

---

** Նախորդ հիշատակարանի գրիչն է, ուստի տեղադրում ենք նույն՝ 1311 թվա-կանքում։*





114.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Ս. Ջալալ. հտ. Ա. էջ 167—168 (Թարգմանչաց անապատ, մերձ ի Բանանց)*

Վայր՝ Փոքր Սիւնիք

*Ի ժամանակս և ի դարս աւուրց տիեզերակալութեան և արքայութեան բոլոր աշխարհաց ազգին նետաւղաց, որ տիրէր ի ծովէն* Պոնտոսի *մինչև ցծովն* Կասպից, *և յ*Եփրատ *գետոյ մինչև յայնկոյս լերանցն* Կովկասու, *որոյ գլուխ և ինքնակալ՝ խանն աշխարհակալ* Խարբանդայ *կոչեցեալ, ի Թուին Հայոց ՋԿԱ. (1312)։ Ցայսմ ժամանակի ծագեցաւ ոմն, մեծ և երևելի տոհմային պայազատութեան, ի ցեղէ վեհից, ի զարմէ դիւցազանց, ի դասակարգէ քաջաց, ի գնդէ գովելեաց,* Գրիգոր *իշխան Հայոց՝ տէր և պարոն* Փոքր Սիւնեաց՝ Հանդաբերդոյ, *և* Ականեայ, *և բարձր լերանց ծովակին* Գեղամայ, Սոթից *մինչև ի* Շաղուագայ, *և գաւառք մեր յանուանէ այս է՝* Սոթ Գլուխ, *և* Բերդաձոր, *և* Ճոխանց, Հասկաբակս, Ատրնեին, Կալեր, Ուռիաձոր, *և* Խորուագետ, Դուանոց *և այլ իւրեանց միջոց մազրովն ի մեր նախնեաց մնացեալ հայրենիք է, իւրեանց չորս սահմանովն, ստոյգ և ճշմարիտ գրեալ կայ յաւետարանիս։ Ամուսնացեալ ընդ դստեր* Տարսայիճ *իշխանին, ընդ ամէնօրհնեալ պարկեշտ տիկնոջն* Ասփայի, *ծնանի ի սմանէ ուստերս և դստերս, իսկ մինն, որում անունն էր* Սարգիս, *նուիրէ Քրիստոսի ի ստնդեայ հասակին, որ արժանաւորութեամբ ի կոչմանէ հոգւոյն էանց ընդ ամենայն աստիճանս քահանայութեան, հասեալ ի պատիւ եպիսկոպոսութեան տանն* Խաչենոյ, *ընդ մարմնական տէրութեան, զոր ունէր ի հարանց, ստացեալ ընկալաւ և զհոգևոր պետութիւն։*

*Արդ, յոյսմ ամի, որ էր Թիւն ՋԿԱ. (1312) փոխեցաւ յաշխարհէս* Ասփայ *առ Քրիստոս, և եղաւ ի շիրմի ի սուրբ ուխտն* Խաթարի *վանաց, վասն որոյ և մեծ պարոն* Գրիգոր *ընծայէ գերեզմանի նորա ընծայս յոլովս՝ գիւղորայս, այգիս, անդաստանս, և զարդարէ զսուրբ ուխտն զանազան սպասիւք և հանդերձիւք, ընդ որս աւրհնեալ շքեղացոյց և սուրբ աւետարանս ոսկենկար կազմածով, և շնորհեաց գերեզմանի նորա և իւր նախնեաց յիշատակ, որում բաղձաւղք և ընթերցաւղք սուրբ աւետարանիս, յիշեսջիք* զԳրիգորն *ի Քրիստոս, և յիշաւղքդ յիշեալ լիջիք ի տեառնէ։ Զմեծ և զամենաւրհնեալ պարոնաց պարոն* զԳրիգոր *որդի* Դաւիթի, *և զամենագովելի զբարեպաշտ ամուսին իւր զպարոն* Ասփայն՝ *զստացաւղք և զզարդարիչք սուրբ աւետարանիս, յիշեցէք ի Քրիստոս։*

## 115.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

Երևան 4679

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Գլաձո՞ր

ա

144 բ Զատացող աստուածապատում երգարանիս՝ զԴաւիթ բարունապետն*, յիշեսջիք առաջի ղենլոյն Քրիստոսի, ով գասք [լուսերամբց]։

բ

211 բ ...Ողորմեսցի տէր Յիսուս հանգուցելոյն ի յաստեացս ի յոյսն կենաց պարոն Ասփային**, զոր և թողցէ զյանցանս նորա Քրիստոս աստուած մեր, որ է աւրհնեալ։

գ

335 ա Ո՛վ, ընթերցողք հոգիապատում քնարիս, յիշեսցիւք առաջի ահաւոր և սոսկալի բեմբին Քրիստոսի զծառայն Քրիստոսի զՅոանէս Արճիշեցին, զի և թողութիւն մեղաց ընկալցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։ Ընդ նմին և զսուտանուն գրչողիկս զԽաչատուր, յոյժ մեղապարտ և բիւր քանքարոյ առողի և ի յաղբս թագուցողի, վասն սրբոյն Քրիստոսի յիշեսջիք առաջի ղենլոյն Յիսուսի, զի և ինձ ողորմեսցի Քրիստոս աստուածն մեր, որ է աւրհնեալ յաւիտեան։

## 116.

### ՃԱՇՈՑ

Երևան 4687, նաև Փիրղ. 6273, էջ՝ 121—122
(տես նաև 1371, 1488 և 1514 թ.թ.)

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամար

ա

586 բ ...Զայս ամենայն հաւաքեալ, ի մի վայր ժողովեալ գծագրեցաւ կարգաւորաբար, սկսեալ ի յիշատակի աւուր ծննդեան փրկչին և միոյ նշանով, առանց մոլորութեան, աւարտեալ մինչև ի տաւն սուրբ հայրապետին Բարսղի Կեսարու, յըստոյգ և յընտիր աւրինակէ, բազում աշխատանաւք և քրտամբք, հոգւոյն սրբոյ աւժընդակութեամբ, յաստուածապահ և ի գեղեցկատիպ կղզիս Ախթամար կոչեցեալ, ի տեղիս ապաստանի, որ է աթոռ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին Հայոց, ընդ

* Նույնացնում ենք Գլաձորի բաբունապետ Դավթի հետ։

** Նախորդ հիշատակարանի վստահելի տվյալով Ասփա իշխանուհին մահացել է 1312 թվականին։ Ըստ այդմ սույն հիշատակարանը տեղադրում ենք 1312-ի թվաշարքում։

հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչի և սուրբ Նշանի և աստուածա-
մուխ սուրբ Գեղարդեան, ի հայրապետութեանս սուրբ և անբիծ և
երջանիկ տեառն Ներսէսի, և տեառն Զաքարիայի, և ի Թուաբերութեանս
Հայոց յուԹնհարիւրերորդի վաթսներորդի առաջներորդի (1312), ի
դառնացեալ ժամանակիս։ Իսկ ես՝ ամենամեղս և անյիշելիս ի գրչաց
587 ա ‖ Դանիէլ սուտանուն կրաւնաւոր, ըստ իմում տկարութեամբս սկսայ
և կարողութեամբն աստուծոյ կատարեցի մեղսամած մատամբ իմով,
յիշատակ մեղուցեալ անձին իմոյ և քեռն իմոյ ըստ մարմնոյ՝ Մա-
րիանէ հաւատաւորի։ Եւ տուաք զսա նուէր և անջնջելի արձան յաստ-
ուածարընակ և ի հռչակաւոր և յանուանի սուրբ ուխտս՝ ի սուրբ Խաչս
Աղթամարայ, զի և մանկունք սորա վայելեսցեն զսուրբ գիրքս, հրճուին
սովաւ հանապազ, և զմեզ անմոռանալի յիշմամբ յիշեսցեն յաղաւթս
իւրեանց, եւս առաւել ի ժամ սուրբ և սոսկալի պատարագին, զմեզ՝
զստացողքս սորա՝ զանարժան Դանիէլ կրաւնաւոր, և զՄարիանէ քոյրն
իմ, նաև զեղբայրն մեր ըստ մարմնոյ՝ զԹովմայ, և զհանգուցեալ
քոյրն մեր՝ զԱւագ, և զծնողսն մեր՝ զՇահապ և զԹամար՝ զփոխեալսն
ի Քրիստոս, և զամենայն ազգատոհմն մեր՝ զկենդանիքն և զհանգու-
ցեալսն...։*

Բարեխաւս լերուք... նաև ուսուցչին մերոյ պատուական և
ընտրեալ քահանային Սիմէոնի՝ փոխեցելոյն ի Քրիստոս, և նորին
ծնաւղացն, և հոգևոր եղբարցս մերոց՝ սրբասնեալ կրաւնաւորացս՝
Ստեփաննոսի և Յովաննիսի, որք աւգնական և ձեռնտու եղեն մեզ
ի նիւթ թղթիս...։

589 բ Աղաչեմ զսպասաւորք սուրբ եկեղեցոյդ, սրտացաւաբար պահել
զգիրքս և պատրաստութեամբ սպասաւորել սմա, ոչ վայրապար
շրջշրջել զթոյլ նիւթս սորա, այլ խնամովք կարդալ զսա, վասնզի
բազում և մեծ աշխատանաւք կատարեցի զսա, զոր քաջ իմանան
գիտնականքն և հոգևորքն զաշխատանք սորա, ըստ առաքելոյն. որ
ասէ, թէ՝ Որ զփորձ առեալ է, կարող է և փորձանաւորացն աւգնական
լինել. ըստ այսմ և դուք արասջիք, զի աւրհնութեանն Քրիստոսի
արժանի լիջիք, ամէն։

Բ

590 բ Ի թուիս ՋԿԱ. (1312) սրբազան կրաւնաւորն Դանիէլ ետ զտա-
րեգիրքս սուրբ Խաչիս Ախթամարայ, յիշատակ հոգոյ իւրոյ, և քեռն
իւրոյ Մարիանոյ, և ծնաւղացն իւրեանց։ Եւ սպասաւորք սուրբ խաչիս
յանձն առին, որ յամէն տարի Բ. ժամ առնեն. քանի իւրեանքն
կենդանի են, զմէկն հաւրն առնեն՝ Շահապին, և մէկն մաւրն՝ Թամա-
րին, և յետ իւրեանց մահուն, զմէկ ժամն՝ վարդավառի կիրակին՝
Դանիէլին առնեն, և զմէկն՝ աստուածածնի կիրակին՝ Մարիանոյն։

* 587 ա էջի երկրորդ սյունակից մինչև 589 բ էջի առաջին սյունակի վերջին մասը
Դանիէլ գրչի ինքնապախարակման ու նվաստացման տողերն են, շատ տեղերում գրված
գեղարվեստական մեծ վարպետությամբ, բայց զուրկ պատմական արժեքից։

Ով եկեղեցպան լինի ղայս Բ. ժամս անխափան առնել տայ։ Կատարիչքն աւրհնին յաստուծոյ և ի սուրբ Խաչէս, և զհատուցումն ի Քրիստոսէ առնուն, ամէն։

## 117.

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4801, նաև Փիրղ. 6273, էջ 119—120 (տես նաև՝ 1417 թ.)

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամար

257 ա Աստանաւր աւարտեցաւ սուրբ գիրքս այս ի Թուականիս Հայոց ՉԿԱ. (1312), ի կղզիս Աղթամար կոչեցեալ, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչի, և սուրբ Նշանի, և աստուածամուխ սուրբ Գեղարդեան, ի հայրապետութեան տեառն Ներսէսի և տեառն Զաքարիայի։ Զոր ստացաւ զստ յարդար վաստակոց իւրոց երջանիկ և ճգնաւոր ոմն Գրիգոր միայնակեաց, յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղացն՝ Դաւթի և Սիրամարգի, և ետ զսա նուէր յանուանի և ի հռչակաւոր սուրբ ուխտս՝ ի սուրբ Խաչս Աղթամարա անջինջ արձան։ Իսկ ես ամենամեղս և փցունս ի գրչաց Դանիէլ անարժան կրաւնաւոր, տեսի զսէր և զփափագ սորա, որ առ հոգևորսն, և ըստ իմում տկար անձամբս յանձն առի և կարողութեամբն աստուծոյ կատարեցի։ Վասն որոյ աղաչեմ
257 բ զհանդիպեալսդ սմա անմոռաց || յիշմամբ յիշեսջիք յարժանաւոր յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալսն՝ զԳրիգոր միայնակեաց՝ ստացող սորա, և զծնաւղսն իւր՝ զԴաւիթ և զՍիրամարգ, և զազգատոհմն նորա՝ զկենդանիք և զհանգուցեալսն։ Ընդ նոսին և զիս՝ զմեղուցեալ Դանիէլ գրիչս՝ և զմեր ծնողսն, և զամենայն արեան մերձաւորքն մեր և զերախտաւորքն։ Նաև զուսուցիչն մեր՝ զՍիմէոն քահանայ, և զՍտեփաննոս կրաւնաւորն, որ աւգնական եղև մեզ ի նիւթ թղթիս, և զԹովմայ կրաւնաւորն, որ եղև միջնորդ այսմ գրոց, որպէս զի աղաւթիւք ձերովք և ամենայն սրբոց ողորմածն աստուած ողորմեսցի ամենեցուն՝ յիշողացդ և յիշեցելոցս, կրկին կենաւք և երկու աշխարհաւք. և ինքն եղիցի աւհրնեալ յամենայն յարարածոց իւրոց, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 118.

## ՇԱՐԱԿՆՈՑ

Բրիտ. Թանգ. 46 (Add. 18,603), Կոնիբ. Ցուց. էջ 95—96
(տես նաև՝ 1449 և 1693 թ.թ.)

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Ականց անապա՞տ

ա

349 բ ...Ի Թագաւորութեանն Հայոց Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Կոստանդ[եայ], և ի Թուականութեանս Հայոց ՉԿԱ. (1312)

գրեցաւ գիրս այս, որ կոչի շարակնոց, ձեռամբ Ներսէսի քահանայի, ի խնդրոյ կուսակրաւն քահանայի Թորոսի։ Արդ, աղաչեմ զձեզ, որ հանդիպիք և տեսանէք զգիրս զայս, խոշորութեան և սղալանացս անմեղադիր լերուք և գրողի սորա մեղաց թողութիւն խնդրեցէք, և եղբարց իմոց՝ Յովանէսի և Թորոսի, և ծնողաց իմոց. ընդ նմին և Թորոսի քահանայի՝ ստացողի սորա, որ ետ գրել զսա ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց։ Տէր Յիսուս ողորմեա Գրիգորի քահանայի, որ այժմ հայր է Ակնեց անապատին, որ սկիզբն արար գրոցս և գրեաց մինչև Որոտմանցն շարականն։

Ծաղկող՝ Գրիգոր

Բ

350 ա Ո՛, եղբարք, եղբարք, աղաչեմ յիշել զեղկելի գրիչս Գրիգոր դպիր, որ զգիրս խազեցի և զարդարեցի ոսկով և ծաղկիւ։

Կազմող՝ Յակոբ Մեծպարոնենց

Գ

350 ա Զմեղաւք զատապարտեալ կազմող սորա՝ զՅակոբ երէց Մեծպարոնենց, և զծնաւղսն իմ և զազգայինսն, աղաչեմ յիշել ի տէր։

119.

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 8023

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Սիս

248 ա ...Գրեցաւ տետրակս այս ձեռամբ Գրիգոր քահանայի ի մայրաքաղաքս ի Սիս, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, ի լաւ և յընտիր աւրինակէ Կոստանդէ, ի վայելումն դեռաբոյս սարկաւագի Սիմէոնի* և ծնո[ղաց իւրոց] և որոյ տէր կամեսցի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ կամ ընդաւրինակէք, մեղաց թողութիւն հայցեցէք Սիմէովնի* սարկաւագի և ծնաւղաց իւրոց, որ ստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց, ի թուականիս
238 բ Հայոց ԷԾԿԱ. (1312). ի հայրապետութեանն || տեառն Կոստանդեա, և ի թագաւորութեանն Հայոց Աւշնի։

Ընդ նմին զԳրիգոր քահանայ՝ զգրաւղ սորա, և զծնաւղս իմ, և զդեռաբոյս որդին իմ զՍարգիս, աղաչեմ յիշել ի սուրբ և ի գերամաքուր աղաւթս ձեր, և որ յիշէ, նա ընդ միոյն հարիւրապատիկ առցէ ի Քրիստոսէ, ամէն։ Եւ զտէր Յովաննէս եպիսկոպոսի և առաջնորդ[ի] Արքայկաղնոյն, որ շնորհեաց Գրիգոր սարկաւագի զգին սորա, և

---

* «Սիմէոն» անունը գրված է ջնջված մի անվան փոխարեն, որն, ինչպես պարզվում է հաջորդ շարագրությունից, պետք է եղած լինի «Գրիգոր»։

զծնաւղսն իւր, և զամենայն ազգատոհմն իւր յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս ի տէրն մեր, ամէն...։

120.

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 231 (տես նաև 1426 թ.)

Գրիչ՝ Սահակ
վայր՝ Փերեոց վանք

ա

67 բ Ո՛վ Պետրոս՝ սիրաւղ բանի,
Քո սուրբ հոգիդ փառաւորի,
Որ ցանկացար սրտի մտաւք
Ասցեալ բանից Սողոմոնի.
Քրիստոս տացէ քեզ սիրտ բարի,
Զի ընթեռնուս զբանս առակի
Եւ զոր ի սայս կա աւգտակար
Ի քո խորհուրդդ համբարի։
Յորժամ կարդաս և զղջասցիս
Եւ միտքդ առ քեզ ամփոփեսցի,
Դու զիս յիշեա սրտի մտաւք՝
ԶՍահակ անունս, զոր գրեցի,
Նա, որ Յիսուս անուն կոչի,
Ինքն ինձ և քեզ ողորմեսցի։

բ

81 ա Ո՛վ աստուածասէր ընթերցաւղք, որ աւգտիք ի լուսաւոր և ի հոգելից բանից առակացըս Սողովմոնի, յիշեսջիք սրտի մտաւք զերիցս երանեալ և սրբասէր կոյս կրաւնաւորն զՊետրոս, և զՊաւղոս,* և զհայրն իւր՝ զԹուքել, և զմայրն իւր՝ ը[զ]Զմրուխ, և զհանգուցեալ եղբայրն իւր՝ զՄումեդեն, և զմիւս այլ եղբայրն իւր՝ զՍտեփանոս, և զամենայն համաւրէն ազգակամս իւր՝ զկենդանիս և զհանգուցեալսն ի Քրիստոս, և մեղաց թողութիւն խնդրեցէք։ Ընդ նմին և զսրբազան կրաւնաւորն՝ զԿոստանդին փիլիսոփա, որ զաւրինակս շնորհեաց, և զծնաւղն իւր. և ով յիշէ սրտի մտաւք Քրիստոս զինքն յիշեսցէ, [և զնուաստ գրչակս | | | Սա]հակ]։**

գ

368 բ ...Դարձեալ կրկին աղաչեմ զձեզ, ո՛վ եղբարք, անմեղադիր լինիք մեր տխմարութիւնս, և խոշորութիւն գրոցս, և սխալանաց, զի մեր

* «ԶՊաւղոս»-ը գրված է այլ ձեռագրով՝ տողամիջում։
** Փակագծերի մեջ բերվածը գրված է ստորին լուսանցքում։

*կարս այս չափ էր, դի ի ծերութիւնս ուսաք զայս խոշոր դրիկս։ Գրեցաւ դիրք երկոտասան մարգարէիցս ի Թուիս Հայոց ՉԿԱ. (1312), յամսեանս սահմի, ի վանքս որ կոչի* Փերնոց, *ընդ հովանեաւ սրբոյ մաւր մերոյ Սիոնի... և ի Թագաւորութիւն* Աւշնի *և որ[դւոյ նո]րա* Լևոնի | | | *

## 121.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վրաց. Թանգարան, № 40 (տես նաև 1328)*

*Գրիչ՝* Բեներ

*վայր՝* Եղեգեաց գաւառ, Նորավանք

*...Արդ. գրեցաւ սուրբ աւետարանս ի Թվ. ՉԿԱ. (1312), ձեռամբ սուտանուն կրաւնաւորի* Բեների, *ի գաւառիս* յԵղեգեաց, *ի վանս, որ* Վերի Նոր|ավ|անս *կոչի, ընդ հովանեաւ սուրբ Սիոնիս և Մաւրս լուսոյ, յառաջնորդութեան սուրբ րաբունապետիս* Դաւթի** *և եղբաւրորդոյ իւր* Կարապետի։

*Արդ, աղաչեմ զձեզ, յով [մր] ժառանգէք [կա]մ ընթեռնոյք, զվերասացեալսս յիշեցէք, և աստուած, որ առատն է, մեզ և ձեզ ողորմեսցի առհասարակ, և խոշորութեան և սխալանաց մի մեղադրէք, զի աստուած զկարն խնդրէ, յիշել լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

## 122.

## ՄԱՇՏՈՑ

*Երևան 8266*

*Գրիչ՝* Սարգիս

120 ա *...Ասաօջիք լի բերանով Թէ Քրիստոս աստուած ի քո յահեզ դատաստանին ողորմեայ* Սարգսի *գրչին, և ծնողաց նորա, և վարդապետի նորայ, և ամենայն երախտաւորաց, ամէն. և Քրիստոս աստուած ողորմեսցի մեզ և ձեզ առհասարակ, ամէն։ Գրեզաւ Թվիս ՉԿԱ. (1312)։ Ի յայսմ ամի ի Քրիստոս փոխեցաւ տէր* Յակոբ, *և մեք զգիրքս ի ս[ո]րայ տսմնս գրեցաք, և սոքայ շատ ծառայութիւն արարէն մեզ։ Քրիստոս աստուած, ի քո յահաւոր և ի միւսանգամ գալստեանտ, ողորմեայ տէր* Յակոբայ, *և* Տիկնանց *տիկնայ, և տէր* Բարսեղին, Գրիգորիս *վարդապետին, և տէր* Աբրահամայ, *ամէն... և աւգնայկան լեր*

120 բ *պարոն* Հապաշին *և ||* Բարսղին, *աւգնական լեր սոցայ յամենայն վտանկ[է]՝ ի նստել ի տան և գնալ ի ճանապարհի, ի ննջել և յառնել,*

---

* *Թերթ է ընկել։*

** *Բնագրում՝ «զտի.»։*

ա՛ջ քո հովանի և պահպան լիցի ոգւոյ, զի մի ռասանեսցին սոքա յայսմհետէ մինչև յաւիտեան...:*

## 123.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. 6273, էջ 121 (Արաբկիրի եկեղեցի)

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Մեծոփայ վա՞նք

...Արդ, գրեցաւ աստուածախօս և աւետալուր սուրբ աւետարանս յամի ՉԿԱ. (1312), ձեռամբ հոգնամեղ և սուտանուն կրօնաւորի Աստուածատրոյ, ի խնդրոյ աստուածասէր և հաւատացեալ կնոջ, որ անուանի Մելիքայ...: Յիշեցէք զՄելիքայ, որ ստացաւ զսա յ ի հալալ արդեանց:

Արդ, տուաւ սա սուրբ Աստուածածնիս Մեծոփայ, մի ոք իշխեսցէ հանել զսա ի դրանէ սորա պատճառաւ իմիք, զի մի պատիժս կրեսցէ ի սուրբ տաճարէն:

## 124.

### ՇԱՐԱԿՆՈՑ

Վիեն. 202. Տաշ. Ցուց. էջ 524 (տես նաև 1617 թ.)

Գրիչ՝ Խաչատուր

ա

165 ա ...Արդ, աղաչեմ զձեզ պաղատանաւք, ո՜վ մանկունք Սիոնի, որք հանդիպիք այսմ մատենի տեսութեան, յիշեսջիք ի սուրբ և ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զանարժան Խաչատուր՝ զյետինս ի կրաւնաւորսն, և զծնողսն իմ, և դուք յիշեալ եղիջիք, ամէն: Գծագրեցաւ ձեռամբ իմով թվ. ՉԿԱ. (1312):

բ

23 ա Քրիստոս աստուած... ողորմեա ծնողացն իմոց՝ Սարգսի և Շամամի, և ինձ՝ ամենամեղ գրչի:

---

* Ձեռագիրը նորոգված է ԺԷ. դարում, շատ թերթեր գրված են նորից. հիշատակարանից պահպանվել է միայն սույն՝ 120 թերթը, որը գտնվում է այժմ ոչ պատշաճ տեղում:





## 125.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7842 (Տես նաև 1603 թ.)*

Գրիչ՝ Պաւղոս
վայր՝ Գլաձոր

335 բ ... *Արդ, ես՝ տկարս ի գաւրեղս և ապիկարս ի վարդապետս, չըն-*
*չինս ի յիմաստս և փանաքիս ի քերթողսն՝* Պաւղոս *վարդապետ, ծրե-*
*ցի իմով տկարութեամբ զսուրբ աւետարանս յոլով աշխատանաւք և*
*քրտնաջան տառապանաւք, ի գաւառիս, որ* Վայոձոր *ասի, և ի մեծ*
*մենաստանիս, որ* Գլաձոր *յորջորջի, ի դրան սուրբ Նախավկայիս, ի*
*թվականութեանս հայկազեանս սեռի ՉԿԲ· (1313), ի վարժապետու-*
*թեանս մերոյ մեծի* Եսայեայ, *յիշխանութեանս գաւառիս՝* Պապաքին *և*
Էաչին, *հայրապետութեանն* Կոստանդնեայ Կատուկցո, *թագաւորութեանն*
336 ա Աւշնի *և զանութեանն* Խարբ || անդին, *որ ճշմարիտ կոչեցաւ նա իշո*
*ծառա, զի* ||| * *և նա զօրէնսն Քրիստոսի ոչ ծանեաւ և բազմիմաց հնա-*
*րիւք դերծեաց զազգս մեր յամենայն կարասեաց, զի պահանջեաց*
*հարկս ի յազատաց և յաւտարաց, զոր ի սմա յըշտեմարանեալ բանիցս*
*իմացիս զյոլովն...***

## 126

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. 6273, էջ 122—123 (Ի Վանս Սքանչելագործ)*

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Մեծոփայ վանք

*Ցամի ՉԿԲ. (1313)-երորդի Հայկազեան տոհմիս տումարի, ի փառս զուգական և համապատիւ սուրբ երրորդութեան՝ հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, գրեցաւ աստուածային այս մատեան գանձ անկապուտ և մարգարիտ պատուական..., յանապատիս* Մեծոփայ *Վանս առձայնելոյ, ընդ հովանեաւ սուրբ մօրս լուսոյ Աստուածածնի, յառաջնորդութիւն տեղւոյս տեառն* Սարգսի, *ի ստացուած սրբազան քահանայի* Բարսղի *կուսակրօն աբեղայի, յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց, օժանդակութեամբ մերոյ հոգևոր հարազատի և սրբազան* Յովհաննէս *վարդապետի, ձեռամբ պիտականուն* Մխիթար *վարդապետի։*

---

* *Երկու բառ անընթեռնելի, քերված լինելու պատճառով։*

** *Շարունակությունը զուրկ է պատմական արժեքից։*

ի դառնութեան և ի վշտարէր ժամանակիս, յորում վիշտս վտանգի և աղէտս տարակուսանաց յոգունս հասուցանելով քրիստոնէական ոճոյս ազգաց անօրինաց՝ ուրացելոց ի փառաց որդւոյն աստուծոյ, նեղութեամբ, տառապանօք, հարկապահանջութեամբք և այպանման ծաղանօք։ Որոց հատուսցէ նորին ըստ գործոց նոցին հզօր թագաւորն Քրիստոս եօթնապատիկ ի ծոցս նոցա, լսել զհեծութիւնս կապելոցս ի տուունս մեղաց, և արձակել զորդիս մահապարտաց յանդորր և ի խաղաղ նաւահանգիստ. ողորմութեամբ և գթութեամբ իւրով։ Ճ Ծ Ղ- Ժ Բ Տ Բ Ն* պիտակ անուն վարդապետի ողորմեա աէր Քրիստոս ի քում գալստեան, բարեխօսութեամբ մօր քո և կուսի։ Որոց և ես ըստ իմում կարի կցորդելով՝ անպիտանս ի մանկունս եկեղեցւոյ, Բարսեղ կրօնաւոր, ստացայ զսուրբ աւետարանս ... և ետու զսա բաղձանօք որդի ի վանս Արծկէոյ, ընծայ սքանչելագործ սուրբ Նշանին, ի լուսաւորութիւն և ի հրճուանս մանկանց սուրբ եկեղեցւոյ, որք աստանօր կրօնաւորեալք մերկամարմին մրցանօք, առ ակնկալութիւն յուսոյ տեառն զինուորեալք։

127

ՃԱՇՈՑ

Երևան 4890

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամար

299 բ Աստանաւր սկզբնաւորեալ լուսանեղձ և շնորհաձիր տառս այս ի ստոյգ և յընտիր աւրինակէ, որ ունի շարակարգեալ յինքեան զտաւնս տէրունականաց, նաև զյիշատակս սրբոց նախահարցն, և զհոգելից մարգարէիցն, և սրբոց առաքելոցն, ընդ նոսին և զճգնազգեաց միանձանցն և զքաջ և զարի զաւրավարացն, այլ և զսուրբ վարդապետացն և զքաջայաղթ մարտիրոսացն սրբոց։ Եւ զկնի այս ամենայնի ունի գծագրեալ զսահմանադրութիւն սուրբ հաւրն Մաշտոցի։

Եւ աւարտեցաւ սա յամի ութնհարիւրերրորդի վաթսներորդի երկրորդի (1313), ի գեղեցկատիպ կղզիս Աղթամար, որ է տեղի ապաստանի, ընդ հովանեաւ ամենայաղթ և բազմայարմար սուրբ Խաչի, և սուրբ Նշանի, և աստուածամուխ սուրբ Գեղարդեան, և այլ միահամուռ սրբութեանցս, ի հայրապետութեանս տեառն Ներսեսի և տեառն Զաքարիայի, և ի խնդրոյ աստուածարեալ և սրբասէր կրաւնաւորի Թովմայի և եղբաւր նորին Առաքելոյ՝ միւս կրաւնաւորի, զոր յոյժ փափագմամբ ետ գրել զսուրբ գիրքս յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝ Անճրկի և Դիզզաւռի, և եղբարց իւրոց՝ Մխիթարայ և Պարոնշա-

* Եղբայրագիր ծածկագրով կարդացվում է՝ «Մխիթարայ»։ «Մ» և «Ր» տառանիշերի փոխարեն օգտագործված են նախորդ՝ «Ճ» և «Տ» տառանիշերը, իսկ ընդհակառակը, մյուսների փոխարեն՝ հաջորդ տառանիշերը, այսպես՝ Խ-ի փոխարեն Ծ, Ի—Ղ, Թ—Ժ, Ա—Բ, Ե—Ն։

եւ Վարդերեսի, և այլ ամենայն ազգատոհմին՝ կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս։ Եւ արդ, ես՝ ունայնս ե թափուրս ի գործոց բարեաց, անարժան կրաւնաւորս Դանիէլ, բազմամեղ և տխմար գրիչս, տեսի զսէր ե գփափագ սորա, որ առ հոգեորսն և ըստ իմում [ | ]

## 128.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Մանչեստր, Ms. Arm. 10, Տէրայր վրդ. 8 թղթ. 118, էջ 155—162*
*(տես նաև 1637 թ.)*

*Գրիչ՝* Յովաննէս
*վայր՝* Տայոց երկիր՝ Շիկբակ գիւղ

ա

255ա *Փառք... որ հասոյց զանարժանս և զմեղաւորս ի վերջս գրոցս սուրբ աւետարանիս, թուիս Հայոց ՉԿԲ. (1313), յամսեանն ի սեպտեմբերի Ը. (8), ի թագաւորութեանն Հայոց* Աւշնի *և ի կաթողիկոսութեանն տեառն* Կոստընդ[ն]ի, *ի յերկիրն* Տայոց, *և ի յերկրակալութեանն պարոն* Թաղային, *ի գեղն, որ կոչի* Շիկբակ։ *Ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի զաւրավարին։ Աղաչեմ զձեզ սուրբ ընթերցողք, որ անմեղադիր լինիք տխմարութեան գրչիս, զի անհմաստ էի և տեղս խալապայ էր։ Արդ, որք կարդայք կամ աւրինակէք, մեղաց թողութիւն խնդրեցէք* Հազարշահին, *և կենակցին իւրոյ* Թամամ *խաթունին, և ծնողաց իւրոց՝* Խայաթին *և* Խէր *խաթունին և* Հաւքայ *խաթու[ն]ին, և քուրոջն իւրոյ* Տիկնացին *ողորմեսցի Քրիստոս աստուած յիւրում գալըստեանն, ամէն։ Եւ* Հազարշահի *հայրն* Մխիթարա *հանդիսա և ողորմութիւն պարգեւեսցէ Քրիստոս աստուած, զի յոյժ փափաքանաւք և ուրախութեամբ սրտիւ աւգնական եղեն մեզ ի սուրբ աւետարանս։ Քրիստոս աստուած թողութիւն արասցէ սոցա յիւր միւսանգամ գալըստե[ա]նն, ամէն։ Եւ ինձ մեղաւորիս* Յովաննիսիս՝ *սուտանուն քահանայիս, որ միայն զանունս ունիմ և ոչ զգործն, մեղաց թողութիւն խնդրեցէք, աղաչեմ զձեզ։ Եւ ծնաւղաց իմոց* Կոստընդնա *ե* Մինա *տիկնայ, ե կենակցին իմոյ* Վարդ *տիկնայ, և եղբարց իմոց և ազգայնոց։ Եւ որ զմեզ յիշէ ե մեղաց թողութիւն խնդրէ, յիշեսցէ և զնա բարեգութն աստուած, և թողցէ զամենայն յանցանս նոցա աստ և ի հանդերձելումն, ամէն. եղիցի, եղիցի։*

բ

2ա *Ես ծառայ աստուծոյ* Յովանէս *մեղայպարտ սուտանուն քահանայ, ո[րդի* Կոս]տանդեայ, *որ սկսա շնորհիւ աստուծոյ, և կարողութեամբն Յիսուսի Քրիստոսի [աւարտեցի] ըզսուրբ աւետարանս, ի յ[ամսե]անն ի մահի[կի] ԻԳ. (23), յաւուր երկուշաբաթի՝ ի միջա[ւր]էի։ Հրամանաւ [և ձեռնտու]ութեամբ* Թամամ *խաթունին, որ աւգնական եղև ի գինս թղթոյն, ու ի կապելն, ու ի ծաղկելն, յիշատակ հոգոյ*

իւրում, յաւժար փափագանաւք, վասն փրկութեան անձին իւրոյ և վասն յուսոյ արքայութեաննւ Քրիստոս աստուած թողցէ զյանցանս մարդոյն այնմիկ, որ թողութիւն խնդրէ Թամամ խաթունին...։

Գ

258 բ Ես. մենք [*] Վխկացի [իմա Վահկացիք] աւետարանս գնեցա[ք] ի դերութենէ դեղով, տվաք Լ. (30) ֆլորի, սուպաշութէն Մելփիզէ Տեկիէ*, տանուտիրութէն Ղանտի Մարաշին, մեր հալալ մալովն առաք ղրաք զուան ի սուրբ Նիշանին, ով որ կարդայ աստուծոյ մեր մեղացն թողութիւն խնդրէ, աղամարզկանցն՝ արևշատութիւն, աւետարանս զեղի է, ոչ ով դավեյ[ք]ար չկայ, ձեռայգիրս Աւետիք իրիցուս։**

Դ

254 ա Ես Դաւիթս. տանուտէր էի. Վխկայ. տիրէր ի. դուսի դեղէ. գայ գիլէս.*** հարս. տանի. ԺԲ. (12). ստկէն. Զ.(6). թողել է, Զ.(6). կառնոմ. գեղիս. լման. թողել եմ, ով որ հարսն ան առնու.[ո]վ որ տանու այլնի. զայս զէնս, սուրբ ավետ[արա]նս. նորայ խռով կենայ։****

129.

ՄԱՇՏՈՑ

Երևան 2583

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Արիճոր

175 ա ...Գրեցաւ իմաստաիպ տառս սուրբ հաւրն Մաշթոցի յանապատիս, որ կոչի Արիճոր, ընդ հովանեաւ սուրբ Ցարութեան, և սրբոյ Խաչին, և սրբոյ Կարապետին, և սրբոյն Լուսաւորչին, յառաջնորդութիւն Ստեփանոս վարդապետի՝ ընտրեալ ծառայ[ի] Քրիստոսի, ի թուականիս հայոց Չ Կ Բ. (1313)։ Բայց կատարեցաւ գիրքս յաւուր մեծի հինգշաբաթի, յորում եղեն խնդութիւնք երկնաւորաց և երկրաւորաց, ձեռամբ յիմարի և տառապեալ գրչի Սարգսի, ի վայելումն անձին Յովանէս քահանայի՝ բարեպաշտի և մարգասիրի, [որ] ստացաւ զսայ եռայփափագ և ջերմ սիրով և յոյժ ցանկայր սորայ, զի ուր սայ յիշի և ընթեռնու, սովաւ յիշի և յորջորջի անուն սորայ ի Քրիստոս։ Բայց արդ, աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, որք հանդիպիք սմայ՝ յիշեցէք զՅովանէս քահանայ և եղբայրն իւր զՄարաիրոս, զի է բարեպաշտ տանուտէր՝ աղքատայսէր և աստուածասէր, և զմիւս եղ-

* Իմա Մելփիզէ Տեկիէի ջրպետության ժամանակ։

** Հիշատակագրության ժամանակի մասին նկարագրողը ոչինչ չի ասում, միայն հայտնի է, որ գրված է «անվարժ բոլորգրով»։

*** Իմա՝ «գիւղիս», այսինքն՝ «այս գյուղից՝ Վահկայից»։

**** Արտագրում ենք նույնությամբ, չփոխելով տարօրինակ կետադրությունը։

րոյր սոցայ՝ զԱմենաւագն, որ փոխեցաւ ի Քրիստոս, և զհայր սոցայ և զմայր՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, և զյիմար գրիչս, որ ի հոգևորն ունայն և ի ձեռագործս յանդուգն, և զծնողսն մեր...։

## 130.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Սեբաստիա, Ս. Նշան, № 2. Հ.Ա. 1023*

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Սեբաստիա

ա

504 ... Արդ, ես Նուաստ ծառայ ծառայիցն աստուծոյ... Ստեփաննոս ապիկար քահանայ, փափաքող եղէ այս սուրբ մատենիս և աստուածագիծ տառիս, և թէպէտ որ կարի անվարժ էի ու յոյժ անտեղեակ արհեստի գրչութեան, բայց իղձ սրտիս և տենչումն ոգւոյս ստիպեաց զիս, և ես յասաւելն քան զկարն իմ նկրտեցայ և յանձն առի, իբր զհմուտ քարտուղարս ստացայ զհամարձակութիւն, և տխմար անձամբ գրեցի զսուրբ տառս, և լցի զփափաք անձին իմոյ։ Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց Չ. երրորդի Կ. երրորդի և յերկրորդի (1313), ի հոյակապ և յականաւոր մայրաքաղաքս Սեբաստիոյ, առ դրունս սրբոյ տաճարիս սուրբ Փրկիչ կոչեցելոյ, որ է հանդէպ վկայարանին զերահռչակ և սխրագործ արեամբ ներկեալ վկայիցն սրբոց Քառասնիցն՝ մեծի Կաթողիկէ եկեղեցւոյն, որ զանձն աստուածային՝ նշխարք սրբոցն անդ կան ի պահեստի։ Եւ եղև դրաւ սորա... ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, և ի թագաւորութեան բարեպաշտին Աւշնայ, և յեպիսկոպոսութեան մերոյ նահանգին տեառն Ստեփաննոսի։ Արդ, գրեցաւ սա ի դառն, և ի դժուարին, և յանբարի ժամանակիս, զոր յոյժ նեղիմք յանաւրինաց, ի յարտաքին չար ազգաց և ոչ նուազ հասանեն նեղութիւնք...։

բ

602 ... Փառք... որ զաւրութիւն ետ գծողին՝ Ստեփաննոս քահանային՝ ի սմա բազում աշխատողին, և ծնողացն իւր՝ Տերունին, այլ [և] զաւրինակն շնորհողին՝ պարոն Աւենդ Եքսախասին, և որք արժանի զմեզ վարկանին մտաւք ասել զտէր ողորմին, յիշել յայնժամ և եղիցին...

Եւ արդ, գրեցաւ մատեանս այս աստուածախաւս մարգարէին Մովսէսի, որ է գիրք Արարածոց և Թագաւորութեանց, ի թուիս յաւիտենիս, որ է Ադամա՝ ՑՊԻԱ. (6821), և ըստ հայկազն թուականի ՉԿԲ. (1313), յամսեանն յուլիս ԺԸ. (18), յաւուր չերեքշաբաթի, և տանուտէր Խոյն, ընդ հովանեաւ սուրբ Փրկչին, ի մայրաքաղաքս Սեբաստիայ, ի թաղս, որ կոչի Մարէ, ի թագաւորութեան Հայոց պարոն Աւշինի, և յառաջնորդութեան տէր Կոստանդեայ, և յեպիսկոպոսութեան տէր Ստեփաննի...։

Արդ, աղաչեմ զամենեսեան. որք կարդայք կամ աւրինակէք, մեղաց թողութիւն խնդրեցէք ստացողի սորայ, և անիմաստ գրչողի՝ Ստեփաննոսի անարժան քա՟անայի, և մաւր իմոյ Տիկնացի, և խղաթին իմոյ Մարիամի, և զաւակին իմոյ՝ ի Քրիստոս փոխեցելոյն Սիմոնի, ընդ նմին յիշեսջիք զ՟ոգևոր եղբարք իմ՝ զՍտեփաննոս քահանայ, որ աւգնական եղև ի քանոնելն և ի թանաք եփելն, և սղալանաց գրոյս անմեղադիր լինել [աղաչեմ], զի կար մեր այս չափ էր...

## 131.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ

Երևան 821 (Տես նաև՝ 1596 թ.)

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Ակներ

ա

74բ Կատարեցաւ կցուրդք ասացուածք Եփրեմի երանելոյ, ձեռամբ անարհեստ գրողի Գրիգորի՝ սպասաւորի Ակներոյ Վանիցս, ի թվ. ՉԿԲ. (1313). ի սոյն ամի սկիզբն արարաք շինման բերդին, որ ի Քարտիզկնոցն։

բ

242ա Բժշկեա տէր աստուածային սպեղանաւք քո զիրխայթեալ վէրս հոգւոյ գրողական սուրբ մատենիս՝ Գրիգորի սպասաւորի սուրբ անապատիս Ակներոյ, նաև զայնոցիկ, որ գթով աստուած-ողորմի մեզ ասիցեն։

## 132.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա, Տ.—Ավետիսյան, Ցուցակ, էջ՝ 142 (տես նաև 1456 թ.)

Գրիչ՝ Ներսես Կլայ[ե]ցի
վայր՝ Ակներ

ա

429ա ... Շնորհիւ տեառն սկսա և ողորմութեամբ նորին աւարտեցաւ լուսափայլ սուրբ և տենչալի աւետարանս տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ձեռամբ յոգնամեղ գրչի Ներսես Կլայեցւո մեղաւորի, ի վայելումն անձին իմոյ և ի յիշատակ հարց և եղբարց իմոց՝ գնացելոյն ի Քրիստոս։ Արդ, գրեցաւ ի յանապատս, որ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, և սուրբ Յակոբայ, և այլ աստուածահաւաք սուրբ նշխարաց։ Ի թագաւորութեան Աւշնի բարեպաշտի և ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ Կեսարց[ոյ], ի թուիս ՉԿԲ. (1313)։

Աղաչեմ զամենեսեան, որ աւգտիք ի սմանէ, յիշեցէք ի տէր զգրող, և զկազմող, և զննջեցեալս մեր, և որ յիշողն է բարեաց՝ մեզ և ձեզ ողորմեսցի, ամէն։

## 133.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 108, ցուցակ Ա. 708

Ստացող՝ Կարապետ
վայր՝ Կիլիկիա, Միակեցեր ուխտ

535 ա Ի Չ. երորդի Կ. երորդի երկրորդի (1313) թուաբերութեան տումարի Հայոց, յառաջնորդութեան տէր Կոստանդնի, և թագաւորութեան կիւլիկեցւոց նահանգիս Աւշնի, ես՝ Կարապետս, նուաստս և յետինս յորդիս եկեղեցւոյ, հանդերձ հարազատ եղբարբ իմով Թորոս քահանայիւ, ցանկացաւղ եղաք այսմ լուսայեղձ և կենսակիր քառաջահեան մշտալոյս բանից տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ աւետեաց աւետարանիս. և ստացաք զսա ի վայելումն անձանց և ի յիշատակ հոգւոց մերոց և ծնաւղաց։ Մանաւանդ գծաւղ աւրինակիս և զհանճարեղ գրիչն Ռըստակէս յիշեսջիք։ Գրեցաւ սա ի սուրբ ուխտս, որ կոչի Միակեցեր, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս. և Քրիստոսի աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս։



ՉԿԳ 1314

134.

### ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ

*Երևան 9150**

Գրիչ՝ Պաւղոս
վայր՝ Գլաձոր

*... Յամս Թուաբերութեան ժամանակաց հոլովման շրջագայու-
թեան ամաց Հայկազեանս տումարի ՉԿԳ. (1314), ես՝* Պաւղոս, *ըստ
շնորհատուբ անուանն սուտ վարդապետ կոչեցեալ՝ աշխարհաւ* Կիլիկե-
ցի, *ի սուրբ ուխտէն* Ակներ *կոչեցեալ, ըստ տատանման մտաց ար-*
4 ա *գարև հողմով մանգութեան իմոյ, նաև յաղագս փափագման իմաստ || ա-
սիրական արհեստից տարաշխարհիկ եղեալ ի կայս և ի կոյս արևու,
եկեալ բնակեցայ ի կողմն նահանգիս* Սիւնեաց, *ի գաւառս* Վայոցձոր
*կոչեցեալ, ի վանս* Գլաձոր. *առ ոտս սուրբ երիցս երանեալ բաբունա-
պետին* Եսայեայ, *որ իբրև զարեգակն լուսաւորեալ պայծառացուցանէ
զբոլոր ազգս և զեկեղեցիս Հայաստան աշխարհիս, զոր շնորհեսցէ զսա
Քրիստոս աստուած եկեղեցւոյ իւրում սրբոյ ընդ երկայն աւուրս։ Եւ
ընդ հովանեաւ ամենաղաւր աջոյն Յիսուսի գրեցի զսուրբ աւետա-
րանս իմով ձեռամբ, վատեալ ի լուսոյ և պակասեալ ի զաւրութենէ,
դողդոջեալ ձեռաւք և մտաւք, հրամանաւ և ծախիւք մեծազարմ և*
4 բ *իշխանաշուք լուսաբողբոջ մանգանն ||* Տարսայիճ *կոչեցեալ, իսկ ի
շնորհս հոգոյն սրբոյ* Ստեփաննոս *անուանեալ, որ է ըստ հայրենի
նախնեաց՝ յազգէ և ի շառաւեղէ* Օրպիլեանց, *իսկ ըստ մայրենեաց՝
սերեալ յազգէ մեծ ամիրսպասալարին* Զաքարէի, *իսկ յորովայնէ մաւր
նուիրեալ աստուծոյ, տուեալ զանձն ի կրթութիւն գրոց, և աստուա-
ծային աւրինացն և պատուիրանացն հլու և հպատակ, նաև յիմաս-
տասիրական արհեստս յոլով ժամանակս գեգերեալ ընդ Թևաւք խնա-
մոց սուրբ և երանաշնորհ բաբունապետին և տիեզերալոյս վարդա-
պետին* Եսայեայ. *նաև աստիճանի սարկաւագութեան և քահանայու-
թեան արժանացեալ. և հանդերձեալ է կոչմամբ և ընգրութեամբ սուրբ*
5 ա *հոգոյն || ելանել ի պատիւ և յաստիճան վարդապետութեան և եպիս-
կոպոսութեան տանս* Սիւնեաց, *զոր ընգալցի տէր և յաջողեսցէ ի հա-
ճոյս կամաց իւրոց, ի զարդ և ի փառս կաթուղիկէ սուրբ եկեղեցւոյ։*

*Արդ, հրամանաւ վերապատուեալ տեառնս իմոյ՝ տէր* Ստեփան-
նոսի *մականուն* Տարսաիճ, *գրեցաւ սուրբ աւետարանս յընդիր ընդիր
նրանգոց և ի յոսկւոյ սրբոյ, ի փրկութիւն հոգւոյ իւրոյ, և ի վայե-
լումն անձին իւրոյ և իւրոց զարմիցն, քրիստոսազաւր իշխանացն՝*

---

** Պահպանվել է միայն հիշատակարանը։ Հնում պատկանել է Ռ. Դադյանին և նկարագրված է նրան պատկանած ձեռագրերի ցուցակի Բ. հատորում։*

մեծ Ամիր Պուրքելին և Պաղտային, և լուսազարդ հարազատացն իւր՝ Շահիշահին, Ըլիկումին և Աղբուղին, և քրիստոսասէր և գերամեծար
ճ ա ծնաւղին իւրոյ՝ պարոն Գոնցային, ‖ որք են իշխանք և տէր Նահանգիս Սիսական, զոր տէր Յիսուս յաջողեսցէ նոցա յամենայն բարիս, անարկու և յաղթող արասցէ ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի, աջն հայրական և բազուկն տիրական, որ տարածեցաւ ի խաչին, հովանի և պահապան եղիցի նոցա ի տուէ և ի գիշերի, գնալով դաւրութենէ ի զաւրութիւն և ի փառաց ի փառս. ի փառս փառաւորեցելոյն Յիսուսի։

Արդ, առաջեմ ղամենիսեան միջնորդութեամբ սուրբ աւետարանիս, որք պատահիք այսմ լուսանրկար աստուածաբան կտակիս, յիշեցէք զգեռաբողբոջ և զլուսազարդ պատանին զտէր Ստեփաննոս, հանդերձ բոլոր զարմիւք իւրովք, ի մաքրափայլ սուրբ աղաւթս ձեր՝
ճ բ առաջի մեծի զենմանն Քրիստոսի, ‖ որ խորհրդաբար մեռանի և է միշտ կենդանի։ Յիշեսջիք աղաչեմ և զհայր սորին՝ զմեծ իշխանաց իշխանն, զհանգուցեալն առ Քրիստոս զպարոն Զայալն, և զհաւրաքոյրք սորա, զամենաւրհնեալն ի կանայս՝ զպարոն Առփային և զՄամքանն, և զմայր սոցին՝ զպարոն Մինա խաթունն։ Այլ և զհաւրեղբայր սորա՝ զտէր Ստեփաննոս Նեարապաւլիս Սիւնեաց նահանգին և զպարոն Ըլիկումն, որ վաղ մահուամբ ի տիս մանգութեան փոխեցան յաշխարհէս առ ստեղծաւղն և յոյսն ամենեցուն Քրիստոս, զոր դասեսցէ զնոսա աստուած ընդ սուրբ և երջանիկ իշխանացն և ի դասս սուրբ հայրապետացն։ Եւս առաւել աղաչեմ յիշել աղաւթիւք զսուրբ և դերանա-
ա շնորհ բարունին զՍարգիս, զգաստի ‖ արակ և զսնուցիչ տեառն Ստեփաննոսի, որ ի մանգութենէ մինչ ի յարբունս հասակի, մեծաւ ջանիւ և աշխատութեամբ, վաստակեալ ի սնունդ տիրապէս, և յուսումն, և ի հրահանգս հոգևոր և մարմնաւոր, հատուսցէ նմա տէր վարձս բարեաց ընդ միոյն բիւրարապատիկ՝ աստ և ի հանդերձելումն։

Եւ արդ, ես՝ մեղաւք խաւարեալս և ի տոռոնս մեղաց կապեալս կրկին շղթայիւք՝ Պաղոս անուն վարդապետ, ըստ կարի իմում մեծաւ աշխատութեամբ, վատեալ ի լուսոյ և պակասեալ ի զաւրութենէ, դողդոջեալ ձեռաւք գրեցի զսա և ընծայեցի իբր զակն անգին և պատուական ի ձեռս պսակին եկեղեցոյ ի տիս մանգութիան, զոր տացէ Քրիստոս աստուած վայելեալ յամերամս ժամանակաց։ Այլ և մեծաւ բաղձանաւք և արտասուաթոր բղձիւ անգեալ առ ոտս պատահելոցդ սմա, եղբայրական ցաւակցութեամբ յիշել զիս աղաւթիւք, և ծովացեալ և աննուն մեղաց իմոց ի Քրիստոսէ թողութիւն խնդրել, և ծնողացն իմոց և ազգականաց. և ինքն՝ բարեգութն և ողորմածն աստուած, ձեզ շնորհեսցէ թողութիւն մեղաց, և աղաւթիւք սուրբ աստուածածնին և ամենայն սրբոց զյիշեցեալքս և զյիշողքդ՝ ամենայն հաւատացելովք Քրիստոսի, միութեամբ միապէս միացուսցէ ի լոյսն անշիջանելի՝ ի հայր և յորդի և ի սուրբ հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 135.

## ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

*Ե. Հալ. անտիպ. 485(72)**

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Թէոդոպոլիս

*Արդ. ի ժամանակաշար չափոյն Հայկազեան ՉԿԳ. (1314), ե ի կենարար յայտնութենէն աստուծոյ բանին առ մեզ ՌՅԺԶ. (1316), և յելանելո նախաստեղծիցն ի վայելչական վայրէն մինչև ցայժմ ՏՉ. և ԼԹ. (6739) ամ, զոր ձրիւք և պարգևաբաշխութեամբ ողորմածին աստուծոյ, գրեցաւ ձեռամբ վհատեալ և տառապեալ սգոյ Գործքս Առաքելական և հրաման[ս] աստուածական, ի վայելումն և ի պայծառութիւն սրբոյ եկեղեցոյ։*

*Արդ, գրեցաւ սա յընտիր և ի ստոյգ աւրինակէ, ի քաղաքիս, որ կոչի* Թէոդոպոլիս, *ընդ հովանեաւ սրբոյ Ստեփաննոսի Նախավկայի և այլ սրբոց, [ի ձեռն] անարժան և մեղապարտ գրչի* Սարգսի, *որ է ունայն յամենայն բարեաց, խորհրդոց և ի գործոց։*

*Արդ, աղաչեմք զամենեսեան, ով որ կարդայք և կամ աւրինակէք, յիշեցէք ի տէր զբարեմիտ և զամենայնի առաքինազործ զընտրեալ կարգաւորն, զկուսազարդ կրաւնաւորն, և զծնողս իւր, և զամենայն ազգայինս իւր, եւս առաւել զ*Մխիթար *աբեղայն՝ զհոգեոր եղբայրն իւր՝ զփոխեցեալն ի Քրիստոս յայսմ տարւոջս, և զմարգարիտն պատուական՝ զ*Ստեփաննոս *քահանայն, և զ*Յովհաննէս, *և զհայրն իւր՝ զձեռով նկարեալն հոգոյն ճշմարտի, և զընտրեալ վարդապետս իւրեանց, որք զարդարեալ էին ամենայն առաքինութեամբ և նմանեալ առաջին սրբոց, քանզի ակն ունեն ամենեքեան սոքա աղաչանաց ձերոց և ողորմութեան բարերարին աստուծոյ, զի արժանաւորաց զսոսա հանդիպման երկնաւոր փեսային, նորաճաճանչ և անպատում բարեացն և նորոգման յաւիտենական կենացն, ամէն։*

*Դարձեալ, կրկին աղաչեմ և երեսասող մաղթանաւք խնդրեմ ի քրիստոսասէր ընթերցողացտ, յիշել ի տէր զպարծանաց հայն իմ՝ զ*Եղբարիկն, *և զմայրն իմ՝ զ*Շնոֆոր *տիկին, և սոցա եւս խնդրեցէք զթողութիւն հոգոյ և մարմնոյ, ամէն։*

*Եւս առաւել յիշեցէք ի տէր զընտրեալ քահանայ զ*Գրիգոր*՝ պարծանաց եղբայրն իմ, և զհոգևոր եղբայրս իմ՝ զ*Ծերն *և զ*Կարապետն*՝ զբազմաշնորհ սարկաւագունսն։*

*Բայց և գրութիւն սորա եղև ի թագաւորութեանս Հայոց* Աւշրնի *և ի ղանութեանն ազգին Իսմաելացւոց* Խարպանդաին, *ի նեղ և ի դառն ժամանակիս, որ անդաւ ազգս Հայոց ընդ լծով հարկի, և չկայ յոյս ապաւինի և ոչ տեղի ապաստանի. և էր աշխարհ յամենայն ի տառապանք և ի յարկապահանջութիւն. և իսպառ նուազեալ էր ազգս Հա-*

* *Լալայանի անտիպ ցուցակի ինչպես այս, այնպես էլ մյուս հիշատակարանները արտագրված են բազմապիսի սխալներով, բառերը ճիշտ չեն անջատված, կան տառասխալներ և այլն, դժվարությամբ է հնարավոր լինում վերծանել։*

յոց։ Եւ ի քաղաքիս յայսմիկ [ի Թեաւդոպաւլիս] քակեցին եկեղեցիք բաղում, և ոմանք. Թողեալ զհաւատս որ ի Քրիստոս, և գնացեալ զհետ անօրինաց Իոմայելացոց տղղի. և այլք, վաճառեցին զտղայս իւրեանց, և ինքեանք փախուցեալք յայլեայլ տեղիս, և ոչ ուրեք գտանիւր տեղի ապաւինի. և այլ բաղում վիշտս և տառապանս, որ կայր ի վերայ աշխարհի վասն մեղաց մերոց։

Արդ, յայսմ տարւոջս եկն մորեխ սաստիկ ի վերայ երկրի, քանզի ոչ ոք ի մերում ժամանակիս ետես այնպէս և ոչ ի հնումն պատմեցին մեզ այսպէս խստագոյնս, քանզի զտասն աւուր ճանապարհն ի Ա. աւուրն անցանէր. և ի ԽԱ. (41) աւուրն այնպէս խստագոյն անցաւ, որ լեզու ոչ կարէ պատմել և ոչ ոք կարէ ընդ գրաւ արկանել զանթիւ բազմութիւն մորեխին. քանզի իբր զհեծեալքս բաղում, որ երթայ զաւրն և իջևանին ի գիշերն ամենայն, այնպէս գայր մինչև յերեկունն, և ի վաղիւն, յորժամ շողանա[յ]ր արևն՝ յառնէր. և յորժամ յառնէր, այնպէս էր նմանութիւն նորա, որպէս սաստիկ ձիւնոյ կամ զանձրևոյ, երթայր և բարձրանա[յ]ր, որ ոչ ոք կարէր տեսանել զբարձրութիւն նորա, և ի թանձրութենէ նորա փոխէր գոյնն արեգականն։ Գոչէր իբրև զգետ, անցանէր իբրև զքամի, և էր աշխարհ ամենայն ի տարակուսանք, լային զառնապէս, ողբային, կոծէին, զմոխիրն ընդ գլխոյն արկանէին, ծեծէին զերեսս իւրեանց. և ոչ ուստեք եղև փրկութիւն, ըստ մարգարէին՝ աղաղակէին, և ոչ ոք էր, որ փրկէր զնոսա. կարգային առ տէր, և ոչ լուաւ նոցա, զի այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Ահա, տեսէք, թէ որչափ ցասումն և զառնութիւնն եկն ի վերայ մեր ըստ գործոց մերոց. ժամ մի երաշտութիւն, ժամ մի անձրև սաստիկ և ապականիչք, ժամ մի հողմք դիւականք, և աւ.ղք սաստիկք, և ձիւն, և արհաւիրք ազգի ազգի, որ ըստ մեղաց մերոց խրատէ զմեզ աստուած, և մեք՝ անմիտ իբրև զանասուն, և ոչ իմանամք զկորուստ անձանց մերոց, այլ յոյս ունիմք զՅիսուս Նազաւրացի, որ անուանի որդի Դաւթի։

Այս անցաւոր կյանքս անցանի,
Համբերողացն է երանի,
Զձեզ աղաչեմ արտասուելի,
Յիշման առնել զիս արժանի,
Որ ինձ և ձեզ տէրն ողորմի
Եւ մեր մեղաց գիրն ջնջի. ամէն...։

136.

ՊԱՏՃԱՌ ՍԱՀՄԱՆԱՑ ԴՐՈՑ

Ալիշան, Հայապատում, էջ 525—526, Սիսական, էջ 135 և 138

Ստացող՝ Գրիգորիս Ցաղմաեցի
վայր՝ Գլաձոր

ա

Յեւանելոյն Ադամայ ի դրախտէն մինչ ի յաւարտումն գրոցս էր թիւ ժամանակիս ՑՇԴ. (6504), զի յելանելոյն Ադամայ մինչ ի

Քրիստոս էր ՐՃՂԸ. (5198), և ի ծննդենէն Քրիստոսի ՌՅԺԶ. (1316) ամ. իսկ թվ. Մեծ Հայոց էր ՉԿԳ. (1314)։

Ես Գրիգորիս, բազմամեղ և ծանրամեղ ոգի, փափագեալ յամենայն բարի և յետնեալ յամենայնի, ըստ տեառն բանին՝ սերմանեցի յապառաժի, զի ի տղայական հասակի զվանական քահանայութեան բուռն հարի, ձեռնտուութեամբ հօր մերոյ Կոստանդեա. և յետ ամենայնի, ի կատարեալ հասակի՝ բայց յանկատար հոգոյ, ցանկացայ ընթերցման գրոց՝ անիմաստ մտօք, զի ոչ գիտացի զչափ գործոյս։ Եւ զի ծննդեամբ էի յերկրէն Խարբերդոյ, ի գաւառէն Ցաղման կոչեցեալ, և մայրական զրկօք եկեալ ի գաւառն Եկեղեաց. և անդ սնեալ ի մեծահռչակ վանքն Տիրաշէն, և անդ ուսեալ, որպէս ասացի, և կրօնաւորեալ. իսկ յետոյ, ի գալ վարդապետին Մովսիսի ի Կիլիկիոյ բազում գրենօք, յորդորեալ և առեալ զմեզ բնակեցաք ի Դարանաղեաց գաւառն՝ ի լեառն սուրբ և մեծ Լուսաւորչին մերոյ ամս վեց...

Գրիչ՝ Մխիթար Եզնկայեցի

Բ

Զմեղսաներկ անձն և զդրժող ուխտի կրօնաւորութեան զՄխիթար՝ յիշ[ե]այ. հառաչ[ե]այ խոր, ո՛վ խոհեմ պատահող, ասելով, քաղցր Քրիստոս, թո՛ղ, թո՛ղ զյանցանս Մխիթրա, և զծնողաց իւրոց, և զվարդապետի իւրոյ զԳրիգորիսի: Հասոյց [տէր] ի յաւարտ ձեռնարկութեանս այս՝ ի թուիս ՉԿԳ. (1314) հայկազեան տումարիս։

Բայց գրեցաւ գիրքս այս առ ոտս մեծ վարդապետիս Եսայեայ, ի տեղիս որ կոչի Գլաձոր, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի, հրամանաւ մեծ և երանեալ վարդապետիս իմոյ Գրիգորիսի Եզնկայեցոյ՝ բանի սպասաւորի, ի վարժումն անձին իւրոյ և ամենայն բանասիրաց։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ խրթնայայտ կտակիս, յիշեսջիք զառաջասացեալ ուսուցիչն իմ զԳրիգորիս և զծնողսն իւր, ընդ նմին և զհոգևոր հայրն իւր զԿոստանդին միայնակեաց, որ բազում առաքինութեամբ զարդարեալ է. իսկ հուսկ յետոյ քան զամենեսեան զաղաչուն և զփցուն գրողս՝ Մխիթար՝ սոսկ անուամբ կրօնաւոր, և զծնողսն իմ, զհանգուցեալսն ի Քրիստոս՝ զՊաղոս և զՏիրանց, և զեղբարսն իմ՝ [Մարկոս և Մարտիրոս]* զկրօնաւորեալսն միայնութեամբ, և զքոյրն իմ նոյին հետևող, և զհօրեղբօրորդին իմ Վարդպապ, որ յետոյ եղև կրօնաւոր...

Գ

Որք ընթերցմամբ հայիք ի սա
Եւ հանդիպիք գանձու սորա,
Տես թէ քանի՜ աշխատեցայ
Ես Մխիթար գրիչ սորա.
Թուղթս անկոկ ու գրիչ չկայ,

* Այս անունները, իր շատ այլ ազգականների անվանց հետ, գրիչը հայտնում է մի ուրիշ հիշատակարանում, որն Ալիշանի կողմից չի հրատարակված։

*Աւուրքըս ցուրտ ու պարզկա,*
*Ջարտախս բարձր ու կրակ չկայ,*
*Դոներս* չոր ու սպաս չկայ,*
*Եւ այս Գլաձորն ով դիտենայ.*
*Ես յոյժ նեղած ու ճար չկայ,*
*Եւ ես պանդուխտ ու վեղար չկայ։*
*Ինձ հատուցումն յիշման արա*
*Վասըն փրցուն գըրի սորա։*

Դ

*Ես նուաստանուն Մխիթար կոչեցեալ Եզնկայեցի, գնալով ի մայրն իմաստից Գլաձոր՝ առ ոտս Եսայայ վարդապետի ի վարժումն աստուածիմաստ գրոց, և յորդորեալ զիս վարդապետն իմ Գրիգորիս գրել զգիրս զոյս յոյժ աշխատանօք, և հանդիպեալ բարեմիտ և քաղցրատեսակ եղբօր՝ լցեալ ամենայն իմաստութեամբ, ես առաւել գրականութեամբ և ծաղկողութեամբ, անուն կոչեցեալ Թորոս՝ ի Տարօն գաւառէ, ծաղկազարդեաց զգիրքս զայս՝ վասն յոյժ սիրելոյ զմեզ, ով որ հանդիպիք՝ յիշեսջիք զինքն և զիւր ծնողսն ի Քրիստոս...*

Ե

*Ի հոլովման ժամանակիս,*
*Ի մեծ հայոց թուականիս*
*Ց ԷՋԿ* և երեքիս (1314).*
*Ես տկար Մխիթարս*
*Եւ անարժանս յամէն բանիս,*
*Գրեցի զլուծմունք նուրբ*
*Եւ արտաքին կտակարանիս՝*
*Ցիմաստից տուն Գլաձորիս,*
*Ի Վայիձոր վիճակիս,*
*Առ ոտս տիեզերալոյս վարդապետիս*
*Մեծահռչակ Եսայիս,*
*Նա և կարեկից մեծազարմին*
*Աթոռակալ Տարսայիճիս,*
*Որ է մեզ կարեկից յամէն բանիս,*
*Եւ օժանդակ յիւր գաւառիս.*
*Ցիշման առնել զսա արժանիս,*
*Ծնողիւք, եղբարբք օրհնեալ յաստիս...*

Գ

*Ի թուականիս Հայոց ի ՋԿԳ. (1314) համարողքն*** ի Վայոցձորս եկին, ու մինչև ի յամսական տղայն համարէին։*

---

* Դոն—նշանակում է չոր հաց։

** ՋԿ (700+00) կամ ԷՃԿ. (7.100+60)-ի փոխարեն, սխալմամբ գրված է ԷՋԿ (7.700+60)։ Հարյուրավոր թվերի նման գրությամբ այլ օրինակներ նույնպես կան։

*** Մարդահամար անցկացնող և հարկահավաք մոնղոլ պաշտոնյաների մասին է խոսքը։

## 137.

## ԲԱՐՍԵՂԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՎԵՑՕՐԵԱՑ ԳՈՐԾՈՑ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆ

*Երևան 1657*

Գրիչ՝ Բարսեղ

ա

96 ա *Որք հանդիպիք յայսմ գրի,*
*Քաղցրաբարբառ յայսմ տառի*
ԶԳրիգորէս Եզընկեցի*
*Դուք յիշեցէք տեառն առաջի։*

բ

182 ա *Յիշեա* զԳրիգորէս *աշակերտ գրոց և* զԲարսեղ *փցուն գրող սորին, ծնողաւք հանդերձ։*

գ

227 բ *Յիշեղէք* զԳրիգորէս *վարդապետն իմ ողորմած,*
*Զիս՝ աշակերտ նորին խիստ ցած։*

## 138.

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա, Ամենափրկիչ, 41, Տ.—Ավետիսյան, Ցուցակ, էջ 144*

Գրիչ՝ Առաքել
վայր՝ Տարաւնոյ գաւառ, Ղազարու վանք

*Ի թուիս Հայոց ՉԿԳ. (1314) գրեցաւ սուրբ աւետարանս այս ի գաւառիս* Տարաւնոյ, *ի հռչակաւոր ուխտիս* Ղազարու վանք *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոց, և ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ, *և ի թագաւորութեան* Կիլիկեցոց *նահանգին՝* Աւշինին, *և յառաջնորդութեան սուրբ ուխտիս մերոյ տէր* Թադէոսի, *ձեռամբ անիմաստ գրչի և բազմամեղ կրաւնաւորի* Առաք[ելի], *ի խնդրոյ սրբասէր և աստուածահաճոյ քահանայի* Թումայի. *որ ստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց ի յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց, հաւրն իւրոյ՝* Աւտարշահին, *և մաւրն՝* Սթլտեայ. *և հարազատ եղբարց իւրոց՝* Կարապետին *և* Թագւորին *և* Խոցադեղին, *և քեռն իւրոյ* Մամխաթունին, *և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, և սիրելի բարեկամին իւրոյ* Ամիրշահին...

*Այլ և գրեցաւ սա ի ստոյգ և յընտիր աւրինակէ, որ զխոշորութիւն գրչիս ուղղորդութեամբ ծածկէ. և որ զմեզ յիշէ և ինքն յիշեսցի յառատ ողորմութիւնն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

---

** Գրիգորէս Եզընկեցուն նույնացնելով նախորդ հիշատակարանի Գրիգորիս Երզնկայեցի կամ Ցաղմանեցի վարդապետի հետ, հնարավորություն ենք ստանում որոշելու սույն հիշատակագրությունների գրության մերձավոր ժամանակը, այն է՝ 1314 թ.։*

## 139.

## ՄԱՇՏՈՑ

Երևան 2787

Ստացող՝ Կոստանդին Պեհեսնցի
վայր՝ Կիլիկիա, ի գեղն Սուրբ Սիմաւոն

Ցամս ՉԿԳ. (1314)։

Ես՝ Կոստանդին եպիսկոպոս Պեհեսնցի, ողւով տառապեալ յամէն
բարի, և աստուծով առաջնորդ աստուածաբնակ ուխտի այս՝ Սկեռայի,
յաղագս բարի իմոյ յիշատակի, ի տեսանելն իմ յայսմ ամի զգեղն
սուրբ Սիմաւոնոյ եկեղեցի աղքատ ի գրոց և յայլ սպասուց սրբարա-
նի, և մանաւանդ ի հարկաւորէն, որ ամենայն աւուր է յոյժ պիտա-
նի։* Ես եառ գրել զանուանեալս մաշտոց, որ զամենայն քահանայա-
341 բ կան իրագործութեան խորհրդածութիւն յինքն ունի հաւաքեալ, և ‖
տամ զսա յիշատակ ի գեղն սուրբ Սիմաւոնու եկեղեցին, որ սուրբ
Սիմաւոն անուն կոչի, յիշատակ ինձ և իմոցն ծնողաց և երախտաւոր
քեռոյն իմոյ Յոհանէս քահան[այի], որ մականուն Կարմիրվանեցի
կոչի, և քաղցրիկ մաւրն իմոյ՝ Ազնուր տիկնայ, և հաւրն իմոյ՝ Վասլի,
և արեամբ նահատակեալ հարազատ եղբաւրն իմոյ՝ Սարգսի, և որդւոյ
իւրոյ՝ Աւշինի, և մեծ մաւրն իմոյ՝ Պահրի, նաև այլ մեծ մայրերոյն
իմոյ և մեծ պապերսյն, նաև յոյժ սիրելի ձեռասնունդ հոգևոր որդե-
կին իմոյ. նաև երախտաւոր սպասաւորին իմոյ՝ Յակովբայ քահ[անայի],
որ մահու չափ նահատակեցաւ ընդ իս՝ ի բանդ և ի կապանս, ի ծո-
վու և ի ցամաքի, նաև չորս ամաւք յաւտարութեան պանդխտանալ
յաշխարհին Թոռնզակ, և երկու ամաւք յառաջ քան զգրել սուրբ գրոցս,
փոխեցաւ ի Քրիստոս վասն սիրայորդոր փութոյ պրճխս և յաւժար
կամաւք աշխատելսյ ի վերակացութիւն շինութեան պրճխս, և եթող
342 ա ինձ ‖ մեծ և անմխիթար սուգ։ Յիշատակ նորա աւրհնութեամբ եղիցի
և հանգիստ նորա ընդ արդարոցն լիցի։ Նաև միւս սիրելի և ձեռա-
սնունդ հոգևոր որդեկի իմոյ, արեամբ չափ նահատակելոյ ընդ իս ի
Հռոմկլայն և ի Պեհեսնի՝ Ստեփանոս քահ[անայ], նաև ի սուրբ ուխ-
տիս իւրով արեամբն նահատակեցաւ յանաւրինաց, ի սպասաւորու-
թիւն սուրբ եկողեցւոյս, ի կեցոցքն սուրբ Սիմաւոն, ոչ հայրապետ
կամ հաւքցաւղ գոլով, այլ սպասաւոր իմոյ նուաստութեանս, զիմ
թերին լնլով, յիշատակ և նորայն աւրհնութեամբ եղիցի ի տէր, և
համաւրէն իմոյ բնաւ զարմի։

Արդ, աղաչեմ զամենեսեան՝ զքահանայս և զսարկաւագունս և
զկրաւնաւորսն, որք ժառանգք լինիք յայսմ եկեղեցիս՝ խնամ տանել
այսմ գրի, զի մի ապականեսցի, որպէս և տեսի յայսմ եկեղեցի, զի
ապականեալ էր յանփոյթ առնելոյ. և աղաչեմ պահել զսա յամենայն
342 բ վնասուց և զմեզ ‖ յիշել և մեղաց թողութիւն ի Քրիստոսէ խնդրել. և
որ սրտի մտաւք զմեզ յիշեն, որդին աստուծոյ, հայր և սուրբ հոգւոյն,

* Մինչև այստեղ հիշատակարանը գրված է չափածո։

որ շարժեաց զմեզ զանշարժ հողիս յայսմ գործ բարի, անշարժ պահեսցէ զձեզ յամենայն առաքինութիւնս, և ի գալըստեան իւրում յիշեսցէ յիւր ողորմութիւնն, և ի հանդերձեալն՝ ընդ սուրբս իւր դասեսցէ և պսակեսցէ ի փառս իւր և ի պարծանս մեզ, և ննջեցելոց մերոց և ձերոց հանգիստ շնորհեսցէ, և որոց զամէնն ասեն. և Նմա փառք յաւիտեանս ամէն, ամէն, ամէն։

Ընդ նմին՝ ես տառապեալ գրողս Ներսէս*. երես անկեալ աղաչեմ յիշել ի Քրիստոս զիմ զանարժանութիւնս, և զծնաւղս իմ, և զընաւ գարգ՞ն, և զպատուական քահ[անայ]յ զհաւրեղբայրն իմ՝ զՍտեփ[աննոս] զբէչ՝ զսնուցիչն իմ և զուսուցիչն, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, յիշատակ նորա աւրհնութեամբ լիցի. և սխալանացս և խոշորութեանս աղաչեմ չլինել մեղադիր...։

## 140.

## ՀԱՏՈՒԱԾՔ ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ

Վասպ. 33. Հալ. Ցուց. Սյուն. 59—62

Ստացող՝ Կոստանդին Պեհեսնացի
վայր՝ Կիլիկիա

... Ես՝ Կոստանդին եպիսկոպոս Պեհեսնացի, և խնամաւք անեղին առաջնորդ սուրբ ուխտիս Սկեռայի, ի բազում իրս բազում անգամ տարուբերեալ ի ժամու և տարաժամու վրդովմամբ ի զբաղմանց եռալեան ծովուս միջի անցելոյն և ներկայիս և ապառնւոյն, ընդ հոլով սխալմամբ գրաւեալս, ի վաղ ժամանակէ և այսր մեծաւ փափաքմամբ յղձայի զաստ հաւաքեալ գրեանքս՝ զառակքս Սողոմոնի, հանդերձ Սիրաքայ խրատովքս և զիմաստս հարիւրոցն ճեմարանութիւն, նաև զճգնաւոր նահատակին Յոբայ և պայծառ և զլուսաւոր պատըմութիւնս. և ոչ լինէր լրումն կատարման իրիս, մինչև նա կամեցաւ, որ զանշարժսն ի բարին գիտէ շրջափոխել և զերկիւղածացն զկամսն առնել, ինքն յաջողեաց և լրացոյց, որոյ աւրհնաբանութեամբ զոհութիւն միշտ։ Ի ՉԿԴ. (1314), ետու գրել զսա ի սփոփանս ինձ յաստիս և յետ ելիցն՝ յիշատակ բարին։ Արդ, աղաչեմ զժառանգաւղսդ սմին, յիշեցէք սրտի մտաւք զմեզ՝ զարմիւք և ծնողաւք, զիս՝ Կոստանդին եպիսկոպոս և յետ այնոյ ինձ զերախտաւոր քեռին իմ՝ զՅոհաննէս քահանայն՝ Կարմիրվանեցին, և զհայրն իմ Վասիլ, և զքաղցրիկ մայրն զԱղուտր տիկին, և զարեամբ նահատակեալ հարազատ եղբայրն իմ զՍարգիս, և զորդին իւր Աւշին, և մեծ մայրն իմ Պանրի: Այլ և զձեռասուն որդեակն զՅակոբ քահանայ, որ մահու չափ նահատակեցաւ ընդ իս ի բանտ և ի կապանս, ի ծովու և ի ցամաքի, և Դ. (4) ամաւք յաւտարութիւն պանդխտակից [լեալ]՝ աշխարհն Ֆռանկաց, և Բ. (2) ամաւք յառաջ քան զգրել սուրբ գրոցս (1312) փոխեցաւ ի Քրիստոս վասն սիրայորդոր փութոյ տաճարիս և յաւժար կամաւք աշխատելոյ ի վերակացութիւն շինութեան տաճարիս, յիշա-

* 161 ա էջում եղող հիշատակագրության մեջ գրիչն իր մասին գրում է «... Ընդ նմին աղաչեմ յիշել և զիս զվատթար գրողիկս Ներսեսուկ...»։

*տակ նորա աւրհնութեամբ եղիցի. բայց եթող ինձ սուգ մեծ և անմխիթար։ Նա և զմիւս սիրելի և հոգևոր որդեկին իմոյ, արեամբ չափ ընդ իս աշխատելոյն ի Հռոմկլայն, ի* Պենեսեի՝ Ստեփաննոսի *քահանայի, որ ի սպասաւորութեան սուրբ ուխտիս սպանաւ յանաւրինացն, ի կեցոյցն ի սուրբ Սիմաւոն, ոչ հայրապետ կամ լացաւղ*, այլ զիմ տարտամութեանս լնոյր զթերութիւն, յաւժար տանելով սըլաս, մինչ զարիւնն հեղուլ, որոց պսակ և փառս տացէ այն, որ զհոլովսն ի սըրոցն պատրաստ է փառազարդել, ամէն։*

*Աղաչեմ զի և խնամ տարջիք սմա, ի Ջրոյ, ի հրոյ և յամենայն ապականիչ պատճառէ զգուշացէք և աննախանձ կամաւք ի վերոգրըեալքս յիշեցէք առաջի զենման անմահ գառին աստուծոյ, բարձողին զմեղս աշխարհի. զի և մեզ, ի ձեռն ձեր և ձերով միջնորդական ազաւթիցդ ձեռնտւութեան, թողութիւն մեղաց շնորհեսցէ, և հրոյն զերծուսցէ, և պսակ փառաց ողորմած կամաւք տացէ...։*

*Աղաչեմ մեղաւորս* Յովհաննես՝ *շարագրաւղ տառիս, թողութիւն մեղաց յաստուծոյ հայցել և սըխալանացս ներել, զի և ձեզ ներեսցէ տէր։*

## 141.

## ԳԻՐՔ ԱՆԴՐԻԱՆՏԱՅ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

***Երևան 4793 (Տես՝ նաև 1356, 1596 Թ.Թ.)***

*Գրիչ՝* Կոստանդին
*վայր՝* Թիւրքթի ուխտ

ա

348 բ *... Երիցս երանեալ հոգևոր հարքն իմ* Գրիգոր *և* Յովանէս *յորզորեցին զիս՝ զարուպս և զախմար գրիչս* զԿոստանդին, *գրել զսայ յիշատակ մեր և ծնողաց մերոց և ի փարթամութիւն եկեղեցոյս, զոր իմ՝ զտկարութիւն ի բաց եդեալ և ապաւինեալ յայս սուրբ ուխտս ու ի սուրբ եղբարցս յաղաւթս, <ս> շարահարեցի գրչութեամբ, ոչ որպէս վայել էր խնդրողաց, այլ ըստ կարի մերում և ըստ փանաքի և տկար մտաց մերոց։*

*Արդ, որք ընթեռնոյք և լուսաւորիք յաստուածային տառիցս, յիշեսջիք զառաջասացեալ հոգևոր հարքն իմ՝ զ*Գրիգոր *և* զՅովանէս, *և զհարազատ եղբայրն իւրեանց՝ զսիր* Թորոս, *և զամենայն ազգայինս իւրեանց։*

349 ա *Արդ, գրեցաւ* Ս*սայ ի թվ. ՉԿԳ. (1314), ի թագաւորութեան Հայոց* Աւշնի *և ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ, *ի սուրբ և ի հռչակաւոր ուխտս, որ կոչի* Թիւրքթի, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Փրկչիս, և կենսակիր սուրբ Նշանացս, ի յառաջնորդութեան* Գրիգորի *վարդապետի։*

*Արդ, աղաչեմ յիշել ի տէր զառաջասացեալ հայր անապատիս.*

---

** Նախորդ հիշատակարանի համապատասխան հատվածում, «լացաւղ»-ի փոխարեն գրված է «չաւքցաւղ», այսինքն՝ «հոգացող»։*

զԳրիգոր վարդապետ, զՅովանէս փակակալ, զՄա[տ]թէոս, զՍարգիս, զՄեսրոպ, զԳրիգոր, զՎարդան, զՆերսէս, զԹորոս. զԽաչատուր, զՅովանէ[ս] Կարընց[ի], զԲարսեղ, զՄինաս, Նայ և զգործաւորքն՝ զՎասիլ մարընպան, զՅովանէս ածպան, ըԹորոս հացկտուր, զԱնտոն աղաւնմաղ, զԱստուածատուր, զՄարտիրոս, զԹորոս, զԿոստանդին Սինաւոնցին և զՎասիլն,* զԿոստանդին հիւրատեսն, զՎասիլն, զՊաւղոսն** և զայնո-
349 բ սիկ, որ ընդ հովանեաւ*** || սրբոյ եկեղեցոյս են հանգուցեալք։ Ողորմեսցի Քրիստոս աստուած Կոստանդին Մաշցոյն և երկու եղբարց իւրոց՝ Վասլին և Գրիգորին:

Նայ և մեղաւք մեռեալ գրչիս, յերեսս անգեալ կողկողագին ձայնիւ աղաչեմ ղամենեսեան, Թողութիւն մեղաց հայցեցէք ինձ յաստուծոյ, և հարազատ եղբաւրն իմոյ Սախիանոսի նորընծայ քահանայի, և ծնաւղաց մերոց. և խոշորութեան գրոցս և աղքատիմաց բանից և բառից մի մեղադրէք, զի այդ էր կարն մեր։ Եւ տէրն տէրանց և արարիչն արարածոց, յիշողացդ և յիշելեացս ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

349 բ Ո՛վ սուրբ հարք և եղբարք, յիշեցէք և զմեղաւք մեռեալս զԹարոս՝ զծաղկաւղ և զկազմաւղ գրոցս, և մեղաց Թողութիւն խընդրեցէք և խոշորութեան և սխալանաց մի մեղադրէք, զի այդ էր կար մեր. և Քրիստոս աստուած՝ քաղցրն և ողորմածն, ձեզ և մեզ ողորմեսցի, և նմա փառք յաւ[իտեան]։

Բ

145 ա Ի Թվ. ՉԿԲ. (1313). յամսեանն Նոյեմբերի Դ. (4), փոխեցաւ առ Քրիստոս բարի փակակալն մեր Կոստանդին, որոյ ողորմեսցի Նմայ Քրիստոս աստուած, ամմէն։

Եւ եղաւ նոր փակակալ Յովանէս Արեելցի:

## 142.

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

Լիոն, Գոթրճեան, Պատարագամատոյց, էջ 83—84

Գրիչ՝ Նիկաւլայոս
Վայր՝ Անարզաբա

... Աստանօր կամօք և խնամօք ամենազօրին աստուծոյ յանկ ելեալ սուրբ մատեանս պատարագամատուցի, որ ունի ի յինքն բովանդակեալ զաղօթս սուրբ քահանայապետից աստուծոյ, զոր յիւրաքանչիւր ժամանակս արարեալ են խորհուրդ պատարագի։ Արդ, եղև սա գրեալ ձեռամբ մեղաւոր և անարժան քահանայի Նիկաւլայոսի, յիշատակ ինձ, և ծնողացն իմոց, և եղբօրն մերոյ Յովհաննիսի քահանայի, ի Թուականիս Հայոց ՉԿԳ. (1314), ի դղեակս Անարզաբա, ընդ

* Լուսանցքում ծաղկող Թորոսի ձեռագրով գրված է՝ «և զՎարդան»։

** Լուսանցքում՝ «զՅունկն»։

*** Ներքին լուսանցքում՝ «Յիշեցէք ի տէր զՄիմեղէն և Շառուեի և Վասիլ հոնն»։

հովանեաւ սուրբ մօրս լուսոյ տիրուհոյ և միշտ կուսին Մարիամու աստուածածնին, ի թագաւորութեան Աւշնի, և ի քահանայապետութեանն տեառն Կոստանդեայ, և ի մերոյ եկեղեցւոյս առաջնորդութեան տեառնս մերոյ Յովհաննիսի եպիսկոպոսի, որոյ տէր աստուած պահեսցէ զսա հանապազ։ Յիշեսջիք աղօթիւք զպաստաւորս սրբոյ եկեղեցւոյս և զքահանայս սուրբս՝ զԿոստանդին, և զմիւս Կոստանդին, և զԱնդրոնիկոս, և զԲասիլիոս, և զմիւս Բասիլիոս, և զՍտեփաննոս, և զսարկաւագունս՝ զՎասիլ, և զԹէոդորոս, և զՎարդան Սկեռացի, և զՅակոբ, և զամենայն հաւատացեալս սրբոյ եղբարցութեան, որում փառք և զօրութիւն այժմ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Յիշեսջիք ի Քրիստոս և զԹէրոս երէց, որ փոխեցաւ առ Քրիստոս։ Եւ որ յիշէ զմեզ աղօթիւք և զնա յիշեսցէ Քրիստոս աստուած ի յիւր միւսանգամ գալուստն, որ է օրհնեալ յաւիտեան։

143.

ԱԻԵՏԱՐԱՆ

Վենետ. 153 Ցուց. հա. Ա. էջ 060

Գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Արճէշի գաւառ

238 ո ... Ողորմութեամբ տեառն սկսայ և կարողութեամբ Նորին կատարեցի զաստուածալոյս սուրբ աւետարանս ի գաւառիս Արճիշոյ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսիս, յառաջնորդութեամբ Նահանկիս տեառն Զաքարիայի. որոյ տէր Յիսուս պահեսցէ։

Այլ ես՝ Յովսէփ գրիչ, մեղուցեալ ծառայս աստուծոյ, աղաչեմ զամենայն մանկունսդ, յիշեսջիք զՅովսէփ գրիչս և ծնողսն իմ։ Ի թվ. ՉԿԳ. (1314)։

Արդ, ես՝ նուաստ և թարմատար ոգիս Թորոս, ցանկացող եղէ սուրբ և կենսաբեր աւետարանիս և ստացա զսա գանձ հոգևոր յարգար վաստակոց իմոց, յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, և կենակցի իմոյ, և աստուածատուր զաւակաց մերոց, և ամենայն արենառու մերձաւորաց, զի լիցի սա մեզ փրկութիւն հոգոյ և մարմնոյ աստ և ի հանդերձեալսն...

144.

ՇԱՐԱԿԱՆՈՑ

Հալէպ. Անթիլ. և մասն. 51, Սիւրմ. Բ. 146.

Գրիչ՝ Կարապետ Ծիչող
վայր՝ Եզնկա

744 . Ցամի եւթնհարիւրերորդի և վաթսուն ընդ երրորդ երորդի թուաբերութեանս Հայոց (1314)*, ի կաթողիկոսութեան Կոստանդեայ

* Հրատարակիչն այս մշուշապատ թվականը հասկացել է այսպես՝ 700+60+3.3 և արդյունքին գումարելով 551 ստացել է 1320 թվականը ու առանց վերապահության ձե-

Ջրողի և ի Թաղաւորութեան Հայոց Աւշինի եղև գրաւ գրչութեան շարակնաց ատոլո հին և նոր շարականաւք՝ պատարուն և անթերի, ձեռամբ Կարապետ Ծիչողի՝ Թարմատար գրչի, ի մայրաքաղաքս Եզնկա, սատարութեամբ Տիրացու քահանայի, ի խնդրոյ դեռաբոյս | | | կրաւնաւորի, Մարտիրոսի որդւոյ իւրոյ...։

## 145.

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 8287**

Գրիչ՝ Յովաննէս

203 ա Արդ, գրեցաւ ի Թվիս ՉԿԳ. (1314), ի Թագաւորութեան Աւշինի և ի հայրապետութեան կոստընդեա, գրեցաւ ձեռամբ մեղապարտ գրչի Յովաննիսի, որք ուսանիք կամ աւրինակէք յիշեսջիք մեղ տէր ողորմայիւ և աստուած զձեզ յիշէ. յիշեսջիք զքոյրն իմ զԳաւրխաթունն՝ զփոխեալն առ Քրիստոս, զի և զուք յիշեալ լիջիք ի Քրիստոսի ատեանն ի բարի, ամէն։

## 146.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 2189**

Գրիչ՝ Յոհան Եզնկացի

Եւ զվերջացեալս ի բարեաց գործոց՝ զտարտամ գրիչս՝ զՅոհան, ծանօթ բանի և տեղեաւ Եզնկացի իսկ այժմ Ծործորեցի, աղաչեմ չմոռանալ ի բարիս զիս և զիմսն զամենայն։ Ի Թվականիս փրկչին ՌՅԺԶ. (1316)։*

## 147.

## ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ՄԵԿՆՈՂԱԿԱՆ ՆԻՒԹԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 027**

Գրիչ՝ Խաչիկ
վայր՝ Ծաննինխուղ

ա

71 բ Զխաչիկ՝ աշխատող սորին յիշեսջիք ի Քրիստոս, ով եղբարք, և շտապով դրեցի, ոչ Թէ գրոյն ցանկողղ, այլ կարօտ էի բանին, որում

---

ռագիրը գրված է համարել այդ Թվին։ Մեզ Թվում է, որ ավելի ճիշտ կլինի նախադասության վերջին «երորդը», նկատի առնելով, որ նա գրված է մեկ «ր»-ով, կարդալ ոչ Թե Թվական՝ 3, և հասկանալ այդ մասը որպես «երեք անգամ երեք (9)», այլ որպես դասական Թիվ (700-րդ +63-րդ), այդ դեպքում ստանում ենք ոչ Թե 1320, այլ 1314 Թ.։

* Սույն հիշատակարանը նախադաղափար օրինակում եղել է Մխ. Գոշի առակների վերջում։ Գրիգոր գրիչը, արտագրելով իր ժամանակ արդեն պակասներ ունեցող այդ ձեռագրից Գոշի առակների մի մասը, հիշատակարանը սխալ ըմբռնելով, առակները վերնագրել է՝ «Առակք ստեղծականք... արարեալ Յոհանու Ծործորեցւոյ», այլ խոսքով դրել Յովհ. Ծործորեցուն դարձրել է հեղինակ։ Հիշատակարանի գրության իրական տարեԹիվը, ըստ երևույԹին, պետք է համարել ոչ Թե 1316, այլ 1314 Թվականը, որովհետև «փրկչական» 1310-ին համապատասխանում է հայկական ՉԿԳ. (1314) Թվականը։

սպասաւոր էի։ Պատահեալքդ յաղօթս յիշեցէք. և յուսամ ողորմութիւն գտանել ի Քրիստոսէ, որում փառք յ[աւիտեանս]։

Բ

152 բ Զխաչ[իկ] յիշեցէք։ Այլ գրեցաւ ՉԿԳ. (1314) թվականիս, ի Ճանճրիճխուղն, սուրբ Գրիգորի բարեկենդանին, և Քրիստոսի փառք։

## 148.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 280 (Տես նաև՝ 1310 թ.)

Ստացող՝ Նորշահ
վայր՝ Վարգեհեն գիւղ

ա

264 բ Ի թվիս ՉԿԳ. (1314) ես՝ Նորշահս, որդի Աւետի, ի Վարգեհեն գեղէ, գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց...

Բ

204 բ Ով, սրբասնունդ Հայրք, որք կարդայք զսուրբ աւետարանս, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զպարոն Նորշահն, և զկենակիցն իւր զՄարգրիտն, և զհանգուցեալ զաւակն իւրեանց զԱւետն և զՎահանն, զորս տէր ասսուած ընդ սուրբս իւր դասեսցէ, ամէն, և մխիթարեսցէ զնոսա բանիւ սուրբ աւետարանիս, և զկենդանիքն պահեսցէ ի սատանայական փորձութենէ, և յիշատակ պահեսցէ իւրեանց՝ զԱֆէնտն և զԹուխտանն, և զքուերսն՝ զԼայն և զՄամշահն, ամէն։ Եւ որք յիշէք, յիշե[ա]լ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։

## 149.

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 752

ա

42 ա Զստացաւղ տառիս՝ զՍտեփանոս պատուելի քահ[անայ]. և զհոգևոր հայր և զուսուցիչ նորին՝ զպատկառելի ծերունի և զառաքինազարդ քահ[անայ] Գրիգոր յիշեցէք ի մեղաց թողութիւն։

Բ

145 բ ... Ցամի եւթնհարիւրերորդի վաթսներորդի երրորդի թուականութեանս Հայոց (1314) գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի [մանրուսմունք]...։



ՉԿԴ. 1315

## 150.

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երևան 192 (տես նաև 1669 Թ.)*

Գրիչ՝ Աբրահամ
վայր՝ Լիմ կղզի

266ա *...Արդ, ի կարճեալ աւուրս և յերեկոյացեալ ժամանակիս, այսինքն
ի վերջի դարուս, յորժամ յաղագս ծովացեալ մեղաց աշխարհիս իբր
հրեքալեան իմն մրրկեալ տատանեալ ծփէր ի բռնութենէ սրոյն
ազինն նետողաց, զոր յոլով ժամանակաց աւուրց սաստկացեալ տի-
րէր համայն ամենայն երկրի, սկսեալ յելիցն արևու՝ ի ծովէն Կաս-
բից, շրջապատեալ զհիւսիւսիւ մինչև գոյ, հասանէ ի ծովն Պոնտոսի,
և դարձեալ ի միւս կողմամբն հարաւանոյ պատ առեալ՝ պարունա-
կեալ զաշխարհն Բաբելացւոց, և զհամայն զԱսորիս, և զԿիւլիկեայ, մին-
չև ցնոյն ծովն Պոնտացւոց աշխարհին, զբոլոր միջներկրայս՝ զազգս և
զլեզուս բազումս, ընդ ինքեամբ կալեալ ունէր չարչլուծ ծառայութեան
նոցա, ըստ նախատեսութեանն մեծ հայրապետին հայոց Ներսէսի, և
պակասեալ նուազեալ կայր* հայրապետութիւնն սեռի սուրբ Լուսա-
ւորչին Գրիգորի և Թագաւորութիւն ազին Արշակունեաց, ըստ տես-
լեան սրբոյն Իսահակայ, և սակս անդարձութեանն մերոյ ոչ դար-*
266բ *ձաւ ‖ բարկութիւն նորա, այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է ի
պատժել, ի պատուհասե<ա>լ: Եւ մեր ոչ զղջացեալ, մինչև ծիւրեալ և
ծնգեալ, հիւծեալ մաշեցան ամենայն կեանք մեր, ի մահ և ի դժոխս
մերձեցան անձինք մեր և յերկիր մածան մէջք մեր, քանզի Թողեալ
զազանաբարոււ և այլադէմ և այլալուսու ազգին նետողաց զհայրենի
աւրէնս իւրեանց <Թոզին>, հետևեցան չար աղանդոյն Կարապետի նե-
ռինն՝ Մահմետի, և ես քան զևս ընդ նեղութեան և ընդ հալածանաւք
արկին զազգս քրիստոնէից: Զորոյ զաղէտս տառապանացն ո՞ ոք կա-
րասցէ պատմել կամ ընդ գրով արկանել:
Արդ, յայսմ դառն և ի դժնա ժամանակի, յորում խաւար ան-
լոյս և մէգ անմխիթար տարածեալ մածեալ ունէր զամենայն երես
երկրի, ես՝ Թադէոս կրաւնաւոր և եղկելի անձն, գրել տուի զմարգա-
րէս և զառաքեալս ի յարգար վաստակոց իմոց: Արդ, աղաչեմ զամե-
նեսեան՝ զդասս լուսերամից և զմանկունս նոր Սիոնի՝ մանաւանդ*
267ա *Թէ վերնոյն ‖ ...եաի** և ի հանդիպիլն ձեր այս աստուածային տառիս*

---

* *Բնագրում՝ «գայր»:*

** *Մի թերթ ընկած է:*

ընթերցմամբ և կամ զօգափարելով, յիշեսջիք ի մաքրափայլ յա-
ղաւթս ձեր զերանելի և զպատուական կրաւնաւոր զԹադէոս, և զհայր
իւր, և զմայր իւր, և զեղբայր և զամենայն արեան մերձաւորք իւր, և
աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։

Գրեցաւ և կատարեցաւ մարգարէս և առաքեալս անտրժան ձե-
ռամբ սուտանուն Աբրահամու, ի թվականիս ՉԿԴ. (1315), գրեցաւ ի
կղզիս, որ կոչի Լիմն, ընդ հովան[ե]աւ սուրբ Գէոր[գ]եայ աջիս՝ Նո-
րակազմ տաճարիս, հայրապետութիւն տէր Զաքարի և յառաջնորդու-
թիւն տեղոյս տէր Յով[հաննիսի]։ Տէր աստուած թողցէ զհանցանս
իւր և զննջեցելոց իւրոց, որ հանդիստ արար մեզ ի մարմնաւոր
կեանս։ Ես՝ Աբրահամ սուտանուն գրիչ, ըստ իմում տկարութիւնս
սկսայ, ողորմութեամբն աստուծոյ և աստեցի* զմարգարէս և զառա-
քեալս. աղաչեմք զամենեսեան՝ զմանկունս եկեղեցւոյ և զդասս քրիս-
267բ տոնէից հաւատացել || ոց, որ կարդայք կամ աւրինակէք, մեղաց թո-
ղութիւն հայցեցէք յաստուծոյ մեզ և մեր ննջեցելոցն, և հաւր իմոյ
Յուսէփայ, և եղբարց իմոց՝ Յակոբայ և Սահակայ, որ երիտասարդական
կենաւք փոխեցան ի Քրիստոս։ Յիշեցէք և զեղբայրս մեր զԹումայ
կրաւնաւոր՝ հեզ և խոնարհ, որ** սպասաւորեաց մեզ ի մարմնաւոր
կեանս, և զհայր իւր, և զմայր իւր, և զամենայն արեան մերձաւորք
իւր՝ զկենդանիս և զհանգուցեալս, մինչ Թումէս զմեզ աստ հանգոյց
աստուած զինքն և զննջեցեալսն իւր հանգուսցէ ի վերին Երուսաղէմ
և ի դասս արդարոց...։

151.

## ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ

Երևան 3778

Գրիչ՝ Ռստակէս, ստացող՝ Վարդան
վայր՝ Արտազ գաւառ, սբ. Թադէոսի վանք

464ա ... Արդ, եղև սկիզբն տառիս այսմիկ սրբոյ գծագրութեան ի գա-
ւառիս կոչեցելումն Արտազ, ի սուրբ և յերկնահանգէտ, ի հռչակաւոր
ուխտս, ի յաթոռս և ի հանգիստս սուրբ առաքելոյս Թադէոսի, ընդ
հովանեաւ ամենազաւր աջոյն Յիսուսի, առ ոտս սուրբ և աստուածա-
յին արեամբ ներկեալ նշանիս՝ սուրբ Գեղարդեանս, և սուրբ կուսին
Սանդխտոյ, և այլ բազմահաւաք սրբոցս, ի թագաւորութեան Հայոց
464բ Աւշին կոչեցեալ, և ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, || յառաջ-
նորդութեան այսմ նահանգիս և աստուածախնամ Արտազ գաւառիս՝
սուրբ և առաքելաշնորհ արհիական գլուխն, տիեզերալոյս և աշխահա-
ծաւալ, բարիախորհ և վերադիտող, պարիսպ ամրութեան հանուրց եկե-
ղեցեաց, և բերդ հաստատուն քահանայից և ամենայն քրիստոնէից
տէր Զաքարիայի, և պարոն եղբաւր նորին Պետրոսի, և զաւակաց սո-

* Թերևս պետք է լինէր՝ «աւարտեցի»։
** Բնագրում՝ «և»։

րին, զոր պահեսցէ զսոսա Քրիստոս աստուած լուսաւոր վարուք ի
լուսաւորութիւն կաթողիկէ եկեղեցւոյս, ի զարդ և ի պսակ սուրբ և
հռչակաւոր ուխտիս և ի պարծանս հաւատացելոց Քրիստոսի, պարա-
գայց ամաւք, խոր խաղաղութեամբ մինչև ի խորին ծերութիւնն, եղ-
բարբք իւրովք և ամենայն համացեղիւքն, և յապագայսն՝ սուրբ հայ-
րապետացն աթոռակից և պսակակից արասցէ, ամէն։ Նաև զՂևոնդ
քահանայ, վասն որոյ անջատել ի մէնջ անկաւ պարիսպն ամրու-
թեան, և խորտակեցաւ բերդն ապաստանի, և եթող սուգ անմխիթա-
րելի, յամսեանն հրոտից ԻԴ. (24), զոր տէր Յիսուս դասակից և պսա-
կակից արասցէ դնա որբոց քահանայիցն, ա..[էն]։

Իսկ ի լրման թուաբերութեանս Հայոց ՉԿԴ. (1315), յամսեանն
նաւասարդի Ա., ի դառն, և ի դժնեայ, և ի մաշեալ ժամանակիս, յորում
ըստ հրամ[ան]ի տեառն, ցամաքեցաւ. սէր բազմաց և թագաւորեաց
ստութիւն և ատելութիւն, և մահաշունչ քնարն սատանայի բեղմաւոր-
եալ զուարճանայ յընթհանուրս ամենայն մեծապանծ ճոխութեամբ,
ևս առաւել ի յազգս Արամենի, ի սեռս Հայկայ և ի զարմս Թորգոմ-
եան, որով՝ անարժան և ստակործան վարուք մերովք բարկացուցաք
զանբարկանալին աստուած, և շարժեցաք ի սաստ և ի ցասումն զա-
մենագութն և զամենողորմն, զի ի խրատ և ի ցասումն զարթոյց աստ-
ուած զթմրեալ բարկութիւնն ի վերայ քրիստոնէից զաղախնածին
ազգն Իսմայէլի, որ կախարդասար պատրանաւք խաբել զազգն Նե-
տողաց, որ բազում ամաւք տիրեալ ունէին ընդ բռամբ զաշխարհս
Արևելեան, ի հիւսիսոյ ի հարաւ, մինչև ի ծովն Արևմտական, բայց
սակաւ ինչ ի խաղաղութիւն անդորանայր եկեղեցիք քրիստոնէից։

Իսկ ի յայս դառն և ի դժնեայ ժամանակիս զարթոյց աստուած
դհոգիս սուրբ երանաշնորհ քահանային Վարդանայ՝ ի մոռացմանս լի-
նել բազմակուտակ ալեկոծութեանս, գիտելով զդիւրակործան և զա-
պականելի կենցաղս, թէ ընդ գտանելն արագ ունի զեզծումն, կամեցաւ
465ա գանձել գանձ անկողոպտելի և յիշա || տակ աննինջ, որ միշտ և ան-
զրաւ ունի զկայ ընդ աստուծոյ և ոչ ական հատանի ի վնասակար
գողոց, ի հոգւոյն սրբոյ սատարութենէ և ի բարի կամաց վերադիտո-
ղիս տէր Զաքարիայի, ետու գրել զանգին գանձս աստուածայինս,
զլոյս հաւատոյ և զպայծառացեալ ջահս եկեղեցոյ՝ զերգս մարգարէին
Դաւթի, զոր սուրբ հայրապետն Ներսէս մեծաւ աշխատութեամբ մեկ-
նեալ լուսաւոր և պայծառ բացերևութեամբ, ի զարդ և ի լուսաւորու-
թիւն մանկանց եկեղեցւոյ, և ի խրախութիւն բանասէր և մակացու
արանց հմտագունից։

Արդ, ես՝ տարժանեալս Վարդան, բազում պաղատանաւք և ար-
տասուաւք յերկիր անկեալ, աղաչեմ զսուրբ հարսդ, և սրբասէր քահա-
նայսդ, և զաստուածահաճոյ կրաւնաւորսդ և զսրբասնունդ մանգունսդ
եկեղեցւոյ, որք ընթեռնոյք և լուսաւորիք ի սուրբ պատուիրանացս,
յիշեսջիք ի սուրբ և յարժանաւոր յաղաւթս ձեր զաշխատողքս սորա
զՎարդան և զհայրն մեր ըստ հոգւոյ և զերախտաւորն՝ զփոխեցեալն

առ Քրիստոս՝ զՍարգիս քահանայ, որ բազում չարչար[ան]աւք սնոյց զմեզ...։

... Եւ եղեալ ի մտի զայսպիսի յոյս դիմեցի ամենայն սրտիւ. իմով, մեծաւ յուսով, ի սուրբ և ի հռչակաւոր ուխտն Յովհաննավանք, և խնդրեցի զզաղափար այսմ մեծափառ կտակիս, և ես ինձէն աշխատեալ անձամբ տարաշխարհիկ լինելովս։ Եւ ետու գրել զսա մեծաւ աշխատանաւք, և եդի ի սուրբ և հռչակաւոր աթոռս Թադէոսի առաքելոյս, յիշատակ ինձ, և երախտաւոր վարդապետի իմ և հաւրեղբաւր՝ Սարգիս քահանայի, և ծնաւղաց իմոց մարմնաւորաց՝ Մխիթարայ և Մամսթոյ, և հարազատ եղբարց իմոց՝ Տուրքին և Պեկերին, և ամենայն ազգայնոց։

465ր Արդ, աղաչեմ զսպասաւորսդ սրբոյ եկեղեցոյդ, որք այժմիկ և որք յետ ժամանակաց յաջորդեն զաթոռ սրբութեան ուխտիս, զի չկա ոք հակառակ պտղաբերութեանս մերոյ, ոչ ի մերոց, և ոչ յաւտարաց, և ոչ յայլոց հակառակողաց չարաց, զի աստուծոյ է զայս գիրքս և սուրբ առաքելոյս Թադէոսի, իսկ եթէ ոք ի կողմ չարին եղեալ և ըստ հակառակող կամաց նորա վարեսցի, կամ յիմոց, կամ յաւտարաց, և կամ յառաջնորդաց եկեղեցւոյս, և խստավզել հանել ջանայ զայս գիրքս ի սուրբ Առաքելոյս, կորեսցի ինքն ի Քրիստոսէ, իսկ որ զգիր յիշատակիս ջնջէ յետ ժամանակի՝ ջնջեսցի ինքն ի կենաց գրոյն, այլ հաստատուն պահողք հրամանացս ուրհնեալ եղիցին ի Քրիստոսէ և յամենայն սրբոց իւրոց, ամեն։

Զտաւնաւղ տանից տէրունական և պայծառացուցիչ յիշատակաց որդւոց վերինն առագաստի, բազմահամբար պատրաստութեամբ ըստ իմանալի մտաց լուցման լապտերաց և բուրման խնկոց անուշահոտութեան, զրաբունապետս զՅովհաննէս և զԿիրակոս յիշեսջիք ի տէր Յիսուս, ընդ նոսին զաստեղն եկեղեցոյ, պաղպաջուն և լուսափայլ ի հարաւային հնչմանէ հոգւոյն շնորհի փթթեալք՝ զՎարդան հայրապետ, և զՅոհաննէս, և զՍտեփաննոս յիշման արժանի առնիջիք, որ հայրագութ սիրով խնամս տանէին և յորդորէին զմեզ։ Յիշեցէք ի Քրիստոս և զփակակալ սուրբ ուխտիս, և զսպասաւորս ըստ մարմնոյ՝ զՇնորհաւորն, զՏուրքն, զՍարգիս և զԱմիր, ընդ նոսին և զմահակալ Յովաննէս, զոր տէր Յիսուս բարեխաւսութեամբ սուրբ առաքելոյս Թադէոսի հատուսցէ նոցա վարձս բարիս, ամէն։

Նաև համաւրեն ամենայն աշխատողաց՝ քահանայից, սարկաւագաց, միայնակեցաց, ծերոց և աղայոց, որք յայս քաւարանիս աշխատեալք են, եղիցի ամենեցուն ձեզ հասանել մասին ժառանգութեան սրբոց, ամէն։

Եւ արդ, դարձեալ բազում պաղատանաւք և արտասուաւք յերկիր անկեալ աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի յիշել զողորմելի գծողս զՌստակէս, և զեղբայրն իմ զԹադէոս, և զծնողսն իմ ըստ մարմնոյ, զհայրն իմ զԽոցադեղ, և զմայրն իմ զԳրամիկ, և զՍիսամբար, և զեղբարսն իմ զՄարգարէ, զՄխիթար, և զայլսն ամենայն, վասն զի կարող է աստուած ի ձեռն այլոց այլում ողորմութիւն առնել,

*ընդ որս և ի մեզ գթասցի Քրիստոս աստուած շնորհել աշխարհի ղխաղաղութիւն, եկեղեցոյ հաստատութիւն, քահանայից մաքրութիւն, միանձանց ժուժկալութիւն, մեղաւորաց դարձ, յորոց յամենեցունց համաձայնութեամբ ի մի բերան փառաւորի ամենասուրբ երրորդութիւնն այժմ և յաւիտեանս, ամէն։*

### 152·

## *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Վարդաշեն գյուղ. Մ· Սմբատյանց, Երնջակ, էջ 136*

*Գրիչ՝* Խաչատուր Կեչառեցի
*վայր՝* Եղեգիս

*... Աւարտեցաւ սուրբ աւետարանս տիեզերալոյս վարդապետին Քրիստոսի աստուծոյ մերոյ... յամս առաքելաշնորհ արհիեպիսկոպոսի տեառն* Յովհաննիսի*, մականուամբ* Աւբեկ *կոչեցելոյ, ձեռամբ նուաստ և ոսկեգիր դրչապետի՝ մեծ բաբունապետի* Խաչատուր Կեչառեցւոյ. *դծագրեցաւ ի քաղաքս* Եղեգիս*, ի տէրութեան արեաց վեհագունի և իշխանաց իշխեցողի, մեծ կոմսի և կողմնակալի* Բուրթելին *և նորին հարազատի* Բուղդային*, ի խնդրոյ սրբասնունդ քահանային* Սահակայ։*

### 153.

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 2930*

*Գրիչ՝* Թոմա
*վայր՝* Խորդեանց անապատ

ա

242ր *Շնորհիւն աստուծոյ սկսա և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ և զկենսաբեր աւետարանս ի թուականութեանն հայոց ՉԿԴ. (1315), յամսեանն յարեգ՝ ԺԲ. (12), յաւուր երկուշաբաթի, Ժ. (10)-երորդ ժամու, հայրապետութեանն տէր* Յովաննէս Աւրպելի*...*

*Համարձակեցա ծրեալ զսա ի վարժունն մանկանց նոր Սիոնի և ի պայծառութիւն դասակարգութեան սրբոյ եկեղեցոյ, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորիս և սուրբ Սարգիս ղաւրավարիս։ Արդ, ի սպառել ժամանակիս և ի նուազումն ամենայն վայելչութեանց աշխարհիս, ես՝ յետինս ի դասէ քահանական կարգի* Թոմա *անուն, գրեցի զսայ յանապատս* Խորդեանցս*։ Այժմ, որք աւգտիք ի սմանէ յիշեսջիք*

---

** Հրատարակչի ծանոթագրութեան համաձայն ավետարանն ընդօրինակված է «Ի թուականութեանս արեթական տումարին ՉԿԴ (1315)»։*

զծնողսն իմ, և զսնուցիչն իմ զՍարգիս վարդապետն, որ է ուսուցիչ իմ*, և զծնողսն իմ՝ Վիրապշահ և Թագու[հ]ի և զհեղբայր Իզդատեր[°] և զամուսնին՝ Մանկու խաթուն, և զաւակս նոցա՝ Ստեփանոս և Մարտիրոս....։**

Բ

174ա Վանիկն միաբանեցաւ աւետարանիս, ով կարդայք յիշէք ի Քրիստոս, ամէն։

Գ

Ծաղկող՝ Մարգարէ

7բ Ով կարդայք զՄարգարէ յիշէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

154.

## ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ ԹՈՒՂԹ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ

Երևան 3651

Գրիչ՝ Առաքել

վայր՝ Տարաւնո գաւառ, որ. Կարապետի վանք

330ա Գրեցաւ՝ աստուածային այս մատեան ի փառս Քրիստոսի աստուծոյ մերո, ի թուի[ն] Հայոց ՉԿԴ. (1315), ընդ հովանեաւ Տարաւնո սրբո Կարապետիս, յառաջնորդութիւն արհեպիսկոպոսի տէր Յով[հաննիսի] և Ստեփ[անոս] վարդապետի, ի ստացումն սրբազան, երջանիկ և սրբամաքուր կուսակրաւն Ստեփ[անոս] վարդապետի, ձեռամբ ներգեեալ, պիտականուն Առաքել սուտ աբեղաի։ Որք հանդիպիքդ այս աստուածային դանձու և մեծագինս մարգարտի առ ի պէտս ինչ աւգտութեան ի սմանէ եղելոյ, առ որս աղաչանս բազմապիս[իս] մատուցանեմ, յիշման աղաւթից առ Քրիստոս արժանի առնել զստացող սորա զՍտեփ[անոս] վարդապետ, հանդերձ իւրովքն ննջեցելովքն, արժանի լինել սրբոցն դասուց, ընդ որոց և աշխատողիս քաւութիւն յանցանաց հայցել յամենառատ պարգեացն աստուծոյ, զի և ձեզ լիցի մասն երանութեան ի Քրիստոսէ աստուծոյն մերոյ, որ է աւրհնեալ, ընդ հաւր և սուրբ հոգւոյն, յաւիտեանս, ամէն։

Եւ այլ ես առաւել աղաչեմ չմեղադրել խոշորութեան դրոյս, զի անմար էաք յարհեստ գրչութեանս, ու առանձին տուն չունէաք, ու այլ պակաս դրելոյն այս շատ պատճառ եղաւ, զի ամբոխ էր. և այս բաւ է։

* Ձեռագրում պահպանվել են սույն Սարգիս վարդապետի և Թոմա գրչի նկարները։

** Հիշատակարանի շարունակության մեջ հիշվում են գրչի մերձավոր և հեռավոր ազգականներն՝ իրենց որդիներով։

## 155.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վիեննա 460. Ցաշ. Ցուց. էջ 034. (տես նաև 1384 և 1650 թ. թ.)*

*Ստացող՝* Սարգիս

327բ *Կատարեցաւ սուրբ աւետարանս այս ի թվականութիւն Հայոց ՉԿԴ. (1315). ես՝* Սարգիս, Շահիս *որդին, որ ստացայ զսայ ի հալալ արդեանց և գնեցի զսայ ի* Պօղ[ոս] *վ[ար]դ[ապետէ] Ծ. (50) դ[ահե]կ[ան], վասն հոգոյ, որ յիշատակ իմ հանապազ։*



*ՉԿԵ* *1316*

**156.**

## *ԿՈՋՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑՒՈՅ*

*Երևան 976 (տես նաև 1140 թ.)*

*Գրիչ՝* Դանիէլ
*վայր՝* Աղթամար

*... Աստանաւր սկզբնաւորեալ աստուածային տառս այս ի Թուականութեանս Հայոց ՉԿԵ. (1316), ի դառն և ի տարտարոս ժամանա-*
292 ա *կի, ի գեղեցիկ և յամուր կղզիս* Աղթամար *կոչեցեալ, ի հայրապետ[ու]թեան տեառն* Ներսեսի *և տեառն* Զաքարիայի, *ի խնդրոյ աստուածաբեալ և որբտսէր կրաւնաւորի* Տիրացուի, *որ է դպրապետ, և առաջնորդ, և տէր սուրբ Վարդանայ, որ է ի* Վան *քաղաք, որ է իւր սեփական, զոր բազում ծախիւք և աշխատութեամբ յաւրինեաց ի նմա շինուածս բազումս։ Այլ և յարդար վաստակոց իւրոց գնեաց բազում ոսկի յանուն սուրբ Վարդանայ, զի ի նմա հանդիցեն նեղածք և հիւանդք և ախտաժէտք, յաղագս բժշկութեանս։ Իսկ դուք, հանդիպեալքդ սմա ընթերցմամբ կամ աւրինակաւ, յիշեսջիք յերկնարաց արժանաւոր յաղաւթս ձեր զյառաջյիշեցեալ ստացող սուրբ գրոցս՝ զպատուական ընտրեալ կրաւնաւորն* զՏիրացու, *և զծնաւղսն իւր, և զազգատոհմն՝ զկենդանիք և զննջեցեալսն։ Եւ ես՝ ամենամեղս [և փցունս ի գրչ]աց* Դանիէլ *անար[ժան եպի]սկոպոս, տեսեալ զփափագ և զսէր սորա առ հոգևորսն, և [յ]անձն առի ըստ իմում կարի, և ներող մարդասիրութեամբն աստուծոյ կատարեցի զսա մեղսամած մատամբ իմով յըստոյգ և յընտիր աւրինակէ, յիշատակ հոգւոյ* Տիրացու *կրաւնաւորի, և ծնաւղացն, և ազգացն ամենայնի, վասն զի մանկունք եկեղեցոյ վայելեսցեն զսա ընթեռնլով հանապազ և զու[արճա]նալով սովաւ ի տուէ և ի գիշերի, և յիշելով առաջի աստուծոյ զստացող սորա, զմեղապարտ գծողս, և զմեր ծնաւղսն, և զազգականսն և զերախտաւորսն մեր, նաև զուսուցիչն մեր* զՍիմէոն *քահանայ, և զնորին ծնաւղսն, և* զՍտեփանոս
292 բ *կրաւնաւոր, և* զԿարապետ... *զի աղաւթիւք ձերովք և ամենայն սրբ || [ոց] աստուած ողորմես[ցի յիշո]ղացդ և յիշեցելո[ցս], և արքայութեանն արժանի արասցէ՝ երկնից հանդստեանն և անսպառ բարութեանցն, ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որում վայել է փառք, իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

157.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վիեննա. 104 Ցուց. Հա. Ա. էջ 464—466*

*Գրիչ՝* Յովաննէս
*վայր՝* Հարքայ գաւառ, Դոնեվանք գիւղ

ա

6 բ ... *Շնորհիւ տեառն ոգւոյ և ողորմութեամբ Նորին կատարեցի զաստուածախաւս տառս չորից աւետարանչացն... ի դառն և ի նեղ ժամանակիս, ի թուիս ՉԿԵ. (1316) հայ<ոյ>կազեան տումարիս, որ եհաս աստուածասաստ բարկութիւնն վասն ծովացեալ մեղաց մերոց՝ մորեխն, և բազում գաւառս աւերեց՝ զԲասեն, զԴերջան, զԽոչախս մասն, զՏօռուտափ, և այլ բազումս, որ ո՛չ կար[է]* պատմել լեզուաւ։ Իսկ բարեգութն աստուած ոչ անտես արար զարարած իւր, այլ գթացաւ և երարձ զսատակացե[ա]լ ախտ պատուհասին...։*

*Ընդ նմին [յիշեցէք] ինձ՝ դրոգիս, սուտանուն Յովանէս քահ[անայս], որ լուր զանունս ունիմ և գործս ոչ, և զծնողսն մեր, որ բազում տանջիւ սնուցին զմեզ, և որք սպասաւորեցին մեզ ի նեղութիւն մերում, և խոշորութիւն և պակասութիւն անարհեստ գրիչս անմեղադիր լերուք, զի այսչափ կարացաք ջանալ և այսչափ էր մեր տկարութիւնս։*

*Կատարեցաւ ի թուականիս Հայոց ՉԿԵ. (1316), ի յամսեանն մարերի ի ԺԸ. (18). և Քրիստոսի մարդասիրին փառք այժմ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

բ

239 բ ... *Կատարեցի ի խնդրոյ աստուածապատիւ* Աւետիս *քահանային, զոր փափաքանաւք ցանկացող եղև և ետ գրել զաստուածախաւս կտակս յարդար վաստակոց, ի յիշատակ ծնողաց իւրոց՝ հաւր իւրոց* Գրիգորոյ, *և մաւր իւրոյ* Վանեկայ, *և կենակցի իւրոյ* Նուշկան, *և աստուածազարդ զաւակաց իւրոց՝* Ներսիս[ի] *և* Վարդանայ, *և նորաբոյս* Ստեփաննոսի *և* Գրիգորի, *և որ լինելոց է, նախնե[ա]ց իւրոց՝* Թորոսի, *և փոխեցելոյն ի Քրիստոս* Մուսիսի, Բազայի, Ստեփաննոսի *և այլոց՝ մեծի և փոքու, և որք աւգնական եղեն ի նիւթ սրբոյ աւետարանիս...։*

*Արդ, գրեցաւ ի գաւառիս* Հարքա[յ], *ի գեղն, որ կոչի* Դոնեվանք, *ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնիս, ի հայրապետութեան սըրբասնեալ առաքելաշնորհ և ուղղափառ եպիսկոպոսի տէր* Աբրահամու, *զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ՝ իւր սուրբ վարդապետաւքն, փիլիսոփայիւք և քահանայիւք, զորս ընդ իշխանութեամբ իւրով են՝ մինչև ի սահմանե[ա]լ կէտ կոչմանն...։*

---

* *Տպված է «որով կար պատմել»։*

## 158.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4818 (տես նաև 1407 և 1432 թ. թ.)*

Գրիչ՝ Յովսիան
վայր՝ Հազարակն գիւղ

ա

579 ա ... Եւ արդ, գրեցաւ սա ի Թուաբերութեանս հայ տումարի
յեւթնհարիւր վաթսուն և հինգ ամի (1316), ձեռամբ յոգնամեղ և
վցնամատն գրչի՝ Յովսիանի նուաստի, ի թագաւորութեան Խարբանդաւղու սուլտանին, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, ի գեղս,
որ կոչի Հազարակն, ընդ հովանեաւ սուրբ Դանիէլի, և սուրբ և կեն-
279 բ սաբեր Նշանի խաչի Քրիստոսի. և սուրբ Մինասա. || ի խնդրոյ պա-
տուական և երջանիկ քահանայի,* որ ստացաւ զսայ ի հալալ և յար-
դար յարդեանց իւրոց, ի վայելումն անձին իւրոյ և զաւակաց իւրոց,
և յիշատակ բարի առաջի աստուծոյ յետ աստի կենացս՝ յաւուրն համառաւտի, ի տիեզերաժողով ատենին, յորժամ բանք սպառին և գործք
թագաւորեն...։

Արդ, որք ընթեռնուք և կամ աւրինակէք, յիշեսջիք ի սուրբ և
ի մաքրափայլ յաղաւթս ձեր ստացող սուրբ աւետարանիս** զպարոն
281 ա Յովանեսն, || ... զհիւրընդալ և զաղքատասէր ամուսինն իւր՝ զՇովիկ,
և զերկոքին որդիսն նոցին՝ զԱւաքն և զՓոխանշախն, որոյ տէր աստուած
ընդ երկայն աւուրս արասցէ զնոսա, ամէն...։

ԶՊատրիկ քարգործն և զամուսին իւր՝ զԹամար [յիշեցէք ի
Քրիստոս]։

բ

217 ա Քրիստոս աստուած ողորմեսցի Շերկանն և Հռիփսիմոյն՝ ծնողաց
Յովսիան գրչի, ամէն, և թողցէ զմեղս նոցա և յիշողացդ, ամէն։

Ո՜վ, պատուական եղբարք և հարք, յորժամ ընթեռնուք զհոգեաբողբոջ աստուածաշունչ աւետարանս, զպարոն Ղարիպշախն և զամուսին նորա զՋոհար՝ զփոխեցեալքն ի Քրիստոս, յիշեցէք ի ձեր սուրբ աղաւթքտ, ընդ նոսին և զխաօցն, և Քրիստոս զձեզ յիշէ յիւր արքայութեանն, ամէն։

## 159.

## ՍԱՂՄՈՍ

*Երևան 3412*

Գրիչ՝ Սմբատ
վայր՝ Կիպրոս կղզի, Լևքոսիա քաղաք

ա

298 բ Ո՜վ աստուածասէր ընթերցողք և լսողք հոգելից բանիցս, զստա-
ցաւղ սորա՝ զսրբասնեալ և պատուական քահանա զՍտեփանոս, և

* Անվան տեղը բաց է թողնված։
** Շարունակությունը գրված է այլ ձեռագրով։

զհարազատ եղբայրն իւր զԾուաՆ պատուական սարկաւագ, և զծնողք
սոցա՝ զԳրիգոր քահանայ և զՍպիլ յիշեսջիք յաղաւթս ձեր, այլ և զհօգի
ամենամեղ գրչիս Սմբատի, և ամենառատն աստուած զձեզ յիշեսցէ։
Գրեցաւ ի Թու[ականիս հայոց] ՉԿԵ. (1316)։

Բ

297 ա ... Ցամի եւթնհարիւրորդի վաթսներորդի հինգերորդի (1316) ամի
շրջաբերութեան հայոց տումարի, ի հայրապետութեանն Հայոց տեառն
Կոստանդնեա, և ի թագաւորութեանն Հայոց Աւշնի, և ի թագաւորու-
թեանս Կիպրոսի Ռէնէռէ գրեցաւ գերահրաշ և ամենապայծառ լուսայ-
իղձ և բազմատենչ գիրս սաղմոսաց յոգնազունակ բայիւք և ճոխա-
կան իմաստիւք։ Որում ցանկացաւղ եղեալ այսմ գեղեցիկ տառիս
բարիանուն և ընտրեալ քահանայն Ստեփաննոս, հանդերձ հարազատ
297 բ եղբարբն իւրով Ծուանն սարկաւագաւն, ‖ որ և ստացան զսա ի վայե-
լումն անձանց իւրեանց և յետ աստեացս՝ բարեաց յիշատակ և գանձ
անկողոպտելի յաւիտենական։ Որ և կանգնեցին զգեղեցիկ և զպան-
ծալի տաճարն ի քաղաքն Սադամ, յանուն քաջ նահատակին Քրիս-
տոսի՝ սրբոյն Սարգսի, յիշատակ նոցա աւրհնութեամբ [եղիցի]։

Արդ, աղաչեմք զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ ուսմամբ
կամ ղաղափար․առնելով, սրտի մտաւք յիշատակեսջիք զստացաւղք
սորա զՍտեփաննոս քահանայ, և զեղբայրն իւր զԾուանն սարկաւագ, և
զծնաւղս իւրեանց՝ զԳրիգոր քահանայ և զՍպիլ՝ զգնացեալսն առ
Քրիստոս։ Աղաչեմ յիշել ի Քրիստոս զՏիկնայնաց Տիկինն, զսինիջալէս
298 ա աստուածապահ կղզոյս Կիպրոսի, և զծնողս ‖ իւր, այլ և զսպասաւորսն
մեր՝ զԱւտար տիկին և զՄարիամ, զի բազում են աշխատել ի վերայ
մեր, յիշատակ նոցա աւրհնութեամբ։

Արդ, եղև զբաւ գրչութեան սորա ի կղզիս Կիպրոս, ի հոյակապ
քաղաքս Լեֆոսիա, ընդ հովանեաւ սրբոյ կուսիս Վառվառա, ձեռամբ
ամենամեղ և անարհեստ գրչիս Սմբատա, աղաչեմ յիշել ի Քրիստոս
և զիմ անարժանութիւնս, և աստուած յիշողացդ առհասարակ ողոր-
մեսցի, և նմա փառք յաւիտեանս։

## 160.

## ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑԻՈՅ

Երևան 780

Ա. մասի գրիչ՝ Սմբատ
վայր՝ Կիպրո՞ս

ա

71 ա Քրիստոս աստուած, քո սուրբ ծնաւղին բարեխաւսութեամբ և
ամենայն սրբոց քոց, ողորմեա մեղապարտ ծառային քո Կոստանդեա
քահանայի, և հանգուցեալ աստուածասէր հաւր իւրոյ Ցոհաննէսի քա-

*հանայի, և բարպաշտ մաւր իւրոյ*, որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ իւրոյ։ Որ արժանաւորէք բարի յիշմամբ զստացաւղս և զանարժան գրողս* Սմբատ** *սուտ քահանայ, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։****

*Բ. մասի գրիչ՝* Ստեփ[անոս] երիցորդի
*վայր՝* Սկևռայ

Բ

227 բ *Քրիստոս աստուած, ողորմեա ստացողի սորա* Կոստանդեա *քահանայի և ծնաւղաց իւրոց, և մեղուցեալ դծաւղի* Ստեփանոսի, *և ծնաւղաց իւրոց, և ամենայն եղբարց սրբոյ մենաստանիս* Սկևռայիս, *և ծնաւղաց իւրեանց, և որաց զամէնն ասիցեն։*

Գ

350 բ *Զորբաղան ընթերցողք և զլսաւղք աղաչեմ՝ յիշէք աղաւթիւք զստացաւղ սորա* զԿոստանդին *քահանայ, և զծնաւղսն իւր, և զազգատոհմն, և զիս՝ զանարժան աշխատողս՝* զՍտեփ[անոս] երիցորդի, *և ծնողսն իմ, և աստուած զձեզ յիշեսցէ ողորմութեամբ։*

161.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ԵՐԶՆԿԱՅԻՈՅ

*Ալիշան, Հայապատում, էջ 512—513*

*Հեղինակ՝* Յոհաննես Եզնկայեցի
*վայր՝* ի վանս Ծործորու

*Գերապատիւ և գերահռչակ հայրն մեր ըստ հոգւոյ և երկրորդ լուսաւորիչն սուրբ եկեղեցւոյ, ի զարմէ և ի շնորհէ սրբոյն Գրիգորի փայլեալ, կորովամիտ և համեղաբան կաթողիկոսն Հայոց տէր* Ներսէս Կլայեցի, *աշխատեալ վերլուծութեամբ ի սկիզբն սրբոյ աւետարանիս՝ գեղեցիկ և հանճարեղ բանիւ, և դադարեալ վարդապետութիւն նորա ի մուտս վարդապետութեան փրկչին յայսմ վայրի******։ Ոչ գիտելով եթէ ո՞յր աղագաւ եղեւ խափանեալ, վասն որոյ յոյժ ի վարանս մտեալ տագնապէի. զի թէ նա ի խնդրոյ եղբօր իւրոյ* Գրիգորիսի՝ *վերադիտողի հայրապետական աթոռոյն՝ գրեաց զմեկնութիւնն, որպէս պատմի*

---

* *Մոր անվան գրության համար տեղ է բաց թողնված։*

** *Այս Սմբատին նույնացնում ենք նախորդ հիշատակարանի գրիչ Սմբատի հետ, ըստ այդմ էլ անթվական սույն հիշատակարանը տեղադրում ենք նրան առընթեր, 1316-ի թվաշարքում։*

*** *Էջ 9-ից սկսած Սմբատը փոխել է իր ձեռագիրը և սկսել է գրել մեծ բոլորագրով. այս առթիվ թողել է հետևյալ հիշատակագրությունը՝ «գրոյս տէրոջն հրամանաւ մեծցուցի գգիրս»։*

**** *Այսինքն Մատթ. ավետարանի Է. գլխով։*

ի սկիզբն նախերգութեան նորին, և ինքն իսկ յետոյ յաջորդեաց զա-
թոռ կաթողիկոսութեան՝ ամս եօթն, ապա ընդէր եղեւ թերի մնացեալ
աստուածային գործոյս այսորիկ գործառնութիւն։ Եւ յոյժ հետաքրքիր
եղեալ՝ ի ստոյգ պատճառէ հասմանն վրիպեցի, քանզի ոմանք զմահն
ասացին խափանումն, և այլք դհոդ հայրապետական աթոռոյն, և
կէսք՝ թէ դրհաց և չէ ի միջի. բայց սոքա ինձ ոչ եղեն հաւանելի։
Եւ թէպէտ ոմանք նախ քան զմեզ ձեռնարկեցին գրել ի վերայ
շարադրութեան նորին, սակայն ոչ էր կարգաւոր, որպէս սորոյն, այլ
հատակոտոր արարեալ զբանս առաջին մեկնչաց, նաեւ զբնաբանու-
թիւն աւետարանին արտաքս մերժեալ, ուստի ոչ զայր դիւրաւ յիմա-
ցումն ընթերցողացն։

Ցաղագս որոյ, ես՝ Նուաստս ի Քրիստոս և յետինն յորդիս Սիոնի՝
ապիկար ողիս Յօհաննէս Եզնկայեցի սպասաւոր բանի, բնակեալ ի
վիճակ սուրբ առաքելոյն Թադէոսի, ի վանս Ծործորու կոչեցեալ, ընդ
հովանեաւ սուրբ Աստուածածնիս, այլ և ժողովեալ առ մեզ բանասէր
անձինք ի յուսումն կրթութեան աստուածաշունչ տառից լսողութեան,
յորոց յորդորմանէ և ի փափաքելի խնդրոյ, եղեալ ի մտի առնել հա-
ւաքումն մեկնութեան սրբոյ աւետարանին Մատթէի, լնլով զթերի
նորին ըստ կարողութեան իմում, շահեալ և օգտեալ յառաջին սրբոցն
և է ի ծագմանէ նշուլից շնորհաց վերաստացեալ առնն աստուծոյ ի
միտս մեր, դիցուք տեսութիւնս պիտանացուս յանձնիւր տեղի, խառ-
նելով զնսեմատեսակ բանիցս ազեղութիւն՝ ընդ չքնաղագիւտ և լու-
սատեսակ իմաստիցն պայծառութեան։ Եւ աւանդեցաք մօր մերոյ
Սիոնի փարթամութեան և որդւոցն նորին՝ անխոնջ վաստակաւորաց,
և հրճուանս հոգևոր խրախութեան, միանգամայն և յառատութիւն
մտաց և բանի, յաւելուած վարկանելով զտաժանումն կարի քրտանցս
մերոց՝ առ ընգարձակութիւն անդնդական խորոց լայնութեան, գիտե-
լով եթէ Պօղոսի շնորհ է վարձս ըստ տնկելոյն և Ապօղոսի՝ ըստ ոռո-
գելոյն։ Վասն որոյ, աղաչեմ զաստուածաբան զընթերցողսդ և զվայե-
լողսդ այս փոքրատեսիլ և չնչին նուիրաց ընծայի՝ որ ի սուրբ եկե-
ղեցի. վստահութեանս մերում ներողս լինել, և զսխալանս մեր, որ
ատ՝ ի բառս և ի տեսութիւնս, հարազատ սիրով ուղղել։ Քանզի
բնաւորեալ է սէր՝ զբազմութիւն եղբօր յանցանաց ծածկել, և զաշխա-
տանս երկանց մերոց՝ ձեր օգտելով քաւել, և զմեզ, հանդերձ մերովքն
ծնողօք՝ հոգևորօք և մարմնաւորօք, ի տէրունի բարիսն յիշատակել։
Եւ արդ, եղեւ գրութիւն սորա ի թիւ մարդեղութեան տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի ի ՌՅԺԶ. (1316)։*

---

* Քրիստոնեական 1316-ին համապատասխանում է հայկական ՉԿԳ. (763=1314) թվականը, ուստի հիշատակարանի գրության իրական տարեթիվը համարում ենք 1314-ը։

## 162.

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 5668 (տես նաև 1472 Թ.)*

*Գրիչ՝* Կարապետ

325 բ *Յամի ութնհարիւրորդի վատ[ս]ներորդի հինգերորդի (1316) Թուականիս Հայոց, ի հայրապետութեան տեառն* Կոստանդեա *և ի Թագաւորութեան Հայոց* Աւշնի, *գրեցաւ եղանակաւոր տառըս շարականաց, ձեռամբ յետին և փծուն գրչի* Կարապետի, *ի խընդրոյ սրբասէր քահանային*. յիշատակ իւրեանց, և ծնաւղաց, և զարմից։***

## 163.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Վրաց թանգարան, № 130*

ա

330 ա *Տէր աստուած, ողորմեայ* Ներսեսի, *և* Մովսեսի, *և ծնաւղաց նոցին, և զարմից, և որք յիշեն զմեզ ի բարի, և քեզ փառք յամենայնի, ամէն...։*

բ

70 բ *Ի Թվին, ՋԿԵ. (1316)՝ խնդիր եղև այսմ իրի։*

## 164.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ

*Փիրդ. 6273, էջ 125 (Լիմ)*

*Ի Թուին ՋԿԵ. (1316), օգոստոս ԺԸ. (18) հանգեաւ ի Քրիստոս երից երանեալ* Եսայի *վարդապետն, որ ամենայն առաքինութեամբ վարժեալ, զոր ոչ ոք կարէ պատմել զամենայն գործս առաքինութեան նորա՝ զողորմութեան և զխոնարհութեան։*

* *Անվան տեղը բաց է թողնված։*

** *Կան նաև հետագա ստացողներ Ներսէս քահանայի (1558 Թ.) և «Ոււսթայ Կիրակոսի» (1684 Թ.) սակավարժեք հիշատակարանները։*



ՉԿԶ 1317

165.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Երևան 353 (տես նաև 1615 Թ.)*

*Գրիչ՝* Կիրակոս

ա

34 ա *Զամենամեղ ոգի զ*Կիրակոս *գրիչ և ստացօղ սուրբ կտակացս, և զծնաւղսն իմ, և զերջանիկ րաբունապետս մեր, որ զօրինակս շնորհեաց յիշել աղաչեմ. գրեցաւ Ծննդոց Գիրքս ի Թվ. ՉԿԶ. (1317)։*

բ

70 բ *Զանպիտան գծող և զստացաւղ սուրբ տառիս, և զեղբաւրորդիս իմ՝ զ*Յովաննէս *սարկաւագ, որ զանձն ի յաշխատանս եդ ջանակից լինել մեզ, մանաւանդ թէ զյոլով մասն սա գրէ, վասն որոյ աղաչեմ յիշ[ել] ի տէր զիս՝ զապիկարս* Կիւրակ[ոս], *և զ*Յովաննէս, *և զծնաւղսն մեր, և աստուած զյիշողսդ յիշէ, ամէն...։*

գ

*Ծաղկող՝* Թորոս

90 բ *Ո՜վ, սրբասնեալ րաբունի* Կիւրակոս, *անարժան նկարչիս* Թորոսի *յանցանաց թողութիւն հայցեա ի Քրիստոսէ աստուծոյ։*

դ

133 ա ԶՅակոբոս *սրբասնունդ կրաւնաւոր յիշեցէք ի Քրիստոս, որ զչիքիրոնս շնորհեաց, և աստուած զձեզ յիշէ, ամէն...։*

ե

203 ա *Ամենունակ տէրդ բարի,*
*Պարունակաւղդ բոլորի,*
*Եւ խնամածու մարդկան սեռի՝*
*Րաբունոյ* Կիւրակոսի,
*Եւ* Յովաննէս *քարտուղարի,*
*Եւ* Թորոսի *կրաւնաւորի,*
*Յահեղ աւուր դատաստանի,*
*Յորժամ բազմիս ի մեծ բեմի*
*Արդարադատ քո աւրինի,*
*Ոչ արառցէս ի մեր դիմի,*

*Այլ շնորհաւք քո հրամանի,*
*Մեր յանցանացն ամենայնի*
*Լեր դու քաւիչ յայս աշխարհի*
*Եւ յահաւոր դատաստանի,*
*Ամէն, ամէն և եղիցի։*

Գրիչ՝ Կարապետ

Գ

252 բ *Ողորմեա տէր* Կարապետ *երիցու և ծնողաց իմոց՝* Գրիգորի և Հազրևարդի:

Է

273 ա *Տէր աստուած, ի քոյ ահաւոր գալըստեանդ ողորմեա գրիս դրող տուողի՝* Կիւրակոս *վարդապետի, և ծնողաց իւրոց, և արժանի արայ լսել զերանաւէտ ձայնն, եթէ՝ Եկայք աւրհնեալք հաւր իմս, ընդ նոսին զմեղապարտ անձս զ*Կարապետս *և զծնողս իմ։*

Գրիչ՝ Տիրացու

Ը

310 ա *Զմեծ բաբունապետն զ*Սռայի, *և զհետևող նորին՝ զ*Կիրակոս *վարդապետն, ընդ նոցին և զմեղաւոր հողս՝* Տիրացու *գրիչ, աղաչեմ յիշել ի տէր։*

Թ

652 ա *Տէր աստուած ամենայնի, որ փրկեցեր զՅովսէփ յեղբարցն սպանմանէ, և անարատ պահեցեր յեգիպտուհոյն չար ցանգութենէ, պահեա զսուրբ բաբունապեան* Կիր[ակոս] *և զմեղաւք դատապարտեալ գրիչս ի կամս քո, նաև զծնողսն մեր, և յաւիտենական հրոյն ազատեա զմեզ, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։*

Ժ

652 բ *Որ սպաներ զվիշապն մեծ՝ զամբարտաւան հայրն չարեաց՝ սպան և զիմ հոգւոյս դրժողն՝ զիմանալի և զգալին, զարձոյ զխնասակարս քո ծառայի՝* Կիրակոսի *վարդապետի, և զանմարմինն անլոյծ կապեա ի շղթայի, այժմ և յաւուրն ապագայի, ամէն։*

## 166.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 6897

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Գլաձո՞ր

183 բ *Մեծ իշխանն Հայոց՝ Թոռն* Պռոշա, *որդին* Հասանա՝ Խաչի, *հանգեաւ ի Քրիստոս թվկ. ՉԿԶ. (1317), քաղոցի Ժ. (10) և դեկտեմբերի ԺԸ. (18), և մեծ սուգ եղև ամենայն քրիստոնէից, աւաղ։**

* *Գրված է ներքին լուսանցքում։*

211բ *Ո՛տայր ինձ ազատիլ ի յունայն և սնոտի մարմնական զբաղմանց, երանի թէ լինէր։*

*Կատարեցաւ պորփիւրոս ձեռամբ փցուն գրչի* Կարապետի, *աստուած ողորմի իւր հոգոյն և թողու զիւր [յ]անցանք, և զիւր ծնողացն, և զամենայն արեան մերձաւորաց. ջնջէ զձեռագիր* մեղացն և գրէ ի դպրութիւնն կենաց...։***

## 167.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Ալիշան, Այրարատ, էջ 172*

*վայր՝* Յոհաննավանք
*Գրիչ՝* Սարկաւագ Մոնոզոն

Ներսէս *(առաջնորդ Յովհաննավանից) ի 1318, ազգական* Համազասպայ, *սա է հաւանօրէն ներբողեալն յառաջ քան զառաջնորդութիւնն՝ ի յիշատակարանի մեծադիր գրոց Սարգսի մեկնութեան Կաթողիկեայ Թղթոց՝ գրեալ յամս 1317—20 (որ կայ առ մեզ), և տուեալ է գրել նոյն ինքն աստ ի* Յոհաննավանս, *և պարգեւեալ այլում եկեղեցւոյ։*

*«Աստանաւր երեւեալ ի շնորհաց աստուծոյ ճգնաւոր ոմն միայնակեաց աստուածահաճոյ վարուք, պանծացեալ կուսակրաւն կարգաւորութեամբ, ընդդէմ հանապազաւրեան թշնամւոյն հանդիսացեալ ի մանկութենէ, ժիր և հպատակ յամենայն աստուածային աւրէնսն. և տարաշխարհիկ լինելով յամենայն ամի ի հեռաւոր քաղաքս յաղագս վաճառաշահութեան, և զմարմնաւորն առեալ՝ հոգեւորին փոխանակէր,* Ներսէս *անուն. որ և մանկունս գնոց ստացեալ՝ վարժէր աստուածահաճոյ վարուք, ե՛ ի չափ հասուցեալ՝ տայր յուսումն բանի սպասաւորութեան. և այլոց բազմաց կարեկից և արդիւնարար լինէր, յաշխարհականս և ի վանականս. և զամենայն ժամանակս իւր՝ այսպէս անցուցանէր»։*

*Յիշի անդ հարազատ եղբայր նորին* Գրիգոր, *և ծնողք նոցին* Սիրինշահ *և* Տաւնիա, *և «ձեռնասուն հոգեւոր որդեակն իւր* Յակոբոս, *որ է սպասաւոր բանի». յիշէ անդ գրիչն* Սարկաւագ *մոնոզոն՝ և զերախտաւորս իւր ոմանս, զ*Հեթում *քահանայ որդի* Դաւթի *և* Ոսկետիկնոջ, *և «զՀայր* Թադէոսն՝ *զբոկիկ ճգնաւորն* Զագավանեցի»։***

---

** Բնագրում՝ «Ձեռայգիր»։*

*** Ձեռագիրն ըստ Մատենադարանի ցուցակի գրված է Գլաձորի դպրոցում։*

**** Ձեռքի տակ չունենալով լրիվ հիշատակարանը, ստիպված ենք հրատարակել հատվածաբար քաղված և համառոտված ձևով։ Չակերտներից դուրս գտնվող նախադասություններն ու լրացումները Ալիշանինն են։*

168.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7781

Գրիչ՝ Հայրապետ

Վայր՝ Արճէշի գաւառ, Արջրոյ վանք

250բ … Գրեցաւ սուրբ աւետարանս յերկիրս Քաջբերունի, որ այժմ կոչի Արճէշ, ի սուրբ ուխտս, որ Արջրոյ վանք կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սրբոյ կենսաբեր Նշանիս, ի յառաջնորդութեան կուսակրաւն և ճգնազգեաց կրաւնաւորի Ծերունոյ, ձեռամբ յոգնամեղի և յետին ի կրաւնաւորս Հայրապետ ոսկանուն [վարդապետի]. որք հանդիպիք սմա յիշեցէք ի տէր և թողութիւն անջնջելի մեղաց իմոց հայցեցէք ի Քրիստոսէ, նաև զեղբայրն իմ զԱւետիս կրաւնաւոր՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զծնողսն իմ յիշեցէք ի տէր, աղաչեմ. Նաև զՈվաննէս կրաւնաւոր, որ բազում վշտաց մերոց եղև մխիթար, յիշեցէք ի տէր, աղաչեմ։ Ի թվ. ՉԿԶ. (1317)։

251ա Ո՜վ եղբայր, թէ գիրս միայն հայիս՝ ունայն գտանիս, ապա թէ ի զաւրութիւն բանին հայիս, ոչ ինչ է պատուական, որ արժէ զսա, բսա առակողին։

Գիրս մնա, ձեռս գնա, գտնիմ հողովս, որ մնաւք կայ, աւաղ, աւաղ։

Ստացող Ջալիլայ*

Բ

Ես՝ Ջալիլայ խաթունս, որ ի ժամ մանգութեան և ի աղայական հասակի ըմբռնեցայ ի ձեռն մահու, և ժամանեցին պահանջողք հոգոյ իմոյ, թողի զտուն իմ, թողի զժառանգութիւն իմ, թողի զհայրենիս իմ, լքի զկեանս իմ, մերձեցայ ի դուռն գերեզմանիս, աւտարացայ ի սիրելեաց իմոց՝ ի բարեկամաց և յազգականաց իմոց։ Խործանեցաւ հասակս կանգուն, անգաւ բարձրամբարձ աշտարակս, խանգարեցաւ գեղեցկութիւնս, խաւարեցաւ լուսատեսիլ աչք իմ ի լուսոյ, խցեցաւ դրունք լսելեաց, լռեաց լեզուս արագ, հատաւ բարբառ ի բերանոյս…։

251բ Ընգալ տէր քաղցրութեամբ քո զհոգիս, զոր աւանդեցեր առ քեզ, բարեխաւսութեամբ անարատ ծնաւղի քո՝ սրբոյ կուսին Մարիամու աստուածածնիդ և սուրբ աւետարանիս, զոր ըստացայ յիշատակ հոգոյ իմոյ առ քեզ բարեխաւս ի յաւրն վերջին, յորժամ նստիս յաթոռ դատողական և սպառին բանք և թաղաւորեն գործք։ Ընդ նմին և զծնողսն իմ՝ զհայր իմ և զմայր իմ, և զքորքն իմ՝ զՆասապ խաթուն և զԽերխաթուն, և զաւակս նոցա, և զամենայն ազգատոհմքն իմ, ամէն…։

* Աւետարանը գրված է ի հիշատակ հանգուցեալ Ջալիլա խաթունի։ Հիշատակարանը Ջալիլայի անունից կազմել է ձեռագրի գրիչ Հայրապետը։

## 169.

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երևան 76*

*Գրիչ՝* Յոհաննէս
*վայր՝* Արծկէ

169բ *... Գրեցի և հաստատեալ կառուցի, ուժանդակութիւն առեալ ի*
*վերին զաւրութենէն, ի դէմս քարտենի, ըստ իմում [տ]կարութեան*
*դրանս աստուածոյնւոյն Սողոմոնի աստուածաին հոգւով առլցեալ,*
*ի թուականութեան հայկազեան տոհմիս տոմարիս* ՉԿԶ. *(1317)։ Ես*
*անպիտանս ի մանկունս եկեղեցւոյ* Յոհ[աննէս] *անուն՝ գրեցի ըստ*
*իմում տկարութեան և կարգեցի ի գէմս քարտենի, ի գաւառիս*
Բզնունեաց, *յանապատիս* Արծկէու, *ընդ հովանեաւ սրբոյ աստուածա-*
170ա *ընակ խորանացս՝ ‖ սուրբ Սիոնի, և մաւրս լուսոյ Աստուածածնիս, և*
*սուրբ և աստուածընկալ Նշանիս՝ պայծառ անուամբ սքանչելագործիս,*
*որ իր կարողութեամբս հասա ի վերջ գրոցս։ Ո՜վ մանկունք Նոր*
*Սիոնի, որք հանդիպիք ընթեռնուլ և մտաւք ճաշակել յայսմ յոգ-*
*նահամեան սեղանոյս, որք է ի պէտս կրթութեան մանկանց Նոր*
*Սիոնի, և զսոյն ընդունիք [յիշեցէք] եւ զ[յ]առաջասացեալ զԹադէոս*
*աբեղայս, որ փափաքանաւք և լի հոգւով և յաւժարութեամբ մտաւք*
*ստացաւ զտառս աստուածայշունչս անջինջ յիշատակ իւրն, և ծնաւղաց*
*իւրոց, և ամենայն արեան մերձակաց իւրոց։*
170բ *Բայց գրեցաւ սա ի սաստիկ և յընդիբ աւրինակէ, ի վաղուց*
*յետէ ստուգեալ և ճշմարտեալ ի նոյն պայմ ‖ անի, բանիւք և բառիւք*
*և տառիւ անթերի և անսղալ գոլով, զի թէպէտ և յաղագս մերոցս*
*կարեաց ի սոյն ձեռնարկեցաք, սակայն և առաւել ես վասն աւրինա-*
*կի և գաղափար այլոց լինելով սա՝ ըստ յարմարութեան բանիցն, զի*
*ամենայն ոք համարձակ զայս առցէ առ ի յայլ փոխելոյ, առանց*
*երկբաութեան և կասկածանաց...։*

## 170.

## ՃԱՇՈՑ

*Երևան 4760*

*Գրիչ՝* Թումայ
*վայր՝* Աւանն գիւղ

309բ *... Արդ, այս... գործոց սրբոց առաքելոցս սիրաբար ցանկացա*
*ես՝ տէր* Խաչատ[ուր] *եպ[իսկոպոս], յիշատակ հոգւոյ իմո, և ծնաւղաց*
*իմոց, և հայրազատ եղբարց՝* Պապերոյն *և այլ եղբարցն՝ հանգուցե-*
*լոց, կացցէ հաստատ յիշատակ մեզ ի դրան սուրբ Աստուածածնին*
Հոգեաց վանից, *որ և լիցուք մասնակից ազաւթից և պատարագաց*
*ճշմարիտ մարմնոյ և արեան Քրիստոսի։ Արդ, աղաչեմ զմիաբան*
*սպասաւորք սուրբ Աստուածածնիդ Հոգեաց վանից, զի յիշման և*

պատարագաց արժանի արասջիք զտէր Խաչատուր՝ վերակացու Հոգեաց վանից, զկնի ելից մերոյ յաշխարհէ, զի և դուք յիշեալ եղիջիք առաջի Քրիստոսի աստուծոյ մերո, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Եւ արդ, գրեցաւ գործքս սրբոց առաքելոցն ձեռամբ յոգնամեղի և անարհեստ գրչի Թ[ու]մ[այ]ի, ի թվ. հայոց ՉԿԶ. (1317), յամս աստուածապատիւ և հոգիաշնորհ տէր Զաքարիի հայոց կաթողիկոսի՝ Ախթամարա սուրբ խաչի առաջնորդի, և ի վերակացութեան գերահռչակ սուրբ ուխտին Վարագայ՝ տէր Պ[ե]տ[րոս]ի՝ հեզի և բարեսիրի, որոյ տացէ տէր աստուած սոցա ժամանակս ընդ երկայն աւուրս, ամէն, ամէն։

Բայց գրեցաւ ի գեւղս, որ կոչի Աւանս, ընդ հովանեաւ սուրբ Յով[հաննու] Կար[ապետի] և սուրբ Գրիգորի Հայոց լուսաւորչի։

Տէր Յիսուս, ի քո միւսանգամ գալստեանդ ողորմեա ստացողի գրոցս, և կարդացողացն, և Նկարայ հոգոյն, որ սակաւ ինչ աւգնեց ի թուղթ գրոց, ամէն։

... Ո՛, աստուածընկալ և շնորհակիր սուրբ տէր Խ[ա]չ[ատուր], զդատապարտեալս մեղաւք զԹ[ու]մ[ա]յ գծողս յիշեա ի գրան սուրբ Աստուածածնիդ, զի սուրբ աղաւթիւք ձերովք ողորմեսցի մեղաւորիս։

Բիք աչացս ծերացեալ է, բայց յետոյ խաւարի, զի ապականացու է։

## 171.

## ՄԵԿՆ. ԿԱԹՈՂԻԿԵԱՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՑ

Փիրզ. 6273, էջ 125—126 (Լիմ)

Ստացող՝ Խերիկ տիկին
Գրիչ՝ Թումայ
վայր՝ ի գաւառիս Վանայ քաղաքի, Աւանս գիւղ

Արդ, այսմ հոգևոր և աստուածային գանձարանիս ցանկացայ ես՝ մեղուցեալ և անարժան աղախինս Քրիստոսի Խերիկ տիկին. դուստր Վարդանայ, և զաւակն իմ՝ Ազիզ տիկին, և Տիկնայ տիկին...։ Ստացաք զսա յիշատակ հոգւոց մերոց...։ Տուաք զսուրբ գիրքս ընծայ Ստեփաննոս Նախավկային, որ ի յՈստան քաղաք, յերկիրն Ռշտունեաց, որ է հանդէպ լերինն Արտոսայ։ Արդ, մի ոք հեռացուսցէ զսա ի դրանէ սրբոյն Ստեփանոսի Նախավկային...։

Բայց արդ, գրեցաւ ձեռամբ յոգնամեղի և անարհեստ գրչի Թումայի անարժան քահանայի, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի հայոց կաթողիկոսի՝ Աղթամարայ սուրբ Խաչի առաջնորդի, և յառաջնորդութիւն գերահռչակ և սուրբ ուխտին Վարագայ՝ տէր Պետրոսի՝ հեզի և բարեսիրի, որոյ տացէ տէր աստուած սոցա զժամանակս ընդ երկայն աւուրս, ամէն։

Բայց գրեցաւ սուրբ տառս ի գաւառիս Վանայ քաղաքի, ի գիւղս, որ կոչի Աւանս, ընդ հովանեաւ սուրբ Յովհաննու Կարապետի և սուրբ Գրիգորի հայոց լուսաւորչի, որ են բարեխօս առ տէր վասն մեր...։ Նաև զայլսն միանգամայն՝ զհանգուցեալսն առ Քրիստոս՝ զՅովհաննէս

քահանայն մականուն Պզտիկ երէց, զՀայրապետ՝ տարաժամ հանգուցեալ, Ստեփաննոս՝ տարաժամ հանգուցեալ, զՄէր՝ տարաժամ հանգուցեալ..., որք վախճանեցան ի ՉԿԶ. (1317) թուականին։

## 172.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Թորոս. Աղբար. Ի. էջ 419 (Տիգրանակերտի սբ. Սարգիս եկեղեցի)

Վայր՝ Որձոյ գաւառ, Բատոնց գիւղ

Գրեալ ի թվ. Հայոց ՉԿԶ (1317), ի գաւառիս Որձոյ, ի գեաւղս, որ կոչի Բատաւնց, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի եւ սուրբ Յակոբայ, յառաջնորդութեան տէր Գրիգորի՝ հեղի եւ խոնարհի եւ. մեր իշխեցողի։ Այլ եւ զճարտասան քարտուղարն զԱստուածատուր կրաւնաւորն, զարծարծիչ տառից եւ զնիւթ շուշանաց մատենից, զխրատիչն իմ... յիշեսջիք...։ Ես գրել Գրիգոր կրաւնաւորն...։*

## 173.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Թորոս Աղբար Ա. էջ 218 (Տիւրիկ, սուրբ Աստուածածնի եկեղեցի)

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Դարանաղ դաշտ, Խոռինանց գիւղ

... Եւ արդ, աւարտեցաւ աւետարանս... ի թվաբերութեանս յոբելեան տումարիս ՉԿԶ. (1317), ի փառս և ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի դաշտիս Դարանաղու, ի գեւղս Խոռինանց, ձեռամբ Վարդանայ աշխարհի իրիցու, յիշատակ ինձ և իմոցն, հաւր իմոյ Գրիգոր քահանայի, և մաւր իմոյ Ազբրոցի, և եղբարց իմոց Մկրտչի, և Աշխեն տիկնոջ։

Դարձեալ աղաչեմք զամենեսեան, որք հանապազ խաչակիր լեալ էք խաչելոյն Քրիստոսի և պտղաբերեալք արգասաւորութեամբ պտղաւք ի կամս աստուծոյ, յիշել զվարդապետս մեր զՅակոբ, [զ]Կարապետ, զՍտեփաննոս, և զՅովհաննէս. և զծնաւղս իւրեանց, և զհարազատ եղբայրս նոցա։ Եւ որք կամակից եղեն սմայ ըստ իւրաքանչիւր կարի, Քրիստոս աստուած փառաւորեալ հանգուսցէ զհոգիս նոցա ի խորանս սիրողաց իւրոց, ամէն։

* Հիշատակարանն իր արդյան վիճակում անղամահատված ու համառոտված է հրատարակչի կողմից։

174.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Թորոս Աղբար. Բ. էջ 300—302 (Կամախ, Սբ. Թադէոս Առաքելոյ վանք)*

*Ստացող՝* Յովհաննէս
*վայր՝* Կիլիկիա, Կռակայ գիւղաքաղաք

*... Արդ. ես տրուպս եւ եղկելի,*
Յոհաննէս *անուն իմ յորջորջի,*
*Որ ձեւ ունիմ քահանայի*
*Եւ ի բարեաց եմ խիստ հեռի...,*
*Յոյժ բաղձանաւք զսա գրել տըւի,*
*Ի գիւղաքաղաքն, որ* Կռակայ *կոչի,*
*Ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի,*
*Ձեռամբ* Կոստանդին *քահանայի,*
*Եւթնհարիւր հայոց թուի*
*Վաթսուն և վեց անցեալ ամի (1317),*
*Ի հայրապետութեան տեառն* Կոստանդի՝
*Հայոց մեծաց հեղինակի (*),*
*Ի թագաւորութեան Հայոց* Աւշնի՝
*Բարեպաշտի եւ յոյժ հեզի։*
*Արդ, ես նուաստ յամենայնի,*
*Ծնունդ մալեալ ժամանակի...*
*Հայցեմ արէք զիս արժանի*
*Յարտասուելոյն ժամանակի,*
*Զեզ լսէ տէրն բարի,*
*Թողցէ զյանցանս իմոյ պարտի,*
*Նաեւ իմոցն ամենայնի,*
*Փոխեալքն, որ կան եւ, որ լինի,*
*Եւ հաւրն իմ* Սիրունի,
*Եղբաւր իմոյ* Առաքելի,
*Եւ* Կիրայի *ճգնաւորի՝*
*Մաւր ըստ մարմնոյ մեր պանծալի,*
*Եղբաւրկանն իմ* Յոհաննէսի,
*Եւ* Մարուցի *կրաւնաւորի,*
*Եւ* Յոհաննէս *քահանայի՝*
*Ջաւրինակն շնորհողի...*
*Բարեմիտ քեռն իմոյ հեզի,*
*Եւ որդեկաց իւր ըստ կարգի՝*
Վասիլի *եւ* Յոհաննիսի,
Սիմէոնի *եւ* Առաքելի։
*Տացէ նոցա աէր կեանս բարի,*
*Երկայնաւրեայ՝ յայսմ աշխարհի.*

*Ապէնիադ տէրն բարի*
*Ամենեցուն ողորմեսցի,*
*Եւ նմա փառք յեկեղեցի...*

175.

### ՊԱՏԱՐԱԳԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Փիրղ. 6273, էջ 126*

*Գրիչ՝* Յոհաննէս
*վայր՝* Կիպրոս կղզի, Մաղուստ քաղաք

*Գրեցաւ գիրքս այս ձեռամբ անիմաստ մեղուցելոյ* Յոհաննիսի *սպասաւորի աստուածային բանի, ի թուականիս հայկազեան սեռի ՉԿԶ. (1317), ի* Կիպրոս *կղզի, ի դուռն աստուծոյ մօր տաճարին Աստուածածնի, [որ է վանք ա կոչի* Կանչուտ*]*, ի քաղաքիս* Մաղուստ:

176.

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

*Վենետ. 265 Ցուցակ. Բ. էջ՝ 857—859*

*Գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Գլաձոր

ա

385 բ *Ի թվ. Հայոց ՉԿԶ. (1317) դրեցաւ սա ձեռամբ* Սարգիս *սուտանուն աբեղայի, անարհեստի և յոյժ անպիտանի։ Աղաչեմ զամենեսեան անմեղադիր լերուք, զի փափաքումն բանից յաղթեաց զմեզ։ Դարձեալ աղաչեմ յիշել զհոգևոր ծնողսն մեր՝ զ*Մեծտիկին, *և զ*Մարթա, *զ*Նուսթի, *զ*Խովադեղն, *զեղբայրն մեր՝ զ*Գրիգորէս, *և զամուսին իւր՝ զ*Մամախաթուն, *և զծնողսն իւրեանց, և զմարմնաւոր ծնողսն մեր, և զաբեամբ ներկեալ զեղբայրն մեր զ*Աւատն, *որ տարաժամ հասակի սպանաւ յանաւրինաց, և խառնեցաւ ընդ մարտիրոսացն, ևս աղաչեմ զհոգևոր և զմարմնաւոր զեղբարս և զծնողսն մեր յիշեցէք յաղաւթս ձեր. և յիշողքդ եղիցիք աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

բ

485 ա *... Արդ, ես* Սարգիս *համբակ և սպասաւոր բանի, տկար մարմնով և տառապեալ անձամբ, բաղում երկովք և աշխատութեամբ ծրագրեցի զսայ խմովս փցուն և անարհեստ մատամբ, գումարեցի զսայ իբրև*

** Սույն հիշատակարանը Փիրղալամյանը քաղել է ոչ անմիջապես ձեռագրից, մեր կողմից փակագծի մեջ առած ծանոթությունը, հավանաբար, Փիրղալամյանն ինքն է ավելացրել։*

զմեղու, որ զխորխսին ժողովէ ի վայելուչ բուրաստանաց՝ ի բջիջս մազու իւրոյ. նախ ի պէտս իւր և ապա ի բժշկութեան հիւանդաց: Այսպէս և ես, կամեցայ ղսայ ամբարել ի քարտի՝ ի մարմին, ձևով տառի, և ապա իմանալաբար՝ ի հոգի ստացուղացն զսա: Եւ եղև կատարումն գրոցս ի թվ. ՉԿԷ. (1318), ի ղաւառիս Վայոցձորոյ, յանապատս Գլաձոր, ընդ հովանեաւ սրբոյն Ստեփանոսի և մեծ վարդապետի և անյախթ հռետորի՝ Եսայեայ, ի թագաւորութեան Հայոց Աւշնի, և ի կաթողիկոսութեան [Կոստանդեայ]*, և յիշխանութեան ղաւառիս Ամիր Հասանայ, որդոյ Իւաչէ, որդոյ Ամիր Հասանայ, որդոյ Պռօշայ բարեպաշտի, զոր տէր Յիսուս տացէ նոցա ողորմութիւն, և զկենդանիքս պահեսցէ ընդ ամրածածուկ աջոյն իւրով:

Արդ, որք աւգտիք ի սմանէ, սստոջիք՝ տէր Յիսուս, ողորմեսցի Գրիգորիսի, և ամուսնոյ իւրոյ Մամախաթունին, և ծնաւղաց նոցայ, և ամենայն արեան մերձաւորաց, որ ձեռնտու եղեն այսմ գրոցս, զոր տէր աստուած հատուսցէ նոցա միոյն հարիւրապատիկ յայս կեանքս և ի հանդերձեալն: Եւ աղաչեմ յիշել ի տէր զՊարոնսլոյսն և զաստուածապարգև զաւակն իւր՝ զղեռաբոյս ծաղիկն և զգեղեցկատեսիլ մանուկն՝ զՄիրմիրն, զի արասցէ տէր ընդ երկայն աւուրս, անսասան և անսայթաք կենաւք ի վերայ երկրի, և որք յիշէքդ յիշեալ լիջիք յաստուծոյ, ամէն:

Գ

361 ա Զմեղապարտ և զփցուն գրիչ Սարգիս յիշեայ, և զեղբայրս իմ՝ զԳաւիթ Հաղբատեցի, և զԹորոս ծաղկող Տարոնեցի:

## 177.

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4456

Ծաղկող՝ Ամիր-Սարգիս
վայր՝ Գլաձո՞ր.

Ա

66 բ Քրիստոս աստուած, քո կամաւոր խաչելութեամբդ, որ համբերեցեր մահու և խաչի, աւգնեա և փրկեա յերեւլի և յաներևոյթ թըշնամեաց զԳրիգորէս քահանայ և զամուսին իւր զՄամախաթունն, որ աւգնութիւն արար աւետարանիս ծաղկելուն ամենայն իրաւք՝ հացիւ և թտցիւ և հոգութեամբ:

Եւ. որք կարդայք զգիրս, միով յիշմամբ թողութիւն խնդրեցէք ի տեառնէ մերմէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն:

Բ

191 ա Ո՞վ պատուական քահանայ, յորժամ ընթեռնուս զմեղապարտ և զանարժան և զանպիտան ծաղկողս՝ զԱմիր-Սարգիսս յաղաւթս յիշեայ,

* Բերված է, վերականգնում ենք 253 բ էջի հիշատակագրության հիման վրա:

*ընդ նմին զհայրն և զմայրն իմ՝ զԴանէլն և զԱզուտխաթունն, նայև զվարդապետսն իմ զՄխիթար սարկաւագն և զԳրիգոր գրագիրն յաղաւթս յիշեղէք, որ աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն, եղիցի, եղիցի**

* *Սույն գրիչը՝ Սարգիս կամ Ամիր-Սարգիս, 1317/8 թթ. ընդօրինակել է Վենետիկի մատենադարանի № 265 ձեռագիր—Ոսկեփորիկը (տես՝ նախորդ հիշատակարանը), ուստի հիշատակարանը տեղադրում ենք 1318-ի թվաշարքում:*



ՉԿԷ 1318

## 178.

### ԹՈՒՂԹ ՊՕՂՈՍԻ ԵՒ ԵՍԱՅԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

Գողթն, Ազգ. հնդ. գիրք XII, 1905 թ., էջ 163—164

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Վարագայ վանք

Արդ, յամս վերագիտութեան երջանիկ հոգևոր անտոն Զաքարեայի հայոց գլխապետի, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս՝ հոգէկիր վեհիմաստ հովւապետի տեառն Պետրոսի և նորին [հարազատի]՝ Յովսափի, գրեցաւ տոոս աստուածային, ընդ հովանեաւ սրբոյ Նշանիս Վարագայ, յոյժ տառապանաւք և նեղութեամբ, ձեռամբ մեղապարտ և անարժան կրաւնաւորի Յակոբի. ի Թուիս Հայկազնեան տումարիս ութնհարիւրորդի վաթսներորդի ութներորդի (1318), յայսմ ամի յորում ծիլի ամենայն երամք քրիստոսափառաց ի շնչմանէ նետողական ազգին Դարբանդադուլն ղանի. փչելով ի նա սատանայ՝ հարկ հրամայեաց առնուլ յամենայն քրիստոնէից վասն հաւատոցն, որ ի Քրիստոս, և նշան կապոյտ հրամայեաց կարել ի վերայ թիկանց հաւատացելոցս։ Եւս աւելի կրաւնաւորացս հարկ առնուին առանց ղանի հրամանին։ Յետոյ երից նրանեալ երջանիկ հայրապետն Զաքարիայ հետ ղանին գնացեալ մինչև ի Բաբելոն առ մի ողջոյն, և ալռեխ* առեալ ի նմանէ՝ զկրաւնաւորքս և զքահանայսն ազատեաց ի հարկապահանջութենէ, այլ յաշխարհականացն և ի տղայոցն առնուին։ Որոց** զարգիս խաղաղական կենաւք շնորհեսցէ նմայ տէր, և իւրոցն ամենայն, և զեղիցն (՞) յիշատակ աւրհնութեամբ ի Քրիստոս։ Եւ յայսմ ամի գարունն առին զհոտրկն և աշունն զանն մնաց։ Եւ այլ եկին, որ անուն Աղլադու, Սինթամուր և Հասանթամուր ԹԳՃ. (1300) մարդով և կրկին հարկ առին՝ յոյժ անչափ, և ոչ ոք ընդդիմացաւ նոցա։ Եւ վանօրայքս, որ ազատ էին, զոր ըմբռնեցին անհնարին տանջանաւք չարչարեցին և անչափ տ[ա]կ[ատ] առին։ Մանաւանդ սուրբ ուխտս մատնեաւ ի ձեռս նոցա։ Յանկարծակի գաղտաբար եկին յերիկունն և ամենեքեան փախեաք, և զորս ըմբռնեցին՝ անհնարին տանջեցին, որ ոչ կարեմք պատմել. և քաղաքի տաճկնին բազում ինչք տուին և հազիւ թափեցին ի ձեռաց նոցա։ Եւ այլքս, որ փախեաք, այլ չիշխեցաք դառնալ ի վանքս, զի հանապազ զտիւ և զգիշեր, ի խնդիր ելանին մեզ, և մեք անհաքեկեալք ի նոցանէ ահիւ և դողութեամբ կէաք զցայգ և զցերեկ ի սուրբ լերինդ, ի խորշս և ի ծերպս վիմաց, և նոքա ամէն

* Իմա՝ ալլեխ—Ярлык—հրովարտակ։

** Տպված է «որոնց»։

*ուր դայլն. և զեկեղ[եց]եաց դռներն և զխցերոյն դամէն բացին, և յաւարի առան զինչ որ գտան։ Բայց սուրբ Յովհաննիսս դուռն միայն մնաց, վասն զի ճղնազդեաց փակակալս մեր Ղազար կր[աւնաւոր], զահ և զերկիւղ ի բաց եդեալ և յեկեղեցին կացեալ բազում աւուրս, և սուրբ Նշանն՝ պահեաց զնոսա, և ափշեցոյց զսիրտս այլազգեացն, որ ոչ մաքառեցան ընդ դուռն երկաթի։ Եւ այլ բազում վիշտ, և նեղութիւն, և տառապանք կրեցաք յամենայն դիմաց՝ յամարանի և ի ձմերանի, փախստեայ լինելով և բոցաւթեայ կեալով ի սուրբ լերինդ՝ և այլ դժնդակ նեղութիւն, որ ոչ կարեմք պատմել. և մեք ամէն կրաւնաւորքս* կամ աւելի, երիցս երանեալ առաջնորդաւս մերով՝ տէր Պե[տրոսիւ], որ ոչ եթող վարատել մի ոք ի մէնջ, որոց զարդիս խաղա[ղա]կտն կենաւք շնորհեսցէ սոցա տէր աստուած միաբան ուխտիս, և զելիցն յիշատակաւ աւրհնութեամբ ի Քրիստոս։ Եւ մեք բազում ժամանակս զայս նեղութիւնս կրելով և առաւել քան զսոյն, և առ սէր սուրբ Նշանիս և ի սա ապաւինելով, ի սուրբ ուխտէս ոչ հեռացաք, քաղաքն և երկիրս ամէն այսր անտր փախեան, լուր մարգաաատան մնաց, և մեք ի տեղս հաստատուն կացաք վասն սուրբ Նշանի սիրոյս։*

179.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 356 (տես նաև 1677 թ.)*

*Գրիչ՝* Ներսես,
*վայր՝* Եղիվարդ

*...Արդ, գըրեցաւ սայ ի թուաբերութեանս Հայկազեան տոմարիս հաւթնհարիւր և վաթսուն և եաւթն (1318), ի խընդրոյ հրաշափառ և*
246ա *հաւատարիմ ծառայիցն Քրիստոսի՝ պարս ‖ Ն* Ազիզպէյին *և ամուսնոյ իւրոյ պարոն* Վախախին*: Սոքայ էին բարեպաշտ ծնողաց դաւակ և յաղնուական ազգաց և տոհմից, կամարարք և հաճոյարարք արարչին ամենայն եղականաց։ Եւ սոքա՝ բարեպաշտ տեարքս մեր՝ քաջ զաւրավարն ընդդէմ թշնամեաց խաչին Քրիստոսի՝ պարոն* Ազիզպէկն *և բարեմիտ տիկինն մեր՝ բարձրավիզն ի ցանկութիւն՝* Վաղխախ*, ի մանգութենէ իւրեանց սնեալ և վարժեալք ամենայն բարեպաշտութեամբ, բըխէին ի բերանոյ իւրեանց զբանս քաղ[ց]րաճաշակս ի լըս[ել]իս մարդկան, և զողորմութիւնս առ ամենայն աղքատս, և զարդիւնս մեծագինս և դեղեցկատեսիլս առ ամենայն եկեղեցիս։ Եւ աջոմն ամբածածուկ և սիրոմն հայրախնամ վարէին զկեանս իւրեայնց, որպէս զի հաճոյ թվէր ի յաչս եպիսկոպոսաց և վարդապետաց, քահանայից և աստուածասէր իշխանաց, աւրհնութիւն, գովութիւն և փառս մա-*
246բ *տուցանէին ‖ տվողին այնպիսի [ի]մաստութեան մարդկան։ Եւ վիշապն*

* *Ըստ երևույթին հրատարակիչը անուշադրությամբ բաց է թողել կրոնավորների թիվը արտահայտող տառանիշը։*

ահագին բարձրացուցեալ զգլուխս իւր և պշուցեալ հայէր ընդ յանհաս
բարեպաշտութիւնն նոցա, ծմլեցաւ սիրտ նորա և դէմս արարե[ա]լ
դայր սաս..մամբ ի վերայ նոցայ կլանել զնոսա։ Եւ հայեցեալ ի հեռաս-
տանէ զհինէ ախս եռեա և փակաղակս ի վերա հինգ դրանցն, որ ի
վերա մարմնո նոցա, և զհինգ ոդաարանս նոցայ բեւեռեալս ի սէրն
Քրիստոսի, ոչ կարաց մերձենալ առ նոսայ։

Ետես զաչս նոցա, որ միշտ հոսէին դվըտակս արտասուաց ի
ժամանակս աղօթից և պատարագաց, և միշտ ի վեր հայել ի գլուխն
իւրեանց ի տէր Յիսուս, և ոչ կարաց մըտանել ընդ նայ։

Ետես զբերանս նոցա պարկեշտս յաւելորդ ուտելոյ և ի խմելոյ,
և որոշեալ յամենայն խեղկատականաց, [յ]իշողաց և ի բամբասանաց,
և զձեռս նոցա՝ արգելեալս ի զրկելոյ և ի ծեծելոյ, այլ միշտ և ան-
խափան առատ յողորմութիւնս աղքատաց, և զոտս նոցայ՝ յերթեալս
247ա աղօթից, և || զուակաց նոցա ի լսել ըղպատուիրանն աստուծոյ։ Եւ
դարձուցեալ զդէմս իւր ի նոցա պեղծն խենեշ, և ասէ՝ վայ ինձ, բազ-
մազիմի սպառնալեաւք եկեալ յաղթեցա ամաւթխալից, և ասէ պեղծ
Թշուառական[ն]՝ որդ գիտեմ զինչ արարից, արկից զաղահութիւն ի
սիր[տ]ս ընդանեաց սոցայ, զի որոշեսցեն զսոսայ յարկաց իւրեանց։
Եւ արար այնպէս. տնկէ յառ նոսայ նախանձ, և պատերազմ յարոյց
ի մէջ եղբարց նոցա, և հողմով դիւական տարուբերէր զնոսայ իբրև
զնաւս՞ի հողմահար ալեաց։ Եւ նոցա նախանձ արկել բանիւք բազմա-
զիմ[ի] խոխողէին զնոսայ։ Եւ նոքայ զմտաւ ածեալս զայն, որ առա-
քելոյն հրամայէ, թէ՝ ով մեկնեսցէ զմեզ ի սիրոյն Քրիստոսի, նեղու-
թիւն, թէ անձկութիւն, թէ սով, թէ հալածանք, թէ մերկութիւն, զի
սովորութիւն է աստուծոյ փորձել զմարդիկ՝ թէ հաստատութեամբն կու
սիրէ զաստուած, թէ աղքատութեամբն այլ կու սիրէ, որպէս զ[Յ]ոբ։
247բ Եւ սոքայ՝ աստուածահաճոյ տեարքս մեր, որոշ || եալ յամենայն
ընչից և ոչ հատան յուսոյն, որ առ Քրիստոս, և համբերել ամենայն
հնարիցն սատանայի և ուռամբ հոգւոյն ջախեցին զգլուխն Բելիարայ։
Եւ հայեցեալ ողորմածին աստուծոյ, զի զըտան յաղթողք ընդդէմ
Թշնամոյն, ապա ողորմագին աղետիւք ժողովեաց զնոս[ա] ի խնամքն
արարչական, և եդ զԹշնամիս նոցա պատուանդան ոտից նոցա։ Եկեալ
տեսին զբնակութիւն նոցայ աւերեալ և կործանեալ, և զաւանս իւր-
եանց զՍղիվարդ՝ բնակութիւն աւազակաց. և կամակցութեամբ ամենա-
կալին աստուծոյ զամենայն ըզպարտսն հատուցին և վերստին նորոգե-
ցին ըզզօրայ բազում տգնութեամբ և չարաչար վըտանկաւք, մի մի ժողո-
վել զցրուեալսն, բազում և յոլով աշխատութեամբ ծառայութիւն կատա-
րելով մեծափառ տէրանց իւրեանց՝ մեծին Շահինշահի և Խոյանդզային, և
հեզաբար և հնազանդաբար շրջէին ընդ նոսայ, մինչև ամենայն զիմաւք
248ա հաստատեցին զմեծ մենաստանս՝ զՍղիվարգ, շինել զամենայն քան-
դեալս։ || Եւ յետ այսր ամենայնի հոգին սուրբ շարժեաց ըզնոսայ, և
սկսան արգիւնս մեծամեծս մի մի յաւելոյր աստուածատիպ շնորհ
ողորմածութեանն և կամք շինութեան զտունս հոգւոյ և մարմնոյ։

Քաղցրատես և ողորմագութ պարոնէքս մեր Ազիզպէկն և Վախախն

*սկսան շինել վանս ի կորգոյ՝ զուխտն սրբոյն Յակոբայ՝ յանուն սուրբ
առաքելոյն, և զարդարեցին զնայ մեծամեծ վայելչութեամբ, ստացան
բազում այդիս շուրջ զընակութեամբն ուխտին։ Եւ զներքս եկեղեցոյն
դարդարեցին քանդակով, նազաշութեամբ ձեացուցին զպատկեր ամե-
նափրկչին, և զմաւրն իւրոյ Աստուածածնին, և զառաքելոց, և ըզմար-
գարէից, միջնորդ արարե[ա]լ զնոսա առ բարեգութն աստուած։ Եւ մե-
ծագին գրեանս ազդի ազգի, և մեծագին ադեստիւք դարդարեցին զնայ,
և արարին զնայ ընակութիւնս կուսանաց, և ետուն զամենայն պէտս
248բ ադեստից և կերակրոց, և ոչ ինչ կարաւտք եղ[եալ] յամենայնէ, զոր
ինչ պիտո էր՝ հոգևոր և մարմնաւոր։ Եւ բարեպաշտ պարոնն* Ազիզպէկ
*և աստուածասէր տիկինն մեր* Վախախն՝ *ուրախութիւն և ցնծութիւն
մեծ արարին բազում գաւառաց և մեծ մենաստանիս* Եղիվարդայ:

*Գնացեալ ի սուրբ ուխտն աստուածընկալ և տեսեալ զգնացս
ջրոյն* Եղիվարդա *ււարեալս և խոպանացեալ, որպէս զի թերևս երևէին
հետք նորայ, և աստուածային նախախնամութեամբն վառեալ սիրտ
նոցայ և աջոյն ապենիազ թագաւորին Քրիստոսի, և պնդեցան իբր
այր դմէջ ի[ւրեանց և]* արիացան և ոչ հաշվելով զծախսն, որպէս
զուարդուն հրեղէն, տագնապէին, ոչ ունելով զհանգիստ և զքուն՝ ի
տվէ և ի գիշերի։ Եւ շրջապատել զլեառն* Արտաւտեան *հասուցին զջուրն
յորդառատ վրտակաւք փոյթընթաց յ*Եղիվարդ: *Եւ զդժվարութիւն սահ-
մանացն, և զ[յ]ոլով աշխատութիւնս, և զտուրս արվեստավորացն, և
զամենայն ծախսն ով կարէ ընդ գրով արկանել։ Եւ զանհասանելի
երկրաչափ զհեռաւորութիւն տեղոյ, որ ի քաղաքէն* Բըջնոյ** *մինչև*
249ա Կարբի *ոչ գը || տանէին ջուր յարբուսնս մարդկան, և պապակէին ան-
ցորդք ճանապարհաց ի տապոյ յաւուրս ամարայնոյ։ Եւ ի գալ և ի
մըտանել ջրոյն յանդաստանս մեր, վերստին նորոգեցան ամենայն
արմատք, և նորափետուր զարդարեցան և զըւարճացան ամենայն
կենդանիք՝ մարդ և անասուն, թռչունք երկնից և գազանք զովանաին,
զուարճանային և ուրախ լինէին, աւրհնէին, գովէին և փառաւոր առ-
նէին զաստուած, և բազկատարած ձեռաւք և մատնադեքս պաղատա-
նաւք խնդրէին ի տուողէն բարեաց ի Քրիստոսէ շնորհել զերկայն
աւուրս, հանդերձ ամենայն ուրախութեամբ, բարեպաշտ պարոնացն
մերոց* Ազիզպէկին *և* Վախախին, *կրկին կենաւք և երկու աշխարհաւք
պահել զնոսա ամբողջ և անխռով ի կամս ողորմութեան նորայ, որ է
աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Եւ յետ այսորիկ զաւրութիւն բարձրելոյն շրջապատե[ա]լ պահէր*
249բ *զնոսա || յամենայն հնարից սատանայի։*

*Արդ, վասն այսորիկ գրեցաք զգնացս վարուց նոցայ, զի բարի
աւրինակ էին բազմաց, նոյնպէս և ոյք յառնեն ի սոցանէ ծաղիկ
գեռայրոյսք՝ արասցեն զվարս նոցայ և դարձեալ պատմեսցեն որդոց
իւրեանց, զի մի կորիցէ բարեպաշտութեան վարք նոցայ յաշխարհէ։*

---

** Փակագծի մեջ եղող տառերի վրա թուղթ է փակցված վերանորոգողի կողմից, առաջարկվող ընթերցումը ըստ իմաստի և տառերի քանակի ավելի քան հավանական է։*
*** Բնագրում՝ «Բըջնոյ»։*

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ մեղսասէր քահանայի
Ներսեսի, ի յԱյրարատեան գաւառիս, ի մեծ մենաստանիս յԵղիվարդ,
ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գրիգորիս, և սուրբ
Յակոբիս. և այլ միտհամուռ որբոց առաքել[ոց], հրամանաւ և արդ-
եամ[բ]ք պարոն Ազիզբեկին և Վախախին, յիշատակ ինքեանց և ծնո-
ղաց իւրեանց՝ Աւագ պարոնին և Թամարին, Խար Ասլանին և Ըռուզու-
քանայ, և զաւակաց իւրեանց, ի ժառանգութիւն և բարեխաւս կենաց
առ Քրիստոս՝ Թախթանէ, և անդրանիկ որդոյ իւրեանց՝ Աւագին, Յո-
250ա հանիսին, ‖ Սարանգիսոսին, եւ Ասանթանէ, և ամենայն արեան մեր-
ձակայից՝ կենդանեաց և մեռելոց։ Որ ետուն գրել ըզսայ մեծաւ փա-
փաքանաւք ի հալալ արդեանց իւրեանց, և պատուեցին զսայ ոսկով
և արծաթով, և ընծայեցին ըզսայ սուրբ առաքելոցն, զի լիցի բարե-
խաւս և յոյս պարծանաց առ Քրիստոս յաւուր մեծի հրապարակին,
զի ընկալցին զսուրբ աւետարանս ի գիրգս իւրեանց բարեպաշտ իշ-
խեցողքն մեր, և տարել ընծայեսցէն Քրիստոսի աստուծոյ մերոյ, և
նայ տարել ընծաեցէ զնոսայ երկնաւոր հաւրն ասելով, եթէ՝ ունին
զբանս իմ ընդ յիւրեանս. և նայ դասեցուսցէ զնոսայ յանսպառ ուրա-
խութիւնսն, զի դրեալ է թէ՝ ուր ես եմ անդ և պաշտաւնեան իմ
եղիցի։
Արդ, աւարտումն արարից, զի ոչ ներէ բանս բազմի։
Արդ, ունկնդիր լերուք սակաւ բանից տեառն իմոյ Վախախին,
լուսոյ որդիք Սիոնի, զի ունի ինչ ասել ձեզ։
250բ Արդ, ես՝ Վախախս, ծառա ծառայից Քրիստոսի, պարտականս
բիւր քանքարաց տեառն իմոյ Յիսուսի, զմտաւ ածի զսէր արքայու-
թեանն և զըսպառն[ա]լիսն զըժոխոց, և հաեցա ընդ յիս, զի ոչ ունէի
թօշակ պատրաստել այն երկայն ճանապարհին, և եմ թափուր յամե-
նայն* բարեգործութեանց, զմտաւ ածի զանաչառ դատաստան Քրիս-
տոսի, և զի միայն եմ զտանելո անտ, առանց զաւրաց, զոր այժմ
ունիմ, զի անդ աղքատք թագաւորին և մեծատունք հեռացեալ լինին
ի տեսոյն Քրիստոսի, և կապին ձեռք այնոցիկ, որք ի յաղքատս ոչ
արձակին։ Արդ, զի՞նչ արարից, զի սարսել դողացաւ անձն իմ, զի թէ
մայրն իմ Եւա զմի պատուիրանաւ անցաւ և դատապարտեցաւ, իսկ
ինձ, որ բազումս քարոզին և ես անցայ զամենեքում[բ]ք, քանի՞
քանքարս պարտիմ տեառն իմում։ Արդ, ո՞վ հանցէ զիս ի ծովէս մե-
ղաց, որ տարաբերել ծըփիմ իբրև զնաւս հողմակոծեալս ալեաց մե-
ղաց, զի ամենեքեան ընծայեն աստուծոյ զիւրեանց անձին զործեալ
251ա բարին, և ես զրկեալ ‖ բոլորովին յառա[տա]ձիր պարգևացն Քրիստոսի։
Արդ, յոյս և ապաւէն Աստուածածինն ունիմ և իւր միածինն, որ զա-
նառակ որդին ընկալաւ, որ աւազակին զդրախտն երաց, որ ըզմաք-
սաւորին զաղաչանսն ընկալաւ, զնայ արարի ինձ յոյս և տեղի
ապաւինի, զի գրեալ է, թէ՝ որ ընդունի զբանս իմ և խոստովանեսցի
զիս առաջի մարդկան, խոստովանեցայց և ես զնայ առաջի հաւր
իմոյ, որ յերկինս է։ Եւ ես վասն յուսոյն, որ առ Քրիստոս, խոստո-

* Բնագրում՝ «յամենայրն»։

վանեցայ ընա հաւատով յամենայն սրտէ, և յամենայն մտաց, և յամենայն զաւրութենէ իմ[մ]է, և ետու զըրել զաւետարանս ի հալալ արդեանց իմոց բաղում յուսով և փափաքանաւք, յիշատակ ինձ, և տան իմում և բարի լծակցին իմս պարոն Ազիզպէկին, և ծնողաց իմոց, և զաւակաց։

Արդ, աղաչեմ զամենեսեան բոլորով սրտիւ, զի ասասջիք այսպէս՝ աէր Յիսուս զերծոյ զծառայքն քո՝ զԱզիզպէկն և զՎախախն, յաննեբելի սանջանացն, և Քրիստոս, որ առաան է [ի] առ։րս բարեաց, մեզ և ձեռ ողորմեսցի. և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

251բ Ըստ նմին և ես, անարժան ծառայս Քրիստոսի Ներսէս գրիչս, արժանի եղայց մաննել ի պատիւս տէրանց իմոց, որ ելեալ ի գաւառաց իմոց մոլորական շրջէի տարաշխարհիկ ի վերա ամենայն երկրի, որոշեալ ի ծանաւթից և յազգականաց իմոց, վայրապար և թափառնակի վարիւք, որպէս զի ոչ էի հաճոյ յուշո յիմաստնոց։ Եւ բարեպաշտ իշխեցողքս իմ, մեծափառ պարոնս Ազիզպէկն և ծնողադուբ տիկինն իմ Վախախն, տեսել զվայրապար կացս իմ, ածին զիս առ իւրեանս՝ դըրթացեալ ի վերայ իմ, և արարին զիս խնլամուտ, ուսուցին ինձ զամենայն հանճարս իմաստութեան և բարի մասն ցուցին ինձ, և անարգիս պատիւ եդին, և ընկալան զիս յարկս իւրեանց, որպէս հաւ, որ ժողովեսցէ զձագս իւր ընդ թեւաւք իւրովք. այնպէս ծնողադուբ աղետիւք սիրէին զիս սրտի մտաւք, որպէս զի մարդասէրն աստուած ընկալցէ զնոսայ յարկսն յաւիտենից։ Եւ ես ուխտ արարի միջնորդութեամբ աւետա-
252ա րանիս ծառաել զնոսա* ‖ մինչև հասցէ առ իս կոչումն ի վերին կոչողէն, զի յետ աստուծոյ եղեն ինձ խնամածոյք և բազմադիմի պատւով ընկալան զիս։ Եւ ես աղաչեմ զերկնաւոր քահանայապետն Քրիստոս տալ ինձ արիութիւն և իմաստութիւն ծառայել անվրէպ և անփորձ երկուց տէրանց՝ հոգևորի և մարմնաւորի։ Հոգևոր ծառայութեամբն ծառայել զՔրիստոս, զի կոչեաց զիս ի կարգ քահանայադործութեան, և պաղատանօք խնդրեմ յինքեան անամօթ գործով հասուցանել զկարգս իմ ամենայն գործովք <ար> առաքինութեամբ ի տէր իմ Յիսուս Քրիստոս, զի մի խոտան գտայց առաջի ահեղ ատենին, և մարմնաւոր ծառայութեամբ ծառայել զերկու քրիստոսապսակ իշխեցողքս՝ զպարոն Ազիզպէկն և զքաղցրադուբ տիկինն իմ զՎախախն՝ անխարդախ և աներկմիտ սրտիւք։

Եւ ես երես անկեալ աղաչեմ զձեզ՝ զսրբասէր որդիքդ Սիոնի, յիշեցէք զիս՝ զանարժան քահանայս՝ զՆերսէս գրիչ, և զծնողսն իմ, և զայնոսիկ, ոյք յոյս և ակնկալութիւն ունին ի մեզ, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է** աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

* Հիշատակարանի շարունակությունը պահպանվել է 1677 թվի արտագրությամբ, որ կատարել է Նսայի Բջնեցին ձեռագիրը նորոգելիս։

** Բնագրում՝ «ես», փոխանակ «է»-ի։

## 180.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7575

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Բերկրի

...Եւ արդ, գրեցաւ սա ի թուականութեանս եւթնհարիւրերորդի
վաթսներորդի եւթներորդի (1318), ձեռամբ Յակոբ կրաւնա[ւորի], ի
թագաւորութեան ղան Աբուսաիտի, ի հայրապետութեան տեառն Զա-
242բ քարիայի, ի քաղաքիս Բերկրի, || ի նեղութեան և ի դառն չար ժամա-
նակի, որ կարի յոյժ հալածումն կայր ի վերա քրիստոնէից ի ամե-
նեքեան ղրաւեալ կտին ընդ ձեռամբ նոցա, որպէս թէ կապեալք ի
շխթայս, իբրև զհինն Իսրաէլ առ Փարաւոնիւ, և ոչ ուստէք ունին ակն
փրկութեան, բայց միայն զփրկիչն մեր Քրիստոս, որ մերձ ընդ մերձ
կորուսցէ զհալածիչսն քրիստոնէից, և քարագլխեսցէ թաւաղլորելով
զնոսա ի վիհն կորստեան, ըստ չարութեան իւրեանց և ըստ գործոց,
և հաստատեսցէ զհաւատացեալս անուան իւրո ի հաւատս անսասանելի,
մինչև ի սահմանեալ կէտ կոչման, և պահեսցէ անսայթաք և անգթելի
ի վերա վիմի հիման մաւր մերո Նոր Սիոնի։
Եւ գրեցաւ սա ի քաղաքիս Բերկրի, ընդ հովանեաւ սուրբ Կա-
243ա րա || պետի և սուրբ Գէորգեա զաւրավարի, ի խնդրո երջանիկ և պա-
տուական սուրբ և մաքուր առն, որոյ անուն Սրավշահ կոչիւր, և
ամուսնոյ իւրո, և զաւակաց իւր, որ ստացաւ զսա ի հալալ և յարդար
արդեանց իւրոց ի վաելումն և ի պահպանութիւն անձանց և տանց
իւրեանց, ե զաւակաց իւրեանց պարսն Ելբուղի և Խութլուբուղաի*, և
յիշատակ բարի առաջի աստուծոյ յաւուրն համառաւտի, ե բարեխաւս
իւրն և ծնաւղաց իւրոց առ աստուած...
243բ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք վերջին գրիս, յիշել
ի Քրիստոս զվերադրեալքս ի սմա յանուանէ, և մեղաց թողութիւն
շնորհեսցէք։ Եւ ինքն ամենակալն աստուած՝ գթածն, ողորմածն՝ ամե-
նեցուն ողորմեսցի՝ յիշողացդ և յիշելեացս, և յորս յիշէք՝ եղիջիք
յիշեալ ի նոյն, ամէն։
Զ'Դաւլաթ ապաշխարաւղ և զՄինա յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր։

* Ստացողների անունները գրված են այլ ձեռագրով, գրչի կողմից դատարկ թողնված տողերի վրա, մի հանգամանք, որ վկայում է, թե ձեռագիրը գրված է գրչի ձեռներեցությամբ՝ վաճառահանման համար։

## 181.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 206

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Գլաձոր

ա

113ա Զբարունապետս զԵսայի,
Որ է ստացող համայնս տառի,
Է և յայժմուս ժամանակի
Զուր իմաստից մերոյս սեռի,
Յիշել ի տէր տարփմամբ սրտի,
Յաւետանալ յայսմ գործի,
Զի սընութիւն մերոյս ազգի
Պտղաբերի յիմաստս բանի։
ԶՍտեփ[աննոս] աղաչ[եմ]. յիշել ի տէր։

բ

191բ Զգրիչս ապիկար յիշետ, ով խոհեմ ընթերցաւղ, եւ զպետս վարժից ազին Թորգումայ՝ Եսայի։*

գ

312ա Ամովսածնիս անունն կրող,
Մարգարէին սուրբ նմանող,
Աստուածային բանին գիտող
Եւ զաշակերտքս ի նոյն վարժող,
Որ և տառիցս այսմ է սիրող,
Այլ բաղում գրեանց ժողովող,
Հին աւրինացն է հաւաքող,
Ի նորս կցել սա յարմարող,
Շարամանէ զսա ի մին տող,
Ի յետ ելիցն յիշատակող։
Զոր և հայցեմք ձրի շնորհող,
Ըստ արժանեաց շնորհաց բաշխող,
Առնես զսա սմին վայելող
Եւ ժամանակաց յերկար կրող։**
Եւ Ներսեսի հռետորի՝
Գնացեալն առ տէր իւր ըղձալի,
Յիշման առնէք զնա արժանի,
Առ բարեգութն՝ տէրն ամենի,
Ընդ նմին և զմեղաւոր գծողս այսմ տառի։

* Ձեռագրում կան բարձրորակ մանրանկարներ. 439բ էջի վրա պահպանվել է Եսայի Նչեցու դիմանկարը։

** Խոսքը ձեռագրի ստացող Եսայի Նչեցու մասին է։

Դ

618ր *Զրազմերջանիկն ի յոքունս և զարժանին յիշատակի՝ զհոետորական բարունապետն և զհողեորական երկամրք զնուցանողն մեր՝ զստացողն բազում ջանիւ և աշխատութեամբ աստուածաշունչ կտակիս՝* Եսայի, *ամենայն արեան մերձաւորաւք և հողեորասնունդ զաւակաւք, յիշեոջիք տուաջի զենման զառինն աստուծոյ, զի արժանի լիցին քաղաքին սրբոյ և ծառին կենաց, զրեալ ի դիրն կենդանոյն յաւիտենից և զառինն, ամէն, ամէն։ Նաև դյոքնաղան մեղաւք զերիս զ*Կիւրակէ** *և զքաղցրիկ ծնողսն իմ աղաչեմ յիշել ի մեղաց թողութիւն. և որք յիշեն յիշեալ լիցին ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն, ոիւխ։***

*Գրիչ՝* Յոհաննես Ծործորեցի

Ե

588ր *Զաստուածեղէն զանձիս ոտացողն, զերջանիկ վարժապետն* Եսայիաս *յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին և զնուաստ գծող սորին՝ զ*Յոհ[աննես] *սպասաւոր բանի* Երզնկայեցի, *որ և* Ծործորեցի, *հանդերձ ծնողօք, որ և գրեցի զսա յըստ մեզ մարգեղութեան թուին Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ ՌԳՃ. և ԺԸ. (1318), և ըստ խոսրովային տոմարին՝ ՉԿԷ. (1318)։*

*Ես և զանարժան նկարագրող զ*Թորոս *և զծնաւղոն մեր [յիշեսջիք ի Քրիստոս]։*

182.

## ՅԱՂԱԳՍ ԿԱԶՄՈՒԹԵԱՆ ՄԱՐԴՈՅ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՅ

*Ալիշան, Սիսական, էջ 133*

*Գրիչ՝* Յակոբ Թագորցի
*վայր՝* Գլաձոր

*...Ի հրեշտակարնակ մենաստանիս, որ կոչի* Գլաձոր, *զոր համարձակիմ զսա կոչել երկրորդ Աթէնք և մայրաքաղաք ամենայն իմաստից, ...ի վարժապետութեանս քաջ հռետորի և ամենիմաստ փիլիսոփայի՝ եռամեծի* Եսայեայ, *ճշմարիտ պատկերի աստուծոյ և հոգւոյն ընդունողի, խոհեմ, հեզ և արի հոգւոյն, յորում կամք դեգերեալ ի դրունս իմաստից սորա՝՝ բազումք աշակերտեալ բանին ճշմարտութեան. զոր լուսաւորեալ բացայայտէ զբազում խրթին և դժուարալուծանելի և անյայտ իմաստս ծածկեալս, զոր ի գիրս հին և նոր կտակարանաց և վարդապետական տառից, որ ի բազում ժամանակաց խցեալ ի հարանց նախնականաց։ Զոր մաղթեմ աստուծոյ, զի տացէ զսա պարագայց ամօք և խաղաղական կենօք ընդ երկայն աւուրս*

* *Բնագրում հապավված է այսպես՝ «զԿիրկէ»։*
** *Փոխարինագիր ծածկագրով «ոիւխ» կարդացվում է «ամէն»։*

լուսատու և համառօտիչ բանին նուագեալս սեռի հայկեան և տանս Թորգոմայ. և յետ ելիցս ատեացս մասնակից արասցէ սրբոց լուսաւորչացն և աստուածաբան վարդապետացն, Բարսղի, [Գրիգորի] Աստուածաբանին, [Գրիգորի] Նիւսեայ և սրբոյն Մեսրովբայ:

## 183.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

Երևան 1419 (տես նաև՝ 1427 և 1686 Թ.Թ.)

Գրիչ՝ Եփրեմ
վայր՝ Գլաձոր

ա

81ա Յամի ԷԶ. երորդի Կ. երորդի Է. երորդի (1318) յանկ ելեալ աւարտեցաւ տառս այս, որ է տեսիլ սրբոյ աւետարանչին Յովհաննու, ձեռամբ անպիտան գրչի կր[ս]սեր համբակի և պատանեկի Եփրեմի, հրամանաւ իմոյ սնուցողի և վարդապետի՝ Մարտիրոս սրբասէր և ճգնազգեաց կրաւնաւորի, նաև սպասաւորի բանի. զոր ետ գրել զսա բաղում ըղձիւ և փափաքմամբ սրտի, վասն իւրոյ աւգտի, և ի պայծառութիւն մանկանց Սիոնի և ի խրատ ոտահակ և անվարժ մտաց, զի սովաւ լուսաւորեսցին խաւարեալքն մտաւք։ Արդ, որ աւգտիք ի սմանէ և լուսաւորիք, աղաւթիւք խնդրեցէք յաստուծոյ ողորմութիւն ստացաւղի սորա Մարտիրոսայ և ծնողաց սորա՝ տալ զանթառամ պսակն՝ զանանց բարութիւնն։ Եւ ես անպիտան գծողիկս Եփրեմ, յերես անկեալ աղաչեմ, յիշել զիս և զիմսն ամենայն, զի և դուք յիշեսջիք ի տեառնէ աստուծոյ. ամէն։

բ

130ա Յանկ ելեալ աւարտեցաւ մեկնութիւն աղաւթական բանից աստուածարան աւետարանչին Յովհաննու ի թուիս ՉԿԷ. (1318), ձեռամբ ապիկար և փցուն գծաւղի Եփրեմի, հրամանաւ իմոյ սնուցաւղի և ճգնազգեաց կուսակրաւն քահանայի Մարտիրոսի՝ բանի սպասաւորի, ի վայելումն անձին իւր և յիշատակ հոգոյ և ծնաւղաց իւրոց։ Արդ, որք աւգտիք ի լուսաւոր բանիցս, աղաչեմ յիշել զմեզ աղաւթիւք սովորականաւք, յաւարաման դրոցս ասել՝ Քրիստոս որդի. և յիշել առաջի զենլոյն անմահ գառինն զՄարտիրոս վարդապետն իմ, զՅովհաննէս քահանայ, որ է իմ արենառու, և զՍիմոնէս ընկեր նորին, հանդերձ ծնաւղաւք և վարդապետաւք և ամենայն ազգայնաւք. և որք յիշէքդ՝ յիշեալ լիջիք ի տեառնէ աստուծոյ ամենակալէն, ամէն, ամէն։

գ

201ա Կատարեցաւ գրկունքս այս, որ է լուծումն աստուածիմաստ և հոգեշահ բանիցն Եւագրի մեծ ճգնաւորի և աստուածախաւս վարդապետի և իմաստուն հռետորի, ի թուին ՉԿԷ. (1318), ի յամսեանս ապրիլի ԻԵ. (25), ձեռամբ անպիտան գրչի և նոր համբակի՝ Եփրեմի, հրամանաւ իմոյ սնուցաւղի՝ Մարտիրոսի կուսակրաւն և ճգնաւոր

քահանայի, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց, և որք յետ նորա ժառանգեն և աւգտին ի լուսաւոր բանիցս այսոցիկ և սրտի մտաւք խնդրեն ի Տեառնէ ողորմութիւն և թողութիւն մեղաց նորին՝ Մարտիրոս քահանային, և ծնաւղաց իւրոց, և ինձ՝ անարժան գրչի և իմոցն ամենայնի, ես առաւել իմ երկրորդ ծնուղին և բազմերախտ իմ սրտէ սիրեցեալ քեռայն իմոյ Յովաննէս
201բ քահանայի, որ յայսմ ամի չոգաւ յԵրուսաղէմ. զոր տացէ տէր Յիսուս աղաւ[թիւք] ամենայն սրբոց տեսանել ինձ զնա միւսանգամ և վայ]ելել ի քաղ]ցր տեսոյ և ի գթոյ նորա. և ես Յոհաննէս գրչ[ի], ձեռն տու]աւղի'ի յայս գործառնութիւն, զի և նմա թողցէ տէր Յիսուս զմեղանսն իւր և զծնաւղացն իւրոց. և ձեզ յիշողացդ և յիշեցելոցս առհասարակ ողորմութիւն յաստուծոյ, ամէն, ամէն։

Դ

262ա Կատարեցաւ տառս այս ձեռամբ տպիկար գրչի և համբակի, հրամանաւ ճգնազգեաց հաւր Մարտիրոսի և իմ սնուցաւղի, ի վանս Գլաձոր, ընդ հովանեաւ սու[ր]բ Ստեփաննոսի և սուրբ բարունապետիս Եսայեայ: Արդ, որք աւգտիք ի սմանէ, յիշեսջիք զմեզ աղաւթիւք, և զմերսն ամենայն, և ես զհայրն իմ հոգևոր՝ զԱռաքել կուսակրաւն քահանայ, զի և դուք յիշեսջիք ի Տեառնէ աստուծոյ, ամէն։

## 184.

## ՃԱՇՈՑ

Երևան 6301 (տես նաև 1320 թ.)

Գրիչ՝ Խաչ[ատուր] Երզնկացի
ստացող՝ Սիմոն, վայր՝ Աստապատ

ա

...Արդ, գրեցաւ... ձեռամբ Խաչ[ատուր] գրչի Երզն[կացւո]յ, ի թվիս
248բ ՉԿԷ. (1318), ի մեհեկի ամսոյն, ի գեղս Աստապատ, ընդ || հովանեաւ սրբոյ զինաւորի և մեծ վկային Քրիստոսի Վարդանայ, ի հայրապետութեանն Հայոց տեառն Կոստանդեայ Կեսարացւոյ, և ի վերակացութեան մերոյ՝ սրբոյ լուսաբնակ մենաստանիս սրբոյ նախավկային Ստեփաննոսի և այլ համագումար մարտիրոսաց վկայելոց ի Քրիստոս՝ տէր Վարդանայ, զոր յուսալով մեզ ի Տեառնէ պահել զնա ուղղափառ հաւատով և անփորձ մինչ ի խորին ծերութիւն ուղիղ վերակացութեամբ։

Ես՝ մեղուցեալ ծառայս աստուծոյ Սիմոն աբեղա, որդի Յոհաննիսի և եղբաւրորդի Գէորգա ծերունոյ սրբասէր կրաւնաւորի, ստացայ զսա ի հալալ արդեանց իմոց, ի յիշատակութիւն ինձ և ծնաւղաց իմոց, և ընծայեցի ի սուրբ նախավկայն, որ յորժամ զգիրքս վճարեն ի սուրբ աւր պենդակոստէին, ի գալուստ հոգոյն սրբոյ ի վերնատունն, յերեսս

անկեալ աղաչեմք զամենայն միաբանեալ եղբարսդ և զսպասաւորքդ սրբոյ տաճարի աստուծոյ, որ յամենայն՝ տարի ի նոյն տաւնիս մին ժամ ինձ շնորհէք...։

249ա Արդ. որք հանդիպիք այսմ աստուածապատում երգարանիս, յիշեսջիք զաստ[ա]նորդ սուրբ ուխտիս մերոյ զտէր Վարդան, և զսպասաւորք միաբանեալ եղբարցս մերոց՝ զԽաչիկ աբեղայն, և զԳորգ՝ զհարեղբայրն իմ, զԲաբգէնն, զՍտեփաննոս, զՑակոբ՝ փակակալ սրբոյ տաճարիս, զՍիմէոն, Զաքարէ, զՀայրապետ, զՅովանէս, զՍարգիս, զՔահանայապետ՝ մականուն Քամունքաշ, զԽաչատուր, զՄաքաէրն, զՄկրտիչ, զՄարգարէ, զՅնծութիւն, զՅոհանէս, զՊետրոս, զԹադէոս, զՎրթանէս, զՇմաւոն, զՊաւղոս, զԳրիգոր, զՅոհան, զԿիրակոս, զՍարգիս Մարտիրոսեցի, և զայլ գործակալք սրբոյ տաճարիս՝ զոնտես և զոնտես մանուկ, և զոր յիշեցաք, և զոր ոչ կարացաք յիշել...։

250ա ...Յիշեսջիք և զարեան մերձաւորն ստացողի գրոյս, զորդի պարոն Պապաքին՝ զԱմիր Սարգիսն և զաւակն իւր, և ասասջիք՝ փրկեա Քրիստոս աստուած զնայ յերևելի և յաներևոյթ թշնամւոյն՝ ի մարմնաւոր կենցաղոյս, և քոյն սուրբ արքայութեանդ արժանաւորս արա։

Յիշեսջիք և զեղբայրն տէր Վարդանայ՝ առաջնորդի մերոյ՝ զպարոն զԱւրամն սրտի մտաւք, և ասասջիք, և թողութիւն մեղաց խնդրեցէք ի Քրիստոսէ աստուծոյ։

Յիշեսջիք և զպարոն Խաչիկն և զամուսինն իւր զՓոքր տիկինն, ով բազում սէր և ընդունելութիւն արարեալ են մեզ. ասասջիք՝
250բ փրկեայ Քրիստոս աստուած զսոսայ իւրեանց աստուածատուր ‖ զաւակաւքն ի խաղաղութիւն, մինչ ի խորին ծերութիւն...

Յիշեսջիք և զնորընծայեալ մանկունք սրբոյ եկեղեցոյս՝ զՍահին և զՇէկն և զՍարգիսն, ասասջիք՝ Քրիստոս աստուած, տուր սոցայ շնորհք և իմաստութիւն, և փրկեայ ի փորձութենէ թշնամւոյն, որսողին ի կորուստն յաւիտենից...։

## 185.

## ԳՈՎԵՍՏ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

Ն. Ջուղա, Ամենափրկիչ 98, Տ. Ավետիսյան, Ցուցակ, էջ 1645—6

Գրիչ՝ Մաքէ
վայր՝ Նորավանք

96ա Քրիստոս աստուած, քո սուրբ ծնօղիս բարեխօսութեամբ ողորմեա Գրիգորիսի և ննջեցելոց | | | ** ըստացաւ զսայ ի վայելումն անձին իւրոյ և յետ իւր յիշատակ անջինջ։ Նաև իմոցն ամենեցուն, որք կան և որ փոխեալ են*** յաստեացս։ Ո՜, ազնիւ ծառա և հաւատարիմ

* Բաց ենք թողնում մի ընդարձակ հատված, ուր գրիչը աղաչում է «յիշել» իր մերձավոր ու հեռավոր բազմաթիվ ազգականներին։
** Բազմաթիվ բառեր մնում են անընթեռնելի։
*** Ընդօրինակության մեջ՝ «փոխերան»։

*Քրիստոսի* Գրիգորիէ, *աղաչեմ | | | վասն սիրոյ Նորա, յորժամ ըն-
թեռն[ուս | | | զուարճանաս ներքին մարդովն, յիշ[եա | | | տառապ-
եալ ոգիս, մանաւանդ | | | զենմանն Քրիստոսի և թողութիւն հայ-
ցեա | | | բազմա]մեղիս, զի կարող է աստուած ի ձեռն ա[յլոյ այլ]ում
ողորմել և խոշորութեանն [մի մեղա]դրիր. զի գիտէն զկարս իմ
և | | | մեզ և ձեզ առհասարակ ողորմե | | | եւ Նմա փառք յաւ[իտ-
եանս]։*

*Գրեցաւ տառս ձեռամբ* Մաթէի *սուտանուն քահանայի, ի տե-
ղիս | | |* Նարավանս, *ընդ հովանեաւ սուրբ | | | առաւտս, ամէն։* Եր-
*ջանիկ բարունապ | | |* Դաւթի, *թուիս ՉԿԷ. (1318)։*

Բ

123ա *Զարիաջան քահանայ և սպասաւոր փրկագործ խորհրդւոյն* Գրի-
գորիէ, *ընկալ ի | | |* Նց *նուաստէ* Մարտիրոսէ, *զխուն ինչ խնդիր
քան մեղադրաբար վասն խոշորութեանն | | . | զմեզ արժանաւորեա
յահագնահայեաց և սոսկալին ժամու ուր անզանաւր հաւ | | | գիտ-
մամբ և իմանալի հայեցողութեամբ առ բոլորիցս փրկանք յառեայ-
նայեցին (°) և զարդիւն իրիս ես տարեոցես յիշել անմոռաց, զի և
դուք քոյաւք յիշեալ եղիցիս առաջի անմոռաց դ | | | աստուծոյ։*

## 186.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 242*

*Գրիչ՝* Թորոս
*վայր՝* Կիպրոս կղզի

391բ *...Զսա բազմամբ սիրոյ նուաստս* Թորոս *գրեցի ձեռամբ իմով՝
ի* Կիպրոս *կղզի, ի գաւառն ամենահասին սրբոյն Սարգսի, յոյժ տա-
ժանմամբ, ոչ ունելով պատշաճաւոր տեղի, քանզի հեռաբնակ լեալ
յիմ սնընդեան աշխարհէ, և յ[ը]նտանեաց, և ի սիրելեաց, զայս հո-
գևոր մխիթարութիւնս գտի սփոփանս վշտագնեալ անձինս։*
*Արդ, որք ի սմանէ տարազաւ իւիք աւգտիք, զանթիւ բիւրուց
պարտականս տեառն իմոյ Քրիստոսի, ծնողաւք իմովք, և եղբար[ր]ք,*
392ա *և քուերբք, ‖ և բնաւ զարմիւք ի սուրբ և ի մաքուր աղաւթս ձեր
յիշեսջիք, նաև ես առաւել և զերախտաւորսն մեր, որ ի հանդերձ և
կերակուրս զմեր մարմնական պէտսն լցուցել են. զի ի մեծի աւուր
գալըստեան փրկչին առհասարակ յիշեցեալքս և յիշաւղք ողորմու-
թեանն յուսոյն մերոյ Քրիստոսի արժանապէս հանդիպեսցուք, որ է
աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*
*Բայց գրեցաւ սա ի Թու[ականիս] ՉԿԷ. (1318)։*
*Յիշեսջիք աղաւթիւք և* զՍահակ *քահանայ ծնողաւքն և զար-
միւքն իւրովք, որ է ի նոյն կղզիս պանդխտակից մեր, որ և կազմեաց
զգիրքս զայս։*

## 187.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4018 (տես Նաև 1304 թ.)*

*Վաճառող՝* Խաչիկ

ա

253ա *Ի յայտնութենէ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի կենարար գալստեանն մինչև ցայժմ՝ յորում ամի գրեցի զյիշատակարան գրոց, որ են Ռ. և ՅԺԸ. (1318) և ի թուականութեան հայոց տոմարիս ՉԿԷ. (1318), ես՝ նուաստ սպասաւոր բանի* Խաչիկ *վարդապետս, զաւետարանս զայս ընդ սակաւ գնոց քան դարժանն ետու մեր եղբաւրն՝* Մխիթարայ *քահանայի, զի և մեզ մասն լիցի ըստ յուսոյն մերոյ յարդար դատաւորէն, որ հատուցանէ իւրաքանչիւր զվարձս իւր, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

*Գնող՝* Մխիթար

բ

*Ես՝* Մխիթար *անպիտան և անարժան ծառայ աստուծոյ, սուտանուն քահանայ, ցանկացող եղէ այսմ աստուածային գանձիս, որ է աւետարան փրկութեան հոգոց մարդկան, և ստացայ զսայ ի հալալ*
253բ *ընչից իմոց առ ի յիշատակ ինձ, և կենակցի || իմոյ* Մարա խաթունին, *այլ և ծնաւղաց մեր՝* Յոհանիսի *և* Գոհար *խաթունին, այլ և պատուական քահանայիցն և սրբասէր եղբարցն իմ՝* Վարդանայ *և* Շմաւոնի, *և ծնօղացն նոցայ՝* Գանգատին *և* Քոյրկանն, *այլ և ամենայն արեան մերձաւորաց մերոց՝ կենդանեաց և հանգուցելոց, ևս առաւել միամաւր զաւակին իմոյ* Սիսկանն:

*Արդ, ես՝ նուաստողի* Մխիթար *քահանայ, որ ստացայ զսայ ինձ հոգոյ զաւակ ի նեղ և ի դառն ժամանակի, յորում տնաւրէնքս դաւրացեալ են, նեղեն զքրիստոնայքս չիզացով. բայց Քրիստոս մեծ է, որ փրկէ զմեզ յամենայն վտանկից։ Այլ որք հանդիպիք այսմ աստուածային գանձիս, կամ որք կորգայք, կամ օրինակէք, զվերագրեալքս յիշեսջիք ի սրբամատոյց յաղօթս ձեր...։*

## 188.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. 0273, էջ 128 (Մեծոփայ վանք)*

*Գրիչ՝* Մխիթար [Սասնեցի]

*Գրեցաւ սուրբ աւետարանս ի թուին Հայոց ՉԿԷ. (1318), ձեռամբ* Մխիթար [Սասնեցի] *պիտականուն վարդապետի, ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ և երկրպագեալ ընդ հօր և սուրբ հոգւոյն, ամէն։*

189.

ԱՒԵՏԱՐԱՆ

*Ապուշեխ գիւղ, սբ. Նշան եկեղեցի, ձանիկյան, էջ 86*

*Գրիչ՝* Սիմէոն
*վայր՝* Դրազարկ

*Գրեցաւ տիեզերալոյս սուրբ աւետարանս ի թուին ՉԿէ. (1318), ի մեծափառ և ի հռչակաւոր անապատս* Դրազարկ, *ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ Կեսարացւոյ, *ի թագաւորութեան* Աւշինի, *ձեռամբ* Սիմէոնի *սուտանուն կրաւնաւորի...*

190.

ԱՒԵՏԱՐԱՆ

*Երեւան 4817*

*Գրիչ՝* Յովաննէս
*վայր՝* Ուռնկար անապատ

ա

*68բ *Գրեցաւ գերարփիս այս... ի յանապատիս* Ուռնկար *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ և յաղթող և աստուածընկալ սուրբ Նշանի, և սրբոյն Ստեփաննոսի, և առաքելոյն Պետրոսի, ի յաշխարհակալութեանն* Բուսայիտ *ղանին, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *ի յառաջնորդութեան տեղոյս* Ղազար *կրաւնաւորի։ Յիշատակ ամենիմաստ, ամենագով, քաղցրահայեաց և արդիւնայկատար, սրբասնեալ և աստուածահաճոյ, սրբասէր | | |**

բ

*76ա Ո՛վ սուրբ Նշան աստուածային... քեզ աղաչեմ ողորմագին, լեր բարեխաւս* Տիրացու *քահանային, և իւր ծնաւղին, ըստ նմին և գրողին՝* Յովաննէս *մեղապարտին, իւր ծնաւղին, և ամենայն հաւատացելոց։*

*Ծաղկող՝* Կիրակոս

գ

*1բ Զ*Կիրակոս *ծաղկողս՝ ղսուտանուն քահանայ, աղաչեմք յիշել ի տէր. վասն խոշորութեան ծաղկիս անմեղադիր լերուք. զի կար մեր այս էր։*

* *Գլխավոր հիշատակարանից պահպանվել է միայն այսքանը. ուստի ձեռագրի գրության մերձավոր ժամանակը որոշելու համար պետք է հիմք ընդունել Աբու Սեիդ (Բուսայիդ) ղանի և Աղթամարի կաթողիկոս Զաքարիայի գահակալության տարիները։ Աբդ, Բուսայիդը գահակալել է 1318—1335 թ. թ. միջև, իսկ Զաքարիան (տես՝ «Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ», էջ 45—58)՝ 1296—1336 թ. թ.։ Ըստ այդմ, ձեռագրի գրության ամենավաղ հնարավոր տարեթիվը 1318-ն է։*

*Հետ. ստացող՝* Խնդուբէկ

Դ

268ա *...Եւ արդ, ես* Խնդուբէկ *դերձակս՝ ի յ*Ոստան *քաղաքի, գնեցի ի քրդու, զի էր դերի բերած սուրբ աւետարանս, յիշատակ ինձ, և ծնաւ-ղաց իմոց, և կենակցին իմոյ* Խաթունմէլէքի: *Բայց յետոյ տէրն եկ և գտաւ առ իս, և իմ յաւժար սրտիւ ի տէրն տուի զսուրբ աւետա-րանս, որ յիւր սուրբ աղաւթքն յիշեսցէ զիս հանապազ...։**

*Կազմող՝* Կարապետ

Ե

268բ *Դարձեալ աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք սմա, յիշեցէք ի սուրբ և յարժանաւոր յաղաւթս ձեր զստացող սորա զպատուական քահանա* Յովանէս, *և զծնողքն իւր՝* զՅակոբ *քահանայ և* զըՌուզ, *և զքոյրն՝* զԹանկխաթուն՝ *զհանգուցեալն ի Քրիստոս, և զփեսայն՝* զՊետրոս, *և զորդին իւրեանց՝* զՍահակ, *և զիւր որդիքն՝* զՅոհաննես *քահանայ և* զՍտեփաննոս *սարկաւագ, և զԹոռունքն՝* զՃակոբ *և* զԳրիգոր. *և զազգականսն իւր՝* զՅակոբ *և* զԻիտիկ՝ *զհանգուցեալքն ի Քրիստոս, և* զՔրմանշայ *սարկաւագն, և զեղբայրն՝* զՍարգիս *մահ-դասին, և բոլոր սրտիւ և լի բերանով աստուած ողորմի ասացէք ի ժամ սոսկալի սուրբ պատարագին* Յովանէս *քահանին և ծնողաց նո-րին, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։*

*Ընդ նոսին և զիս՝ զանարհեստ կազմողս՝* զԿարապետ *յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։***

---

* *Շարունակությամբ, կարմիր թանաքով գրված է «ՋՅովանէս Սարկաւագն և զմայրն իւր Շամամն...»։*

** *Դ. և Ե. հիշատակարանները գրված են միևնույն (Կարապետ կազմողի) ձեռագրով, հավանորեն ԺԴ. դարու վերջերին։*



*ՉԿԸ* **1319**

**191.**

*Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Երևան 4125*

*Գրիչ՝* Վարդան
*վայր՝* Արճկեու վանք

*...Ցամի ՉԿԸ. երորդի ի հայկազեան տոհմիս տոմարիս (1319)... գրեցաւ աստուածային այս մատեան... յանապատիս* Արճկեու *վանս առ[ձայն]եալ, ընդ հովանեաւ սուրբ զՍքանչելագործիս, յառաջնորդութիւն տեղւոյս* Սիմէոն *աբեղայի, ի ստացումն սրբազան քահանայի*
302բ Թադէ[ոսի] | | | ,** *և ծնողաց իւրոց, և եղբարց իւրոց՝* Լուսիկ *և* Աւտարշահ *կոչեցեալ, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ ի Քրիստոս կատարելոց, պատճառ և առիթ անմահականն կենաց՝ ընդ սուրբ[ս] ամենայն։ Աւժանդակութեամբ մերս հոգեոր[ի] և հարազատի և սրբասնունդ աբեղայի առ տէր կոչեցեալ տառիս և ստացող նույնանուն* Թադէոս[ի]*, ձեռամբ պիտականուն* Վարդան *գրչի, ի դառնութեան և ի վշտաբեր ժամանակիս, յորում վիշտս վտանգի և աղետս տարակուսանաց յոգունս հասուցանելով քրիստոսական ոճոյս ազգաց՝ անաւրինաց՝ ուրացելոց ի փառաց որդւոյն աստուծոյ, նեղութեամբք, տառապանաւք, հարկապահանջութեամբք և այպանման ձաղանաւք, որոց հատուցէ նոցին ըստ գործոց նոցին հզաւր թագաւորն Քրիստոս ուլթնապատիկ ի ծոց նոցա։*

*Արդ, աղաչանս բազմապիսի առ որս հանդիպիք աստուածային մատենիս, ի պէտս ինչ աւգտութեան ի սմանէ եղելո, սեռն սիրով ի միտս բարիս և պատկանաւբ խնդրուածս զստացողն՝ զ*Թադէոս *քահանա, իւրովքն հանդերձ, և զբարի* Բարսեղ *աբեղա, որ զաւրինակն շնորհեաց և մխիթարակից եղև իմո տկարութեանս [յիշեցէք]...։***

**192.**

*. Ճ Ա Շ Ո Ց*

*Երևան 4738*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Աղթամար

262բ *...Զայս ամենայն հաւաքեալ և ի մի վայր ժողովեալ գծագրեցաւ կարգաւորաբար, սկսեալ ի յիշատակի աւուր ծննդեան փրկչին*

** Նորոգության ժամանակ ձեռագրի ստորին մասից կարել են լուսանցքը, յիշատակարանի վերջին տողի հետ միասին։*

*** Շարունակության մեջ կրկնում է նույն «Ցիշեցէք»-ները։*

և միոյ նշանով, առանց մոլորութեան, աւարտեալ մինչև ի տաւն
263ա սուրբ հայրապետին Բարսղի || Կեսարու։

Գրեցաւ յըստոյգ և յընտիր աւրինակէ, բազ[ու]մ աշխատանաւք և քրտմամբք՝ հոգւոյն սրբոյ ուժընդակութեամբ, յաստուածապահ և ի գեղեցկատիպ կղզիս Աղթամար կոչեցեալ, ի տեղիս ապաստանի, որ է աթոռ սրբոյն Գրիգորի լուսաւորչին Հայոց, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչի, և սուրբ Նշանի անապատի, և աստուածամուխ սուրբ Գեղարդեան, ի հայրապետութեանս հայոց սուրբ և անբիծ և երջանիկ տեառն Ներսեսի և տեառն Զաքարիայի, և ի թուաբերութեանս Հայոց յեւթնհարիւրերորդի վաթսներորդի ութերորդի (1319), ի դառնացեալ ժամանակիս, ի խնդրոյ գերամաքուր և երից երանեալ վերադիտողի և առաջնորդի տէր Ստեփաննոսի տան արքունական, որ Մոկս կոչի։

Եւ յայսմ ամի, ի դառն և ի վիշտ ժամանակիս, շինեաց յերկիրն յայն վանք նոր ի հիմանէ և գումբեթաձև եկեղեցի, և կարգաւոր[ե]աց ի նմա սրբասէր կրաւնաւորս և վանականս, ամենայն գործաւորաւքն հանդերձ, անխափան աւետարանաւ և պայծառ ժամատեղաւք, զոր աչաւք մերովք տեսաք, և աստուած ի նոյն պահեսցէ միշտ [և յա]-նապազ։ Եւս առաւել ղուռճացեալ և զճոխացեալ, որ միշտ պարապի ի սէր և ի գործ տեառն Յիսուսի, զսրբազան կրաւնաւորն զԿարապետ՝ ստացող գրոցս, որ եռափափագ սրտիւ ետ գրել զաստուածային տառս ի վայելումն անձանց իւրեանց յերկար ժամանակաւ, և յետ ատեացս՝ յիշատակ հոգւոց իւրեանց և բարի ծնաւղաց նոցին՝ Սարգսի և Մարիամու, Յոհաննու և Ոսկոյ, հանգեցելոցն ի Քրիստոս, և ամենայն ազգայնոց նոցին՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն։

Իսկ ես՝ ամենամեղս և անյիշելիս ի գրչաց Կարապետ սուտանուն կրաւնաւոր, ըստ իմում տկարութեանս յանձն առի և կատարեցի զսուրբ տառս կարողութեամբն աստուծոյ...։

### 193.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վիեն. 434. Տաշ. Ցուց. էջ 885. (տես նաև 1341, 1600 և 1644 թ.թ.)

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ ի մայրաքաղաքիս Սարայ,
մերձ առ ծովուն Կասփիականի

441ա Փառք... վասն զի յոյժ փութով եւ բազում բաղձանաւք, ողորմութեամբն աստուծոյ սկսա եւ շնորհաւքն Քրիստոսի կատարեցի, ի խնդրոյ սուրբ եւ արժանապատիւ արքեպիսկոպոսի տէր Պաղոսի եւ քաջ հովուապետի...։ Եւ գրեցաւ սա ի թուաբերութեանս Հայկազան տումարիս ՉԿԸ. (1319), եւ ի հունիս Ա., յաւուր ուրբաթու կատարեցաւ։ Ցամս աստուածապատիւ եւ հոգևոր տեառն Ստեփաննոսի՝ Արևելեան

կաթողիկոսի Հայոց, եւ տեառն Կոստանդեա՝ Կիլիկեցւոյ կաթողիկոսի, եւ ի թագաւորութեանն Հայոց Աւշնի։

Արդ, յերեսս անգեալ աղաչեմ զձեզ, ո՜վ դասք լուսերամից, որք ընթեռնուք զսա կամ ընդաւրինակէք, յիշել սրտի մտաւք զվերոյասացեալ զամէներջանիկ եւ զսրբազան արքեպիսկոպոսն զտէր Պօղոս եւ զհարազատ եղբայրն իւր զԱղքարիկ, հանդերձ ծնողիւք եւ ամենայն զարմիւք, քանզի մեր հոգևոր տէրս տէր Պօղոս ողորմած էր, յամենայնի նմանեալ տեառն Յիսուսի, անտիրաց տէր էր, քանի պիտի եւ զքաղցեալոն կերակրէր ի ժամանակի, եւ արթուն հովիւ էր, զինչ որ պիտի։ Դարձեալ աղաչեմ յիշման արժանի առնել եւ զճգնազգեստ աբեղայն զԳրիգոր եւ զծնողսն իւր, քանզի եղեւ առիթ [եւ] պատճառք այսմ լուսաւոր տառի յեզզահօծել (*) զսա։ Ընդ նմին եւ զիս՝ զբազմամեղ գրիչս Խաչատուր յոյժ անարժան քահանայ եւ. զմայրն իմ Ծօք տիկին աղաչեմ յիշել ի բարին Կրիստոս։ Եւ զաշխատաւղքս ի սմա, որք զնիւթս կոկեցին, եւ որք երախտաւորք եղեն ի սմա, զամենեսեան աղաչեմ յիշման արժանի առնել։ Եւ որք յիշէքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն։ Եւ կրկնակի դարձեալ եւս առաւել աղաչեմ զձեզ, ո՜վ առաքինիքդ հոգով, որ յաղագս սխալանաց, կամ եւս այլ պատճառանաց՝ լինել անմեղադիր, զի բնական կայանք չունէի, ապա ի տեղւոջէ ի տեղի կու գեգերէ[ի], եւ այլ՝ զի սիրտս վշտացեալ էր։ Եւ այս աշխարհիս ձմեռն խիստ է, հաւայն չէ գրագրու լայէխ։ Բայց գրեցաւ սա ի մայրաքաղաքիս Սարայ, որ է ի հիւսիսոյ կողմ, մերձ առ ծովուն Կասփիականի, ընդ որում շուրջ պատէ գնովաւ մեծ և հզօր գետն Էթիլ, եւ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ կենսակիր սուրբ Նշանին։

## 194.

## ԺԱՄԱԳԻՐՔ ՕՇԻՆ ԹԱԳԱՒՈՐԻ

Հալէպ. Սբ. Մնկ. 6, Սիւրմ. Ցուց. Ա 11—12

Գրիչ՝ Յակոբ

188 ...Շնորհիւ տեառն սկսա և ողորմութեամբն նորին կատարեցի զսաղմոս երգարանս հայրն Գաւթի ի յըղղորդ աւրինակէ ի Գառնեցոյն։ Փոյթ ունիցիք անխիղճ մտաւք կարդալ զգիր սաղմոսարանիս Արդ, արարիչն ամենեցուն վայելել տացէ ըզսա բարեպաշտ և աստուածասէր թագաւորին մերոյ Աւշնի, զի փափաքմամբ սիրով խնդրեաց զսայ ի տէր Թորոս աւագերէց, զոր ետ գրել զսաղմոսարանս ձեռամբ անարժան քահանայի Յակոբայ։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք կամ աւրինակէք ի սմանէ, աղաչեցէք զփրկիչն մեր Քրիստոս, զի տացէ ժամանակ բարեպաշտ թագաւորին Հայոց Աւշնի և որդւոյ իւրոյ Լեւոն[ի], զի պահեսցէ զսոսա ընդ երկայն աւուրս։ Գրեցաւ

*սաղմոսարանս ի թվ. Հայոց. ՉԿԸ. (1319), ի յամսեանն յունիսի ի ԺԸ. (18) աւրն, և Քրիստոսի փառք յաւիտեանս։*

Բ

330 *...Աղաչեմ յիշել ի տէր ըղտէր Թորոս աւագերէց* զրան արքունի, որ ետ զգիրս զայս գրել ձեռամբ Յակոբ քահանայի...։*

## 195.

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Փիրզ. 6273, էջ 129—130 (Վան, Տիրամայր եկեղեցի)*

*Գրիչ՝* Յովանէս

*վայր՝* Խարվագետ գիւղ, Գեղարքունի մենաստան

*...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի մենաստանիս, որ յորջորջի* Գեղարքունի, *ի գեաւղս, որ կոչի* Խարվագետ, *ընդ հովանեաւ սուրբ Առաքելոյս և սուրբ Գրիգորի, ի ղանութեան* Բուսայիտի, *ի յարքանեկութիւն նորին՝* Ջօպանի. *ի թագաւորութեան [Հայոց]* Օշնայ, *և ի հայրապետութեան տեառն* Կոստանդնի, *և յեպիսկոպոսութեան [Սիւնեաց վիճակին] տէր [Յովհաննու]* Սրբոյն. *գրեցաւ ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Յովանիսի, *ի թուականութեանս Հայկազեան սեռի ՉԿԸ. (1319)։*

## 196.

## *ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան 3276*

*Գրիչ՝* Ներսէս

150ր *Ի թուականութեան Հայոց ՉԿԸ. (1319) գրեցաւ մատեանս այս, զոր արարեալ է մեծ իմաստասէրն Դիոնէսիոս, ձեռամբ* Ներսէս *բանի սպասաւորի, ի լաւ և ի հին օրինակաց, ի թարգմանչաց մեկնչացն, որ բնաբանն ուրիշ կայ գրած և մեկնիչն ուրիշ եղեալ, հոռոմ գլով նշանեալ, որ դժուարին է ընթեռնուլն և գրելն. և մանր գիրն, որ ի լուսանցն գրած կայ՝ այն լուծմունքն է, զոր մեծ բաբունապետն* Նայիրն *է արարեալ իւր գիտնական իմաստութեամբն։***

---

** Թորոսն ունի երկու փոքր հիշատակագրություններ, որոնցից մեկում իրեն անվանում է՝ «Կրչիկ Թորոս Կյացի» իսկ մյուսում՝ «Համկյացի»։*

*** Սույն հիշատակարանը, որ բերված է Դիոնիսիոս Արիոպագացու աշխատությունների ու թարգմանիչ Ստեփաննոս Սիւնեցու հիշատակարանից հետո, ոչ թե գրիչ Ներսեսի ինքնագիրն է, այլ նրա վերապատումը տրված ԺԷ. դարում։*

## 197.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

*Երևան 3589 (տես՝ նաև 1652 թ.)*

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Ակնե՞ր

344բ ...Եւ զձեզ աղաչեմ, որք պատահէք զինչ աւրինակաւ և իցէ, յիշել աղաւթիւք զեղկելիս Վարդան և զՍիմէոն՝ հայրն իմ, որ յոլովս է աշխատեալ վասն իմ. և անհարմարութեան և սխալման գրոցս ներեցէք, զի բազմավիշտ ոգւով, և խաւարեալ մտաւք, և յոյժ ցաւած մարմնով գրեցի։ Բայց աւրինակաց անվրիպ չարարի, թեպէտ և ի բազմաց վկայեալ էին աւրինակքս, այղ երից և ի չորից, է զի և ի հնգից աւրինակաց, որչափ կարացի՝ ուղղեցի։ Յիշեցէք զհոգևոր հայրն իմ զիմաստուն րաբունն, զսրբազան եպիսկոպոսն Վարդան, և զհոգւոյ եղբարսն իմ՝ զՊետրոս և զՄարտիրոս քահանայ, և զԹորոս կրաւնաւոր, որ զգին նիւթոյս ետուն, և զՄարտիրոս քահանայ՝ որ յուզզելն աշխատեցաւ յաւժար կամաւք, և զՄինաս քահանայ՝ ձեռնտու մեզ. և աստուած յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի։

Գրեց[աւ] ի թվ. ՉԿԸ. (1319), յԱկ[նե՞]րոյ վանքս, առ դուրս տաճարի Տիրամաւրն, և սուրբ Առաքելոցն, և այլ սրբոց, ի թագ[աւորութեան] Աւշնի, և ի կաթո[ղիկոսութեան] Կոստ[անդեայ], յառաջ[նորդութեան] վան[իցս] Գրիգորի, յորդորելով եղբարցս, որոց ողոր[մեսցէ] Քրիստոս, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Տէր Վարդանայ է գիրքս։*

## 198.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. 6273, էջ 128—129 (Աղթամար)*

Գրիչ՝ Ովանէս
վայր՝ Ուռնկար անապատ

Գրեցաւ գերարփիս այս... ի յանապատիս Ուռնկար** կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ և յաղթող և աստուածընկալ սուրբ Նշանիս, և սրբոյն Ստեփաննոսի, և առաքելոյն Պետրոսի, ի յաշխարհակալութեան Բուսայիտ ղանին, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, ի յառաջնորդութեան տեղւոյս Ղազար կրօնաւորին... ձեռամբ Ովանէս գրչի, ի խնդրոյ Տիրացու քահանայի... ՉԿԸ. (1319)։

---

* Այս տողը գրված է կարմրագեղ գլխատառերով։

** Ուռնկար անապատը ըստ Փիրղալամյանի գտնվում է «ի ծայրն Առբերանի գաւառին Վասպուրական նահանգի, յարևելից կուսէ Քաջբերունեաց»։

## 189.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Վիեննա. 1 (1508) Ցուց. հա. Ա. էջ 19—20*

*Գրիչ՝* Յովհաննէս

ա

411ա *...Ես՝ մեղաւորս* Յոհաննէս, *ըստ կարի զփափաքս իմ լցի յանկ ելանելովս, և այս եղև ներելովն աստուծոյ, զի յանարժանէս թերևս արժանաւոր այս գործ եղև յանկեալ, և զայս ոչ ասեմ վասն գեղապաճոյճ շարագրութեանցս, այլ վասն աղնիւ աւրինակիս, զոր սուրբ և երանեալ վարդապետին* Գէորգեայ [Սկևռացւոյ] *ձեռացն շարահիւսեալք էին...։*

բ.

41ա *Զմեղաւոր հողս* Յոհաննէս՝ *զգրաւղս սուրբ տառիս, և զծնաւղսն իմ՝ [զպարկեշտ մայրն իմ* զՄամախաթուն]*, *և զեղբարսն իմ՝* զՍմբատն *և* զՎասիլ, *և զամենայն ազգատոհմն իմ յիշեցէք, ով սուրբ ընթերցաւղք և տեսաւղք, և տէր զձեզ յիշէ. և անուն մի քերէք, զի չար սովորութիւն է, և թէ արժանի էք՝ գրեցէք և զձեր անունդ յայլում տեղւոջ։*

գ

352բ *Զկարաւտս ողորմելոյ, կտտամահ ի մեղաց լեալս՝* զՅովհաննէս, *յարդար գործոց նուաղեալս, զսուրբ մարգարէիցս մեղսաշաղախ անձին ստացողս յիշեցէք Ի. տէր ողորմայիւ և մի հայր մեր յերկինս, և տէր ձեզ տայ անբաւ բարի։*

*[Ի թվ.] ՉԿԸ. (1319)։*

*Ծաղկող՝* Սարգիս

դ

443ա *Որք ընթեռնույք զսա ի յարկի,*
*Կամ ի յանկեան սուրբ տաճարի,*
*Քահանայից սրբոյ գընդի,*
*Դուք նըմանեալ Ահարոնի,*
*Զ*Սարգիս՝ *լըցեալ մեղաւք ի լի,*
*Մաղթեմ վասն տեառն բանի,*
*Վասն իմ մեղացն, որ գործեցի,*
*Թէ զոր թողոյք՝ թողեալ լիցի*
*Եւ ձեր բանիւդ ջնջեսցի։*

*Եւ զհանգուցեալ հայրն իմ զ*Գրիգոր *քահանայն, և զծնողն իմ, և զամենայն ազգայինս իմ, և զորդին* Գրիգոր՝ *երկարամեայ լինել յերկրի, որ ոսկով և ծաղկով զարդարեցի զսուրբ աստուածաշունչս...։*

* *Փակագծում մեջ բերված հատվածը քաղել ենք 312 էջի հիշատակագրությունից։*

200.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, Ս. Նշան № 19, ՀԱ. 1924, էջ 516—517

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Կիլիկիա Փոս անապատ

548 Գրեցաւ սուրբ աւետարանս ի թվ. Հայոց ՉԿԸ. (1319), ի հայրապետութեան տեառն Կոստանդեա, եւ ի թագաւորութեան Հայոց Աւշնի, ի յանապատս, որ կոչի Փոս, ընդ հովանեաւ Կաթուղիկէիցն եւ սուրբ Նշանին, ի խնդրոյ պատուական եւ ճգնազգեաց քահանայ Պօղոսի, վասն զի բազում փափաքանօք եւ ըղձալի սրտիւ ետ զսա գծել եւ նկարակերտել ի յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց։ Արդ, աղաչեմ զամենեսան, որ ընթեռնուք զսա, յիշեսջիք զվերոյգրեալ քահանայ, յիշեսջիք տէր-ողորմայիւ եւ զննջեցեալսն սորա, զխաչեր հայրն, եւ զմայրն, եւ զհարազատսն իւր՝ զԳրիգոր եւ զԹորոս եւ զՅովսէփ եւ զՎասիլ, եւ զամենայն ննջեցեալս սորա։ Յիշեսջիք աղաչեմ եւ զմանկագոյն քահանայ զՅովհաննէս, որ աշխատեցաւ ի կոկել թղթոյս։ Նա, յիշեցէք աղաչեմ զամենայն բնակիչս սրբոյ ուխտիս Փոսոյ՝ զքահանայս եւ զկրաւնաւորսն, որք այժմ են, եւ որք ննջեցեալ են, եւ որք զկնի գալոց են, եւ զշինողքն սուրբ եկեղեցւոյս եւ ուխտիս, եւ զմխաբանեալսն ի սա։ Վերջոյ ամենեցդ եթէ խոնարհիք, աղաչեմ, բաշխեցէք եւ ինձ փշրանս, յիշելով զամենայն եղկութեանց արժանիս, զլցեալս զանազան չարեօք, զՍտեփաննոս զրաւզ սորա, եւ զԹասիլ հայրն իմ, եւ զմայր, եւ զհարազատսն իմ, եւ զամենայն ազգայինս մեր՝ զկենդանիս եւ զհանգուցեալսն։ Որ գրեցի զսա յոյժ կարացեալ հոգւով եւ խաւարեալ խորհրդով եւ պղծեալ ցնորիւք աղտեղեալ ի գործս, թիւրեալ ունելով զառաջնորդականս զկնի չարին ի նորին կամսն, զոր աղաւթիւք ձեր և ողորմութեամբ իւրովք ուղղեսցէ զսա տէր, այլ և յոյժ ձեռնտուութիւն եւ աղօթք եղբարցս յայսչափ էած, զոր չունէի ակն...։

Արդ, գրեցաւ սա յառաջնորդութեան վանիցս Կոստանդեայ եւ Հայրապետի՝ փակակալի սրբոյ տաճարիս...։

Արդ, աղաչեմ յիշել ի տէր զՅովհաննէս, զԿարապետ, զԳրիգոր, զԿոստանդին, որ աշխատեցան յղակելն, եւ աստուած յիշողացդ ողորմեսցի։

201.

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երեւան 3658

Գրիչ՝ Սիոն
Վայր՝ Կիլիկիա՞

258ա ...Ցամի հւթնհարիւրերրորդի ութերրորդի թուականութեանս հայոց (1319) գրեցաւ տառս տէրունական աստուածային գանձուցն,

որ ունի յինքեան բովանդակեալ զամենայն տանս և զյիշատակ սուրբ
և աստուածախաւս մարգարէիցն, և զսրբոց առաքելոց, և զհայրապե-
տաց, և զարեամբ նահատակեալ մարտիրոսաց, և զսրբոց կուսանաց,
258բ և զընթանուր ամենայն սրբոց, որսյ յիշատակողքս և տանողք || սո-
ցա ուրհնութեամբ եղիցին ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։

Արդ, գրեցաւ սա ի խնդրոյ աստուածասէր և տանասէր կրաւ-
նաւոր քահանային Կոստանդեա, ի յիշատակ իւր, և եղբաւր իւրոյ
Թորոսի, և ծնաւղաց իւրոց, քանզի յոյժ փափագէր հասանել ի գրաւ
սորա վասն առաւել տանելս և յիշատակ առնելոյ սուրբ վկայիցն։
Որո բարեխաւսութեամբ սոցա և աղաչանաւք սուրբ աստուածածնին,
և անպարտրա բարեխաւսին՝ սուրբ խաչին, և երկնային զաւրու-
թեանցն՝ սուրբ հրեշտակապետացն Միքայէլի և Գաբրիէլի, և սուրբ
ճգնաւորացն Քրիստոս աստուած ողորմեա ստացողի գրոցս՝ Կոստանե-
դինի քահանայի, և եղբաւր իւրոյ Թորոսի, և ծնաւղաց իւրոց, և ամե-
նայն զարմից։ Յիշեսջիք և զհոգևոր որդին իւր զՄեսրոպ։

Եւս առաւել աղաչեմ զհանդիպողքդ, և զընթերցողքդ, և զլսաւղքդ,
259ա որ աւգտիք ի սուրբ գրոցս՝ յիշեսջիք սրտի մտա || ւք և աստուած-
ողորմի խնդրեցէք ի բարերարէն աստուծոյ Յիսուսէ Քրիստոսէ ինձ՝
տնարժանիս և բազմամեղիս և փծուն և ախմար գրողիս Սիոնի, և
եղբաւր իմոյ Սիմէոնի՝ կազմողի գրոցս։ Եւ որ զմեզ ի բարին յիշէ,
և աստուած-ողորմի տայ յաւժար կամաւք մեզ և մեր ծնաւղացն,
նա Քրիստոս աստուած յիւր միւսանգամ գալուստն իւր և իւր ննջե-
ցելոցն ողորմութիւն և թողութիւն շնորհեսցէ, ամէն։



ՉԿԹ 1320

## 202.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 7651 (տես նաև 1387 թ.)*

*Ստացող*՝ Ստեփաննոս Սեբաստացի

ա

269ա *Արդ, ես՝ նուաստ ծառայ ծառայից խոկալէս բարւոյն տեառն*
*մերոյ Յիսուսի Քրիստոսի՝* Ստեփաննոս *պիտակ անուամբ եպիսկո-*
*պոս* Սեբաստիոյ *մայրաքաղաքի, անարի հեղինակս և մոլար հովիւս*
*ընթացայ յաստուածային աշխարհն* Կիլիկիոյ, *յերկրպագութիւն*
*սուրբ աջոյն և աթոռակալին յոգնաչարչար և բազմերանեալ երախ-*
*տաւոր սուրբ հաւրն և լուսաւորչի հայկազեանս ազգի սրբոյն Գրի-*
*գորի, և յոյժ պատուեալ և մեծարեալ գտայ ի հայրապետէն տեառն*
Կոստ[անդեայ] *և ի Քրիստոսէ աստուած հաւատարիմ արքայէն* Աւշին
*կոչեցելոյ։ Իսկ բարեպաշտ արքայն* Աւշին *կամեցաւ պարգևս ընծայել*
*իմս նուաստութեան, և ես զմարմնաւոր զոյս առ ինչ ոչ համարեցայ,*
*այլ եռափափագ սիրով ըղձացայ կենաց քարոզիս և բարձր պատուի-*
*րանիս աստուածպատում սուրբ աւետարանիս։ Եւ հրամանաւ արքայի*
*մտայ յարկեղս տանն, ուր հաւաքեալ կային սուրբ կտակարանքն, և թէ-*
*պէտ և պատահեցայ բազմաց և զանազանից, այլ ընդ սա հաճեցայ,*
*զոր էր գրեալ արագ և գեղեցկագիր գրչի և բազմերանգ ծաղկաւք*
269բ *զար‖դարեալ յոգնահանճար նկարակերտի, այլ ոչ յաւարտ հասու-*
*ցեալ, զի ի տեառն անուրանականացն բաժին մի նկարեալ էին, և*
*զկէսն նշանագծեալ, և զյոլովս թողեալ զտեղիս։ Եւ իմ առեալ զսա*
*խնդութեամբ մեծաւ և եդեալ ի խնդիր քաջ նկարողի, և գտի զընտ-*
*րաւէր քահ[անայ]՝ զ*Սարգիս *մականուն* Պիծակ, *յոյժ հմուտ նկա-*
*րողութեան։ Եւ տուեալ իմ ի հալալ արդեանց իմոց Ռ. և Յ.* **(1300)**
*դրամ. և նա յանձն էառ, և բազում աշխատութեամբ կատարեաց և*
*ելից զպակասութիւն ոսկենկար պատկերացն որ ի սմա, զոր ընկա-*
*լայ և զուարճացայ ներքին մարդովն։*

*Արդ, եղև գրու. սորա ի թվ. Հայոց ՉԿԹ.* **(1320)**, *ի դառն և ի*
*դժնեա և յանբարի ժամանակի, զոր աւելորդ համարեցաք առ ի գրել*
*զդառնութիւն ժամանակիս։ Ի հայրապետութեան տեառն* Կոստ[ան-
դեայ] Կեսարացոյ *և յարքայութեանն* Աւշնի *արքայի։ Եւ ես՝ վասնիչս*
*տէրունի զանձուց և քանքարաթաքոյց եպիսկոպոս* Սեբաստիոյ Ստեփ-
[աննոս], *յերես անկեալ աղաչեմ զձեզ անմահ զենման պատարագին՝*
270ա *սպասաւորքդ և զորքազան զունտք պաշտաւ‖նէից եկեղեցւոյ սրբոյ,*
*որք վայելէք ի սմանէ իմանալի և զգալի աչաւք և խրախանայք ըն-*
*թեռնելով, կամ գաղափարաւ, կամ այլ տարազաւ ելեք, յիշեսջիք սրտի*
*մտաւք և ողիղ կամաւք զիս՝* Ստեփ[աննոս] *նուաստ եպիսկոպոս, զըս-*

տացող և զյանկ հանող սուրբ աւետարանիս, և զծնաւղսն իմ՝ զՏահատ քահանայ և զԴեմիրայ, և զաստուածարեալ նախնիսն իմ՝ զտէր Գրիգոր վարդապետ, և զմիւս տէր Գրիգոր, և զհաւրեղբայրն իմ՝ զտէր Ներսէս, որոյ յիշատակն՝ աւրհնութեան, և զեղբայրն իմ զԿոստանդին քահանայ, և զքուերսն իմ, և զՑակոբ կր[աւնաւոր], և զամենայն համազինսն իմ, և զպարոն Շահնշահ, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, որոյ ողորմեսցի Քրիստոս և սրբոց իւրոց դասակից արասցէ։

Յիշեսջիք և զսուրբ զիտապետն Հայոց զտէր Կոստ[անդին] և զբարեպաշտ թագ[աւորն] Աւշին, հանդերձ արքայորդւովն և ամենայն զարմիւք։ Եւ զհոգևոր որդեակն իմ զտէր Սիմէոն, որ յայսմ ամի կոչեցաւ ի վեհագոյն պատիւ եպիսկոպոսութեան, և զհոգով հարազատսն իմ զՅոհաննէս կրաւնաւոր և զՀայրապետ դպիր, և զամենայն միաբանութիւն
270բ հոգևոր եղբարցս, որք || են ընդ քաղցր լծով ծառայութեան սուրբ ուխտիս, որ յանուն աստուածընկալ սրբոյ Նշանիս։ Եւս առաւել յիշեսջիք զառաջին աշխատողսն՝ զգծաւղն և զծաղկաւղն, և զվերջին աշխատողս՝ զՍարգիս քահանայ...։

Զգծող սակաւ դրոյ յիշատակարանիս՝ զՀայրապետ ողորմելի դպիր, յիշել աղաչեմ։*

Վայր՝ Կաֆա

Բ

Եւ դարձեալ ես՝ անարժանս Ստեփանոս եպիսկոպոս մայրաքաղաքին Սեփաս[տ]իոյ, զանառիկ զանձս, կենաց քարոզս և բարձր պատուիրանս՝ աստուածապատում սուրբ աւետարանս առի փախըստական ի յայլազգաց և եկի ի մայրաքաղաք ի Կաֆա, կացի յոլով ժամանակս ինչ և դառնամ ի տունս մեր հայրենի. հրաման արարչին եհաս, դրի յիշատակ զսուրբ աւետարանս ի Կաֆա. || չունի ոք իշխա-
271ա նութիւն տէր ելանել, կամ գրաւական դնել, կամ ծախել. լաւ պահողքն աւրհնին աստուծոյ, և ով որ [յ]անզըզնի լրբենի զիմտուք տէր ելանէ, կամ գրաւական դնէ, կամ ծախէ՝ զպատիժ զԿայենի և զՅուդայի առցէ, լաւ պահաւղքն աւրհնին յաստուծոյ, ամէն, հայր մեր։**

## 203.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4186 (Տես՝ նաև 1457 թ.)

Գրիչ՝ Աստուածատուր
Վայր՝ Սաղմոսավանք

258ա Բայց գրեցաւ սայ ձեռամբ թարմատար և վառանդուշ ու ղոկ (՞) կածնի (՞) Աստուածատրոյ անսասւ (՞) կրաւնաւորի, ի թվ. Հայոց Չ Կ Թ.

---

* Մինչև այստեղ Ստեփանոս եպիսկոպոսի անունից գրել է Հայրապետ գրիչը, իսկ շարունակությունը գրել է ինքը՝ Ստեփանոս եպիսկոպոսը իր ձեռագրով։

** Այս ավետարանի նկարազարդման գործին մասնակցել են ութ նկարիչներ, որոնցից են նաև Թորոս Ռոսլինը և Սարգիս Պիծակը։ Կիլիկյան մանրանկարչական դպրոցի ամենափայլուն և ժեծարժեք արտադրանքներից մեկն է։

(*1320*), ի սուրբ քաղաքանիս, որ անապատ կոչի և Վանք Սաղմոսի, և է աստուծայ, որոց աղաւթիւք սոցա աւժանդակել դրեցի զլուսազարդեալ մատեանս աստուածոյին, սուղաքանեալ ի բուն աւրինակաց։ Նաև այլ յոլով գիրս աստուածաշունչ դրել իմ, ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցոյ, և բարեխաւս առ Քրիստոս, վասն փրկութեան ոգւոյ մերոյ։ Եւ արդ, աղաչեմ զամենեսեան ի դէպ ժամանակի, որք աւգտիք և լուսաւորիք ի սմանէ ընթերցմամբ կամ աւրինակաւ, յիշեսջիք ի սուրբ և յարժանաւոր յաղաւթս ձեր զՊաւղոս և զԹադդէոս, և զմայրն նորին զՄանեկու, և զքոյրն Մամախաթուն, զՊետրոս, և զհայր նորին՝ զԹուխան, և զմայրն Կռւռճի խաթուն, զՊարսամ, և զհայր նորին զՑակոբ, և զհոգևոր հայրն սոցա՝ զՍրեխիայ կրաւնաւոր քահանայ, և զհողոյ եղբարքս՝ զՍարգիս Նորազաւթեցի և զԴալուստ կր[աւն]աւոր քահանայք. որ կամեցող են յառնուլ զրոցս, և զսպասաւորքս՝ Վարդան, և Վիրապին, Գրիգոր, և Ասլան ըէկ, և Արտաւա։...

254ա Եւ աստանաւր յերես անկեալ աղաչեմ յիշել և զարժանաւորքս յիշման՝ զՍարգիս և զՄխիթար ճգնաւորք և կուսակրաւն քահանայք, որք Կ. (60) ամ ժուժկալեալք բազում և ազգի ազգի ճգնութեամբ հոգևորք. և մեք աւտարք և պանդուխտք. հոգով և մարմնով, և սոքա ընկալեալ զմեզ ի յարկս իւրեանց սպասաւորելով...։

## 204.
## ՃԱՇՈՑ

*Երևան 7451*

Գրիչ՝ Յովաննէս
Վայր՝ Տարօն

211ա Գրեցաւ սուրբ տառս այս ձեռամբ անարհեստ գրչի Յովաննիսի, յարգար և յընտիր աւրինակէ սրբոյ ուխտին Առաքելոցն Տարաւնոյ, ի դառն և ի նեղ ժամանակիս, որ և եղեալ կայ հարկ ի վերայ ազգաց քրիստոնէից, և կան ի տառապանք յայլասեռից, և է ամենայն ուրէք բռնակալութիւն նուաճեալ։ Այլ և աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, որք ընթեռնուք զսա, կամ աւրինակէք, կամ աւգտիք ի սմանէ, յիշեսջիք աղաւթիւք զսուրբ և զընտրեալ կրաւնաւոր զԱռաքել՝ զտուող աւրինակիս, և զծնաւղսն նորա, և զամենայն արեան մերձաւորսն նորա։ Ընդ նմին և զիս՝ զանպիտան գրողս զՅովաննէս, և զծնաւղսն մեր. և ինքն, որ առատն է ի սուրբ բարեաց, յիշողացդ և յիշեցելոցդ ողորմեսցի, ամէն։

## 205.
## ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ

*Երևան 9233դ*

Գրիչ՝ Սարգիս

...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ նուաստ քահանայի Սարգսի՝ մեղապարտ և անպիտան գրչի, քանզի բազում փափա-

ղանաւք ե ըղձալի որտիւ աւարտեցի զսուրբ աւետարանս ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և Նախավկաիս, ի թվ. Մեծաց Հայոց ՉԿԹ. (1320), ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, ի թագաւորութեան Բուսաիտին, ի դառն և ի վշտաբեր ժամանակիս։ Արդ, յիշեցէք զեղկելի գրիչս և զծնաւղսն իմ՝ զՍուքիաս և զՄելէքԹագ...

206.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երեւան 1098

Գրիչ՝ Մխիթար

375բ Մխիթար՝ մեղաւք մեռեալ ոգի,
Ցերեսս անկեալ միշտ ամենի,
Աղաչեմ յիշել յայսմ վայրի,
Այլ և ծնողաւք մեր և զարմի,
Եւ զուք ի նոյն լիջիք ըտրի,
Աւրհնելոյն յամենայնի։
Ի հնգետասան յոբելինի
Եւ յինն և տասն թուի,*
Գծագրեցաւ մատեանս հոգելի,
Որ հոգիացելոցն ախորժելի։
Բայց փցուն գրօղս ողորմելի,
Որ չ'ի հմուտ այսմ արհեստի,
Թողութեան արարէք զիս արժանի
Եւ ձեր բարեաց վարձս յայտնի.
Եւ տէրն աւրհնեալ յամենայնի,
Ամէն, ամէն և եղիցի։

*) Տասնհինգ հոբելյանը հավասար է 750-ի (50×15), գումարելով սրան 10 և 551, ստանում ենք 1320 թվականը։





## 207.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Բրիտ. Թանգ. 14* (Add. *13,411*), *Կոնիբ. Ցուց. 22—24 (տես նաև 1368 և 1621 թ.թ.)*

*Գրիչ՝* Կիւրիոն
*Վայր՝* Գլաձոր

ա

310ա *Արդ, գրեցաւ սա ի թուականութեան մերոյ հայկազեան տոմարի ՉՀ. (1321), ի դառն և անբարի ժամանակիս, յորում ունէր զբռնակալութիւն բոլոր աշխարհի Հայոց և Վրաց ազգն նետողաց, ի թագաւորութեանն վրաց* Գորգեն *կոչեցելոյ, և Հայոց Մեծաց թագաժառանգ թագաւորին մերոյ* Լևոնի, *և ի հայրապետութեանն տէր* Կոստ[անդեայ], *և վերադիտողի տանս Սիւնեաց՝ տէր* Յովհաննէսի *և տէր* Ստեփաննոսի, *և ի զօրավարութեան և իշխանութեան գաւառաց յորում եմք՝* Բուրթելի *և* Ամիր Հասանա, *և ի վարժապետութեան սուրբ և բազմերջանիկ քաջ հռետորաց Հայոց՝ երկուց ամոլաց ճշմարիտ հաւատոց մերոց՝* Դաւթի *և* Եսայեա։ *Ի հռչակաւոր և սուրբ մենաստան համալսարանիս* Գլաձորոյ, *ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի և աստուածընկալ վերառացեալ դպրապետացս, ձեռամբ մեղսամակարդ և տարաշխարհիկ անձին՝* Կիւրիոնի* *սպասաւորի բանի, հրամանաւ և խրդեամբք սրբամիտ և կուսակրօն քահանայի* Մարտիրոսի։**

բ

88բ *Բարունապետին* Մարտիրոսի *է սուրբ աւետարանս, մեղաւոր* Կերիոնի *գրած, յիշեա ի Քրիստոս։*

գ

241ա *Զսրբամիտ սպասաւոր բանի զբազմերախտ եղբայրն իմ՝ զ*Մարտիրոս՝ *զստացող գանձուս յիշեա ի տէր։ Նաև զբազմավէր հոգիս զ*Կերիոն *գծողիս, ամէն։*

*Ծաղկող՝* Թորոս

դ

9բ *Զնկարօղ սուրբ պատկերացս զ*Թորոս *յիշեա ի տէր։*

---

* *Տպված է «Կիւրեղ», հաջորդ հիշատակագրության որոշակի տվյալի համաձայն ուղղում ենք «Կիւրիոն»։*

** *Օգտագործել ենք նաև Փիրղալամյանի ընդօրինակությունը (Երև. 6273, էջ 130–130), որի միջոցով ուղղել ենք մի քանի տպագրական սխալներ։*

Ստացող՝ Դաւիթ

ե

91ա Նուաստս ի շարս ուսուցչապետաց Դաւիթ, շնորհեցի զսուրբ աւետարանս ուրբ Աստուածածնին և առաջնորդի սուրբ անապատին՝ Մկրտչին՝ հոգևոր որդեկին իմոյ, ի յիշատակ հոգոյ իմոյ...

## 208.

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4195 (Տես նաև՝ 1611 թ.)

Գրիչ՝ Մատթէ
Վայր՝ Տաթև

ա

298ա ...Բայց եղև գիծս այս ի թվականութեանս Հայոց Չ. և Հ. (1321), յաշխարհակալութեան Բուսայիդին, և ի դաւրապետութեան Չոպանին, և յիշխանութեանս մեր՝ աստուածասէր և բարեպաշտ մեծի և քրիստոսազաւր իշխանին պարոն Բուրթելին, և ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեայ, ի սուրբ ուխտս և յաթոռս հոյակապ և ի մեծ մայրաքաղաքս Տաթև, ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցս և աստուածակիր Նշանացս, հրամանաւ և աւժանդակութեամբ աստուածապատիւ և առաքելաշնորհ արհեպիսկոպոսի մերոյ տէր Յովհաննիսի՝ հեզի և մարդասիրի, որ և զիմ տարտամութիւնս վստահացոյց ի փցուն գիծս ձեռնարկել, իբր անարգամեծար զոլով զաւրացոյց զիս և զնիւթ քարտէնիս շնորհեաց։ Եւ ես՝ եղկելիս և ամենաթշուառս Մատթէ, ըստ յարալեզին և եղջերուաքաղին ունելո
298բ || վ միայն զանուն և զձև, և ոչ զէութիւն քահանայութեան և վարժապետութեան, ի մարդասէր կամս տեառն իմոյ վստահացեալ և ի թախանձական խնդիր համ[ա]քան եղբայրութեանս ձեռն ի գործ արկեալ, ըստ կարի կատարեցի սղալ և փցուն գրով, որպէս տեսանէք. վասն որոյ կրկին աղաչանք է մեր, զի անմեղադիր լինիք, զի թէպէտ և յոյսն մեր վառեաց ի սոյն, այլ առաւել հարկ տիրական հրամանին և կամք հարազատ միեղութեանս...։*

## 209.

## ԳՐՈՒԹԻՒՆՔ ՄԽԻԹԱՐԱՅ ՍԱՍՆԵՑՒՈՅ

Երևան 952

Հեղինակը՝ Մխիթար [Սասնեցի]

215բ Առաջին այս գրեցաւ սովփեր հոգևորական տառից իմով ձեռամբ՝ Մխիթար պիտականուն վարդապետի, որ և հաւաքեցի զսայ

* Հիշատակարանի հետաքրքրությունից զուրկ մասերը, սկզբից՝ հինգ, վերջից՝ մեկ թերթ բաց ենք թողել։

յաստուածաշունչ մատենից աշխատութեամբ երկոց, ի փառս սրբոյ երրորդութեանն յաւիտեանս, ամէն։

Ի թուի ՉՀ-երորդի հայկազեանս տոմարի (1321), ես՝ անպիտանս ի ծառայս տեառն աստուծոյ Յիսուսի Քրիստոսի՝ Մխիթար անուն, կրտսեր վարժապետաց և յետին բանասիրաց, կարդացի և հիմնացեալ կառուցի զայս մատեան հոգեւորական տառից յանուն և ի փառս սրբոյ երրորդութեանն հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, յուսումն հոգեսէր ուղտից մանկանց եկեղեցւոյ սրբոյ, գործակցութեամբ ընտրեալ և սրբազան Յոհաննու բարունոյ և մերում հարազատի՝ հոգեոր եղբաւր, այլ և ուղղականութեամբ տղութիւ Բարսեղ աբեղայի, ծառայի տեառն Յիսուսի Քրիստոսի՝ սրբոյն աստուծոյ...։ Զ Մկրտիչ աբեղա և զաշակերտ բանին ճշմարտութեան յիշեսջիք բարի կամաւք առ տէր Յիսուս։*

## 210.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Թորոս աղբար, Բ. էջ 341—347 (Խարբերդ, ս. Նշանի եկեղեցի)

Գրիչ՝ Ստեփան Յերկայն
վայր՝ Երուսաղէմ

ա

Յամի ութնհարիւրորդի ութանասներորդի մեծ թուականին մերոյ (1321), ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ Լամբրոնեցւոյ եւ ի թագաւորութեան գեռարոյս պատանեկին Լեւոնի որդւոյ Աւշնի, գրեցաւ սուրբ եւ լուսափայլ եւ կենսակիր, աստուածաւանդ, աստուածախաւս սուրբ աւետարանս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի դրունս սուրբ եւ փառաւոր տաճարիս Քրիստոսի՝ սուրբ Յակոբայ, ձեռամբ իմով՝ անարժան եւ մեղսաթաւալ փանաքի եւ անարհեստ գրչի Ստեփան Յերկայն կոչեցեալ, ի խնդրոյ աստուածարեալ եւ սրբասէր քահանային Վարդ իշխանայ, եւ հոգեւոր դստերն իւրոյ Շաֆար հաւատաւորի, որ ետուն գրել զսա մեծաւ փափագանաւք, յիշատակ հոգւոյն անջնջելի, եւ աւանդեցին սուրբ Հրեշտակապետացն։ Եւ ես՝ ողորմելի գերիս, յանձն առի եւ ըստ կարի իմում ջանացի ի ժամանակ ծե-

* Սույն հիշատակարանը, մի փոքր համառոտած, արտագրված է նաև Երևանի № 3276 ձեռագիր ժողովածուի մեջ (ԺԷ դար)։ Ձեռագրի գրիչը հիշատակարանին կցել է նաև նախագաղափար օրինակի գրիչ Գրիգոր աբեղայի հիշատակարանը (տես՝ 1334 թվի տակ) և հետևյալ հետաքրքրական ծանոթությունը՝ «Եւ այլ բազում ճառս ասացեալ է վասն մկրտութեան, բնութեանն և կրկցն կամաւորական պատարագին, և մեղսաքաւիչ խորհրդոյն, և վասն ջուր արկանելոյ ի խորհուրդն, և զգեստու քահանայական, երկրորդ գալստեան, յարութեան, Նիկոդիմոսի, ծնանելոյն ջուրցն, և այլ բազում բանս ասացեալ է. այս Մխիթար Գօշն է մեծ, որ զգատաստանագիրքն այլ նա է արարեալ, դարձեալ՝ պատճառ Քրիստոսի Մնեալ գրոցն Գրիգորի Աստուածաբանի, զի հարկ էր, որ ընդ գրոց իւր գրել, այլ ոչ հանգիպեցաւ, վասն այսորիկ յայսմ տեղւոջ եգաք»։ Ինչպես դժվար չէ նկատել, այս ծանոթության մեջ գրիչը սխալմամբ նույնացրել է Գոշ և Սասնեցի (Հերմանեցի) նույնանուն մատենագիրներին։

*րութեան, որ յոյժ պակասեալ էր ճաճանչ լուսոյ յաչաց եւ պակասեալ ի զաւրութենէ։ Արդ, թէպէտ եւ անարհեստ էի դրչութեանս, փանաքի եւ անյարմար, այլ հանդիպեալ լաւ եւ ընտիր աւրինակի, որ գրած էր* Ստեփաննոս Գոյներերիցանց, *այն որ լի էր եւ պատաբուն յարհեստ դրչութեան եւ ըստ բնաւս հռչակեալ, նաեւ բանիւ կատարեալ եւ հոգւով լցեալ, որպէս աստ յայտնի է իմաստնոց եւ ստոյգ դիտողաց, զի լի եւ կատարեալ էր արուեստիւ, ի բանս, ի բառս, ի լծորդս, եւ ի բացատս, եւ ի տրոհմունս առոգանութեանց։ Եւ ես՝ մեղաւոր հոգս, յոյժ բաղձանաւք եւ յոքնապատիր տենչանաւք, ալէտանջ երկաւք, մեծաւ աշխատութեամբ, ըստ կարի գծագրեցի զսա ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ։ Արդ, երեսանկեալ աղաչեմ զամենեսեան... յիշեսջիք զստացողսն սուրբ կտակիս, զյառաջասացեալ պատուական քահանայն* Վարդ *իշխան, եւ զկենակիցն իւր, եւ զամենայն ազգայինսն՝ զկենդանիս եւ զհանգուցեալս, և* զՇաֆար *հաւատաւորն, որ աշխատեցաւ յոյժ ի կոկել թխթոյն, եւ որք սպասաւորեցին մեզ ի պէտս մարմնաւորս, եւ զիս՝ զխաւարեալս միղաւք* Ստեփան *եւ զիմոն ամենայն ողորմութիւն գտանել յահեղ աւուրն համառաւտի...։ Եւ որ յիշեսցէ զվերոյգրեալքս Քրիստոս աստուած զինքն յիշէ...։ Մի ոք իշխեսցէ հանել զսուրբ աւետարանս ի սուրբ Հրեշտակապետացն. կամ գրաւական զնել, կամ գողանալ, կամ իւր սեպհականել, կամ յինչ եւ իցէ պէտս հանել ի սուրբ եկեղեցւոյն, այլ կացցէ մնասցէ հաստապազ է վերայ սրբոյ սեղանոյն... եկեղեցւոյն։ Եւ եթէ ոք իշխանութիւն ի կիր արկցէ եւ հանցէ, Քրիստոս լինի նմա դատախազ յաւուրն այցելութեան, եւ եղիցի ինքն իւրայնովքն ի կենաց դրէն։ Իսկ եթէ ոք վասն հեծելի եւ կամ վասն այլ իրիք խռովութեան հանցէ, եւ յորժամ խաղաղի դարձուսցէ ի տեղի իւր, աւրհնի յաստուծոյ...։ Ո՜վ եղբարք, ոչ թէ վասն մարմնաւոր ինչ լումայի գրեցաք զսուրբ աւ[ետարանս], այլ վասն զմեզ յիշելոյ...։*

*Ի մայիսի ԻԱ (21) սկսա եւ յաւգոստոս ԻԱ. աւարտեցի։*

*Հետ. ստացող՝* Մարկոս

Բ

*Յիշեցէք* զՄարկոս *պատուական քահանայն, որ կազմեաց զսուրբ աւետարանս իւր ծախիւք եւ աշխատութեամբ... յիշեսջիք եւ* զՄաներ *ջուլհակն եւ զամուսինն իւր* Տուխթար,... *որ զսուրբ աւետարանս վերստին զարդարեցին արծաթով, եւ ոսկւով, եւ տէրունական նշանաւ, եւ սուրբ պատկերաւ,... եւ* զՍտեփաննոս *աբեղայն, որ շատ աշխատեցաւ ի յարծթելն,... եւ* զՄկրտիչ *ոսկերիչն...։*

## 211.

### ՃԱՌԸՆՏԻՐ

*Մատենադարան հայկ. թարգմ. էջ 728 (Երուսաղէմի մատենադարան)*

Գրիչ՝ Վահան
վայր՝ Դրազարկ

*Յեւթնհարիւրերորդի եօթանասներորդի հայկազեանս տումարի (1321), գրեցաւ աստուածադարդ ճառընտիրս այս, ձեռամբ մեղսաթաւալ և յոգնամեղ անձին* Վահանայ *անարժան քահանայի, ի վանքս* Դրազարկի, *ի մեծափառ և հռչակաւոր անապատս, ի դուռն տաճարի մօրս լուսոյ Աստուածածնի, ի թագաւորութեան տղայ արքայի* Լեւոնի՝ *որդի* Աւշինի *թագաւորի, ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ... *Ես՝ ողորմելիս* Վահան, *խաւարեալ աչօք, ի հալոյ արդեանց իմոց և աշխատութեամբ, գրեցի զսա պաշար կենաց իմոց և յոյս համարձակութեան առ աստուած բազմաբիծ անձին իմոյ,... մանաւանդ* Զապլունին՝ *զստեր* Լեւոնի *արքային Հայոց, և ամենայն եղբայրութեանս...։*

*Եւ արդ, ծանուցանեմ ձեզ՝ սուրբ հարք մեր և եղբարք... երկրամերձ գլխօք աղաչեմ, զի կամէի գալ և լինել երկրպագութեան արժանի աստուածային գերեզմանին ու չյաջողեցաւ... ես զինչ աղէկ գիրք գտայ ի վանքս... պատմութիւն, ես ձեզ գրեցի, որ ընթեռնոյք, ուրախանայք ու զիս յիշէք։*

## 212.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մաքսուդ, Ցուց. Ադուլլիսի 21. Արարատ, 1911, էջ 564—565 (տես նաև 1348)*

Գրիչ՝ Պաւղոս
վայր՝ Վայոց Ձոր

343բ *Գրեցաւ* ՉՀ.*(1321) թվիս, ի յերկիրս* Վայու Ձորու*, || ...*ձեռամբ* Պաւղոս *վարդապետի, յաղագս խնդրոյ սրբասէր կրաւնաւորի* Սահակ *անուն, որ ստացաւ զսայ ի յարդար և ի խալալ վաստակոց իւրոց, յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և եղբարց իւրոց, որք աւգտիք ի սմանէ* | | |

* *Թվականի և գրչության վայրի հիշատակությամբ այս վկայությունը գտնվում է 103բ էջի վրա*

## 213.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 2961*

Գրիչ՝ Մխիթար Անեցի

ա

313ա *Ի եւթնհարիւր* թիւ կատարեալ,*
*Եւթանասուն** ի նոյն անկեալ (1321),*
*Կատարեցաւ բանըս չափեալ,*
*Ի համբակէն Նուաստացեալ։*

բ

30ր *Ո՜վ, ամենիմաստ և բազմահանճար վայելող այսմ բազմիմաստ աստուածային ատոիցս, զմեռեալս մեղօք, զպարտականս բիւր քանքարաց մեղաց, զփափագմամբ փրցփրցուն զանարժան դծողս՝* զՄխիթար Անեցի, *միշտ չարի յիշման արժանի առնել զչարս և զանարժան, զի վասն այդմ բանի յայսմ նեղ և ի նսեմ, զառն և ի դժնեա աւուրքս գրեցի, որ էր սով սաստիկ, և սրածութիւն, և սասանութիւն, և չարիս պէս պէս և զանազան, վասն մեղաց իմոց։*

## 214.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5505 և Վասպ. 85. Լալ. Ցուց. սյուն, 167–168*
*(տես նաև 1343 և 1504 թ.թ.)*

Գրիչ՝ Յո[վաննէս]
վայր՝ Ապահունեաց գաւառ
գիւղ՝ Արսէ

222ա *...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՉՀ. (1321), յերկիրս* Ապահունեաց, *ի նշանաւոր գեղուկս, որ կոչի* Արսէ, *ընդ հովանեաւ սրբոյ Ստեփաննոսի նախավկայի և ամենակարող երաշահաս սրբոյ զաւրավարիս Գէւորգեա, ի խնդրոյ իմաստուն և հաւատարիմ քահանայի, զոր մականուն* Ներսէս *կոչի։*

*... Եւս առաւել աստուած ողորմի* Աստմին, *և որդոցն՝* Յովանէսին *և* Կակոսին *և* Կարապետին, *և մօրն՝* Խանզադին, *հարսին՝* Բէկիջանին։

*Արդ, յերես անկեալ աղաչեմ, որք ընթեռնուք կամ աւրինակէք, դծողի սորա թողութիւն շնորհեցէք, սուտանուն քահանայի* Յո[վհաննէս]ի. *և սխալանաց և խոշորութեան գրոյս անմեղադիր [լերուք], զի մեր կարն այսչափ էր, և Քրիստոսի թագաւորին փառք։*

* *Ձեռագրում՝ «էՃ.» (700)։*
** *Ձեռագրում՝ «Հ.» (70)։*

## 215.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 3708*

*Գրիչ՝* Յակովբ
*վայր՝* ի գաւառիս Աւընկա, ի վանքս Թ՛առցու

342ա *...Արդ, այժմ անմահական ըմպելոյ և անզխտ մարգարտիս և ամենազով աւրինակիս փափագող եղեալ սրբասէր և մաքրակրօն քահանայն* Սիմէոն, *ետ գաղափարել զսա ձեռամբ* Յակովբ *կրաւնաւորի, ի ժամանակս վերջինս, ի թուականութեանս Հայոց ՉՀ.(1321), ի գաւառիս* Աւընկա, *ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցս, ի վանքս* Թ՛առցու։ *Արդ, աղաչեմք զամենեսեան, որք ընթեռնուք զսուրբ աւետարանս զայս, կամ գաղափարէք, կամ հանդիպիք, յիշեսջիք աղաւթիւք զսրբասէր քահանայն զ*Սիմէոն, *և զծնողսն իւր, և զեղբարսն, և զքոյրսն, և զհանգուցեալ եղբայրն՝* Գառնիկն, *զ*Կարապետ *քահանայ, որ զաւրինակն շնորհեաց, և զքոյրն իմ զ*Կլխաթուն։

## 216.

### ԳԻՐՔ ՄԱՂԹԱՆԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Փիրգ. 6273, էջ 130 (Կոտուց անապատ)*

*Հեղինակ՝* Վարդան
*վայր՝* Երուսաղէմ

*...Արդ, ստացաւ և գրեցաւ սուրբ և աստուածային տառս, որ է մաղթանք ի բոլոր ամենայն սուրբ տնօրինականք Քրիստոսի աստուծոյ, որ է յ*Երուսաղէմ, *ի* Վարդան *վարդապետէ, ի թուականութեանս Հայոց ՉՀ. (1321), և ի թագաւորութեան Հայոց* Լևոնի՝ *որդւոյն* Օշնի, *և յառաջնորդութիւնս* Երուսաղէմի *տէր* Վարդանայ:

## 217.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4059*

*Գրիչ՝* Կարապետ

ա

323բ *...Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թվականութեան ազինս Հայկայ ՉՀ. (1321), ձեռամբ անիմաստ անձին և եղկելի հոգւոյ* Կարապետի՝ *խոտան և վատթար գրչի, ի ստոյղ և ընտիր աւրի[նակէ]* | | |

*Կազմող՝* Յովանէս

բ

322բ *Զհողացեալս մեղաւք զ*Յովանէս *սուտանուն սարկաւագ, որ կազմեցի զսուրբ աւետարանս, աղաչեմ յիշել միոյ տէր ողորմայիւ։*

## 218.

## ՅԱՂԱԳՍ ԵՒԹՆ ԽՈՐՀՐԴՈՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԹՈՎՄԱՅԻ ԱԳՈՒԻՆԱՑՒՈՅ

Երևան 2315*

Թարգմանիչ՝ Յովհաննէս Եզնկացի
վայր՝ Մորձորու վանք

ա

82ա Զաստուածային և զերկնաւոր իմացուածդ ամենասուրբ հոգւոյն,
զոր ընդ աղաւտ ցանկացան տեսանել հրեշտակք, զոր շնորհեաց աս-
տուած եկեղեցոյն Հռոմայ, շինել ի վերայ վիմին Պետրոսի զխոր-
հուրդս սուրբ եկեղեցւոյ՝ մկրտութեանն ասեմ, զկնքոյն, և զսուրբ
պատարագին, և զպսակին գիտութիւնն, զոր յարմարեալ տրամա-
բանական արուեստիւ և ապացուցական մակացութեամբ, համառօտ
բանիւ և հզօր զօրութեամբ իմաստուն ումեմն վարդապետի Փրա
Թումայ կոչեցեալ, ի կարգէ բրաջուրացն, առաքինութեամբն կատա-
րեալ և ի ծայրս իմաստասիրութեան ելեալ, լատին բարբառով, որում
տենչացայ հոգւով նուաստ ոգիս և յոյժ կարօտս բանի՝ Յոհաննէս
Եզնկացի և այժմ կոչիմ Մորձորեցի։ Եւ մեծաւ թախանձանաւք թարգ-
մանեցի զսա ի հայ բարբառ հրամանաւ պապին Հռոմայ, և ձեռնտու-
ութեամբ արհեպիսկոպոսին տէր Զաքարիայի, սուրբ առաքելոյն Թա-
դէոսի վերակացողի, և միջնորդութեամբ տէր Բարդուղիմէոսի՝ հե-
պահողի ֆրանկ** եպիսկոպոսի և յոյժ գիտնականի։ Եւ աւանդեցի զսա
եկեղեցեացդ Հայաստանի ընծայ անգին և գանձ դատուական, աշխա-
տեալ իմով տկարութեամբ և յղկեալ ըստ կարի դրաւս և դբանս։ Արդ,
82բ որք աւգտիք ի սմանէ եթէ գտանէք ի սմա ախորժ կերակուր և համ
իմաստից յառողջութիւն մտաց ձերոց և ի պարարումն հոգւոց իմաս-
տից և ի նիւթ գիտութեան խորհրդոյ սուրբ եկեղեցւոյ՝ տեառն իմոյ և
աստուծոյ Յիսուսի Քրիստոսի եղիցի գոհութիւն... և թէ ոչ գտցի ի սմա
ըստ կատարեալ իմաստիցդ ձերոց կատարեալ և առողջարար կերակուր՝
մերում տկարութեանս լիցի պակասութիւն, զի ոչ կարացաք յանդըն-
դական ծովէն քարշել կաթիլս ջրոյ գործիական իմաստմամբս մերով,
յարբումն սպառեալ անձանց և փարթամութիւն կատարեալ դիանոց,
միայն, աղաչեմ ի բասրանաց զմեզ ազատել, զի ցանկութիւն ողջախոհ
և մոլի առանց թևոց թռչել տայ և առանց զաւրութեանց նահատա-
կել։ Վասն որոյ աղաչեմ զաստուածասէր պատահողսդ յիշատակել ի
տէր բարի կամաւք զյառաջասացեալ աւժանդակին այսմ իրողու-
թեան, և ընդ նոսին զմեր նուաստութիւնս կրկին ծնաւղաւք մերաւք
և երախտաւորաւք, զի և ձեզ լիցի մասն յիշատակի ընդ յիշատա-
կեալսն յաւիտենական արդարոցն։ Եւ որք աւրինակէք զսա, գրեցիք
և զայս սակաւ դիր յիշատակի աշխատելոցն ի սմա, զի և դուք գրե-

* Հիշատակարանի բնագիրը կազմելիս օգտագործել ենք նաև Երևանի № 560՝ ձեռագրում պահված ընդօրինակությունը, ինչպես նաև Զարբհանալյանի հրատարակությունը (տես Մատենադարան, Հայկ. թարգմ. էջ 274—275)։

** «Մատենագր. հայկ. թարգմ.» մեջ «լատին» փխ. «ֆրանկ»։

ջիք ի գիրն կենդանի, ի դպրութիւն վերին կենացն՝ շնորհաւքն Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

83ա Գրեցաւ գիրս այս խորհրդոյ ի թիւ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՅԻԵ. (1325), յամսեանն ի հոկտեմբեր Ը. (8), երկու ամաւ յառաջ թարգմանեալ. և ի թիւ Հայոց ՉՀ. (1321)*, թարգմանեալ և գրեալ ի դուռն Տօրծօրու, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, որոյ ողորմութեամբ և շնորհաւք եղև կատարումն սորին։

Ստացող՝ Տիրատուր
վայր՝ Գլաձո՞ր

բ

Ես՝ նուաստ և յետինս ի բանաւորաց Տիրատուր բարունի, ստացայ զատոս զայս բազում աշխատութեամբ, որ էր ժողովեալ ի հոգեկիր և յիմաստուն վարդապետէ ֆրա Թումա կոչեցեալ, և ետու զսա գրել ի հալալ արդեանց, ի յիշատակ անձին իմոյ ||
82ա և ծնողաց մերոց և ամենայն արեան մերձաւորաց. և որք յետ մեր ժառանգեն՝ յիշման արասցեն զմեզ արժանի առաջի անարիւն պատարագին, և որք յիշեքդ՝ յիշեալ լիջիք առհասարակ յողորմութիւնն Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւ[իտեանս, ամէն]։**

219.

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 750

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Այա՞ս

233բ Զսիրողն այսմ ճշմարիտ բանիցս՝ զաստուածասէր և զուղեղ հաւատացեալն համագոյ սուրբ երրորդութեանն՝ զպարոն Կոստ[ան]ցն՝ զորդի Թօրօս պրիմըծխուն*** հանգուցելոյն ի Քրիստոս և զծնաւղսն իւր յիշեսջիք ի Քրիստոս, որ զաւրինակն շնորհեաց։ Նոյնպէս և զիս՝ զանարժան ծառայս աստուածոյ զՍարգիս. և զ[հանգու]ցեալ ծնաւղսն մեր՝ զՍտեփաննոս և զՌիթայ, և զայլ ազգայինսն մեր, և որ յի[շէքդ] Քրիստոս աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալ[ստեան], ամէն։

* Աշխատությունն այսպիսով, թարգմանվել է 1321 թվին և արտագրվել է երկու տարի թարգմանությունից հետո 1323 թ.։ Հիշատակարանում 1323-ի փոխարեն կարդում ենք 1325, որովհետև թարգմանիչը Քրիստոսի թվականն օգտագործել է ըստ հռոմեական տոմարի։ Զարբհանալյանը կրկնակի սխալ է գործում, երբ թարգմանության թվականը համարում է 1325-ը։

** Տիրատուր բարունու հիշատակարանը գրված պետք է լինի 1323 թվից ոչ շատ ուշ։

*** Հավանաբար Զոֆրեկլայի տէր Թորոս Պրոքսիմոսն է (Proximus—«համարակալ և ոստիկան երի և մտի»), որը հիշատակվում է որպես մասնակից 1307 թվին Սսում և 1317 թ. Ադանայում հրավիրված ժողովներին։ Ալիշանը (Սիսուան 368, 486) հիշատակում է Կոստանդ անունով մեկին, որը 1321-ին Այասի բաժտոն գլխավորն էր։ Նույնացնելով Թորոսի որդի Կոստանդին բաժտոն գլխավոր նույն Կոստանդի հետ, հիշատակարանը տեղադրում ենք 1321-ի թվաշարքում։

## 220.

### ՅԱՂԱԳՍ ՆԻԹՆ ԽՈՐՀՐԴՈՑ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՅՐԱ ԹՈՎՄԱՅԻ

Երեւան 360

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Գլաձոր

203ա Յիշելոյ և աստուածողորմայ արժանի առնէք զյոգներանեալ, սրբազան և հեզահոգի վարդապետն Սարգիս, ընդ նմին և զծնօղսն իւր և զամենայն արեան մերձաւորսն, որ եռափափագ սրտիւ ետ գրել զգիրքս իմաստասիրաց, և սա խոկայ և բաղձայ ի տուէ և ի գիշերի արհեստից և մակացութեան և իմաստասիրաց արանց։ Ընդ նոսին և զեղկելի և զտառապեալ հոգի Թորոս, որ զգիրս գրեցի, և զծնաւղսըն իմ, և զհարազատ եղբարսն իմ յիշելոյ արժանի արարէք, ո՛վ սուրբ ընթերցողք, յարտասուաթօր և ի մաքրափայլ աղաւթս ձեր, առաջի զենլոյն Քրիստոսի աստուծոյ մերոյ, աղաչեմ, և խոնարհութեամբս անմեղադիր լերուք։

Գրեցաւ գիրքս ի վանս Գլաձոր, մօտ ի մեծ վարժապետն Եսայի, ընդ հովանեաւ սուրբ ուխտիս Ստեփանոսի։*

---

* Այս հիշատակարանը գրված է աշխատության թարգմանիչ Հովհ. Ծործորեցու հիշատակարանից անմիջապես հետո։ Տարեթիվը չի նշանակված, սակայն պետք է գրված լինի թարգմանությունից՝ 1321 թվից ոչ շատ հետո։





## 221.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7150

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Կապան, Վահրաւայ գիւղ

ա

... Արդ, աղաչեմ զորբասէր ընթերցողսդ, որք կարդայք կամ
աւրինակէք զաստուածային քնարս՝ զսուրբ զաւետարանս, զպատուա-
կան և զորբասէր քահանա զՏիրանուն՝ զստացող և զխնդրող աստուա-
ծային սուրբ կտակիս յիշեցէք ի սուրբ և ի մաքուր յաղաւթս ձեր,
և զծնողսն իւր՝ զհայր իւր զՅովաննէս և զմայր իւր | | |, և զկե-
331 ա նակիցն | | | աւտուտ, և զդեսա[րող]րոջ զնորածին մանուկն իւր՝
զսիրական որդին՝ զԱնդէաս: Եւ զերկուքին զեղբարքն իւր՝ զՇահինշահն
և զԳանձշահն, և զամենայն ազգատոհմն իւր՝ զկենդանիս և զհանգու-
ցեալս յիշեցէք ի Քրիստոս Յիսուս և ի սուրբ յաղաւթս ձեր և աստ-
ուածողորմի արձակեցէք ի վերայ նոցա, և աստուած զձեզ յիշէ, ամէն։
Արդ, կրկին յիշման արժանի արարէք զԽուրտէր սարկաւագն, որ
զթուղթս կոկեաց և աւգնական եղեւ։
Յիշեցէք ի սուրբ [աղօթս] և զբարեպաշտ կին ոմն զԽալինար:
Արդ, ես յետինս ի կարդաւորաց և առաջինս մեղաւորաց, անպի-
տանս ի պիտանեաց և ան[որ]դեասս գրչաւորաց, զմեղսամակարթ
գրիչս՝ սուտանուն կրաւնաւորս, եղէ ի մայրաքաղաքն իմոյ Խլաթա
և եկի պատահմամբ յերկիրն Գողթան: Եւ քահանայս այս սրբասնեալ
և աստուածպաշտիւ, որ կոչի Տիրանուն, եկեալ խնդիր աստուածային
տառիս, և եկն առ մեզ և եբեր զմեզ յերկիրս իւր, յերկիրս Կապա-
նուց, և մեծ յուսով և ջերմեռանդ փափաքմամբ ետ գրել զսուրբ զա-
331 բ ւետարանս ի վայելումն անձին և յիշատակ հոգւոյ իւրոյ, ‖ և ծնա-
ղաց իւրոց, և ամենայն մերձաւորաց։ Եւ արդ, ես՝ ամենամեղ գրիչս
Յակոբ, գրեցի զսա ի վայելուչ և ի գեղեցիկ ձորս, ի գեաւղս երկայ-
նաձիգ, որ կոչի Վահրաւայ, ընդ հովանեաւ սրբոյ Գրիգորի Լուսա-
ւորչիս, ի յարհիական պետութեանն տէր Որպէլին, ի դառնութեան երի-
տասարդին, որ կոչի Բուսախտ, ի թվ. ՉՀԱ. (1322)։
Արդ, աղաչեմք զամենեսեան զերախտաւորքն, որ կամակից և
աւգնական են լեալ ի սուրբ յաւետարանս, յիշեցէք ի Քրիստոս՝ զԲա-
րակշահն, և զԽալաշ[ա՞հն], և զՇահինշահն, և զՍու[լ]տանշահն, և զՍի-
մէոն երէց, որ զընտիր և զգեղեցիկ աւրինակն շնորհեաց՝ զսուրբ զա-
ւետարանս։
ԶՄանանէոն, և զորդիս իւր զՄխիթար, և զՍիս պապն. և զՍմուրն,
և զԹագւորն, և զՀայրապետն, զՄեղրեցի Մաղիկ երէց, և զպարոն

Գրիգորն, և զԹորոս զևրձիկն, յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղաւթս ձեր, աղաչեմք։

Բ

ԶՏիրանուն քահանայ՝ ստացող սուրբ տառիս, յիշեցէք ի Քրիստոս, և զեղբայր իւր՝ զԽօսրով. և զԻւանէ, և զՍանոս, և զփոխեցեալն ի Քրիստոս՝ զորդին նորա զՅօվաննէս, և զեղբայրն իւր զԽասան, և զՋօպանն, և զորդիքն՝ զԽոջատուրն և զՍտեփաննոս յիշեցէք ի Քրիստոս, աղաչեմ։

## 222.

## ՇԱՐԱԿԱՆ

Երևան 8438

Գրիչ՝ Յոհանէս
Վայր՝ Մաշկնոր անապատ

316ա ...Գրեցաւ եղանակաւոր տառս ի Թուականութեանս Հայոց յիւթն հարիւրոյ և իւթանասուն և մի ամի (1322), ի թագաւորութեանն Հայոց Լևոնի՝ որդւոյ արքային հայոց Աւշնի, և ի հայրապետութեանն Հայոց տեառն Կոստանդեա Լամբրունցոյ, ի հռչակաւոր անապատս, որ Մաշկնոր կոչի, ընդ հովանեաւ ամենաւրհնեալ սրբուհոյ Աստուածածնին և սրբոյն Յովհաննու Կարապետի և սուրբ Առաքելոցն Քրիստոսի, ձեռամբ յոգնամեղ և անպիտան հողոյս Յոհանէսի, ի վայելումն հեղահոգի անձին տէր Պաւղոսի եպիսկոպոսի, սպասաւորի սուրբ Կարապետին, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ յիշեսջիք զստացող տառիս զտէր Պաւղոս եպիսկոպոս։ Ընդ նմին և զիս՝ զանարժանս՝ զգծող տառիս զՅոհ[անէս], և զծնաւղսն իմ, նաև զպատուելի եղբայրն իմ՝ զսրբասէր քահանայն զՆերսէս, յիշեսջիք ի տէր,
316բ որ զաւրինակն շնորհեաց մեզ։ Յիշեսջիք ի տէր զեղբայրն մեր զԳրիգոր՝ զհանգուցեալն ի Քրիստոս. և աստուած յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի. և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 223.

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

Երևան 8356

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Կիլիկիա, Կոմբիկ անապատ

130բ Փառք... որ արժանի արար զանարժան ծառայս իւր կատարել զգիր քարոզութեանն սուրբ վարդապետին Վարդանայ, որ ի Մարաթոյ, ի Թուականութեանս Հայոց ՉՀԱ. (1322), ի թագաւորութեանս Հայոց Լևոնի և յոյժ մանկագոյն պատանեկի, որոյ տացէ աստուած շնոր[հ]ս և իմաստութիւն ի կամս աստուծոյ, զի թեթևացաւ լուծ կամոյն տատանայի, ի մեծաշուք և յերկնահանդէգս անապատս, որ կոչի



113—12

131ա ‖ Կամրիկ, ընդ հովանեաւ մաւր տեառն և վիմին հաւատոյ և այլ հաւաքեալ սրբոցս, մերձ յանառիկ ղղեակս Մաւլեւաւն. և բնակչաց սուրբ ուխտիս՝ սրբասնեալ քահանայիցս աղաչեմ թողութիւն մեղաց խնդրել՝ Յոհաննիսի, և Պետրոսի, և միւս Պետրոսի, Գրիգորի, Յովանիսի, Ներսեսի, Առամանոսի, Պաւղոսի, Ստեփանոսի, նաև ստացողի սուրբ գրոցս՝ Ստեփանոսի մեղապարտի, և բարեսէր քահանայի՝ Յոհանիսի, և ողորմելի մաւր իմոյ՝ Զապլունի, և եղբարց իմոց՝ Թորոսի, և արեամբ նահատակեալ եղբաւրն իմոյ՝ Ներսեսի, և քեռց իմոց՝ Փիլիպի և Ակայի, և հեղահողի փեսին իմոյ՝ Ուշնի, և ուսուցչին իմոյ, հոգեւոր լցեալ ծերունոյ սրբոյ Յոհանիսի*, և նախնեաց մերոց, և ամենայն աղգայնոց, զի որ լի սրտի. և հաստատուն հաւատով թողութիւն խնդրէ, միայն հարիւրապատիկ և բիւրապատիկ տացէ Քրիստոս յոյսն ամենեցուն, և ինքն աւրհնեալ եղիցի յաւիտեանս։

224.

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Թորոս աղբար, Ր. էջ 389 (Արդնոյ բարձրահայեաց սբ. Աստուածածնի վանք)

Գրիչ՝ Մինաս
Վայր՝ Ակներ

... Գրեալ ի հռչակաւոր անապատին, որ կոչի Ակներ, ի բազմավրդով ժամանակիս, ի հայրապետութեան Կոստանդեայ եւ ի թագաւորութեան Լեւոնի պատանեկի, զոր նչկահեալ... եւ ապատակ արարեալ ընդ ամենայն երկիրս, եւ պանծալի քաղաքն աւարի առեալ, զծովահայեացն զՆզեայն, որ է Այան, եւ զքրիստոնեայսն զամենեսեան.... Թիւ ՉՀԱ. (1322), ձեռամբ եռաթշուառ գրողիս Մինասայ, որոյ խորտակեալ է հոգւոյ ոսկերքս։**

225

ՎԱՅՔ ՈՂԲՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՄԱՐԱՇԱՑԻՈՅ

Երևան 108

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Երուսաղեմ

ա

275բ ...Որպէս և հոգևոր քահանայս Յակոբոս***, որ ետ զայս Նուագ հոգեշահ և պտուղ բարեաց ի հոգոյն սրբոյ ազդեալ ի լեզուս սուրբ վարդապետաց՝ քաղուածոյ աստուածաշունչ գրոց, յաղագս աւգտի որ-
276ա դոց մարդկան գծա[գրել ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց]**** ‖ և ամե-

* 62բ Նշվ հիշատակագրության համաձայն գրչի ուսուցիչ Յոհաննէսը Սկևացի է։

** Հիշատակարանը համառոտված է հրատարակիչ Գ. Սրվանձտյանի կողմից։

*** 113բ էջի հիշատակագրության մեջ ստացողը կոչվում է «Յակոբոս երէց Արևելցի»։

**** Փակագծի մեջ առնվածից մնացել են միայն մի քանի տառերի հետքեր, որոնց միջոցով, այնուամենայնիվ, հնարավոր է լինում վերականգնել տողն առանց կասկածի

նայն զարմից և եղբարց տատութեան, և որք ողորմութիւն ունին ի սմա յիշել առաջի աստուծոյ։

Գրեցաւ սա ի թուին Հայոց ՉՀԱ. (1322), ի սուրբ և ի հռչակաւոր քաղաքս Երուսաղէմ, ի հանգստարանիս Հայոց, առ դրանս սուրբ Յակոբա և տեառնեղբօրս առաքելոյս՝ եղբաւրն Յովհաննու աւետարանչի։ Արդ, ես՝ Թափուրս ի գործոց բարեաց և լցեալ ամենայն յանցանաւք, զերեսս ի մայրն եդեալ, աղերսահայցմամբ մաղթանաւք խնդրեմ յամենեցունց, զի ով և իցէ հանդիպեսցէ սմա տեսութեամբ կամ ընթերցմամբ, սրտի մտաւք և կարեկցաբար, իբրև եղբաւր սիրելոյ, աղաւթից և յիշմամբ արժանի արասջիք զՅակոբոս քահանայ և զծնաւղս

2, 6բ իւր, ընդ նմին և ինձ՝ եղկելոյս՝ մեղաւոր գրչիս | | | [Թորոսի],* զի

սովոր է աստուած ի ձեռս այլոց այլում ողորմել, զի և որ կամակից լինի այսմ բանի, կամեսցի Քրիստոս և իւր հոգին զասել ընդ երամս արդարոց։ Յիշեսջիք զհոգևոր մայրն իմ զ | | | [որ սպս]սաւորէր ի կերակուրս մեր...։

Կազմող՝ Մաթէոս

Բ

Ո՜հ, զմեղաւք զատապարտեալս զկազմող սորայ՝ զՄաթէոս զեղկելի և զմեղաւոր հոգս, յիշեց[էք, և] զծնողն իմ, և աստուած [զձեզ յիշէ և] ողորմեսցի, ամէն։

226.

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 732 (տես նաև 1401 թ.)

Ներբողեան առ ստացողն գրոյս՝
պարսն Սողոմոն, ի Մկրտիչ գրչէ

ա

382ա Հաւրն երկնաւոր անսկզբնական,
Ձև անթերի և աննման,
Պատկեր յիստակ արքայական,
Լցեալ շնորհաւքն պետական,
Եւ միածնին, որ է հաւր բան,
Մշակ արի և բղձական,
Հոգոյն սրբոյ ճշմարտական,
Համբար շնորհաց ես զանազան՝
Պարոն Սողոմոն՝ տէր տենչական,
Հանգոյն ապին արարչական,
Միր ծառայ տեառն և քաջաջան,

* Թերթի ներքին մասը պատռված է, իսկ պահպանված մասը՝ ջնջված ու մաշված, ուստի չենք արտագրում 276ա-ի վերջից և 276բ-ի սկզբից մի քանի տողեր, որոնց մոտավոր իմաստը հնարավոր է վերականգնել, բայց որոնք ոչինչ նոր չեն ավելացնում եղածի վրա։

Գործես յայգի անառն անխափան,
Եւ անհանգիստ դաւրն ի լման
Հասնիս ի ժամն մնասան,
Ո՛, պարծանաց պարոն և պատուական,
Եւ գլուխ եղբարց քո բանական,
Ինքն, որ զաղանեացն է նախածան,
Ըզքեզ ընդրեաց ի մէջ մարդկան,
Բայց կամք սրտիս իմ բաղձական
383ա Զիս յորդորեաց ու արար հաւան
Գրել բանիւ ձեզ նախերգան
Վաելչալի ներբողական,
Յատուկ դէպ ձեզ, առանձնական,
Հրաւիրելոյդ յորգեղրութեան,
Զոր կոչեցար իսկ նախնական
Փառացն հաւր հաճոյական,
Հողեար պարոն և սրբազան,
Եռաս հոգոյն գթական,
Բազում որդիս քեզ միաբան
Ածես ի փառսն հայրական,
Այն քեզ լինի բանից պայման,
Սկիզբն աղաւթից ընդունական,
Որով աւրհնի աստուածն բան,
Քեզ առ զպարգևսն անմահական
Երրորդութեանն յանգիման։

... Արդ, եղև աւարտ գրոյս ի թվ. ՉՀԱ. (1322), ի խնդրոյ պատուական պարոնին Սողոմոնի, որք աւգտիք ի սմանէ մեղաց թողութիւն հայցեցէք յաստուծոյ Սողոմոնի և ծնողաց նորա, ամէն։

Բ

342ա Աղաչիմք յիշել զստացաւղ սորա զՍողոմոն:

Զնուաստ Մկրտիչ աղաչեմ յիշել. ով ընթեռնաւղ, և խոշորութեան գրոցս ոչ մեղադիր լինել, զի կար մեր այս էր։ Այլ որչափ պակասութիւն ունի գիրս ի տեսոյ գեղեցկութեան, այնքան առաւելութիւն ունի բանիցդ ստուգութիւնն, զի յոյժ հաստատած է ի բազում վարդապետաց...։

Նուիրատու՝ Թադէոս

Գ

456ա Ընկալ ի նուաստ եպիսկոպոսէ ի Թադէոսէ, ով աստուածասէր որդեակ Սողոմոն, զփոքր | | | մի և ճաշակեա մեծամեծ և քաղցրահամ և անմահական պտուղք ի սմանէ, որովք յագիս ի կեանսն յաւիտենից շնորհօքն Քրիստոսի, զիս յիշեա յաղօթս։

227

# ՃԱՌԸՆՏԻՐ

**Երևան 7441**

Գրիչ՝ Աբրահամ

ա

1ր *Տանուտ աստուածահրաշ սուրբ յայտնութեանս. որք հանդիպիք լսողութեան սուրբ ճառիս, յիշեսջիք զարժանաւոր քահանայն զՅովասափ, և զՍարգիս քահանայ, և զՍիմէոն կրաւնաւոր, և սպասաւոր Աստուածածնին, և զՅովհաննէս, և զն[ն]ջեցեալսն ի Քրիստոս՝ զհայր և զմայր, նաև զաղկաղկ բազմամեղ գրիչս [Աբրահամ քահանայ], որ չեմ արժանի ըստ գործոց, այլ ըստ ողորմելոյ, և Քրիստոսի փառք։*

բ

113ր *Զսըրտղան քահանայն զՅովասափ, և զպարկեշտ ամուսինն իւր, և զընտրեալ որդեակք նոցա՝ զՍարգիս քահանայ, և զՍիմէոն տաճարապանն, և զՅովաննէս բարշ(՞)մանուկն, և զհամայն ազգատոհմս նոցա յիշեսջիք ի տէր, աղաչեմ։**

գ

430ր *Թիւ գրքիս** է Հայոց թուէն ՉՀԱ. (1322), ի թագաւորութեան* Լևոնի *և ի կաթողիկոսութեան* Կոստանդեայ: *Ես* Գրիգոր *երէցս*** ձեռամբ իմով գտա ուղղեցի, դուք ասացէք աստուած ողորմի, ամէն։****

* Համանման բովանդակությամբ պահպանվել են բազմաթիվ հիշատակագրություններ։

** Բնագրում՝ «քրքիս»։

*** Բնագրում՝ «էրէձս»։

**** Գրիգոր երեցի ժամանակ գոյություն ունեցող հիշատակարանը, ուր կար նաև ձեռագրի գրչության ժամանակի մասին տվյալ, այժմ բացակայում է։

## 228.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6289

Ստացող՝ Եսայի Նչեցի
վայր՝ Գլաձոր

ա

Ըստ ընթացից հոլովման լուսապատարն արուսեկի, որ ժողովէ բարդէ զժամանակ բոլոր եղականաց դիւրից, չնչականաց և անշնչից, ՉՀԲ. յարեթականս տումարի (1323), յաշխարհակալութիւն մեծ ինքնակալ խանին Բուսաիտ կոչեցեալ, ի թագաւորութեանն Հայոց Ղևոնի՝
283ր Նստեալ ի դահն Կիլիկեցոց, և տանն Վրաց ‖ և Մեծաց Հայոց թագաւոր Գէորգի, և յաւուրս տէրութեան մեծ իշխանաց իշխանին տանս Սիւնեաց Բուրթելի՝ ամենաբարեպաշտի և քաջի և միշտ յաղթողի. Արդ, յայսմ ժամանակի ես՝ Նուաստ Եսայի կրսեր բանասիրաց և յետին վարժապետաց, ցանկացող եղէ աստուածաբան և աւետարեր աւետարանական տառիցս, ետու գրել զսա ի լրումն փափագանաց իմոց, և ընձայեցի զսա | | |* ք]աւութեան իմոյ մեղուցեալ անձինս և յիշատակ բարեաց վարդապետին իմոյ Ներսիսի՝ մեծ և քաջ [հ]ռետորի և աստուածախօս վարժապետի, և որք ըստ մարմնոյ ծնողն զմեզ և սնուցին, և այլ ամենայն երախտաւորաց, մանաւանդ աշակերտեալ մանկանցս՝ զոր ծնաք բանիւն երկամբք, որ դեղերին ի կրթութիւն տեսական և գործական իմաստից և ամենայն աստուածաշունչ տառից, բոլոր կենցաղական հոգոց բարեաւ ծնալ ասացեալք: Բայց տեղի
284ա գրութեան սորա եղև ի գաւառիս ‖ Սիւնեաց, ի Նեղ և յանձուկ աւթեվանիս: Իսկ յիշխանութիւն և ի տէրութիւն վերոյգրեալ մեծ իշխանաց իշխանին և յաղթող սպայապետին Բուրթելին, և երկու արեգակնանման, գեղեցկագեղ, հարազատ զաւակացն իւրոց Բեշքենայ և Իւանէի, նաև ամենայն զովութեամբ բարգաւաճեալ ամենաւրհնեալ ամուսնոյ իւրո Վախախին, որք են յարանց և ի կանանց ազգ ընտրեալ և գովեալ, լի հաւատովք և կատարեալք ամենայն գործովք առաքինութեան, ի ձեռն որոց յոլով շինութիւն և խաղաղութիւն գործեցաւ մեզ և ամենայն եկեղեցեաց Քրիստոսի, ըստ որում հայցեմք ի ստեղծողէն բնաւից՝ բարձր և հաստատուն առնել զաթոռ իշխանութեան սոցա, իբրև զաւուրս երկնից և վերա երկրի, զի կացցեն ծնասցեն ընդ արևու յառաջ քան զլուսին յազգէ մինչև յազգ, զարմաւք և զաւակաւք իւրեանց. որք ի հասարտկախնամ բարեաց սոցա ընդ

* Ստացող եկեղեցու կամ վանքի անունը քերված է։

ամենեսեան և մեք մեր աշակերտաւք բազում և անթիւ զութս բարեաց զառաք ի սոցանէ, որ զուտարութիւնս մեր ժողովեցին, և ըն-
281բ կալան զմեզ ոչ իբրև զուտար, այլ իբրև յինքեանց հարազատ ‖ ծնեալ մանկունս, զթով և սիրով զմեր ստահակութիւնս ընկալան։ Ըստ որում արթուն ակն ամենահայեաց ի նոսա հայեսցի, և վարձահատոյցն Քրիստոս հատուսցէ նոցա և զաւակաց իւրեանց կրկին կենաւք և երկու աշխարհաւք զամենայն փառս և զմեծութիւն, այլ և զերկարութիւն կենաց, առանց ցաւոց և տրտմութեան տացէ նոցա տէր։

Դարձեալ յեռեալ հիւսեցի ընդ յիշատակելեաց ամենայն բարի յիշման արժանաւորն. արհիական վերատեսուչ այսմ նահանգի, որ է աղն սորին* ըստ մարմնոյ, վարժն յիմաստս և վստահն ի գիտունս տէր Յովհաննէս մականուն Աւրպէլ, մետրապոլիտ և այցելու Սիւնեաց երկոտասան գաւառացն՝ մանաւանդ իմաստութեամբ և ուղղափառութեամբ՝ ամենայն աշխարհի, որ է մեր սիրելի որդի ըստ փրկագործ երկանց քանիւն ծնընդեան։ Այլ և զնորին արեանառու մերձաւոր և սնունդ, ամենամաքուր տէր Ստեփաննոս մականուն Տարսայիճ, որ է և նա մեր որդի ի բանէ ծնեալ, մանուկ տիաւք առեալ զաշտիճան արհեպիսկոպոսութեան, զոր տէր աստուած կառուսցէ
283ա զսոսա երկար ամանակս ի գլուխս եկեղեցւոյ իւրոյ, ‖ յորոց և մեք բազում զութս և խնամս տեսաք և վայելեցաք ի սոցանէ, ըստ որում եղիցին սոքա ըստ աւետարանիս և յանմոռաց յիշատակն Քրիստոսի արձանագրեալք։

Յետ ամենեցուն և զիս՝ զամենամեղ անձն Եսայի, յիշեսջիք ծնօղաւք և վարդապետաւք յողորմութիւնն աստուծոյ, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ յայժմուս և յապառնին և յանսպառ յաւիտեանին, զամէնն և զեղիցին ասասցեն հրեշտակք և սուրբք ամենայն։

Ծաղկող՝ Թորոս Տարօնացի

Բ

285ա Ես և զանարժան Թորոս ի Տարօնոյ, [ի] քաղաքէ Մշոյ. և զծնօղսն իմ յիշեցէք ի տէր Յիսուս Քրիստոս, որ բազում աշխատեցաւ ի խորան, ի ծաղիկ, ի գլխագիր։

Գ

225բ Զմեծ րաբունապետն Եսայիաս և զծնաւղսն իւր յիշեցէք ի տէր Յիսուս Քրիստոս և զծրող Թորոս և զծնաւղսն իմ։

Դ

90ա ԶՏիրացու աշակերտ և սպասաւոր բանի յիշեցէք ամենայն սրտի մտաւք, հանդերձ ծնողաւք, որ զմաղաղաթս գնեաց, և զկարմիր ոսկին չատ րոժին ընծաեաց։**

* Իմա՝ Բուրթելի։

** Ձեռագրում կան նաև հետագա ստացողների և կազմող Իրրիանոսի (1522 թ.) սակավարժեք հիշատակարանները։

## 229.

### ՃԱՇՈՑ

*Երևան 4514*

*Գրիչ՝* Ներսես

*վայր՝* Ապահունեաց գաւառ, Գումբայթ գիւղ

ա

403ա *...Աւարտեցաւ քրիստոսաահրիս և առաքելախաւս, մարգարէաշէն հոգիարուխ այս տառս ի թուաբերութիւն հայկազեան սեռիս տումարի ՉՀԲ. (1323), ի հայրա[պետութիւն] Հայոց տեառն* Կոստանդեա, *ի թագ[աւորութիւն] Հայոց աստուածասէր և բարեպաշտին* Լեւոնի, *յաշխարհակալութիւն մեծ ղանին* Պուսայիտին, *ի հոյակապ և ի նշանաւոր գաւառիս* Ապահունեաց, *որ կոչի* Մանծկերտ, *ի գեաւղս, որ անուամբ կոչի* Գումբայթ, *ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնին և սրբոյն Դանիէլի. ի գաւառիս* Ապահունեաց, *որ ունի յինքեան զհրաշակաւոր ուխտն՝ զգիր և զշիրիմ գերեզմանի սրբոյն Դանիէլի եղեալ և հիմնացեալ, ձեռամբ յոգնամեղի և մեղսամակարթ, փցուն և անարհեստ գրչի՝* Ներսեսի, *մեղապարտ և եղկելի դըպրի, ի խնդրոյ... շնորհալից քահանայի* Տերտերի, *յիշատակ իւր և ծնողաց իւրոց։*

403բ *...Արդ, աղաչեմ զամենեսին, որք հանդիպիք սմա յիշեսջիք ի Քրիստոս* զՏերտեր *քահանայ, և զհայր իւր* զՄարտիրոս, *և զմայր իւր* զՏիկնաց, *և զամուսին իւր* զԽուտեղն, *և զեղբայրսն իւր՝* զԽաչատուրն *և զամուսին իւր* զՏիրոցն, զԱստուածատուրն *և զամուսին իւր* զԹիմայն, զՔրիստոսատուրն *և զամուսին իւր* զԹուխիկն, զԽաչիանեսն *և զամուսին իւր* զՇնոհվորն, զՎարդանն *և զամուսին իւր* զԱրզուն, *և զծնողսն իւրեանց, և զորդիսն իւրեանց՝* զԱկոբն, զԱմիրշահն, զԱմիրպէկն, զՄալտիրոսն, զԽոցադեղն, զՍիրմայն, *և* զՈւսլունն, *ընդ նոսին և զեղկելի գրիչ և զծնողսն իմ և զեղբարսն...։*

*Հետ ստացող՝* Տուրքիկ

բ

161բ *Ո՜վ հսկողք արթնութեան և մարմնաւոր հրեշտակք, սուրբ և անբիծ քահանայք և ռամիկք և մանկունք հաւր մերոյ Սիոնի, որք արբէք յաստուածարուխ անձրևէս և լիանայք ի հայրական գանձարանէս, յիշեսջիք ի սուրբ և ի մաքուր յաղաւթս ձեր զհաւատարիմ ծառայն աստուծոյ* զՏուրքիկ...։

*Արդ, պարտ է զայսպիսի այրս յիշման արժանի առնել, զ՚ի ձեռն սուրբ և անմահ պատարագին հասցէ հատուցումն իւր յինքեան և ի ծնաւղսն իւր՝* յԱռաքել, *և ի* Մարգարիտ, *և յայլ ամենայն կենդանիսն և ի ննջեցեալսն, ձեզ յիշողացդ և մեզ յիշելոցս ողորմեսցի Քրիստոս աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

## 230.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

Երևան 4986

Ստացող՝ Պաւղոս

ա

188բ Ի Թուակ[անի՛ն] Հայոց ՉՀԲ. (1323), ես՝ նուաստս Պաւղոս աբեղայս, որ ցանկայի տեսանել և լսել աստուածային յայտնութիւնս Յոհաննու, և աստուած լցոյց զփափաքանս իմ ի ձեռաց եղբարց մերոյ Գրիգորի քահանայի։ Եւ ես ետու. գրել զսայ յարգար վաստակոց
189ա իմոց ի յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ Յոհաննէսի քահանայի, ‖ և մաւր մերոյ, հանգուցելոց ի Քրիստոս, և եղբարց իմոց՝ Վահան քահանայի և Սարգսի, և Գրիգորի մեղուցեալ քահանայի՝ գրողի սորայ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որ կարդայք և լսէք կամ աւրինակէք զսայ մեղաց մերոց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, և ծնաւղաց և եղբարց մերոց, և աստուած զձեր մեղքն ջնջէ, և զլսողացն, և որ ամէն ասէ...

Հեղինակ ճառի՝ Ստեփանոս Վահկայցի
վայր՝ Կիլիկիա

բ

Ո՜վ, պատուական հովիւ քաջ բանաւոր հաւտի [սուրբ Գրիգոր
90բ Լուսաւորիչ]... ‖ ...պահեա զամենեսեան և զմեզ՝ զանպիտան ծառայքս, մինչ ի վերջին աւր կատարման մերոյ և ի յարութեան համաւրէն մանկանց եկեղեցոյ սրբոյ քո ել ընդառաջ սիրով, և դրկեա համբուրիւ. և փարատեա զմէգ մեղաց տեսակաց, զոր բանսարկուին պատրանաւք մեղուցեալ եմք, և քաւեա աստուածայնապէս, և ասա առաջի տեառն և փրկչին բոլորեցունց՝ ահաւասիկ ես և մանկունք իմ զորս ետուր ինձ՝ զարեամբ գնեալքս քո. ընդ որս և զԱւշին՝ ծնողաւք իւրովք և զարմիւք, և զծառայս մեղապարտ՝ զՍտեփանոս Վահկայցի, որ ձեռամբ իմով շարեցի զճառս ներբողական սուրբ Լուսաւորչիդ...։

գ

38ա Զպարոն Աւշին որդի պարոն Թաւտաւրէի, որ ստացաւ զաստուածային զգանձս զայս ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց նորին, և ամենայն զարմից նոցա, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի, և դուք՝ մանկունք սուրբ եկեղեցոյ, յիշեցէք ի բարին, ի Քրիստոս աստուած մեր։*

* Բ. և Գ. հիշատակարանները գրված պետք է լինեն 1323-ից առաջ, և, հավանորեն, ընդօրինակված են այստեղ նախագաղափար ձեռագրից։

## 231.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Վիեն. 342 Տաշ. Ցուց. էջ 885 (տես նաև 1550 թ.)

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Ակներ

318բ Փառք... որում փափագմամբ սիրով եւ ջերմ հաւատով սրբասնունդ եւ կուսակրօն քահանայ Յոհաննէս ցանկայր ստանալ...։ Իսկ մեր տեսեալ զբարի յօժարութիւն կամաց նորին, կամեցաք և մեք վասն սիրոյն Քրիստոսի տալ նմա գրով զսուրբ աւետարանս...։

Արդ, աղաչեմ յընթերցողքս սուրբ տառիս անմեղադիր լինել խոշորութեան եւ սղալանաց գրիս, վասն զի կար մեր այսչափ էր, այլ եւ ողորմութիւն հայցեցէք յողորմածէն աստուծոյ, որք պատահիք եւ կամ աւրինակէք. նախ Յոհ[աննէս] քահ[անայ]ին եւ ծնողաց նորին, եւ ինձ մեղաւորիս Վարդանա, նուաստ եւ տրուպ վարդապետի, որ զգիրս գրեցի, եւ ծնողաց մերոց...։

Գրեցաւ սուրբ աւետարանս ի լաւ եւ ի յընտիր աւրինակէ, ի գերահռչակ անապատիս, որ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ աստուածընկալ Նշանացն եւ այլ բազմահոյլ նշխարաց սրբոց, եւ երջանիկ միեղէն եղբայրութեանս, որք սիրով ընկալան մեզ եւ ուժանդակ եղեն գործառնութեանս, որոց վարձատրեսցէ նոցա տէր, եւս առաւել հեզահոգի եւ յոյժ բարեմիտ ճգնազգեաց կրաւնաւորն Հայրապետ մանկանն ձեռնտու եղեւ գրութեան սորա, որոյ Քրիստոս իւր լիցի ձեռնտու։

Ո՛վ սուրբ եղբարք, յիշեսջիք եւ զհարազատ եղբայրն իմ զԲարսեղ եւ զբարի զդրացինն մեր զՄխիթար, եւ աստուած զձեզ յիւր բարին յիշէ։

Եղեւ գրութիւն սորա ի թուին Հայոց ՉՀԲ. (1323)։ Յայսմ ամի էջ խանն Խազան բազում եւ անթիւ զաւրաւք յաշխար[հ]ն, որ կոչի Շամբ, զի սոքաւք հասուսցէ աստուած զչարիս Իսմայելացոցն ի գլուխ իւրեանց առնուլ զվրէժ սրբութեան իւրոյ։

Ո՛վ եղբայր եւ սիրելի մեր Յոհաննէս, ընկա՛լ սիրով զաշխատութիւնս մեր եւ աղաւթս արա վասն մեր, եւ անմեղադիր լեր խոշորութեան եւ սղալանաց, զի ծածկադէտն եւ շնորհաբաշխն գիտէ, որ այս էր կարողութիւն մեր...։

232.

## ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Երևան 1481 (տես նաև 1523 և 1660 Թ.Թ.)

Գրիչ՝ Դաւիթ Բջնեցի*
վայր՝ Ակներ

ա

Յայս ի | | | Թար եղեալ ի բազմաշահ մեծադին գանձուցս սուրբ եղբարց մեծ և հռչակաւոր անապատիս Ակներ կոչեցեալ, զի ունելով այլ գիրս դժուարընթեռնլի, զի ոչ ախորժէին ընթեռնուլ ի ժամատեղ կամ ի սեղանն համարձակ, իսկ կամակից եղեալ առաջ-նորդք ուխտիս փոխեալ զսայ յայլ գիր, որով և իմ յանձն առեալ զհրամանսն ի պատուական հարց և եղբարցս գրել զսա | [խնամ]ալ ամենա[կարող]ին կատարե[ցաւ | | | կարողութեան | | |** ոչ եթէ զիտէի զարուեստ դրչութեան յանդգնեցաք ի գործս, այլ ըստ յուսոյ մեր, որ ի սուրբ յուխտս և ըստ հրամանի պատուական եղբարցս, որպէս և գրեալ է թէ կեանք է լսողութիւն։

Եւ արդ, աղաչեմ և մաղթեմ զձեզ, ով ամենամաքուր և հոգիտ-պայծառ սուրբ զասք քահանայից և միայնակեցաց, որք հանդիպիք այսմ տառի կամ ընթերցմամբ կամ զօգափար առնելով, յիշել առ Քրիստոս զպատուական հայրն՝ զԳրիգոր մաքրակրօն քահանայ, և զտէր Բարսեղ, և զՎարդան վարդապետ՝ սքանչելի վարուք փայլեալ ի մէջ եկեղեցոյ, և զփակակալ Սիմեոն, և զՀայրապետ՝ ամենայնի սրբասէր և աստուածահաճոյք, նաև զհոգևոր եղբայրս իմ՝ զՆերսէս և Յոհաննէս՝ յոյժ պիտանի և աւկտակար ի գործս բարիս, և զայլ ամե-նայն եղբայրութիւնս, որ ոչ էր կար մի ըստ միոջէ անուանել։ Աղա-չեմ յիշել և զԹորոս միակեաց և զԳրիգոր, որ աշխատեցան ի կոկ թղթիս, նաև զտնտես, և զմարմպան, և զհացպան, և զփռմպան, և զամենայն աշխատողս առ Քրիստոս յիշել, զսուրբ ծերունիք՝ զՍար-գիս և զԿարապետն | | |,***

Յուցից և ձեզ, սիրելիք, փոքր ի շատէ զթշուառութիւն իմս տկարութեանս, որ տրուպ և անարգ և անպիտան յամենայն գործս, զի չեմ ստացեալ գործ բարի, այլ զամենայնն խոտոր և չար և անշահ։

Է և ինձ պատմել, զի գոլով իմ ի նահանգէն յԱրևելից, յԱյրա-րատեան գաւառէն, ի գղեակէն Բջնոյ, և իմ խոցեալ չար վիրաւք հո-գովս զանազան մեղաւք, ապա այնուհետև, որպէս զչար վիրաւք հա-րեալ մարդ ի խնդիր ելեալ բժշկի, և ոչ ուրեք գտեալ, այլ միայն դէմ եդեալ գնալ ի սուրբ քաղաքն Երուսաղեմ, և ի Հռոմ՝ ի պատկերն

---

* Գրչության թվականն անհայտ է, բայց պետք է գրված լինի մերձավորապես 1323 թ., որովհետև այդ թվականին Ակներում գրված Ավետարանում (տես նախորդ հի-շատակարանը), հիշատակված են վանքի նույն՝ Բարսեղ, Հայրապետ և Վարդան միա-բանները։

** 366բ էջի ձախ կողմի վերին չորս տողից պահպանվել է միայն կես մասը, պա-կասը հնարավորին չափ լրացրեցինք ըստ բովանդակության։

*** Այս տողը կիսով չափ պասված է, մի բառ մնում է անընթեռնելի։

անձեռագործ և զսուրբ Գէորգ և զԳայիանէ, նաև զԱստուածածին, որ ի ծաղս ակնեղերաց, և ի սուրբ տաճարին Ցակոբ։ Վասնզի ոչ եթէ վասն պանծանաց գրեմ զայս, այլ վասն մեծ մեղաց իմոց, որ անհուն է և անչափ է։ Իսկ զարձեալ զհամբաւ բարեաց և սուրբ կրաւնք և կանոնք այսմ մենաստանիս Ակներոյ լու[այ] և յոյժ ցանկացայ. և եկեալ իմ յուսով մեծաւ. և աշխատութեամբ յոյժ և տաժա[նութեամբ]։ Տեսեալ զիս աւար և պանդուխտ ողեւէր եղբարցս, և զԹադին յիս իբրև ծնաւղ, և զայդին ինձ սէր իբրև զաւէր Ցիսուս, զոր հատուցէ Քրիստոս սոցա...

307բ ...Եւ ես՝ ոչ ունելով զձեռս ուղղ և զկարգ, զի ամենեքեան իբրև զհրեշտակս աստուծոյ արթուն և զուարթուն ի յաւրհնաբանութիւնս աստուծոյ ի տուէ և ի գիշերի անդադար և անհանգիստ. և զայս տեսանելով իմ, վայ և եղուկ ասելով անձին իմոյ, զի թափուր զոլով ի կրաւնից սոցա և յառաքինութենէ։

Բամեալ զիս այնուհետև զմտաւ ածի զգործս զայս, թէրևս լինիմ կցորդ բարեաց սոցա, ուրեմն և [յ]որդորելով զիս և խրախուսելով սուրբ հարցս, որ ի վերոյ գրեցաք՝ քանզի և մեր տէրն անարգամեծար է, ընդունի զաշխատութիւնս իմ որպէս զխերևեշ այրւոյն և զմաղ այծեաց ի սպաս տաճարին։ Եւ զարձեալ մոլորամած զիմաւք և սրտատուչ հառաչմամբ աղաչեմ զսրբութիւնդ ձեր, անմեղադիր լինել սխալանացս և սիրով ուղղել, զի այս էր կարողութիւն իմ։ Այլ ի սաւրդ աւրինակէ գրեցի և բռս չափու զրադարձ | | |

Բ

15բ Ո՛վ եղբարք, թվի թէ պակաս է յայս զէմս. և ի յաւրինակէս է, որ չգնեա մեզ, վասն աստուծոյ։

Գ

47ա Տէր Ցիսուս ողորմեացի Վահրամ միայնակեցի, որ զիմ չուխայն կոխել երետ։

Դ

48ա Ո՛վ, համագումար դասք սրբազանից, յորժամ ընթեռնոյք կամ լսէք, յիշեսջէք ի Քրիստոս զ[յ]որդորիչ գործոյս, զՀայրապետն և զՍիմեոն փակակալ, և զանմաքուր գծողս թէ արժանի առնէք յիշատակի վասն սիրոյն Քրիստոսի, զի և դուք յիշեսջիք յաստուծոյ մերմէ։

Ե

247ա Զամենամեղս և զբազմաչարս, զանարժանս յոքունց՝ զգրիչս Դուիթ, յիշել աղաչեմ առաջի սուրբ տառիս աստուածապատում, և ծնողսն մեր, և զամենայն եղբայրութիւնս, նաև զՆերսես զծաղկող եղբայր, և որք յիշէք յիշե[ա]լ լիջիք ի Քրիստոսէ, ամէն։

Զ

323ա Ողորմութեամբն աստուծոյ սկսայ ի յամսեանն դեկտեմբեր ԺԵ. (15), և շնորհաւք սուրբ հոգոյն կատարեցի ի մարտ Լ. (30)։ Որ հասուցեր զմեզ ի գիծ վերջի այսմ նամակի՝ սուրբ Երրորդութիւն, քեզ փառք յերկնաւորաց և յերկրաւորացս և ի համայն եղելոցս





## 233.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 4858*

Գրիչ՝ Յուսէփ
վայր՝ Նախիջևան

315բ *... Մեծաւ յուսով և եռափափաք տենչմամբ առի զսայ ի լոյս հոգոյ և ի թեթևութիւն մարմնոյ, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց՝* Ղարանային *և* Սենոր *տիկնայ, և ինձ՝* Կարապ[ետ] *քահանայի, որ ստացայ զսայ մեծ յուսով ի հալալ արդեանց, որոց վարձս հատուցէ տէր աստուած ամենեցուն հարիւրապատիկ, և ինձ եղկելի գրչի* Յուսէփ *քահանայի* | | | *

*Արդ, վերստարա եղև սայ ի թուաբերութեանս Հայոց ՉՀԳ.(1324), ընդ հովանեաւ սուրբ զինաւորի Սարգսի, ի մայրաքաղաքիս* Նախիջևան: *Եւ որ հայիք ի սայ թողութիւն մեղաց խնդրեցէք աշխատաւորաց և երախտաւորաց այսմ հոգևոր սարիս։ Յիշեսջիք և զԱւաք տիկին, և* զԱմիրշահն, *և* զԹագւորաշահն**, *և զաւակս նորա ի սուրբ յաղաւթս ձեր, որ երախտիք հոգևոր ունին ի վերայ մեր, աստուած ողորմի ասացէք սոցա, ամէն։*

## 234.

### Ճ Ա Շ Ո Ց

*Երևան 4553 (տես նաև 1426 թ.)*

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Իտալիա, Պալաւնիտ քաղաք

246ա *... Զայս գանձ մեծութեան անվաճառ և անվատնելի ի գանձարանէ մաւր մեր կաթողիկէի՝ ջանաց, հնարեցաւ, կամեցաւ, ստացաւ, կուտեաց, բարդեաց, դիզեաց, յաւել մանաւանդ ի գանձանակ իւրոյ հոգւոյն սեռնելի հայրն զովելի վանաց վանական և կոյս կրաւնաւոր քահանայն* Զաքարիաս, *ի միշտ և յանվճար յիշատակ, ի վայելումն կենաց իւրոց և ի փրկութիւն հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց, և առհասարակ իւրոցն ամենեցունց։*

*Արդ, որ ոք պատահիք այսմ աստուածաքնար մատենի սուրբ*
247ա *ընթերցուածոցս, յիշեցէք ի բարին Քրիստոս զհայրն* Զա || քարիաս *և*

---

* *Օրէնս տող պատռված է և անընթեռնելի*

** *Հապավված է այսպես՝ «զԹգորշահն»։*

զծնողսն իւր, զի մեծ սիրով՝ մանաւանդ և արդեամբ և ծախիւք ջանաց և ստացաւ զսա։ Այլ և զբառ հոգւոյ հայրն իւր՝ զտէրն եպիսկոպոս զտէր Թումաս, որ և նա կատարեաց զսա քահանայ և կարգեաց հայր վանացս։ Որոց տէր Յիսուս Քրիստոս յոյսն ամենեցուն տացէ առհասարակ նոցա ամենեցունց զանսպառ բարեացն պարգևսն, նոյն և յիշողացդ ընդ յիշեցելոցն զանվախճան փառացն խոստմունս յաստուած և ի տէր մեր Յիսուս Քրիստոս, որ և աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Արդ, գրեցաւ սա յաշխարհիս Խալաթցւոց, ի յանուանեալ քաղաքս Պալատեխայ ըստ իւրեանց լեզուի, ի թիւ. համարոյ մերս տումարի ՉՀԳ. (1324), յամենամեղ և բազմայանցան դրչէ ի Ստեփաննոս, զոր և խնդրեմ յամենեցուն և ինձ թողութիւն, զի ըստ իմում կարի և ջանուց զայսքան կարացի...։

Իսկ վասն աւրինակացս դժուարագրութեան և եղանակացս և ժամուցս դժնդակութեան անկարելիք է ասելն, զի բազմաց է յայտ ուպէս և էր։ Բայց և արդ գոհութիւն Քրիստոսի յաստոյն իմոյ և աստուծոյ, այժմ և յաւիտենից յաւիտեանս, ամէն։

## 235.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8187

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Ակներ

... Շնորհիւ շնորհատու սուրբ հոգւոյ սկսայ և օգնութեամբ
344ա նորին կատարեցաւ աւետարա||նս ի հոյակապ և յականաւոր մենաստանիս, որ մականուանեալ կոչի Ակներ, ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնիս, և կենսակիր սուրբ նշանացս, և մասանց տէրունականաց, և նշխարաց սրբոց, ի հայրապետութեան տեառն Կոստանդեա և ի թագաւորութեան Լևոնի՝ աղային, զորս պահեսցէ տէր աստուած խաղաղութեամբ ամենայն սրբոց աղաւթիւք։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք սովաւ, յիշեսջիք զամենայն արդայինսն մեր՝ զկենդանիս և զննջեցեալսն, յիշեսջիք և զքրւերորդին մեր զՆերսէս քահանայ, նայ և զԹորոս քահանայ և զՅովհաննէս, որ ի յուղղելն աշխատեցան։

344բ Յիշեսջիք, աղաչեմ, և զթշուառ գրողս Վարդան, ի յոյժ երկայն աւուրս գրեցի զսա տառապանաւք ցաւոց, որ խորտակեալ է հոգւոյս ոսկերք վասն զեխ և անառակ գնացիցս։

Գրեցաւ ի թվ. ՉՀԳ. (1324), ի փառս Քրիստոսի աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։

Որ զմեզ յիշէ և ինքն յիշեսցի ի տեառնէ։

## 236.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Օքսֆորդ* Ms. Arm. E. 2. *Տերայր վրդ. 17. թղթ. 119, էջ 311*

*Գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* Սկեռա

139ա *Փառք... որպէս և տալս զերբերջանիկս յիմաստ* Սրբահոր *ծերունի, ճշմարտին աստուծոյ կրաւնաւոր... դայս ընտրեաց սեփական ժառանգութիւն և ստացաւ... վարք աստուածընկալ աւետարանչին Յոհաննու զքանչելի պատմութիւնս և սոսկալի տեսլեանս յայտնարանութիւն... յարդար վաստակոց իւրոց...։*

*Գրեցաւ ՉՀԳ. (1324), յանապատս* Սկեռա, *ընդ հովանեաւ սուրբ և փրկագործ Նշանիս և սուրբ Աստուածածնիս, ի փառս միածնի...։*

*Յիշեցէք ի Քրիստոս զմեղուցեալ գրողս* զՍտեփաննոս:

## 237.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4174*

ա

338բ *Յամի ութնհարիւրերորդի եւթանասներորդի երրորդի (1324), ի թագաւորութեան* Լևոնի | | |*

բ

92բ *Քրիստոս աստուած, քո սուրբ աւետարանչացս բարեխաւսութեամբ և ամենայն սրբոց քոց ողորմեա* Վարդանեա *քահանայի և ծնողաց իւրոց, ստացողի սուրբ աւետարանիս, և ամենայն հաւատացելոց քոց, և բազմամեղ գրչիս, և որք զամէնն ասեն, ամէն։*

## 238.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2837*

*Գրիչ՝* Վարդան

261բ *... Բայց գրեցաւ լուսազարդեալ աւետարանս ի լուսալքական ժամանակի, ի թագաւորութեան հայկազնեան Արեթանկան տոմարիս ՉՀԳ. (1324), ձեռամբ անպէտ և բազմամեղ* Վարդան *գրչի։*

* *Գլխավոր հիշատակարանից պահպանվել է միայն այս հատվածը, ձեռագիրը վերջից թերի է։*





## 239.

## ԳԻՐՔ ՆԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ ԵՒ ՅՈԲԱՅ

*Թորոս Աղբար, Բ. էջ 330 332 (Խարբերդ)*

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Քաջբերունեաց գաւառ, ի մենաստանս Խառաբաստա

*… Արդ, ի կարճեալ աւուրս եւ յերեկոյացեալ ժամանակիս, այսինքն ի վերջին դարուս, յորժամ յաղագս ծովացեալ մեղաց աշխարհի իբր երեքալեանն իմն մրրկեալ տատանեալ ծփէր ի բռնութենէ սրոյն նետողաց, զոր ի յոլով աւուրց սաստկացեալ տիրէր համայն ամենայն երկրի, սկսեալ յելիցն արեւու՝ ի ծովէն Կասպից, շրջապատեալ զհիւսիսիւ, մինչեւ գայ հասանէ ի ծով Պոնտոսի, եւ դարձեալ զմիակողմամբն հարաւային պար առեալ պարունակեալ զաշխարհն Բաբելացւոց և զհամայն Ասորիս եւ զԿիլիկիա, մինչեւ ցնոյն ծով Պոնտացւոց աշխարհին, զբոլոր միջերկրայս, զազգս եւ զլեզուս բազումս ընդ ինքեամբ կալեալ ունէր լուծ ծառայութեան, ըստ նախատեսութեան մեծ հայրապետին Հայոց Ներսեսի. եւ պակասեալ նուաղեալ գոյր հայրապետութիւն սեռի սուրբ Լուսաւորչին Գրիգորի եւ թագաւորութիւնն ազին Արշակունեաց՝ ըստ տեսլեանն սուրբ Սահակայ, եւ սակս անդարձութեան մերոյ ոչ դարձաւ բարկութիւն նորա, այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է ի պատժել եւ ի պատուհասել. եւ մեք ոչ զղջացեալ, մինչեւ ծիւրեալ եւ ծնկեալ մաշեցաք ամենայն կեանք մեր, ի մահ եւ ի դժոխս մերձեցան անձինք մեր, եւ յերկիր մածան մէջք մեր. քանզի… եւս քան զեւս ընդ նեղութեամբ եւ ընդ հալածանաւք արկին զազգս քրիստոնէից, զորոյ զաղէտս տառապանաց ո՞ ոք կարասցէ պատմել եւ կամ ընդ գրով արկանել:*

*Արդ, յայսմ դառն եւ դժնեայ ժամանակի, յորում խաւար անլոյս և մէգ ամխիթար տարածեալ մածեալ ունէր զամենայն երեսս երկրի, ես՝ տառապեալ եւ եղկելի անձն* Սարգիս *կրաւնաւոր… ցանկացեալ այսմ աստուածաճառ… մատենի աստուածազան եւ աստուածարեալ որոց մարգարէիցն երկոտասանից եւ Դանիէլի նախատեսութեանցն, ընդ նմին Թղթոյն Յոբայ եւ համբերողի մեծի, զորս շարայարեալ կազմեալ եմ զսոսա ի մի տուփ. Գրեցաւ սա ի Թվա[կանութեան] Հայկ[ազեան] տումարի ՉՀԴ. (1325), ի գաւառիս* Քաջբերունեաց, *ի մենաստանս* Խառաբաս[տ]ա, *ի վանս որ կոչի* Սուխարա, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, որ է աւրհնեալ յաւիտեանս Յառաջնորդութեան տեառն* Ղազար *առն՝ հեզի եւ խաղաղարարի, նմանեալ… նախնոյն Ղազարու, զի կամեցող եղեւ մեզ եւ սիրով ըն-*

կալաւ զմեզ ընդ իւր, ընդոլցի եւ զինքն աստուած...։ Ցիշեցէք զՍարկաւագ կր[ւանաւոր] եւ զ Ցովսէփ կր[ւանաւոր], որ զաւրինակն շնորհեցին մեզ, յիշեսջիք զվարդապետն իմ զՅովսէփ...։

Վա՜յ ինձ հազար անգամ։

## 240.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՍ ՈՐ ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ, ԱՐԱՐԵԱԼ ԲԱՐՍՂԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Երևան 1314

Հեղինակ՝ Բարսեղ
վայր՝ Մաշկուոր վանք

306ա Շնորհաւքն և ողորմութեամբն աստուծոյ հաւր՝ սկզբնարարի դրոյս և ձեռնտուութեամբ և աւգնական լինելովն Քրիստոսի Ցիսուսի որդւոյն աստուծոյ ի գլուխ հանեալ կատարեցի ես՝ լոկ անուն վարդապետս Բարսեղ, զմեկնութիւն սրբոյ աւետարանիս, որ ըստ Մարկոսի, որչափ աջողեաց և զաւրացոյց տալով մեզ միտս և բանս հոգին սուրբ աստուածն ճշմարիտ, վասն որոյ աղաչեմ զգիտաւղսդ բանի և զընթերցաւղսդ սորին տառի յիշել զմեզ ի բարի՝ ծնաւղաւք, զարմիւք և երախտաւորաւքն մերովք, զի մեծ տաժանմամբ և յոլով աշխատութեամբ եղև զբաւ սորա, և որ գրէք զսակաւ բանս և յիշէք ի բարին, գրեսջիք և դուք ի դիրն կենաց և յիշեալ լիջիք ի միշտ բարւոյն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Արդ, եղև վճար այսր մեկնութեան ի թագաւորութեանն Լևոնի՝ որդւոյ Աւշնի, նորընծայ և դեռաբոյս մանկանն՝ յոյժ երկեղածի և աստուածասիրի, զորոյ զթագաւորութիւնն յաղագս տղայութեան իւրոյ խնամեն և հոգան երեք մեծազոյն և փառաւոր իշխանքն, երկու եղբարքն հարազատ՝ պարաւն Աւշին և պարոն Կոստանդին, որք ստիճանաւ աւագ պարոն և գունդուստապլ կոչին, և երրորդն՝ պարոն Հեթում Նղրցի, որ խառնեալ և միացեալ է ընդ նոսա, որպէս միտք ընդ հոգի և ընդ մարմին, ուղղելով զբոլոր տունն արքունի ի բարին, որպէս բարի միտքն զհոգին և զմարմինն. զորս տացէ Քրիստոս աստուած՝ զթագաւորն և զսոքա՝ տոհմաւք և զարմիւք իւրեանց, այսմ
308բ աշխարհի և եկ‖եղեցւոյ իւրոյ սրբոյ միշտ և հանապազ. և ընդերկարեսցէ զտէրութիւն սոցա, անցանելով ի հաւրէ յորդի մինչև ի գալուստն իւր միւսանգամ։

Եւ գրեցաւ սա ի վանս, որ կոչի Մաշկուոր, ի հայրապետութեան տեառն Կոստանդեա կաթողիկոսի Դրազարկեցւոյ, որ բազում աշխատութեամբ ջանայ և հնարի զխաղաղութիւն այսմ աշխարհի։ Որ և մինչև ի Մոր առ Սուլտանն անձամբ անձին գնացեալ, ոչինչ համարելով զաշխատութիւն, թէպէտ ծեր և տկար էր մարմնով, և զխստութիւն և զզառնութիւն նորա ի կակղութիւն և ի քաղցրութիւն յեղաշրջեալ փոխեաց, զորս տացէ զսա Քրիստոս ընդ երկայն աւուրս եկեղեցւոյ իւրում սրբոյ։ Եւ էր ի ժամանակիս յայսմիկ վերակացու



113—13

*և առաջնորդ սուրբ ուխտիս տէր Հայրապետ եպիսկոպոս, այր հեզ և բարեբարոյ, որ րագում խնամաւք խնամէր զմեզ ամենայն մարմնաւոր պիտոյիւք, և իբրև զհայր հոգևորապէս ի վիշտս ե ի տրտմութիւնս սփոփէր և մխիթարէր. վասն որոյ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ գրոյ յիշեցէք զսա ի րոքին և խնդրեցէք յաստուծոյ զի ըստ տրոցն և բարի կամացն իւրոց, զոր առ մեզ ցուցեալ է, տացէ սմա ասա հարիւրապատիկ, և անդ՝ իւր [և] ծնողացն իւրոց կեանսն յաւիտենից պարգևեսցէ։ Եւ էր թիւ Հայոց ՉՀԴ. (1325)։*

## 241.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ, ՑՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

*Երևան 1414*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Ակներ

ա

*...Գրեցաւ ի թուին Հայոց ՉՀԴ. (1325), ի թագաւորութեանն բարեպաշտ և քրիստոսապսակ թագաւորին* Լևոնի *որդոյ* Աւշնի *և ի հայրապետութեան տեառն* Կոստանդեա, *ի վանս գերահռչակ, որ կոչի*
368ա Ակներ*, *ընդ ‖ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Ցակովբայ, և այլ բազմահոյլ վկայիցն, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս հաւր* Ստեփանոսի, *և փակակալի սուրբ տաճարիս* Ստեփաննոսի:

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի հոգևոր բանիցս կամ ընդաւրինակէք կամ ժառանգէք, յիշեսջիք յարժանաւոր յաղաւթս ձեր զընակիչք սուրբ ուխտիս՝ զծերունի սուրբ վարդապետն զտէր* Վարդան, *և զ*Ստեփաննոս *հայրն, և զ*Ստեփանոս *եկեղեցպանն, և զայլ համաւրէն միաբան եղբայրութիւնս, որոց օղորմեսցի Քրիստոս աստուած ի գալստեանն իւրում, ամէն։*

*Աղաչեմ յիշել և զբազմամեղ և զանարժան գրիչս՝ զստացաւղ գրոցս՝ զ*Գրիգոր *զանպիտան քահանայ, և զհայրն իմ՝ զ*Վահրամ, *և զմայրն իմ, և զչորեսին եղբարսն իմ՝ զ*Ստեփանոս *քահանայ, և զ*Անդրէաս *կրաւնաւոր, և զ*Սարգիս *և զ*Թորոս*՝ զառաջեալսն առ Քրիս-*
368բ *տոս, որոց ողոր ‖ մեսցի տէր Ցիսուս։ Ցիշեսջիք և զքոյրն իմ որդաւք իւրովք, և զհոգևոր հայրն իմ զ*Կոստանտին*՝ զաւակաւք իւրովք։ Աղաչեմ յիշել ի տէր և զքեռորդին իմ զ*Կոստանտին *քահանայ, և զհայրն իւր զ*Սիմէոն *երէց, և զմայրն իւր, և զքորսն, և զամուսինն իւր, և զաստուածատուր որդին իւր՝ զ*Պետրոս, *և զդստերսն, զորս պահեսցէ տէր Ցիսուս ի չարէն աղաւթիւք ձերովք, ամէն։*

*Ցիշեսջիք ի տէր և զեղբաւրորդիսն իմ և զամենայն ազգայինս իմ՝ զհեռաւորս և զմերձաւորս։ Արդ, յիշողացդ և յիշելեացս և ամե-*

* *237բ էջի հիշատակագրության մեջ գրության վայրը նշված է «Ականց անապատ» ձևով։*

*նայն աշխատողաց ի սա, թէ շատ և եթէ սակաւ, ողորմեսցի Քրիստոս աստուած և իւր սուրբ առաքելոցն մասնակից և պսակակից արասցէ. նաև ամենայն հաւատացելոց ողորմեսցի Քրիստոս աստուած՝ կենդանեաց և մեռելոց, ամէն։ Ողորմեսցի Քրիստոս աստուած կուսակրաւն քահանայիցն* Գրիգորին *և* Սերովբին. *որք յղորդելն աշխատեցան, և այնոցիկ, որ զաւրինակն էին գրել։*

Բ

369ա *Ողորմեսցի Քրիստոս* Բարսեղ *քահանային և ծնաւղաց իւրոց, որ ղղիրքս կազմեաց, և* Կարապետին, *որ ծաղկեաց. և խոշորութեան գրոյս և սղալանացս՝ որ ի սմա, անմեղադիր լերուք։**

**242.**

**ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ԿՈՂՈՍԱՑՒՈՑ, ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ**

*Ն. Ջուղա, Ամենափրկիչ, Տ.-Ավետիսյան Ցուցակ, էջ 1273—4*

*Գրիչ՝* Գրիգոր
*Վայր՝* Ակներ

159ա *... Շնորհօք և ողորմութեամբ բարերարին աստուծոյ աւարտեցաւ մեկնութիւն թղթոյն Կողոսացւոց, զոր արարեալ է զերանելի սուրբ հայրապետն Յոհան Ոսկիբերան տիեզերաց վարդապետն, ի վարժումն մանկանց եկեղեցւոյ և ի փառս աստուծոյ. ի թուին Հայոց ՉՀԴ. (1325), ի թագաւորութեան բարեպաշտին* Լևոնի, *և ի հայրապետութեան տեառն* Կոստանդ[ին], *ի վանս գերահռչակ, որ կոչի* Առաքելոցն *և այլ բազմահոյլ վկայիցն։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք յայսմ գրոց կամ ընդօրինակէք, յիշեսջիք յաղօթս ձեր սուրբ ուխտիս* Ակներոյ *զծերունի սուրբ վարդապետն՝ զտէր* Վարդան, *և* զՍտեփաննոս *հայրն, և զամենայն եղբայրութիւնս, որոց ողորմեսցի տէրն Քրիստոս։ Յերեսս անկեալ աղաչեմ, զի և զմեզ անտես չառնիցէք, այլ և զմեզ յիշեսջիք յաղօթս ձեր, զանպիտանս* Գրիգոր *գրիչ, և զհայրն իմ* զՎահրամ, *և զմայրն իմ, և զշնորհսին եղբարսն իմ՝* զՍտեփաննոս *քահանայն, և* զԱնդրէաս *կրօնաւոր, և* զՍարգիսն, *և* զԹորոսն՝ *զյառաջեալսն առ Քրիստոս. յիշեսջիք և զքեռին իմ՝* զՍիմէոն *երէց, և զորդին իւր՝* զԿոստանդ *քահանայն, և զամենայն զազգայինս իմ, և աստուած, որ առատն է ի տուրս պարգևաց, ձեզ յիշողացդ և մեզ յիշելեացս առհասարակ ողորմեսցի։ Դարձեալ յիշեցէք և զվերջին ստացօղ սորին՝ զյետնեալ ծառայս ձեր և ողրոց բազմաց ստորակայեալս* զՅովսէփ *անարժէւն քահանայն և զծնողսն իմ, ընդ որս և դուք յիշեալ լիջիք ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

* *Այս հիշատակագրությունը Գրիգոր գրչինը չէ։*

## 243.

### ՃԱՌԸՆՏԻՐ

*Վենետ. 238 (1708) Ցուց. հա. Բ. էջ 571—572*

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Ակներ

31ա ...*Ի թուին Հայոց ՉՀԴ. (1325), ի թագաւորութեան բարեպաշտին* Լեւոնի, *և ի հայրապետութեան տեառն* Կոստանդեա, *ի վանս գերահռչակ, որ կոչի Առաքելոցն եւ այլ բազմահոյլ վկայիցն։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ գրոյ կամ ընդաւրինակէք, յիշեսջիք յաղաւթս ձեր սուրբ ուխտիս* Ակներոյ *զծերունի սուրբ վարդապետն՝ զտէր* Վարդան, *և* զՍտեփաննոս *հայրն, և զամենայն եղբայրութիւնս, որոց ողորմեսցի տէր Քրիստոս։ Նոյնս անկեալ աղաչեմ զի եւ զմեզ անտես չառնիցէք, այլ եւ զմեզ յիշեցէք յաղաւթս ձեր՝ զանպիտանս* Գրիգոր *գրիչ, եւ զհայրն իմ* զՎահրամ, *եւ զմայրն իմ, զչորեսին եղբայրս իմ՝* զՍտեփաննոս *քահանայ, եւ* զԱնդրէաս *կրաւնաւորն, եւ* զՍարգիսն, *եւ* զԹորոսն՝ *զյառաջեալսն առ Քրիստոս։ Յիշեսջիք եւ զքեռին իմ* զՍիմէոն *երէց, եւ զորդին իւր* զԿոստանդ *քահանայ, և զամենայն ազգայինս իմ։*

## 244.

### ՆԵՐԲՈՂ ԿԱՄ ՃԱՌ ԽԱՉԻ

*Հալէպ, Ս. Մնկ. 141, Սիւրմ. Ցուց. Ա. 246*

Գրիչ՝ Գրիգոր Ակներցի

ա

181. ԶԳրիգոր Ակներցիս *աղաչեմ յիշել յաղաւթս ձեր, ով տեսողք և վայելողք սմին։*

բ

302 *Զգծաւղ և զստացաւղ քաղցրաճաշակ ճառիցս՝* զԳրիգոր Ակներցի *աղաչեմ յիշել ի տէր, և տէր յիշողացդ և յիշելոցդ ողորմեսցի և որ զամէնն ասէ, և Քրիստոսի փառք յաւիտեանս։**

## 245.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5708 (տես նաև՝ 1423 և 1502 թթ.)*

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Սկեռայ

267ա ... *Երանելի քահանայս* Սարգիս, *բոցով սիրոյն աստուծոյ կենդանախառնուկեալ, ստացաւ զսուրբ աւետարանս անձին ի վայելս և*

* *Հիշատակարանն անթվական է։ Տեղադրում ենք 1325-ի թվաշարքում, որովհետև նույն այդ թվին Գրիգոր Ակներցի գրիչն ընդօրինակել է երեք այլ ձեռագրեր (տես №№ 241, 242 և 243 հիշատակարանները)։*

յապագայն՝ յիշատակ իւր և որոց ծնեան զնա։ Արդ, որք հանդիպիք և աւգտիք, յիշեցէք ի բարին Քրիստոս զՍարգիս և զծնաւղսն իւր՝ զՄարտիրոս և զՄամա տիկին, որ բարւոք ծնան և ուղղութեամբ սնուցին և աստուծոյ աւանդեցին, նաև զհամաւրէն զարմն՝ զկենդանի և զմեռեալս։ Եւ որք յիշէք սրտի մտաւք, յիշեսցէ և զձեզ որդին աստուծոյ յաւրն, զոր ոչ փոխանակէ գիշեր, և տացէ ձեզ, որ յիշէք և որոց յիշեն, զանբաւ բարիսն։

Աղաչեմ և ես, մեղաւորս Յովանէս շարահիւսաւղս, արժանի զանարժանս առնել և յիշել յաղաւթս, զի մեծ յուսով ակն ունիմ խնամոցն աստուծոյ, և այն՝ աղաւթիցն ձեր միջնորդելովն...։

Գրեցաւ ՉՀԴ. (1325), ի թագ[աւորութեան] Լեւոնի և կաթող[իկոսութեան] Կոստ[անդնի], յանապատն Սկեւռայ, ի լաւ աւրինակէ, տէրամբ Յիսուսիւ, որում փառք յաւիտեանս, ամէն։

Բ

130ա Ստացաւղի սորա՝ Սարգիս քահանայի, և ծնողաց, և զարմից յիշատակ բարի, և յաստուծոյ թողութիւն յանցանաց ի տկար մարմնի։ Եւ որք յետոյ ժառանգէք զսա, անուն կամ գիր մի քերէք զառաջնոցն ու զձերն ի տեղն գրէք, ապա յայլ տեղի գրեցէք և զձերն անուն։ Եւ թէ ոք՝ մեծ կամ փոքր, քերէ յառաջնոյն անունն՝ ջնջի ի կենաց գրոյն, մի՛, մի՛ գործէք, զի չար է և մեծ չար։ Աղաչեմ և ես կոյր շարագրաւղս Յոհանէս, զի և մեզ բարի յիշումն։ ՉՀԴ. (1325)։

Ծաղկող՝ Սարգիս

Գ

9ա Ո՜վ եղբարք, որք ընթեռնոյք զսուրբ աւետարանս, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զՍարգիս սուտանուն քահանայ և զծնողսն իմ, զի յոյժ աշխատեցայ և ծաղկեցի զսա։ Եւ այլ, յիշեցէք զքրիստոսասէր տանուտէրն զԼեոն Գորգոնց զապաղն, և զծնողսն իւր, և զամուսին իւր, զի զայս առաջի խորանս ոսկով ինքն ետ շինել, ի յիշատակութիւն հոգւոյ իւր և իւրոցն. և որ յիշէ, յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն, ամէն։

## 246.

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 2388 (տես նաև 1440 թ.)

Գրիչ՝ Սիմեոն
վայր՝ Գալու անապատ

216բ ...Ի թվ. Հայոց ՉՀԴ. (1325), ի թագաւորութեանս Հայոց Լեւոնի աստուածասիրի և բարեպաշտի, որդւոյ ի Քրիստոս հանգուցեալ թագ[աւորին] Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Կոստ[անդնի] Լամբր[ոնացւոյ] գրեցաւ եղանակաւոր տառս մանրուսման, յաստուածաբնակ
217ա անա || պատս, որ կոչի Գալու, ընդ հովանեաւ սուրբ Աստուա-

*ծածնիս և այլ որրոցս, ձեռամբ մեղապարտ և անարժան քահանայի* Սիմէօնի, *ի խնդրոյ սրբասէր և պատուական սարկաւագի և հոգևոր եղբաւր մերոյ* Յովանիսի *գրակազմի, ի վայելումն անձին իւրոյ, և յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց, և ամենայն զարմից։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ աւրինակելով, յիշեսջիք ղստացաւղ սորին զ*Յովանէս *և զծնաւղսն*
217բ *իւր։ || Ընդ նմին աղաչեմ յիշել և զանարժան հոգս զ*Սիմէոն *գրիչ և զծնաւղսն իմ՝ զ*Յակոբ *քահանայ, զորդի* Մեծպար[ոնի]*՝ զհանգուցեալն ի Քրիստոս։ Աղաչեմ յիշել և զհոգևոր որդեակս և զեղբարս իմ ի տէր՝* Զապլ[ո՞ւն] *դպ[իր] և զփոքր* Ստեփա[նոս] *դպ[իր]. և որ յիշէ յիշեալ լիցի յողորմութիւնն աստուծոյ, ամէն։*

*Բայց գրեցաւ սա ի լաւ և ի ստոյգ աւրինակաց երկու[ց]՝ Կոստա[նդեա՞] և Վաւծ.* զոր էր գրեալ* Գրիգոր Զորուկ...։

247.

*ԿՑՈՐԴՈՑ ԳԻՐՔ*

*Ալիշան, Սիսուան, էջ 341*

*Վայր՝* Կիլիկիա

*Տէր աստուած իմ Յիսուս Քրիստոս, քո սուրբ ծընընդեամբդ, և սուրբ մկրտութեամբդ, և սուրբ աստուածածնին բարեխաւսութեամբ ողորմեա ստացաւղի սորա պարոն* Կոստանդեայ *սպարապետի Հայոց, և եղբաւր իւրոյ պարոն* Աւշնի*, և որդւոյ իւրոյ պարոն* Հեթմոյ*, զորս պահեսցէ զսոսա Քրիստոս ընդ երկայն աւուրս։ Դարձեալ աղաչեմ, որք հանդիպիք այսմ երդոյս յիշել սրտի մտաւք զերկոսին հարազատսն ի բարին Քրիստոս, ողորմութիւն և թողութիւն գտանել ի Քրիստոսէ ծնաւղաց իւրոց, և եղբաւր իւրոյ* Կիաւդնի*՝ փոխեցելոյն առ Քրիստոս, որոց ողորմեսցի Քրիստոս աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս, և ինձ՝ եղկելոյս։***

248.

*ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆՔ*

*Վիեն. 353. Տաշ. Ցուց. էջ 807*

*Վայր՝* Գլաձո՞ր

ա

68ա *Արդ, գրեցաւ եւ կատարեցաւ ըստ իմում կարի, հրամանաւ սուրբ եւ երիցս երանեալ առնն աստուծոյ* Եսայիայ *րաբունապետի, ի վայելումն անձին իմոյ եւ այլոց, որ գեղեցեալ կան ի գրունս իմաս-*

---

* *Թողնում ենք հապավված ձևով։*

** *Հրատարակված է վիմաիպ նմանահանությամբ. «Կցորդաց գիրք գրեալ յամի 1325, վասն Կոստանդնի Գունդստապլի» մակագրությամբ։*

*տից սորա, իսկ յետ ստտեացս՝ ի յիշատակ սորա. յիշել աղաչեմ յաղաւթս եւ հանապազ զերանի ում թողութիւնն խնդրեալ։ Արդ, յիշեսջիք ընդ տեառնս իմոյ եւ զիս, զի ողորմեսցի տէր դծողիս, եւ դուք յիշեալ լիջիք...։*

*Ի թուի. ՉՀԴ. (1325) գրեցաւ։*

*Հետ. ստացող՝* Սարգիս

Բ

161բ *Զ*Սարգիս *քահանայն, որ ազատեաց զգիրքս ի ծառայութենէ այլազգեաց եւ ետ* Գէորգ *վարդապետին, աղաչեմ յիշել յաղօթս, եւ աստուած զձեզ յիշէ ամէն։*

249.

ՃԱՇՈՑ

*Երևան 6235*

*Գրիչ՝* Խաչատուր
*վայր՝* Ջուղայ

160բ *... [Հ]անեալ ի վերջին ըմծս ճաշոցիս ձեռամբ անարժան քահանաի* Խաչատրոյ, *ի թվաբերութեանս Հայկազեան տաւմարի ՉՀԴ.(1325) գրեցաւ, ի ղանութեան* Պուսաիտին*, *որդո* Խարբանդին, *ի թագաւորութեան Կիլիկեցոց* Լեոնա, *և ի հայրապետութեան մերո տէր* Կոստընդնա, *և յեպիսկոպոսութեան մերո տէր* Վարդանայ:

*Արդ, եղևաւարտ սուրբ գրոցս ի* Ջուղայ, *ընդ [հովանեաւ | | |***

250.

ՇԱՐԱԿՆՈՑ

*Ալիշան. Սիսուան, էջ 153*

*Գրիչ՝* Կոստանդին
*վայր՝* ի Ձորս խորին անապատի, ի վանքս Փերներ

*Ցամի եւթնհարիւր և եւթանասուն և չորսերորդի թուաբերութեանս Հայոց (1325), ի թագաւորութեանն Հայոց* Լևոնի՝ *որդւոյ* Աւշին *թագ[աւորի], և ի կաթողիկոսութեանն* Կոստանդեայ Լամբրունացւոյ, *գրեցաւ երգս այս շարականք ի ձորս* խորին *անապատի, ի վանքս* Փերներ, *ընդ հովանեաւ սուրբ Սիոնի և սուրբ Նշանացս Քրիստոսի, ձեռամբ պիտակ և ձևով տնւամբ քահանայի* Կոստ[անդեայ], *ի խնդրոյ սրբասէր և ազնւատիպ ծերունի հաւրն* Թուխանի, *ի վայելումն դեռաբոյս պատանեկին՝ քեռորդոյ Նորին* Պաղոսի:

*Արդ, աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի յիշեցէք ի բարին Քրիստոս զվերոյգրեալս այս՝ զծերացեալ կրաւնաւորն* Թուխան,

* *Բնագրում «Մուսաիտին»։*

** *Հիշատակարանից պահպանվել է միայն մի կիսատ թերթ, ուստի սկզբից և վերջից այն թերի է։*

և զբարեպաշտուհի քոյրն Թանկ, և զծնողսն իւր զհանգուցեալսն ի Քրիստոս՝ զհայրն իւր Անձրև, և զմայրն իւր, և զամենայն զարմն իւր։ ...Ընդ նմին յիշեցէք զհեզն և զբարեբոյս միւս քեռորդին իւր Կիրակոս, նաև զողորմելի գերիս՝ ծրագրաւղ սմին Կոստ[անդին], և անմեղադիր լերուք, զի կար մեր այսչափ էր. և յընտիր աւրինակէ էր։

## 251.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Թորոս աղբար, Բ, էջ 293 (Երզնկայ սբ. Սարգիս եկեղեցի)*

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Ի Վանս կոչեցեալ սուրբ Կիրակոսի

... Եղեւ գրաւ գրութեան սորա ի թուաբերութեան Աբեթեան դրոհի ՉՀԴ. (1325). եւ ի գալստեան կենարարին մերոյ ՌՅԺԶ. (1316), իսկ յելտնելոյն նախնի մարդոյն յանուշակ վայրէն՝ ՑՉԼԸ. (6738)...։

Գրեցաւ տառս աստուածային... աւետարանս ի վանս կոչեցեալ սուրբ Կիրակոսի և մաւր Նորին Յուղիդայ, ի հայրապետութեան* տեառն Լեւոնի...։ Աղաչեմ խնամով եւ զգուշութեամբ պահել, եւ զստացողք սորա՝ զՄխիթար քահանայ, եւ զորդի սորին զՍիմէոն քահանայ, եւ զհարազատ եղբարքս՝ զՅովհաննէս եւ զԳրիգորիս, եւ զՏունիկն, այլ եւ զդեռաբողբոջ մանկունս սոցա՝ զԱհարոն զդպիր եւ զՄովսէս, եւ զազգայինսն մեր զամենայնսն, որ այժմս կան, եւ զգնացեալսն առ Քրիստոս յիշել...։ Եւ զերջանիկ վարդապետն մեր զԲարսեղ, որ զյիշատակարանս շինեաց... Նաեւ զեղկելի ոգիս՝ զնեանեալս զՆերսէս գրագիրս, որ բազում աշխատանաւք եւ ջանիւք գրեցի զսա ի ստոյգ եւ յընտիր աւրինակէ, որ ի Կիլիկիա յերկիրն, արքայեղբայր անուն կոչեցեալ Յոհաննէս եպիսկոպոս, որ իւրովք ձեռաւքն էր գրեալ լաւ եւ ընտիր աւրինակէ...։

## 252.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԳՐՈՑ ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑՒՈՑ

*Երևան 2100*

Գրիչ՝ Կարապետ

336ա ... Ցանկ ելեալ կատարեցաւ տառս աստուածային հինգ հատուածովք՝ Երևեցաւն, Նախախնամութեանն, Նահապետացն, Այլաբանութեանն և Հիւսեացն, շարադրեալ ի յեռամեծէն Փիլոնէ: Ի թվ. ՉՀԴ. (1325) թվականիս գրեցաւ, ձեռամբ մեղացելոյս Կարապետ երիցու, ի խնդիր սրբամաքուր և հոգիացեալ վարդապետին Կիրակոսի: Երես անգեալ աղաչեմ զձեզ, ո՜վ դասք լուսերամից, մանկունք վերին առագաստի, որք հանդիպիք այսմ տառի, յիշման արէք զմեզ արժանի, թէ տէր Ցիսուս ողորմեսցի Կարապետ գրագրի, ամէն, ամէն և եղիցի։

* Գրչական սխալ է, պետք է լինել՝ «ի թագաւորութեան»։

253.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4122 (տես նաև 1643 թ.)*

Գրիչ՝ Յոհաննէս

ա

193բ *Բարեխաւսութեամբ սուրբ աւետարանչիս Ղուկասու թող, անյիշաչար տէր, զյանցանս մեղուցեալ գրչի Յոհաննիսի, և ծնողաց իմոց, և ամենայն հաւատացելոց։ Գրեցաւ. ի թվ. Հայոց ՉՀԴ. (1325), սեպտեմբերի ԺԸ. (18)։*

Գրիչ՝ Սերեբ

բ

251ա *Սուրբ աւետարանիչ Յոհաննէս... ողորմեա ստացողի կենսաբեր աւետարանիս Քաւուն միայնակեցին, և ծնողաց նորա, և Սերեբ գրչի, և այնոցիկ, որք մեղաց թողութիւն հայցեն։*

ՉՀԶ 1327

## 254.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7519

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Բզնունեաց գաւառ, գիւղ Աղեք

...Եւ արդ, ես՝ կր[ս]եա[լ]ս յորդիս եկեղեցւոյ և անպիտանս ի քահանայս Յովաննէս, ցանկացող եղէ աստուածախաւս և աւետաբեր սուրբ աւետարանիս, և զտի ստոյգ և ընտիր աւրինակ, զոր գրեալ էր Թորոս փիլիսոփայն ի Դրազարկն և յուղարկեալ հռչակաւոր ուխտին սուրբ առաքելոցն Տարաւնոյ, որ կոչի Ղազարու վանք։ Եւ իմ առեալ գրեցի զսա անարժան ձեռաւք իմովք, ի մեծ թուիս ի յեղա-
244ա նական շրջագայութեան արեգական ստորիջիւք || երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով, ըստ արարչութեանցն չափեալ, յԱդամա մինչև ցայսր* ամք ՑՉԾԲ. (6752), իսկ ի Հայոց թուականիս ՉՀԶ. (1327), ի գաւառիս Բզնունեաց, ի գեաւղս, որ առ ափն ծովուս, որ կոչի Աղեք, ընդ հովանեաւ սրբոյ Կարապետիս, ի հայրապետութիւն Կիլիկեցւոց տեառն Յակոբայ, և ի մերոյ հայրապետութեան Աղթամարեցոյ տեառն Զաքարիա, և ի թագաւորութեան Կիլիկեցւոց նահանգին քրիստոսապսակ և բարեպաշտ Ղևոնի, և ի կայսերական բռնակալութիւն ազգին նետողաց Պուսայիտ խանին, ի թշուառ և ի չար ժամանակի, յորում է արդարութիւն կորեալ նուաղեալ և անիրաւութիւն յամենայն կողմանց զաւրացեալ։ Եւ կատարեցաւ բանն մարգարէական ի վերայ մեր, որ ասէ, թէ գայ ժամանակ, որ ասիցեն լերանց թէ անկերուք ի վերայ մեր և բլրոց, թէ՝ ծածկեցէք զմեզ։

Արդ, որք ընթեռնուք զսա կամ աւրինակէք, յիշեսջիք ի մաք-
244բ րափայլ յաղաւթս ձեր զստացող սորա՝ || զՇնոհավոր երէց** և ամենայն արեան մերձաւորսն նորա, զկենդանիս և զյանգուցեալսն առ Քրիստոս։ Ընդ նոցին և զիս՝ զանարհեստ գրիչ զՅովհաննէս քահանայ, և զծնաւղսն մեր...։

Յիշեսջիք աղաւթիւք զբրբասէր և զհոգելից կրաւնաւորն զԹադէոս, որ զաւրինակն շնորհեաց...։

---

* Բնագրում՝ «ցայրս»։

** Ստացողի անունը «զՇնոհվոր երէց» գրված է հատուկ այդ նպատակի համար դատարկ թողնված տողի վրա ԺԷ. դարի ձեռագրով։

## 255.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հալէպ. ար. Մնկ. եւ մատ. 32 Սիւրմ. Ցուց. Ա. 395*

*Գրիչ՝* Յոհաննէս
*Վայր՝* Կիլիկիա

585 *...Գրեցաւ աստուածային և կենսաբեր սուրբ աւետարանս տեառն մերոյ և փրկչին Քրիստոսի ի թուականութեանս Հայոց ՉՀԶ. (1327), ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *և ի թագաւորութեան Հայոց* Լևոնի *Չորրորդի՝ բարեպաշտի և աստուածասիրի, որդի արքային Հայոց* Աւշնի, *ձեռամբ հոգնամեղ և անարժան ծառայի աստուծոյ* Յոհաննէսի *գրչի, ի յիշատակ հոգւոյ իմոյ, և ծնաւղաց իմոց, և ամենայն զարմից, այլ և ի վայելումն մանկանց եկեղեցւոյ, որդւոյ իմոյ* Մինասի *ընթերցողին։ Արդ, աղաչեմք զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ և լուսաւորիք ընթեցմամբ կամ աւրինակաւ, յիշեսջիք ի Քրիստոս զառաջասացեալս՝ զ*Յոհաննէս *գրիչ, և զծերունի հայրն իմ <և> զ*Պետրոս, *և զհարազատ եղբայրն իմ զ*Թորոս, *և զծնաւղսն մեր, զհանգուցեալսն ի Քրիստոս...։*

*Ցայնմ նշանաւոր ամի եղև գրաւ գրչութեան սորա և կատարումն, որ բարեպաշտ ծերունին և աստուածասէր իշխանն՝ պարոն* Հեթում Նղրցի*, *ճանապարհորդեալ եղև յաշխարհն* Եգիպտոսի *վասն հանգստեան քրիստոնէից, զոր տէր Յիսուս ողորմեսցի նմա։ Նաև ի յիշատակ հոգւոյ քրիստոսասէր և բարեպաշտուհի ազախնոյն աստուծոյ* Ալծի՝ *փոխելոյն առ Քրիստոս, որոյ տէր Յիսուս ողորմեսցի նմա և թողցէ զյանցանս իւր։*

*Ողորմեսցի Քրիստոս աստուած և ծերունի աղախնւոյն* Թանգիրի, *որ ետ գրել զսուրբ աւետարանս ի յիշատակ հոգւոյ իւրոյ և հարսինն իւր* Ալծի՝ *գնացելոյն առ Քրիստոս։ Ողորմեսցի Քրիստոս աստուած... հոգւոյ եղբաւրն մեր* Կիւրակոսի, *որ առիթ և աւժըն[դ]ակ եղև դրելոյ սուրբ աւետարանիս, և տացէ նմա մասն բարի տէր աստուած մեր։ Եւ դուք մանկունք առագաստի, որք վայելէք ի սուրբ և կենսաբեր աւետարանս, յիշեսջիք ի Քրիստոս զյառաջասացեալքս ի սմա, զ*Յոհաննէս *գրող և կազմող սորին և զծնաւղսն իմ։ Ընդ նմին զստացաւղ գրոյս զծերունին* Թանգիր, *և զորդի որդոյն իւրոյ զ*Ստեփաննոս, *և զքոյրն իւր զ*Մինախաթուն, *և զմայրն իւրեանց՝ զփոխեալն առ Քրիստոս՝ զ*Ալիծ, *յորոյ յիշատակ աւետարանս գրեցաւ։ Յիշեսջիք և զծերունին զ*Ամեն *տիկին...։ Յիշեսջիք և զ*Կիրակոս, *և զբարեպաշտուհի ամուսինն իւր զ*Տալիթայ, *և զորդին իւրեանց զ*Ստեփաննոս*...:*

* *Տպված է «Նղրեցի»։*

## 256.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

*Երևան 1562 (տես նաև 1372 թ.)*

Գրիչ՝ Անդրոնիկոս
վայր՝ Իտալիա, Սալեռն[ո] քաղաք

256բ *...Ի թուիս Հայոց ՉՀԶ. (1327), շնորհաւք ամենասուրբ հոգւոյն յանկ ելեալ աւարտեցաւ աստուածակերտ այս տառ և աստուածազարդ մատեանս հոգեպատում...։*

259բ *Արդ, ես՝ եղկելիս և անուամբ միայն քահանայ* Անդրոնիկոս, *յոյժ փափաքմամբ ցանկացող [ող]ջ աստուածային բանիցս, և գրեցի զսա ի մխիթարութիւն բազմամեղ անձին իմոյ, և ի յիշատակ, ինձ և ծնողաց իմոց։*

*Արդ, յերես անկեալ աղաչեմ զձեզ, որք աւկտիք ի սմանէ յիշեսջիք զանարժանս* զԱնդրոնիկոս, *և զծնողսն իմ՝ [զմեծ հայրն իմ* զԿոստանդին, *և զհայրն իմ՝* զՄիխայլ, *և զմայրն իմ* զՃուլինար]*, *և զընաւ ազգատոհմ մեր, նաև զբարի ձիաւորն՝ զսիր* Ստեփանոս, *և որ զմեղ յիշէք աստուած ողորմ[եայ]իւ, և դուք ողորմութիւն գտջիք ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւի[տեանս]։*

*Յիշեսջիք և զպատուելի հայրս մեր* զՆերսէս՝ *զառաջնորդ սրբոյ անապատիս սուրբ Մկր[տ]չիս Քրիստոսի, որ ի* Սալեռն, *նաև զհոգևոր եղբայրն մեր՝ ըզ*Նիկօլայոս, *և զծնողսն իւր. և ինքն տէր աստուած, որ առատն է ի պարգևս բարութեան, յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի։*

*Գրեցաւ սա ի յաշխարհս* Ֆռանգաց, *ի քաղաքիս, որ կոչի* Սալեռն, *ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս և Մկր[տ]չիս Յովանու. և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։*

## 257.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մաքսուդ. Ցուց. Ադուլեան, 16. Արարատ, 1911, էջ 469*

Գրիչ՝ Աստուածատուր

258բ *...Այլ և գրեցաւ յամի ՉՀԶ.(1327) թուականութեանս Հայոց, ի հայրապետութեանն տեառն* Զաքարիայի, *ձեռամբ մեղուցեալ և անարհեստ գրչի* Աստուածատուր *իրիցու, ի խնդրոյ սրբասնունդ և պատուական քահանայիցն՝* Հայրապետի *և* Կարապետի...։

*Ո՜վ սուրբ մանգունք եկեղեցոյ, յորժամ հանդիպիք սուրբ աւետարանիս, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվարդապետսն իմ* զՊաւղոս *և* զԱստուածատուր, *և զսարկաւագ* Կիրակոսն, *և զհայրն իմ*

** Ուղղագիծ փակագծերում բերված հատվածը լրացնում ենք 264բ էջում եղող հիշատակագրությունից։*

զՅովանՆէս, և զմայրն իմ զՏիկին մայր, և զքոյր մաւր իմոյ՝ զՏիկՆերես, և զեղբարսն իմ՝ զՏ[ի]րատուր, զԿարապետ, զՄեծատուր, զՀայրապետ, զՄովսէս, և զքոյրն իմ զՌսկի, և զիս՝ զբազմամեղ զԱստուածատուր...:

## 258.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Բրիտ. Թնգ. 13 (Or. 2680), Կոնիբ. Ցուց. էջ 20—21 (տես նաև 1363 Թ.)

Գրիչ՝ Աստուածատուր

256բ ...Աւարտեցաւ... աւետարանս... ի Թուիս ՉՀԶ. (1327), ձեռամբ ամենամեղիս Աստուածատրո սուտանուն իրիցուս... յիշեսջիք զմեղաւորս և զվարդապետսն իմ զՊաւղոս քահանայ՝ զփոխեալն ի Քրիստոս, և զԱստուածատուր կրաւնաւոր, և զՍարկաւագ, ընդ նմին՝ զսրբասէր քահանայ զՍտեփանոս, որ ուսոյց ինձ զգիրս, ընդ նմին զսրբասնեալ քահանայ զՅոհանէս, որ ընգերեաց ինձ ի գործն աստուծոյ, և զծնողսն իմ՝ զՅոհանէս և զՏիկին մայրն, և զՍռաի քահանայ, որ զաւրինակն շնորհեաց։

## 259.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրզ. 6273, էջ 134 (Եւդոկիայ, ի Գիզաւու սուրբ Ցովհ. Ոսկեբերանի վանք)

Գրիչ՝ Սեթ

Շնորհիւ տեառն և ողորմութեամբ անհասին աստուծոյ կատարեցի զսուրբ աւետարանս... Սեթ [քահանայ], յիշատակ ծնողաց իմոց՝ Ցուսիկ քահանայի և Տիրա տիկնոյ, և տղային իմոյ, որ Ցուսիկ անուն նա յորջորջի, ի պայծառութիւն եկեղեցեաց, ի Թուականիս Հայոց ՉՀԶ. (1327), ի նեղ և ի դառն ժամանակի...։

## 260.

## ՈՍԿԵՓՈՐԻԿ

Վենետ. 248 (13), Սարգս. Ցուց. հա. Բ. էջ 698

Գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ Մերձ յՈւժան

ա

64ա Մերձ ի յՈւժան, ի Հուսային ի դեղն պարպեցաւ, ի յուրբաթի օր, ի յօղոստոսի յէ. (7), ի պատիւ սուրբ կուսին ամենօրհնեալ տիրուհոյն։

բ

174ա Զնուաստ գծողս Իսրայէլ, որ ուղիղ սրտիւ ու դաշնակից գոմ այսմ դաւանութեան ուղղափառ, յիշել ի տէր աղաչեմ։

Գ

193բ Ի թվ. ՉՀԶ. (1327), ի Քրիստոսէ՝ ՌԳԾԻԷ. (1327). ի Դոմինիկոսէն և ի Ֆրանցիսկոսէ ՃԻԵ. (125) տարի է։

261.

## ՄԱՇՏՈՑ ԵՒ ԽՈՐՀՐԴԱՏԵՏՐ

Երևան 898

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Մելիտինէ*

Ա

73բ Ո՜վ պատուական և սրբասնեալ հոգևոր հայր տէր Ստեփաննոս. ընգալ զսակաւ գիրս ի նուաստ Յոհաննէսէ, և սղալանաց մի մեղադրել, զի կարս մեր այս չափ է, և աղաչեմ յիշել զմեղաւորս ի ձեր մաքրափայլ աղաւթս։

Բ

78բ Որոյ տէր աստուած վայելել տացէ զայս ձեռնադրութեան գիրգս՝ տէր Յովաննիսի Մելտենոյ շնորհաբաշխ եպիսկոպոսի, ամէն։*

---

* Ձեռագրի գրչության տարեթիվը հայտնի չէ։ 115բ—116ա էջերում «Եւ սարկաւագն քարոզէ...» հատվածում հիշվում են Հակոբ կաթողիկոսը և Լևոն թագավորը («...վասն հայրապետին տեառն Յակոբայ և պատուական քահանայութեան, և որ ի Քրիստոս սարկաւագութիւն, և ամենայն ժառանգի, և ժողովրդեան զտէր [աղաչեսցուք], վասն բարեպաշտ և աստուածապահ թագօրին մերոյ Լևոնի և ամենայն պաղատին և զինուորեալ մանկանց նորա...»)։ Ըստ այդմ ձեռագիրը գրված պետք է լինի 1327 թվից ոչ առաջ՝ Հակոբի կաթողիկոսության առաջին տարին, և ոչ ուշ քան 1342 թիվը՝ Լևոնի մահվան տարին։





262.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վրաց. թանգարան, № 40 (տես նաև 1312 թ.)

Ստացող՝ **Որզուքան**
վայր՝ **Սիւնիք**

**ա**

Շնորհիւն աստուծոյ հաւր ամենակալի, և ողորմութեամբ բարեբար միածնի՝ որդոյ նորայ, և կենդանարարի և ազատիչ սուրբ հոգոյն, և համագոյական երրորդութեամբն խնդրեցի գ[ր]գծալիս յոքունց, որով ազատեցան համայրէն ծնունդք Ադամայ **լուսաւորեալք բանիւ կենաց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ո[րո]վ ուրախ[աց]եալ ցնծան մանկունք նոր Սիոնի*** ի կարգ սպասաւորութեան առաքելական եկեղեցոյ։

Արդ, ոՏՌ աստուածասէր աստուածային շնորհին փափաքեալ և ցանկէր** փրկագործ սուրբ աւետարանիս, **հանդերձ ˜պատուէ[ա]լ ե ծաղ[ի՞կ]*** շքեղազեղ ե գեղեցկատես և բարի զաւակաւքն, որոյ անունն Էաչի Նանայի, զոր պահեսցէ Քրիստոս աստուած** ընդ երկայն աւուրս, ամէն, ստանալ փրկանս աստուածասէր անձին իւրեանց։

Արդ, այս աստուածասէրս, որոյ անուն **Ըրզուքան** ճանաչի, բարեյիշտ և լի հաւատով, ի հռչակաւոր և ի մեծ ազգէ, քանզի այլք բազում ոմանք մարմնական շահիւք ընթանան ընդ ծով և ընդ ցամաք ոսկոյ և արծաթոյ, այլ սա ոչ այնպէս, **իմաստութեամբ սուրբ հոգոյն ի մտի եդե[ա]լ շինել տաճար եղկեղական երկնաւոր** մտողաց և զարդարեալ մարգարէական և առաքելական շնորհիւն։ Արդ, ես՝ ադախին Քրիստոսի **Որզուքանս**, ստացայ զաստուածափառ և պաշխարհալոյս **զկենսունակ սուրբ աւետարանս ի հալալ արդեանց** [յիշ]ատակ ինձ և տե[ա]ռն իմոյ՝ **[Ա]միր Հասանայ**, ի ժամնում թագազարդ և պարծանաց որդոյս մերոյ՝ **Էաչոյ**, և **Թուղտիկին**, և հանգուցեալ պարոնացն **Վարհամայ**, և **Մինա խաթունին, ե տուաք ի վանս Լնայ, զոր եր ընդ իշխանութեամբ մերով և եր մեր մուր**(*) **գերեզմանատեղ, ի ձեռն յուսափայլ եպիսկոպոսին Դաւթի**, որ էր առաջնորդ տեղացս. և խոստացան Ա. պատարագ ի տարումն **Որզուքանին** հոգոյն, ի ծառազարդին, որ է դալուստ փրկչին մերոյ յԵրուսաղէմ ամոլ։ Որ զաւետարանս

* Բոլոր ընդգծված նախադասությունները գրված են կարմիր թանաքով։

** Իմա՝ «ցանկայր»։

*** Վերջին երկու տառերը («ի՞կ») չեն կարդացվում, ավելացնում ենք ենքներս կասկածանքով։ Կարող է լինել նաև «ծաղ[կա]շքեղազեղ»։

հանել ջանայ, ի սուրբ Ստեփաննոսէս ու կամ զժամն խափանէ՝ զատի յաստուծոյ, նոանց աշխարհի աւերի։

Արդ, ով ժառանգէք և ընթեռնոյք, ասացէք լի բերանով Թէ Քրիստոս աստուած, ողորմի Որզուֆանին, և Ամիր Հասան[այ], և ծնողացն իւրե[ա]նց, ամէն, և այլ վեր[ա]գրելոցս, ամէն։

[Ի Թուականին Հայոց] ՉՀէ. (1328). Հաստա[տ է] կամաւն աստուծոյ։

Պարոն Էաչի

Բ

Փառք ամենայսուրբ երրորդութեան, ամէն։

Այս իմ գիր է պարոն Էաչոյ [և] զԱմ[իր Հ]ասան զիմ [ո]րդին. [Ի] տէր Վա[ր]թանիսի [յար]կն զրաք ղաւետար[անս], Վարքանիսի տուաք, որ մեր հոգոյ առաջնորդ էր․ իմ | | | սիրակ*, որ զայս աւետարանս Վարդանիս տվի, թէ նայ է, թէ յիր ազգէ | | |**

263.

ԳԻՐՔ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

Փիրղ. 6273, էջ 134—135 (Կ. Պոլիս, Միջագիւղի Թանգարան)

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Սի՞ս

Գրեցաւ գիրքս ձեռնադրութեան յամի ՉՀէ. ի թուականութեանս Հայոց (1328), ի թագաւորութեան Լևոնի Զորրորդի, որդւոյ արքային Հայոց Աւշնի, և ի պարոնութեանն Հայոց մեծի գունթին Սավրիոյ՝ պարոն Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Յակոբայ, քուերորդւոյ տեառն Գրիգորի հայոց կաթուղիկոսի, ի լաւ և յընտիր օրինակէ, ի խնդրոյ պատուական և երջանիկ արքեպիսկոպոսին տէր Ստեփաննոսի Խրիմի աշխարհին։

[Յիշեցէք յաղաւթս] զ'Դաւիթ սրբասնեալ քահանայ, որ յանձն առ զմահ, և եղբայրական սէրն ի գլուխ հանել, և երկու հետ ի յաշխարհէն իւրմէ նաւակծեալ եկն յաշխարհս Հայոց, ի քաղաքս, որ կոչի ի Սիս, վասն պատուական արքեպիսկոպոսին տէր Ստեփաննոսի, և զմիւս եղբայրն տեառնս՝ զբարի պարոնն զՏուրայն, և զվերադիտողն Խրիմին, ընդ նմին և զիս՝ զանարժան գրագիրս զՍարգիս քահանայ։

* Պարոն Էաչիի ինքնագիր հիշատակարանի վրա ձախ կողմից, նորոգման ժամանակ, թուղթ են փակցրել, շատ տառեր մնում են թղթի տակ։ 4—5 տառ չկարողացանք վերծանել։

** Շարունակությունը չի պահպանվել։

## 264.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԳՐՈՑ ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑՒՈՅ

*Երևան 2057*

Գրիչ՝ Յակոբ Կռակցի
վայր՝ Գերմաղբիւր վանք

ա

309ա *...Ես՝ տկար ոգի և բազմամեղ անձն Յակոբ, կր[ո]սերս բանա-
սիրաց և յետինս վարժապետաց, ի քաղաքէն Կռակկայ կոչեցեալ, յո-
րում որակ որակ գոյնս քարանց ելանէ, զոր ոմանք հրահալեալ ար-
ւեստիւ և փք[ով] կայծակունս արծարծեն և յառաջ բերեն զանազան
գործս երկաթոյ, առ ի պէտս ազգի ազգի անաւթոց։ Հոգոյն ձեռնա-
տուութեամբ և ըստ անձին իմոյ բաղձանաց ետու գրել զէ. (7) տառս
իմաստասիրական, որ է շարադրեալ յեռամեծ իմաստասիրէն Փիլոնի:
Եղև գրաւ գրչութեան սորա ի վանքս, որ կոչի Գերմաղբիւր. և է այժմ*
309բ *դաստառուն կարգեալ ի թագաւորէն Հայոց Զորրորդ Լևոնի և ի ||թա-
գաւորին և պայլին Հայոց Աւշնի՝ տէր Կոռիկոսոյ, ձեռամբ Առաքելի՝
որբասէր և կուսակրօն քահանայի։ Արդ, ստացայ զսայ ի վայելումն
անձին իմոյ և ի յիշատակ հոգոյ իմոյ և ծնողաց իմոց և ամենայն
արեան մերձաւորաց։ Զոր աղաչեմ զամենեսեան, որք վայելէք յայսմ
դրոցս ուսմամբ կամ աւրինակաւ, յիշեսջիք ի Քրիստոս զիս՝ զանար-
ժան սուտ անուամբ վարդապետս Յակոբ, և զծնաւղսն իմ, և զեղբարսն՝
զնացեալքն առ Քրիստոս, և զամենայն արեան մերձաւորսն իմ, նաև
զԱռաքել գրիչ և զծնաւղսն իւր, որպէսզի հանդիստ և ողորմութիւն
շնորհեսցէ յերանական կեանս և ի փառսն իւր, որում մեզ՝ յիշելոցս և
ձեզ՝ յիշողացդ ողորմեսցի գթութեամբն իւրով Քրիստոս աստուածն
մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Էր թիւն Յաբե-
թականս տումարի և Հայկազեանս սեռի ՉՀԷ. (1328), ի թագաւորու-
թեանն Հայոց Զորրորդ Լևոնի, որդւոյ բարեպաշտ թագաւորին Աւշնի,
և ի պայլութեանն Հայոց Աւշնի՝ տիրոջն Կոռիկոսոյ, և ի կաթողի-
կոսութեանն Հայոց տեառնն Յակոբայ, որ է քուէրորդի տէր Գրիգոր
կաթողիկոսին, զոր աղաչեմ և զսսա ևս յիշել ի Քրիստոս ողորմա-
յիւ, ամէն։*

բ

150ա *Ո՜վ, ուսումնասէր եղբարք և սպասաւորք բանին, յիշեսջիք ի
Քրիստոս զվերծնաւղն մեծ զՅակոբն և զծնաւսն իւր, որ ետ գրել զսա
ի վայելումն անձին իւրոյ, և | | | քահանայ Կռակցի յիշեսջիք ի
սուրբ աղաւթս ձեր, և Քրիստոս աստուած, որ առատն է ի պարգևս
բարեաց, և զձեզ յիշեսցէ յիւր արքայութիւնն, որում փառք յաւի-
տեանս, ամէն։*

գ

180բ *Ո՜վ խոհեմագոյն վերծնաւղք, յորժամ յընթեռնուլն տեսանէք
զերկս փութոյ իմոյ յուղղելն զսա ի կէտ, ի ստորակէտ, ի շեշտ, ի*



113—14

բութ և յայլ ես առոգանութիւնս, աղաչեմ յիշել յողորմութիւնն աստուծոյ զՑակոբ Կրակցի սոսկ անուամբ վարդապետ. Նաև զծնաւղսն և զեղբարսն իմ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, և զամենայն արեան մերձաւորսն իմ...։

դ

309բ Ի Հայոց մեծ թուականիս
Ութհարիւր և յիսնեկիս,
Եւ ութերորդ յաւելորդիս (1409)
Յերուսաղեմայ եկաք ի Սիս,
Ցողջոյն մեր սուրբ Լուսաւորչիս
Եւ Հայոց մեծ պարիսրգիսս*

## 265.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վրաց. Պետ. արխիվ, ֆոնդ 233, ձեռ. 584. (տես նաև 1404 և 1480 թ.թ.)

Գրիչ՝ Մկրտիչ
Վայր՝ ի քաղս Դուդուշի

...Գրեցաւ սաստ աստուածայ[ի]ն այս աւե[տ]արանս ձեռամբ սուտանուն քահանայի Մկրտչի, ի թաղս Դուդուշի, ընդ հովանեաւ սուրբ Գորգու և սուրբ Սարգսի, ի հայրապետութեանն տեառն Ցակոբա, և ի թագաւորութեանն Լեւոնի: Արդ, աղաչեմ զձեզ դասք քահանայից, որք հանդիպիք այսմ աստուածախաւս կտակիս աւրինակելով, կամ տեսանելով, կամ զազափար դնելով, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զգրող սորա և ծնաւղսն իմ, զմայր՝ որ ի յաշխատելս առ աստուած փոխեցաւ, և զամենայն ազգատոհմ, և դուք յիշեալ լիջիք բարի աւրհնելոյն յօետ և յանվախճան յաւիտեանս, ամէն։

...Սրբազան և պատվելի րաբունիս Յովհաննէս... եռափափագ սիրով աստուածային շարժեալ ի բարեգործութեան... [ստացաւ] զաստուածապտուղս զանձս...։

Նաև զեղկելի ոգիս, զյետնեալս, զՄկրտիչ գրագիրս, որ բազում աշխատանօք և ջանիւք գրեցի զսա ի ստոյգ և յընտիր աւրինակէ, որ ի Կիլիկեա յերկիրն արքայեղբայր անուն կոչեցեալ Յովհաննէս եպիսկոպոս, որ իւր ձեռօքն էր գրեալ լաւ և ընտիր աւրինակ, նայ ես յայնոր գրեցի զսայ, և որ յիշէքդ ի բարի նոյն և դուք յիշեալ լիջիք ի բարի յօրհնելոյն այժմ և յաւիտեանս յօիտենից, ամէն...։

Ի թվիս ՉՀԷ. (1328), ի կատարելն մարտի:

* Հիշատակագրության հեղինակը չի թողել իր անունը, անհայտ է մնում նաև նրա առնչությունը ձեռագրի հետ

## 266.

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ ԵՒ ՃԳՆՈՒԹԵԱՆՑ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Երևան 1733

Գրիչ՝ Ստեփան[ոս]

վայր՝ Ստեփանոս Ուլնեցու վանք

...Արդ, գրեցաւ պատմութիւն վարուց երից երանեալ քահանա-
յապետին, տիեզերաց վարդապետին, և եկեղեցեաց Քրիստոսի լուսա-
ւորչին Յովաննու Ոսկեբերանին ի սուրբ և ի մեծափառ և ի հռչա-
235բ կաւոր ուխտս սուրբ Ստեփանոսի Ուլնցոյն [և] երիս || ուն և չորս
ընկերաց իւրոց, ձեռամբ մեղաւորի և անարժանի Ստեփան[ոսի], ի
թուին Հայոց ՉՀԷ. (1328), ի թագաւորութեանն բարեպաշտին Լևոնի,
և ի հայրապետութեան տեառն Յակոբա, ի ժամանակի առաջնորդու-
թեան և վերատեսչութեան սուրբ և քաջամարտիկ վկայիցս՝ հաւր
Թորոսի՝ ուսուցչի իմոյ, և հեզահոգի փակակալի Կոստանդեայ, և այլ
միաշու[ն]ս եղբարցս՝ Կարապետի, Թորոսի, երկու Յովհաննիսի, և Ստե-
փանոսի՝ հասակակցի իմոյ, և միւս Ստեփանոսի, և Վարդանա։ Յիշե-
ցէք զվերոգրեալ անուանս ի սրտահառաչ պաղատանս ձեր, և մեղաց
թողութիւն խնդրեցէք սոցա ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։ Յիշեցէք
զԲարսեղ տնտես մեր, և զԹորոս կրաւնաւոր, զՍտեփանոս դպիրն,
զԿոստանդին դպիրն | | |

## 267.

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Վենետ. 19 (212) Ցուց. հա. Ա. էջ 158—160

Գրիչ՝ Մխիթար

վայր՝ Եկեղեաց գաւառ, Երկայնի վանք

350ա Արդ, ես՝ նուաստս յերաստս բանի և. թարմատարս ի հոյլս բա-
նահիւսաց, ախտապաշար և յոյնամեղ անձնս Մխիթար, պիտակ պատ-
կեր և գրժաւղ կրաւնաւորութեան, որ թափուր եմ ունայն եմ ի հո-
գեկան և ի մարմնական բարեաց և ի յարգասեաց։ Վասն որոյ խուն
ինչ աշխատեալ ազազուն և փցուն գրով տառատպեցի զպատմութիւն
հնոյ դատաւորացն և թագաւորացն, որ ունի բազում հրաշս և սքան-
չելիս յինքեան ամբարեալ ի հրաշագործողէն աստուծոյ եղեալ առ
մարդիկ ի դարս և ի ժամանակս, զի թերևս պատահաւղք գրոցս ըն-
թերցմամբ, կամ լսելով, կամ զաղափար առնելով, բարեմիտ լինելով
առ մեզ՝ ներումն և ջնջումն սխալանաց մերոց հայցեսցեն։ ...Տէր
աստուած, ձրի տուր զքո արքայութիւնդ Մխիթարայ՝ բարեխաւսու-
թեամբ ամենայն սրբոց։ Նաև յիշման արժանի արարէք զծնողսն
իմ՝ զՊաւղոս և զՏիրանց, և զհարազատսն իմ՝ զՄատթէոս և զՄարտի-

բոս զկրաւնաւորեալսն, և զքերսն նոցին հետևե[ա]լ՝ զՄինայ և զՄարթայ, և զորդեակն իմ զԲարսեղ արեղայ, և զամենայն երախտաւորսն իմ կրկին կենաց...։

Արդ, գրեցաւ գիրքս այս ի գաւառն Եկեղեաց, ի վանսն, որ կոչի Երկայնի, յորում է մեծ և հռչակաւոր վարդապետն Կիրակոս, արժանաւորն ամենայն գովեստի և յիշման, ի մեծի թուաբերութեան Հայոց ՉՀԷ. (1328)։*

## 268.

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 1576

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Դրազարկ

ա

368բ Արդ, գրեալ եղև ոսկենկար շարակնոցս ի թուին ՉՀ. և Է. (1328), ձեռամբ Ստեփաննոս վանական քահանայի, ի Դրազարգ անապատն, որ ի Սիս։

Եւ յետ ՅԻ. և Գ. (323+1328=1651 թ.) ամին ստացող սմին Պօղոս քահանայ ոՃ ի յԱրզրում քաղաքէ փո | | | **

Գրիչ՝ Մովսէս

բ

360ա Զըմբռնեալս ի ժանիս կամակոր օձին, Մովսէս ծրօղս, մաղթեմ կականագոչ հեծեծմամբ, ո՜վ երանեալ հայր, օգնեա ինձ։

գ

364ա Զապիկար և թարմատար Մովսէս գրիչս յիշել մաղթեմ ի վայելողացդ։***

---

* 167բ էջի հիշատակագրությունից պարզվում է, որ ձեռագրի սկզբի մասի արտագրությունն ավարտված է եղել ՉՀԶ. (1327) թվին։

** Ձեռագրից թերթեր են ընկել, պահպանվել է միայն այսքանը։

*** 360ա և 364ա էջերի հիշատակագրությունները կասկած չեն թողնում, որ ձեռագիրն արտագրված է Մովսեսի կողմից, այդ դեպքում ով է Ա. հիշատակարանի «Ստեփաննոս վանական քահանայն»։ Մեզ թվում է, որ 1328 թվի հիշատակությունը վերաբերում է նախագաղափար օրինակին, որն արտագրված է եղել Դրազարկում Ստեփանոսի կողմից, իսկ սույն ձեռագիրը ընդօրինակված է 1651 թվին Մովսես գրչի կողմից, հավանաբար Արզրումում։ Հնագրական տվյալները նույնպես խոսում են հօգուտ այս ենթադրության։

## 269.

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Բրիտ. Թնգ. 41 (Or. 2337) Կոնիբ. Ցուց՝ էջ 87

Գրիչ՝ Յով[հաննէս]

ա

181ա Փառք... ի Թուականիս Հայոց ՉՀԷ. (1328) գրեցաւ եղանակաւոր գիրս ձեռամբ Յով[հաննէս]ի անիմաստ գրչի, ի խնդրոյ քեռորդոյ իմոյ՝ սուրբ և կուսակրօն բեմբական քահանային Ներսիսի, ի վայելումն անձին իւրոյ և ի յիշատակ ծնողաց մերոց..., յիշեսջիք զսրբասնունդ քահանայն Ներսէս, և ծնողս իւր՝ զհայրն իւր զՎահրամ քահանայ, և զմայրն Սիթա, և զեղբարս իւր զԳրիգոր քահանայ և զՍտեփաննոս քահանայ, և զհաւրեղբայրն իւր զՍտեփաննոս կուսակրօն քահանայ, որք յառաջ գնացին յաստեացս. Նաև զիս՝ զՅով[հաննէս] անպիտան գրիչ, և զծնողսն իմ՝ զհայրն իմ զՍտեփ[աննոս] քահանայ և զմայրն իմ զՄեծտիկին, և զեղբարսն իմ՝ զԹորոս քահանայ, և զԿոստանտին, և զՊօղոս, որք արեամբ նահատակեցան։ Յիշեսջիք և զծերունի հայրն իմ զՆերսէս անապատական քահանայ, զի նա ուսոյց զիս...։

Հետ ստացող՝ Մինաս

բ

182ա Եւ ես աղաչեմ այս հանդիսի<br>Յիշման արէք զիս արժանի՝<br>Մինաս գրիչ անցաւորի,<br>Որ գրեցի ի Կեսարիի,<br>Հասեալ աւարտ աղուհացի,<br>Մարտի ամսոյ քսան և վեցի։

## 270.

### ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երևան 5972

Գրիչ

274ա Ի յեւթհարիւր հայոց թվի,<br>Եւթանասուն և եւթնեկի,<br>Ի քսան և վեց ամսո հոռի,<br>՚Ի ի քսան և ինն յունվարի,<br>Վճարեցաւ երգ սրբբալի,<br>Զոր սասցեալ տէր Ներսէսի<br>Կլայեցս և Տարսոնի,<br>Ի յիշատակ Ամիր Սարգսի .<br>Եւ ծնաւղաց իւրոց բարի,

*Որ և աղաչեմք զտէրն ամէն[ի],*
*Պահել ամրողջ յայսմ աշխարհի*
*Զինքն, իւրոյաւքն հաւատի,*
*Ցերկար կենաւք լինել յերկրի,*
*Եւ յեկանելն իւրում յաստի*
*Ընդ Ս իշխանացն պսակ[ի],*
274բ *Ընդ Աբրահամու և ընդ Դաւթի*
*Եւ այլ սրբոց հարցը[ն] նախնի,*
*Զի ես գրել ըղձմամբ սրտի,*
*Զսա, որ Ցիսուս Որդի ասի,*
*Զի յորժամ գա տէրն ամէնի,*
*Նստի յաթոռ դատաստանի,*
*Այնժամ տացէ սմա տեղի*
*Ցեգեմ գրախտըն հայրենի։*
*Եւ ես մեռեալ մեղաւք ի լի,*
*Որ անըզգայ եմ ի բարի,*
*Շատ մի բանեբ կայր ի մտի,*
*Որ չարէի յայս նափորտի,*
*Բայց ոք չըկայր յայսմ վայրի,*
*Որ միտ դնի [ի]մում բանի,*
*Եւ ես աւտար այս գաւառի,*
*Ի գըբան սրբո Կարապետի,*
*Դարձեալ ըզ | | |*

271.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրգ. 6273, էջ 134 (Ի ձոաշէն գիւղն Վանայ)*

*Գրիչ՝* Սոսթանես

*...Շնորհօքն [տեառն] սկսայ և ողորմութեամբ կատարեցի զլուսատու և զպատուական մարգարիտս զայս յաղքատ և ի դառնաբեր ժամանակիս։ Բազում ջանիւ և խանդակաթ սիրով գծագրեցի ես՝* Սոսթանես *յանցաւոր և անարժան ի քահանայս...։ Կատարեցաւ սուրբ աւետարանս ի թուականութեանս Հայոց ՉՀԷ. (1328), ի սեպտեմբերի ԺԷ. (17), ի կաթողիկոսութեան տեառն* Յակոբայ, *ի թագաւորութեան* [Լևոնի] | | |



ՉՀԸ 1329

## 272.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վասպ. Հալ. 91. Ցուց. Սյուն. 179—182 (Վանի հայկավանից եկեղեցի)*

Գրիչ և ծաղկող՝ Թորոս
վայր՝ Տարօ՞ն

...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ ումն անուն Պարոնշահ, որդի Մարտիրոսի, ստացաւ զսուրբ աւետարանս, յիշատակ իւր և կենակցին իւրոյ Փափրխկանն, փոխեցելոյն՝ ի Քրիստոս, և բարի ծնաւղաց իւրոց Մարտիրոսի և Փոքր տիկնոյ, և ի վայելումն որդւոյ իւրում Թաթուլի և այլ եղբարցն, որ եռափափագ սրտիւ ցանկացեալ այսմ հրաշագործ բանից փրկչին Յիսուսի Քրիստոսի, ստանայ զսա յարդար գոյից իւրոց, յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց և որդոցն՝ Թաթուլին, և Աւետվորին, և Նաթանիէլին, և Երանոսին, և պարոն Վարդին, և բարի կենակցին իւրոյ Իկզելին,... և Սարգիս քահանայի, որ կամակից եղև Պարոնշահին, որ ստացաւ զսուրբ աւետարանս։

Բայց յորժամ գրեցաւ սուրբ աւետարանս էր թիւ ժամանակի գրութեան սորա յելիցն նախաստեղծիցն մարդոցն ի դրախտէն՝ ԶՌ. և ԽՇՂ. և ինն ամ (6599), ըստ եւթանասնիցն, որում մեք վարիմք. և է ի մարդեղութենէ բանին աստուծոյ, անժամանակ էին և փրկչին Յիսուսի Քրիստոսի ամս՝ ՌՅԻԸ. (1328), իսկ ըստ թուոյ խոսրովային Յաբեթեանս տումարի ՉՀԸ. (1329), և էր մեծ շրջանին՝ ՄԽԳ. (243)։ Ի յառաջնորդութեան արքեպիսկոպոսի տէր Ստեփաննոսի, և յաշխարհակալութեան մեծ ինքնակալին Բուսայիդ ղան կոչեցեալ, որ տիրէր բազում ազգաց, ունենալով ի ծովէն Պոնտոսի մինչև ի ծովն Կասպից և մինչև ի գետն Ջահուն կոչեցեալ։*

Զմեծն իմաստից և զպետն վարժից, զկայծակնամաքուրն և զաբեղակնամիտն Եսայեա՝ զգլուխն արեւելեան տոհմիս, զի իբրև զարեգակն փայլեաց ի կորնթարթն երկնից, ընդ որոյ թևօք բազումք տարբանան։ Ընդ որում և ես անարժան Թորոս, ընդ հովանեաւ նորա բազում ժամանակս խնամօք աշխատեցայ ի գիր և ի ծաղիկ, և զօրինակ սուրբ աւետարանիս նովաւ ըղորդեցի։ Որոյ յիշատակ սորա օրհնութեամբ և գովութեամբ և գոհութեամբ եղիցի, ամէն և յամենայն ժամ։

Ո՞վ կարէ պատմել, մեք ոչ կարեմք պատմել, զաղէտն, և զողբումն, և զլալումն, և զսրածութիւն, և զսովն, և զգերութիւնն, և զսա-

* Հալայանը ծանոթագրում է՝ «Մի թերթ ընկած է»։ Փիրղալամյանը ձեռագրի հետ ծանոթացել է, երբ հիշատակարանն անթերի է եղել, ուստի Հալ. Ցուցակի պակասը լրացնում ենք Փիրղալամյանի արտագրությունից (№ 6273, էջ 135—136)։

*սանութիւնն, և զայլ ազգի ազգի պատուհաս, որ եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց ի Տարօն աշխարհին, քաղաքին, և երկրին, և ամենայն շուրջակայ գաւառացն, ի յանօրէն ազգէն քրդստանաց սրբաջինջ եղև ամենայն աշխարհն ի քրիստոնէից։*

273.

### *ՔԱՐՈԶԳԻՐՔ ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍԻ*

*Վիեն. 312, Տաշ. Ցուց. էջ 741*

*Հեղինակ՝* Բարթուղիմէոս
*վայր՝* Երնջակոյ գաւառ, գիւղ Քռնայ

ա

13ա *Եւ արդ, քանզի քարոզելն եւ ուսուցանելն յոյժ պատուական եւ օգտակար գործ է, եւ անպատշաճ է զգիտութիւն և զուսումն խնաել եւ թաքուցանել, վասն այնորիկ ես՝ Բարթուղիմէոս փոանկ եպիսկոպոս* Մարաղոյ, *ի կարգէ սրբոյն Դոմինիկոսի, երկեա աստուծոյ, եւ ոչ կամեցա զքանքարն տուեալ ինձ աստուծոյ՝ թաքուցանել...։ Վասն որոյ ջան եդեալ կարգեցի քարոզգիրք վասն օգտութեան հոգոց, զի որք կարեն ընթեռնուլ ի գիրքս բազումս եւ անտի սահմանեալ ոեղան խորտկաց...։ Եւ թէ ողալումն ինչ գտցի՝ թողութիւն արասցէ, վասն զի օտար լեզուավ, որ ոչ գիտէի կատարեալ՝ թարգմանեցի, այսինքն պարսիկ լեզուավ ի հայս,...։ Եւ թարգմանեցաւ գիրքս այս ի ժամանակի, որում էր թիւ մարգեղութեան Քրիստոսի աստուծոյն մերոյ Ռ. եւ ԳԾ, ԼԱ. (1331), յաւուրս սրբազան պապին Հռոմայ, որ* Յովաննէս *կոչիւր, եւ էր նա նստեալ աթոռն Պետրոսի քսաներորդ երկրորդ Յոհաննէս անուամբ, եւ ի կաթուղիկոսութեան Հայոց տեառն* Յակոբայ, *որ էր յոյժ հնազանդ սուրբ եկեղեցւոյն Հռոմայ եւ հրամանակատար։*

*Թարգմանիչ՝* Յակոբոս

բ

*Եւ ես նուաստս եւ յետինս իմաստասիրաց* Յակոբոս, *որ արժանի եղէ միաբանութեան սուրբ եկեղեցւոյն Հռոմայ, եւ հասա առ ոտս առն աստուծոյ տէր* Բարթուղիմէոսի, *եւ իբրև ծարաւ ոք գտեալ զջրհորս ոսկեղէնս լի կենդանի ջրով, եւ խմեցեղէն եւ բեկեալ ամանով հանի սակաւ մի յաղբերէս, եւ զովացուցաք զծարաւ մեր։ Զի տէր* Բարթուղիմէոս *ուսեալ էր զպարսիկ լեզուն, նաև ես սակաւ մի ծանօթ էի այն լեզուին, որով և զգիրքս զայս բազում ջանիւ փոխեցաք ի հայս, ի գեղեցկանիստ երկիրս, որ կոչի* Երընջակոյ *գաւառ, ի գեղս* Քռնայ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, որ նոր շինեցաւ զօրութեամբ կուսին Հ. (70) աւր։ Եւ այս ամենայն բարեաց եղեւ պատճառ ուսումնա-*

սէր եւ արիաջան, վառեալ աստուածային հրով ի սէր միաբանութեան սուրբ եկեղեցւոյն Հռոմայ Յոհան վարդապետն, որ Քռնեցի կոչիւր, եւ որ յոյժ հմուտ եղեալ էր ի մէջ ընկերաց իւրոց Հայաստանեայցս ուսմանն։ Եւ այնու ոչ լցաւ փափաք բանասիրութեան իւրոյ, զի առեալ էր ստկաւ մի զճաշակ գիտութեան Հռոմայեցւոցն։ Վասն որոյ իբրեւ զՑեսուս Նաւեա երթեալ լրտեսեաց զերկիր Աւետեացն՝ այսինքն ճշմարտութիւն Հռոմայեցւոցն, եւ երեր ի նոցանէ պտուղ գեղեցիկ եւ ողկոյզ բարեհամ լծակաւ՝ բազում նեղութեամբ՝ զվերոգրեալ այրն աստուծոյ զսուրբն Բարթուղիմէոս՝ եւ բնակեցոյց ի դեւղս Քռնայ, ծառայելով նմա իբրեւ մի ի սբբոցն, եւ ետ շինել գհրաշալի եկեղեցիս եւ զբնակութիւնս բարեպաշտ առն պարոն Գորգայ առաջնորդի դեղջս Քռնայոյ։ Եւ ոչ թաղոյց զայսպիսի գանձս միայն վասն ինքեան, այլ եւ բազումս յորդորեաց ի միաբանութիւն սուրբ եկեղեցւոյն Հռոմայ եւ քաջ վարդապետութեան նորա, եւ բերե[ա]լ զընկերակիցս իւր՝ արար կցորդ այսմ մեծի բարութեանս։*

274.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երեւան 7659 (տես նաև 1504 թ.)

Գրիչ՝ Գրիգոր
ստացող՝ Ասլան
վայր՝ Օրտուբազար

ա

352բ ...Արդ, այսմ աստուածային և հոգևոր գանձուցս և անշիջանելի լապտերացս և ամենազօվ գերահրաշ պարգևիս ցանկացօղ եղև աստուածասէր և արդարամիտ, հեզահոգի և հաւատարիմ քրիստոն[ե]այս Ասլանս,** և ստացաւ զսուրբ աւետարանս զայս և ետ գրել զսայ ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ անջինջ իւր, և ծնօղաց իւրոց՝ հօր իւրոյ Սամաղավլին և մօր իւրոյ Մարգարտին, և եղբօր իւրոյ Զաքուխին, և Շնոփոր տիկնայ՝ յօժանդակի սորա, և ամենայն արեան մերձաւորաց և սիրելի բարեկամաց սորա, որոց լիցի սայ առ ամե-
353ա նեցուն պատճառ փրկութեան և առաջնո ‖ րդ երկնաչու ճանապարհին։ Ընդ նմին յիշեսջիք զփծուն և զանարհեստ գրիչս՝ զԳրիգոր երէցս և զծնօղսն մեր ի Քրիստոս։

---

* Հիշատակարանի բնագիրը կազմել ենք մի շարք ձեռագրերի (հատկապես Երևան 6564), և Ղ. Ալիշանի համառոտ հրատարակության («Սիսական», էջ 374—375) օգտագործմամբ։ Հիշատակարանը տեղադրում ենք 1329-ի թվաշարքում, որովհետև ԺԴ. դարում գործածվող տոմարով քրիստոնեական 1331 թվականին համապատասխանում է արդյան թվագրության 1329, կամ հայկ. տոմարի ՉՀԸ. թվականը։ Այսպես է վարվել նաև Ղ. Ալիշանը։

** Հիշատակարանի սկզբից, ուր գրիչը ընդարձակորեն փառաբանում է ավետարանի արժանիքները, հետաքրքրական են միայն Ասլանի հոգևոր հայր Յովհաննէսի մասին գրված հետևյալ տողերը. «Բարեպաշտ և մաքուր կուսակրօն ծերունիս մանկտաւագ Յովաննէս, հոգևոր հայր գոլով ստացողի սուրբ աւետարանիս՝ Ասլանիս» (էջ 351բ)։

*Արդ, աւարտեցաւ լուսապարփակ և աստուածային սուրբ մատեանս այս յըսա մեղ ի մարգարէութեանէն տեառն մերոյ և կենարար փրկչին Յիսուսի Քրիստոսի ի ՌՅԼԲ. (1332) ամի, և ի լուսաւոր վարդապետութենէ սուրբ ծնողին մերս և երջանկին Գրիգորի ՌՃԼ. (1130) ամի, և ի թուականութեանս Հայոց տումարի, որ Արեւթական կոչի ՉՀԸ. (1329), և ի փոքր թվի ՄԽԶ. (246). ի թագաւորութիւն նետողական ազգին* Բուսայիտ Բահատուր *ղանին, և ի թագաւորութիւն Հայոց աստուածասիրին և բարեպաշտին կորովամիտ առաքինոյն* Լևոնի *Չորրորդի ի կարգս թագաւորացն Հայոց* Լևոնեանց, *և սիրեալ ի քաջ նախնեաց կայծակն, ուղղափառ յոյժ, և ի հայրապետութեան տեառն* Յակովբայ, *և ի յառաջնորդութիւն ‖ աստուածապահ*
353բ
*նահանգիս* Օրտուբագրնուս՝ Սարգիս *քոր[եպ]իսկոպոսի հայրապետական աթոռոյն։*

*Արդ, ես՝ ամենամեղ անձն և տկար ոգի* Ասլան, *ստացող սուրբ աւետարանիս, ի ձեռն* Սարգիս *քոր[եպ]իսկոպոսի նուէրս ընծայեցի զսայ* Օրտուբազարի *մեծի եկեղեցւոյս սրբոյ Սարգսի զօրավարին, ի յաճումն և ի հաստութիւն անկապուտ գանձուցն աստուածայնոց, որ ի նմա մթերեալ և ամբարեալ կա. զոր տէրն մեր և աստուած հաստատ և անզրգուէլի պահեսցէ զսայ ի վերայ առաքելական վիմի։ Եւ մի ոք իշխեսցէ շորթել կամ գողանալ զսայ ի յայս եկեղեցւոյ, և կամ կտրել, կամ ջնջել զյիշատակ մեր աստի, զի մի և ինքն ջնջեսցի ի գրոյն կենաց։ Եւ որ զմեզ յիշէքզ, յիշեալ լիջիք ի յարդար դատաւորէն ողորմութեամբ*
354ա
*և քաղ ‖ ցրուէթեամբ զթութեանն, ի հանդիստն սիրողաց և ի խորանն սրբոց Իւրոց։ Նայ և զիս արարէք յիշման արժանի, զանարգ և զանպիտան հողս յամենայնի, զզրկեալս ի տիրապէս շնորհաց հոգւոյն և զխաւարեալս մեղացն սրգասեօք, ի զրունս զատաստանին հասեալս և երկեղիւ դատաւորին պակուցեալս՝ զԱւագ դպիրս, որ և նկարեալ ծաղկեցի և կազմեցի զսուրբ աւետարանս։ Յիշնողիք և զծնողսն մեր և զբարեմիտ աշակերտս մեր զՍնոփոր դպիր, որ շատ աշխատասիրեցաւ ի սմա։ Եւ տէր Քրիստոս յիշողացդ և կարդացողացդ ողորմեսցի, և յիշեսցէ յանճառ բարութեանս, և արժանաւորս արասցէ լսել զերանաւէտ բարբառն, եթէ՝ եկայք օրհնեալք հօր իմոյ, և թէ՝ մտէք յուրախութիւն տեառն ձերոյ, ամէն։*

Բ

349բ
*Յիշեցէք ի Քրիստոս, աղաչեմ, ըզզանապաստ ի բարեաց զԱւագ դպիրս, որ զսուրբ աւետարանս ցանկագրեցի մեծ սիրով ի յընդիր օրինակէ մեծ վարդապետին* Նայխա, *և տէր զձեզ յիշէ ողորմութեամբ և զթութեամբ, ամմէն։*

## 275.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա, Տ.-Ավեախյան, Ցուցակ, էջ 148*

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Ակներ

346ա ...Գրեցաւ սա ի Կիլիկեցւոց աշխարհ, ի լեռնային կողմանս, յաստուածարնակ և ի հռչակաւոր ուխտս Ակներ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ սրբոցս, ի յոյժ ազնիւ աւրինակէ, զոր է ուղղեալ մեծիմաստ և սուրբ վարդապետն Գէորգ Լամբրունեցի, ձեռամբ ամենաթշւառի Կարապետի՝ ժանտատես գրով և բազմաշփոթ մտաւք։ Որք հանդիպիք սմա խոնարհեցարուք սիրով առ իմ նուաստութիւնս, և մի ըստ արժանոյն բամբասէք զհամարձակութիւնս իմ, զի ոչ յանձին զաւրութիւն վստահացեալ գրեցի, այլ ի փափագ սիրոյ, թերևս պատճառ լիցի փրկութեան հոգւոյ իմոյ և զերծումն յանշէջ հրոյն, նաև ծնողաց իմոց և ամենայն զարմից, յիշմամբ տէր ողորմեայիւ պատահողի սմա սուրբ եղբարց։ Եւ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՉՀԸ. (1329), ի հայրապետութեան տեառն Յակովբայ և ի թագաւորութեանս* Հայոց Լևոնի որդւոյ Աւշնի։ Արդ, որք պատահիք սուրբ տառիս յիշեսջիք զեղկելի գրողիկս զԿարապետ, և զծնողսն իմ, և զհարեղբայրն իմ՝ զՎարդան քահանայ, և զմաւրեղբայրն իմ՝ զճոյրապետ՝ զուսուցիչն իմ, և զհանգուցեալ եղբարսն իւր | | |** զԿարապետ և զՍարգիս։ Աղաչեմ յիշել ի տէր զարեամբ նահատակեալ քահանայ զՎարդան, որ զաւրինակս էր գրել*** յիշեսջիք ի տէր և զԹորոս քահանայ, որ յուղղելն | | | աշխատեցաւ։ Եւ ես դարձեալ յերեսս անկեալ աղաչեմ յիշել զժանտատես գրող սորա և զկազմաւղ զԿարապ[ետ]...։ Յիշեսջիք ի տէր և զՍարգիս քահանայ և զծնաւղ իւր, որ զգիրքս ծաղկազարդեաց...։

## 276.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

*Ալիշ. Սիսուան, էջ 155 և 156*

Վայր՝ Ձորոյ սուրբ Թորոսի վանք

Գրեցաւ ի թուականութեանս Հայոց ՉՀԸ. (1329), ի թագաւորութեանն Լեւոնի աստուածասիրի՝ որդւոյ Աւշնի, և կաթողիկոսութեանն տեառն Յակովբայ, ընդ հովանեաւ քաջայաղթ վկայարանիս, որ կոչի Ձորոյն սուրբ Թորոս, ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ,

---

* Ս. Տեր-Ավետիսյանի ընդօրինակության մեջ՝ «ի թուականութեանս»։
** Մի անուն չի կարդացվում։
*** Կարելի է կարդալ նաև «եւ» գրել»։

աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։ Ողորմեսցի Քրիստոս աստուած Կարապետ քահանայի և ծնողաց իւրոց, որ զծայրս ճառիցս ծաղկազարդեաց։*

...[Ցիշեցէք] զմիաբան եղբայրութիւն հրեշտակաբնակ ուխտին Ակ-Ներոյ, զհողեոր հարքն մեր, զծերունի սուրբ վարդապետն զտէր Վարդան, և զպատուելի քահանայն զՍտեփանոս փակակալն, և զԳրիգորն, և զԿոստանդին զհեզահոգիսն, և զԹորոս ժառանկն, որ ի վերայ ամենայն երախտեացն, զոր արարեալ էին մեզ, յաւելին և զայս, և լցին զփափագ սրտի իմոյ, և շնորհեցին զօրինակն՝ որ գրեցի զսա..., և զյիշման արժանին՝ զսուրբ քահանայն՝ զարեամբ նահատակ[եալն]՝ զՎարգան, որ բազում տառապանօք էր գրեալ զօրինակս, երիս օրինակս մերձ ունելով, և մեզ դիւր ճանապարհ էր կազմեալ։**

277.

## ՄԵԿՆԱԿԱՆ ՃԱՌՔ Ս. ԳՐՈՑ

Երևան 867

Գրիչ՝ Թորոս
վայր՝ Կրակայ գիւղաքաղաք

145բ Արդ, գրեցաւ գիրքս այս ի ժամանակս հայրապետութեան տեառն Յակովբա Հայոց կաթողիկոսի, և ի թագաւորութեան աստուածասիրի և բարեպաշտի Հայոց Լևոնի:

Ես գրել զկենսաբեր գիրքս զայս Թորոս քահանայ, որ է ի սպասաւորութիւն աստուածային և իմաստասիրական բանիս, ի վայելումն իւր՝ ի հոգւոյ և ի մարմնոյ, որ է ստոյգ և յընտիր աւրինակէ, և զիւր քաղցրիկ հայրն Մարտիրոս անուն քահանայ, և զմայր իւր, և զեղբայր իւր զՊաւղոս, աղաչեմ զձեզ, ո՜վ եղբայր մեր, որ հանդիպիք սմայ, թէ ի յաւրինակելոյ կամ կարդալոյ, յիշել սուրբ սիրով և սրտի մտաւք առ տէրն մեր։

Գրեցաւ ծաղիկս այս ի թուա[կանիս] Հայոց ի ՉԾ. և Հ. ե Ը.
146ա (1329), ի գեղաքաղաքն, որ կոչի անուն || Կրակայ, ընդ հովանեաւ սրբոյն սուրբ Սիմէոնի, յորժամ բառնայք՝ նա և բանայք, ո՜վ քրիստոսեան քահանայք, սպասաւորք սուրբ բանիցս, աղաչեմ յիշել սուրբ սիրով և սրտի մտաւք զանարժան և զսուտանուն քահանայ զԹորոս, որ զգիրքս գրեցի, և զեղբայրն իմ զՅոհաննէս քահանայ, և զմիւս եղբայրն

* Հիշատակարանի այս մասը հրատարակված է վիմատիպ, 150 էջում։

** Հիշատակարանի շարունակությունը իր շարադրությամբ վերապատմում է Ալիշանը, փոքրիկ մեջբերումներ անելով բնագրից, այսպես. «Յիշէ և զայլս բազումս, որպէս Յովհաննէս քահանայ և եղբայր նորա «Մարտիրոս սարկաւագ, որ սթուղթս կոկեաց». հոգևոր հարքն՝ Գրիգոր միակեց, և եղբայրն Մարտիրոս՝ եղբօրորդիք Սամուէլի քահանայի արեամբ նահատակելոյ. «զորոց, ասէ, ի մանկութենէ զոհ էի, եւ առաւել այժմ, զի զատունս եասուն, որ հանգեայ ի գրելս, և յորդորող էին միշտ», որպէս և Ստեփանոս քահանայն. և Վասիլ մառնպան, «զի և նա մեզ էր ողորմած», Կարապետ քահանայն, «որ զծայրս ճառիցն ծաղկազարդեաց», և այլ քահանայք, Մարտիրոս՝ «որ զգիրքս կազմեաց», Կարապետ, Յովհաննէս, միւս Յովաննէս, Դաւիթ, Մինաս, Պետրոս, Պօղոս»:

դՑով[սէ՞փ], և զծնաւղքն իմ, աւրհնեսցէ է սուրբ եր[ր]որդութիւն, և աւրհնիչք ոտցա աւրհնեալ եղիցին։ Ողորմութիւն հայցեմ և ես տառապեալս Թորոս՝ սուտ և նուաստ գրիչս, զի թողութիւն հայցեսջիք ի Քրիստոսէ մեղաց իմոց, և ծնողաց, և ամենայն զարմից իմոց. և Քրիստոս ողորմեսցի հասարակաց, այն, որ աւրհնեալն է յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 278.

## ՍԱՆԴՈՒՂՔ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՆԼԻՑ

Երևան 3678

Գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Փոս անապատ

ա

422ա ...Ի թուիս Հայոց ՉՀԸ. (1329) աւարտեցաւ գիրքս, որ կոչի Սանդուղք Աստուածային Նլից, և միւս՝ Յոհան, որ կոչի Աստուածաբան, յանապատս Փոս վերակոչեալ, յաշխարհիս Կիլիկեցւոց, ի թագաւորութեանն Հայոց Զորրորդ Լեոնի աստուածակարգ արքայի, որդւոյ Աւշնի թագաւորի, ի կաթողիկոսութեան տեառն Յակոբոյ, յառաջնորդութեան ուխտիս տէր Ստեփանոս սրբասէր եպիսկոպոսի, ձեռամբ մեղաւոր Հայրապետի, և վերջին ճառս, որ է միաշաբաթի յարութեան տեառն, ձեռամբ Թորոսի, որդւոյ քեռ մերոյ, յիշեսջիք դաշխատաւքս և աստուած զձեզ յիշեսցէ։

բ

423ա Գիրքս այս վերջին, որ է Աստուածաբան Յոհաննու, նոր է թարգմանած յասորւոց ի մերս. և ես անպիտան և մեղաւոր գրողս հանդիպեցայ սմա ի վանս Զարդառենոյ, առ ճգնաւորի ումեմն Ատոմ կոչեցելոյ, որ էր բերեալ զսա ի Թարաւրականէն, և ասէր՝ եթէ ոչ կամեցայ գրել կարգաւ, զի ոչ էր ի մերոց վարդապետաց մաւտ, զարհուրեցայ կարգաւ գրել, զի ահ եղև, զարմանալի իրս է պատմել, որպէս ի դրելոցդ է իմանալ։ Վասն այնր սակաւ մի գրեցի, զի ի գիրս գիտութիւն բազում էր և ես երկնչէի, յուսամ յաստուած եթէ գիտնական ոք հանդիպի և տեսանէ և իմանա զճշմարիտն։ Ես վասն աւգտի գրեցի, վասն իմ և այլոց։ Աղաչեմ զընթերցաւղսդ յիշել զտառապեալ գրաւղս, և աստուած զձեզ յիշէ յիւր ողորմութիւնն։

Գրիչ՝ Վարդան

գ

334բ ...ՉՀԸ. (1329) թուականիս գրեցաւ... այս մատեանս։

...Եղև աւարտ սորա յեղբայրանոցս Փոս կոչեցեալ, ի հայրապետութեան տեառն Յակոբայ, և ի թագաւորութեան Լևոնի, որդւոյ Աւշնի արքայի, ի տաւնի համբարձման տեառն սկսեալ և ի խաչավերաց

տաւնիս վճար եղև ի գրելոյ,* ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ շնորհեսցէ հանգիստ և ողորմութիւն աւրինակիս գրողին՝ Վարդանայ ամենագովելի քահանայի և արեամբ վկայի, այլ և Պետրոսին, որ յաւժար կամաւք ետ, որ գրեցի...։

## 279.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, Ս. Նշան, 20, ՀԱ, 1924, էջ 518

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Փոս անապատ

080 ...Գրեցաւ աւետարանս այս ձեռամբ մեղապարտ ծառայիս աստուծոյ Ներսէսի սպասաւոր բանի, որոյ փափաքող եղեալ երջանիկ քահանայ Գրիգոր, եւ ստացաւ զսա իւր յիշատակ եւ ի վայելումն երկուց որդւոց իւրոց՝ Թադէոսի եւ Սարգսի, որոց տէր աստուած խաղաղական կենաւք վայելել տացէ նոցին ընդ երկայն աւուրս։ Արդ, աղաչեմ զամենեսան, որք պատահէք սմին, յիշեսջիք զտառապեալ գրող սորին զՆերսէս, և զհարազատ եղբայրն իմ զտէր Թորոս, եւ զհանգուցեալ եղբայր իմ զՅովհաննէս քահանայ, եւ զծնաւղսն մեր, եւ զամենայն ազգայինս, եւ զստացող մատենիս զԳրիգոր քահանայ, եւ զորդիսն իւր զԹադէոս քահանայ եւ զՍարգիս եւ զԱւագ, հայրն իւրեանց զԱռաքել քահանայ՝ զհանգուցեալսն առ Քրիստոս։

Ողորմեսցի Քրիստոս աստուած եւ շնորհազարդ քահանային Մխիթարայ, որ ծաղկեաց զմատեանս զայս եւ կազմեաց։ Տէր աստուած ողորմեա եւ Թորոսի միայնակեցին, որ զնիւթս կոկեաց, թողցէ տէր եւ զյանցանս նոցին, որք զաստուած ողորմին ասէն։ Բայց գրեցաւ առ ի սուրբ ուխտս Փոս կոչեցեալ, ի թագաւորութեանս Հայոց Չորրորդ Լեւոնի, եւ ի հայրապետութեան տեառն Յակոբայ, եւ ի թուականիս Հայոց ՉՀԸ. (1329)։**

## 280.

### ՇԱՐԱԿԱՆՈՑ

Վիեն. 180. Տաշ. Ցուց. էջ 497 (տես նաև 1647 թ.)

Գրիչ՝ Յովաննէս Կարեւոր

ա

328ա Գրեցաւ շարակնոցս ի թվ. ՉՀԸ. (1329), եւ ծաղկեցաւ եւ կազմեցաւ ձեռամբ բազմամեղ և սուտանուն աբեղայի Յովաննէս մականուն

* Ըստ այսմ, ձեռագրի գրությունը սկսել է մայիսի 12-ին (կամ 17-ին) և ավարտել սեպտեմբերի 14-ին, ուստի շուրջ 120 օրում ընդօրինակել է 334 թերթ, միջին հաշվով օրը 3 թերթ։

** Սույն հիշատակարանի համառոտ ընդօրինակությունը գտնվում է նաև Փիրղալամյանի ժողովածուի մեջ (Երևան 6273, էջ 135)։

Կարեւոր կոչեցեալ, ի խնդրոյ սրբասէր եղբաւր մերոյ Ստեփաննոս կլաւնաւորի։ Աղաչեմ զպատահաւղքդ յիշել զստացաւղս եւ զաշխատաւղս հանդերձ ծնողովք մի տէր ողորմայիւ եւ աստուած զձեզ յիշէ. եւ անարհեստութեանն եւ սխալանաց մի մեղադրէք, զի ի բազում ամբոխի միջի կայաք, որ անբաւ էր, եւս առաւել աւաարութիւնս։

Բ

303բ Ո՞վ եղբայր տէր Յուսիկ, աղաչեմ զքեզ, խիստ շտապով էի, մի մեղ դնել, այլ յաղաւթս յիշեա։

281.

### ՃԱՇՈՑ

Երևան 6301 (տես նաև 1318 թ.)

251ա Յիշեսջիք և զհողև[որ] զմայրն՝ զԳոհար խաթուն, և զԱզատ զսարգաւաքն, զՈհան՟ և զՍուրբուխ խաթուն, աղաչեմ զամենեսեն շնորհեցէք թողութիւն մեղաց, և որք յիշէք յիշել լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, [որ է] աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Ամիր Շահն ի թվ. ՉՀԸ. (1329) փոխեցաւ յաշխարհէս և սուգ մեծ եթող սիրելեց իւրոց, Քրիստոս աստուած, յորժամ յաթոռ փառաց նստի, լսել արասցէ, զձայն երանաւէտ կոչման արքայութեան երկնից, ամէն։





## 282.

### Մ Ա Շ Տ Ո Ց

Հալէպ. սբ. Մնկ. 100, Սիւրմ. Ցուց. Ա. 170

Գրիչ՝ Յովհաննէս

408 ...Շնորհիւ տեառն... կատարեցի զսակաւ գրկունքս ձեռամբ անարժանի եւ ախմար գրչի Յովհաննէս իրիցու, ի հայրապետութեան տեառն Յակովբա, և ի թագաւորութեան Լևոնի, և յասպարապետութեանն որդւոյ Սմբատա՝ Լևոնի՝ որբասիրի եւ բարեպաշտի։ Արդ, աղաչեմք զամենեսեան, որք ընթեռնույք կամ աւրինակէք, յիշեսջիք զիս՝ բազմամեղս զՅովաննէս երէցս՝ զախմար գրիչս ի սուրբ եւ ի մաքրափայլեալ յաղաւթս եւ՛ է մեղսաքաւիչ պատարագս ձեր, և զծնողսն իմ զհանգուցեալսն ի Քրիստոս, եւ զաստուածասէր որդիսն իմ զպարգևեալսն իմ ի տեառնէ՝ զՍմբատն՝ զգերի վարեալն, զոր եւ ազատեսցէ զնա Քրիստոս աստուած իւր հայրախնամ փառաւքն, եւ զՅոհաննէս սարկաւագն զորբասէրն և զժիրն | | |

## 283.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Ն. Ջուղա, Ամենափրկիչ, 47. Ս. Տ.-Ավետիսյան, Ցուցակ, էջ 150—151
(տես նաև 1606 թ.)

Գրիչ՝ Կիրակոս Եզնկայեցի
վայր՝ Ջղաւնա անապատ

ա

270բ- ...Արդ, այսպիսի պատուական և անգին մարգարտի բաղձա-
-282բ ցեալ իբրև զիմաստուն վաճառականն մեծազարմ իշխանս Վեզեն՝ մականուն կոչեցեալ Վրթանէս, որ արհամարհեաց զսնոտի փափկութիւն կենցաղոյս՝ խարազանազգեստ եղեալ կրաւնաւորեցաւ, և շինեաց եկեղեցիք մեծապայծառ, հանդերձ եղբարբն իւրով Պիչար իշխանաւն յանուն սուրբ Աստուածածնին. և շինեալ եկեղեցին Դեղձանավանաց՝ սալեցին, և զժամանատունն գեղ[եց]կապէս յաւրինեցին, և ժողովեալ բազում կրաւնաւորս, և զցայգ և զցերեկ արտասուաթոր պաղատանաւք յաստուծոյ զթողութիւն յանցանաց և զխաղաղութիւն ամենայն աշխարհի [խնդրէն]։

Արդ, ընդ այլ բարեացն, զոր արար և առնէ բազում տենչանաւք և եռանդնաշարժ բաղձանաւք, ետ գրել և զաւետարեր կտակս ի վայելումն անձին իւրոյ և եղբարց իւրոց Ազատային և Պիչարին՝ յաղթող և քաջ իշխանացն բարեսիրաց։

Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս հայկազեան տումարիս ՉՀԹ.(1330). ի հայրապետութեան տեառն Յակոբայ, և ի թագաւորութեան Հայոց Լևոնի, և վրաց Գէորգայ, և ի դանութեան Պաւղոյիտի-յանապատիս Զդաւնա, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և աստուածակիր սուրբ Նշանացս։ Ձեռամբ ամենամեղ և անարժան ծառայի աստուծոյ Կիրակոսի՝ պիտականուն վարդապետի Եզնկայեցւոյ, Նշդեհի։

Արդ, աղաչեմ զամենեսեան՝ զպատահողսդ այսմ սոփերի, զվերոյասացեալս Վեցեն ճգնաւոր և զեղբայրն իւր զպարոն Պիչար յիշեցէք ի Քրիստոս, որ յոյժ փափաքմամբ. գրել ետուն զաւետարանս և ծաղկել ոսկով, և կազմեցին ոսկետուփ արծաթապատ, և ակամբք և ընդելուզեալ մարգարտով զարդարեցին։ Յիշեցէք և զդեռաբողբոջ մանուկն զՀասան զորդի Պիչարին, և զԱւլատայն, և զՎարդայն՝ որդի նորա, և զքոյր պարոնացս՝ զԽորիշահ, և զկլուխ նորա՝ զպարոն Ձէարն՝ ամենայն զաւակաւք, և զմիւս քոյրն՝ զՎախախ՝ ամենայն ընտանեաւք, և զմայր պարոնացս՝ զԴաւփ, և զԹաղթանի՝ զուգակից Պիչարին։ Այլ և զծնաւղսն Վեցենա՝ զպարոն Վարդան և զՄահան յիշել աղաչեմ՝ զփոխեալսն առ Քրիստոս, և զհանիկն՝ զՎախախ, զսնուցանաւղ պարոնացս և զյոյժ երախտաւոր՝ զմայր Վարդանա և զհանիկ սոցայ, որ ամենայն բարեպաշտութեամբ զարդարեալ էր։

Աղաչեմ խոշորութեան գրոյս և սխալանաց թողութիւն շնորհել և զսխալն ուղղել սիրով, զի մեք չէաք հմուտ կատարեալ քերթողական արհեստի գրչութեան, այլ յոյժ սիրով բռնադատեալ եղէ յաստուածասէր առնէս Վեցենա։

Եւ վերըստին աղաչեմ յիշել զվերոյգրեալսն, և զմեզ՝ ծնողաւք, և վարդապետաւք, և եղբարբք, և զնախնեաւք, որպէսզի մեք՝ յիշեցեալքս և յիշողքդ, արժանի եղիցուք ողորմութեամբն Քրիստոսի և արքայութեան նորա, և նմայ փառ[ք] յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Յիշել աղաչեմ զյոյժ հաւատարիմ պաշտաւնեա միայնակեցիս զՅովաննէս, և զզաւակս նորա, և զմիւս սպասաւորն՝ զԵղբայրատեղն, և զՍ̄նորհէ՝ եղբայր նորա, և զՄոլոշ տնտեսն, որ բազում բարութիւնս արարին մեզ նման աստուածասէր պարոնի իւրեանց։ Յիշել աղաչեմ և զաշակերտն իմ զՄկրտիչ՝ զսպասաւորն իմ և զհետող (*) մագաղաթիս և զծնողսն իւր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Յիշել աղաչեմ և զԳէորգ կրաւնաւոր, որ աւգնեաց յուղղելն, և նշդեհակից մեզ էր և ցաւակից յամենայնի, և աստուած զյիշողսդ յիշէ և որ զամէնն ասէ, ամէն։

Բ

138ա ԶՎեգեն ճգնաւոր, ստացաւղ աւետարնիս կտակիս և զԿիրակոս փցուն գրիչ յիշեցէք ի Քրիստոս, և Քրիստոս զձեզ. յիշէ, ամէն։*

284.

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա, Ս. Ստեփաննոս եկեղեցի. Ս. Տ.—Ավետիսյան, Ցուցակ, էջ 157
(տես նաև 1442 Թ.)

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ գիւղ Լոնգշէն

284բ ...Ըստ նմին աւրինակի սրբասէր և իմաստուն ճոխ տանուտէրս այս Կոստանդ և հաւատարիմ կենակիցն իւր Աւագ տիկինն միշտ հանապազ բոլորոքէին ի սէր սուրբ և տիեզերաքարոզ քառավտակ սուրբ աւետարանիս. և ըստ ընաւոր բարուց բարւոյն, ախորժական մտաւք և մեծաւ տենչմամբ, ի խալալ արդեանց ստացան զսա անջնջելի արձան...և ամէնաւրհնեալ բարի զաւակաց սոցին՝ որդոյն Յոհանէսի, և դստերն Խուանդ խաթունի...

Եւ արդ, ես՝ յոգնամեղս և փցունս ի գրչաց անպիտան Խաչատուր սուտ կրաւնաւոր, տեսեալ փափաք և զսէր սոցա, յանձն առեալ ըստ իմում կարի, յանգ հանեալ կատարեցի զխնդիր սոցա։ Շնորհաւք և ողորմութեամբն աստուծոյ գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՉՀԹ. (1330) ամի, ի գիւղս, որ կոչի Լոնգշէն**. ընդ հովանեաւ սուրբ Յովանիսի, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի յաշխար[հ]ակալութեան Բուստիտի, ի դառն և ի վշտաբեր ժամանակի, որ հարկ կու տանք վասն Յիսուսի, որ երբ նստի տէրն յատենի, նա զհա[ր]կատուքն պսակի։

Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովն աստուծոյ, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ ընթեռնելով, յիշեցէք ի Քրիստոս զպարոն Կոստանդ, և զհոգևոր մայր մեր զԱւագ, և զորդեակսն իւրեանց՝ զՅովանէսն և զԽուանդ։ Դարձեալ յիշեցէք աղաչեմ...զպարոն Հազրպետ, զմեր հոգևոր մայրն՝ զկենակիցն սորին, հանդերձ ծաղկեալ զաւակաւքն իւրեանց, որ. մեզ սպասաւորեցին ի գրել աւետարանիս, զմեզ կերակրեցին, զմեզ ծառայեցին, զմեզ լուացին, և զմեզ թափեցին յայս յաւտարութիւնս։

Դարձեալ աղաչեմ յիշել զիս՝ մեղապարտ գրիչս, և զիմ ծնողսն, և զեղբարսն, և զամենայն ազգատոհմսն՝ զկենդանիս և զհանգուցեալս ի Քրիստոս, և որք ի նիւթ թխթիս աշխատեցան։

* Ձեռագրի 283ա—287ա էջերի վրա գտնվում է «Գեղամայ երկրի տէր և իշխան» Մելիք Շահնազարի ընդարձակ և պատմական մեծ արժեք ներկայացնող հիշատակարանը, 1608 թվականից։

** Ձեռագրի նկարագրության բաժնում «տեղի գրութեան» հարցի դիմաց տեղանունը գրված է «Լանկշէն» ձևով։

## 285.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա, Ս. Կատարինեայ վանք (Չարսուքթաղ), Ս. Տէր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 166-167։*

*Գրիչ՝* Ռստակէս

*Վայր՝* Արտազ գաւառ, սուրբ Թադէոսի վանք

ա

294բ *Եւ արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայկազեան տումարի ՉՀԹ. (1330) յա[մ]սեանն յուլիս,- ի գաւառս, որ կոչի* Արտազ, *ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս Թադէոսի և աստուածամուխ սուրբ գեղարդեանս, ի թագաւորութեան Հայոց* Լևոնի, *և ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *յառաջնորդութեան այսմ նահանգի տեառն* Ջաֆարիայի *և տէր* Տիրացու՝ *հեղի և սրբասիրի, զոր տէր Յիսուս անսասան պահեսցէ զոսա ամենայն համացեղիւք և ամենայն հնազանդելովք* իւրեանց, ամէն։*

*Այլ ես՝* Մարգարէ *քահանայ, ստացա զաստուածաբարբառ և զաւետարեր սուրբ աւետարանս ի հալալ արդեանց մերոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝* Ազաւշահին, *և հաւրեղբաւրն իմոյ* Հազարին, *և մաւրն իմոյ* Ղումարկանն, *և հարազատ եղբարցն իմոց* Շաֆարպէկին, *և պարոն* Սարգսին, *և ամենայն զաւակաց մերոց, այլև պարծանաց հաւրեղբաւրորդեացն իմոց՝* Ամիրասլանին *և* Ամիրշահին, *և նախնեաց և աստուածատուր զաւակաց նոցա, ամէն։*

*Եւ արդ, ես՝ մեղապարտ գրիչ* Ռստակէս, *յերկիր անկեալ աղաչեմ զղասս լուսեղամ սուրբ քահանայից և սարկաւագաց, զի որք հանդիպիք յսյսմ տէրունական հրամանիս կարդալով, կամ լսելով, կամ աւրինակելով [յիշեսջիք] զվերոյգրեալս ի սմա...և զհոգևոր հայրն իմ՝ զպատուական քահանայն* զՆղիսէ, *և զամուսինն իւր* զԱմենտիկին, *և զամենայն զաւակս նոցա։ Յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զպարոն* Էլթանն *և զզաւակս նորա, յիշեսջիք ի տէր զպատուական և զերևելի տանուտէրքն՝* զՍլպասան, *և* զՄելիքշահ, *և զայլ մեծ ու փոքր տանուտէրք։ Զպատուելի և զսրբասէր քահանայքն՝* զԿարապետ, *և* զՅովաննէս, զՋատեսց *(˜), և* զՍամուէլ *յաղաւթս յիշեցէք, ընդ նոսին յիշեցէք ի Քրիստոս* զՅովհաննէս *քահանայն և* զՅակոբոս, *որ զաւրինակն ետուն...։*

*Ծաղկող՝* Յովսէփ

բ

*Յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զպարտապանս տեառն իմում բիւր քանքարաց՝* զՅովսէփ *ծաղ՚ող սուրբ աւետարանիս։*

---

** Ընդօրինակության մեջ գրված է՝ «անհնազանդելովք», փոխանակ՝ «ամ. (ամենայն) հնազանդելովք»-ի։*

286.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վիեննա. 184 (1565), Ցուց. հա. Ա էջ 760-770

Գրիչ՝ Մարտիրոս

263բ Փառք... որ արժանի արար զմեղուցե[ա]լ ծառայս հասանել ի վերջին գիծս յամի Չ. երորդի Հ. երորդի Թ. երորդի (1330) հայկազեան տոմարի [տոմարի]...։

Արդ, այս երանելի և բարեհոգի կրաւնաւորս Քաւուէս ցանկացող եղե[ա]լ սուրբ աւետարանիս, և ետ գրել զսա յարդար վաստակոց իւրոց՝ անձին իւրոյ ճեմարան սրբութեան և վարժարան մաքրութեան, գանձ պատուական, և մարգարիտ գեղեցիկ, և յիշատակ յաւիտենական։

Արդ, երեսասող մաղթանս արկանելով առաջի, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք զսուրբ աւետարանս կամ աւրինակէք, յիշեսջիք ի Քրիստոս զսրբասէր միայնակեցն զՔաւուէն, և զծնողսն իւր զԱյերոն՝ զփոխեցե[ա]լն ի Քրիստոս, և զմայրն իւր՝ զՄինայն, զաւակն իւր՝ Այերոն, զհոգեոր զաւակն իւր զՍարգիսն, և զնորին զաւակն զՍտեփանոսն, և զնորին զաւակն զՇատին, և զմայր նորին Ատրան, զհաւրեղբայր իւր զԾրանոսն; և զկենակիցն իւր զՔեմիրն, և զզաւակ իւր՝ զԷմինայ, և զպապն իւրեանց զՔաւուն, և զմեծ Սարգիսն, զՊարոնիկն, և զՌւմեկն, և զԽաչերեսն, զԱստուրն, և զՆորշահն, և զայլ ամենայն արե[ա]ն մերձաւորս։

Արդ, զարձե[ա]լ, կրկին յերես անկեալ աղաչեմ զամենեսե[ա]ն, ո՜վ ընթերցողք սուրբ աւետարանիս, յիշեսջիք ի Քրիստոս զգրող սուրբ աւետարանիս՝ զԹակոբ քահան[այն], որ նահատակեցաւ յանաւրինաց եւ ոչ ժամանեաց յաւարտ գրոցս։

Դարձեալ, կրկին աղաչեմ սրտառուչ մաղթանաւք զամենեսեան՝ յիշեսջիք ի Քրիստոս զմեղուցե[ա]լ և զանարժան յետին գրիչ Մարտիրոս սուտանուն, որ գրեցի յիշատակարան, և զճապաղ ցանկ, և զգլխագիր գրոյս։ Ցիշեսջիք և զծնողս..., և զաւակն Մանուէլ քահանայն և զմայր իւր զՄամախաթուն, և զՍտեփանոս, և զՍիրան...։

287.

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 7125

Գրիչ՝ Սարգիս

ա

Գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի մանրուսումն ի Թվականիս Հայոց ՉՀԹ. (1330)-ն, ‖ ձեռամբ Սարգսի նըւաստ և անարժան
262ա
քահանայի, ի խնդրո պատուական և երջանիկ կուսակրաւն քահանա-

*յի Տիրացուի, ի վայելումն անձին իւրոյ և ի յիշատակ համաւրէն ազգականաց իւրոց, ի Թագաւորութեանն Լևոնի Հայոց, որդոյ արքային Հայոց Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Յակովբայ։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ ուսմամբ*
262բ *կամ աւրինակ գնելով, յիշեցէք ի մեղաց Թող || ութիւն զպատուական քահանայն զՏիրացուն, և զծնողսն իւր, և զամենայն ազգականքըն իւր՝ զկենդանիս և զհանգուցեալսն ի Քրիստոս. Նաև զեղկելի գրաւղ սորին՝ ծաղկաւղ և ոսկաւղ՝ զՍարգիս Նըւաստ քահանայ, և զծնողսն իմ, և զամենայն ազգայինսն իմ՝ զկենդանիս և զդնացեալսն առ Քրիստոս, աղաչեմ յիշել ի մեղաց Թողութիւն, և աստուած, որ առատն է ի տուրս ողորմութեան իւրոյ, տացէ ձեզ ընդ միոյն զհարիւրապատիկն, ամէն, ամէն և հազար, ամէն։*

Բ

186բ *ԶՍարգիս անարժան քահանայ, և զհայրըն իմ Գրիգոր քահանայ, և զմայրըն իմ Հեղինէ, և զքոյրըն իմ՝ զդնացեալսն առ Քրիստոս, աղաչեմ յիշել ի սուրբ աղաւթս ձեր, և որ յիշէ յիշեալ լիցի, ամէն։*

288.

*ԱՒԵՏԱՐԱՆ.*

*Երևան 2929*

*Գրիչ՝* Ստեփանոս

324ա *...Բարեսէր և իմաստուն պարոն Յովանէս և բարեպաշտ կենակիցն իւր Յուստինէ մեծաւ տենչմամբ բորբոքէին ի սէր աստուածային գանձուցն, ի պայծառութիւն սրբոյ եկեղեցոյ, և ի վայելումն մանկանց առագաստի, և յիշատակ հոգւոյ իւրոյ՝* Յովանիսի *և* Յուստինէի, *և ծնողաց իւրեանց, և ամենայն ազգականաց իւրեանց։*

*Եւ ես՝ յոգնամեղս և փցունս ի գրչաց* Ստեփանոս *մեղապարտ երէցս, տեսեալ զփափագ և զսէր սոցա, յանձն առեալ ըստ իմում կարի, յանգ հանեալ կատարեցի շնորհաւք և ողորմութեամբն աստուծոյ, յամի ՉՀԹ. (1330) ի Թուաբերութեանս Հայկազեան սեռի։*

324բ *...Եւ արդ, ես՝* Ստեփանոս *մեղապարտ գծողս, աղաչեմ յիշել և զծնողն իմ՝ զ*Պետրոս *քահանայ, և զմայրն իմ՝ զ*Ջաւհար, *և զամենայն ազգակիցս իմ յիշել ի Քրիստոս յոյսն ամենեցուն։*

## 289.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրգ. 6273, էջ 136, Վան, Տիրամայր եկեղեցի (տես նաև 1368 թ.)*

Գրիչ՝ Թորսեղ
վայր՝ Սուլտանիայ

...[Ցիշեցէք] եւ զիս՝ զԹորսեղ երէցս, որ շնորհօք տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զհոգիարողրոջ սուրբ աւետարանս, ի Սուլտանիայ մեծահռչակ քաղաքս, և ծնողաց իւրոց, և ինձ, ի իմոցն ի թուականութեանս Հայոց ՉՀԹ. (1330)։





290.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Սմբատեանց, Երնջակ, էջ 151 (Գանձակի Ոսկանապատ գյուղի եկեղեցի)*

*Ստացող՝* Ստեփաննոս
*վայր՝* Սիւնիք

... *Աւետարանս ի ձեռն ուրումն երեր յաշխարհէն Հայոց, գրեալ ոսկեզաւծ որակաւք ի* Դրազարկն*, ձեռամբ* Թորոս *փիլիսոփայի, զոր անեալ տեառն* Ստեփաննոսի՝ *հզաւր և իմաստուն գիտնականի, վարժեալ ի վարժարանի վարժապետին* Եսայեայ *տիեզերաքարոզ լուսաւորչին, որդի իշխանաց իշխանին՝ քաջ սպառազէն մենամարտիկ զինաւորի* Ջալալին, *թոռն մեծ աթաբակին Հայոց և Վրաց վեհ* Տարսայիճին, *տէր և վերատեսուչ ղահերէց և գլուխ արհիերից աթոռոյս* Սիւնեաց Տաթևոյ *և* Նորավանից *և* Ցախացքարոյ, *պետ երկոտասան գաւառաց, ուրախ եղև իբրև ընծայ ի վերուստ առաքեալ...։*

*Եւ արդ, ես՝ նուաստ եղկելի թշուառացեալս* Ստեփաննոս, ...*աղաչեմ զդասդ սրբազանիցս զպատահողսդ տիեզերաքարոզ աւետարանիս, սրտի մտաւք յիշել զգեղադէշ և զարեգակնափայլ եղբայրն իմ՝ զպարոն* Շահնշահ, *առաջի զենմանն Քրիստոսի...։*

*Նաև յիշել զծնողսն իմ՝ զհայրն իմ* զՋալալն *և զմայրն իմ զամենաւրհնեալ* Գոնցայն, *և յերկար կենդանութիւն խնդրել երկուց եղբարց իմոց՝ պարոն* Էլիկումին *և* Աղբուղային։ *Եղև մեզ այս բաւթ տրտմաղին ի տաւնի զատկին, ի ՉՁ. թվ. (1331)։**

291

## Հ Ա Յ Ր Մ Ա Շ Տ Ո Ց

*Երևան 4083*

*Գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Ծառուտիձոր գաւառ, Խաւմիք վանք

235ա *Փառք... որ ետ նուաստ և փցուն գրչիս հասանել ի վերջք գրոցս, և ինքն աւրհնեալ յաւիտեանս։*

---

* *Հրատարակիչը հիշատակարանը լույս է ընծայել համառոտած, ուստի մութն է մնում, թե հիշատակագիրն ինչ է ակնարկում, երբ գրում է «Եղև մեզ այս բաւթ տրտմագին»։*

Արդ, դրեցաւ հայր մաշտոցս ի գաւառիս, որ կոչի Մառուտիձոր
ի վանս, որ կոչի Խռւմիր, հանդէպ Ծմակավանիցս։
Արդ, ա[յսմ] քառահոս գետոց և աստուածային բարբառոյ <և>
եռափափաք րգձիւ ցանկացեալ մի ոմն ի քահանայից Վարդան անուն,
շարժեալ ի հողոյն սրբոյ, ի Թվական Հայոց ՉՁ. (1331), ի դ[ան]ու-
235բ Թեան Բուսաիտին*, և ի Թագաւորու || Թեանն Հայոց Լևոնի, և ի Թա-
գաւորութիւն Վրաց Գաւրգի, ի հայրապետութեան Հայոց տեառն
Գրիգորոյ, և ի հայրապետութեանն Աղուանից տեառն Զաքարիաի,
յեպիսկոպոսութեան Այրարատեան գաւառիս տէր Գրիգորոյ, յիշխա-
նութեանն պարոնաց պարոնին Շեխ Հասանա, և ի մերոց՝ բարեանուն
և քրիստոսասէր պարոնացս, որ ի մեծ սպարապետէն Հայոց սուրբ
նահատակին Վարդանայ շառավիղէն յառաջ եկեալ, ի տիրասէր և
յաստուածասէր ազգէն Մամիկոնեանց, որդիքն պարոն Վարհամա՝
տէր Ներսէս, Արդուննն, և Բահնն, և հանգուցել ի Քրիստոս եղբայր
պարոնացս Սարգիս, և մայր սոցա Դոտիկա, և քոյր սոցա՝ Թամթէ-
րին, և աստուածատուր զաւակի իւրոյ Սեյիֆին, և ազատածին կենա-
կիցք սոցա Էսուգանն՝ քոյր պարոն**, և ուղղոյ սորա քրիստոսատուր
236ա Զանկիկին, և միւս հարս || ինն՝ Խորիշայի, [ուղղոյ իւրոյ զՀամազաս-
պա]***, քոյր տէր Սարգսի Խաչինոյ տեառն Տափեանց, զի աստուած
զսոսա ընդ երկայն աւուրս պահեսցէ խաղաղութեամբ և յաղթող ընդ-
դէմ Թշնամեաց խաչին Քրիստոսի։
Այլ և Վարդան քահանայս, զոր յառաջն յիշեցաք՝ առաջնորդ
տեղւոյս, որ կոչի Ջերմառուաց անապատ, և մականուն Խռւմիր, խոր-
հուրդս բարիս ի հոգին բերել և լուեալ զբարբառս**** զայս, որ ասէ՝
Երանի, որ ունիցի զաւակ ի Սիոն,... ետ գրել զհայր մաշտոցս ի հա-
լալ արդեանց իւրոց, յիշատակ իւր և ծնողաց իւրոց՝ հաւր իւրոյ
236բ Մխիթար[այ], և մաւր իւրոյ Գ || ածերին, և եղբարց իւրոց՝ Վարդան-
շահին, Հասկանն, Սասնին, և Յուսւպին, և քերց իւրոց՝ յիշատակ ան-
ջնջելի աստ ի կենացս և առաջնորդ կենացն յաւիտենական։
Այլ ես, յետինս ի սարկաւագաց և առաջինս ի մեղաւորաց՝
Մկրտիչ սուտանուն սարկաւագ, որ միայն զձևս ունիմ և ոչ զգործ
սարկաւագի, պարտական տեառն ըիւր քանքարոյ՝ գրող և կազմող
մաշտոցիս, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք կամ
աւրինակէք, յիշման արժանի առնէք զՎարդան քահանայ՝ զստացողս
սորա, և զՄկրտիչ՝ ծրողս, և զծնաւղսն իմ, և զեղբարսն՝ զմարմ-
նաւորսն և զհոգևորսն, զսնուցիչ վարդապետն մեր զՇմաւոն, որ բա-
զում ամաց աշխատեցաւ, և ընդ այն զիս, և հասոյց ի չափ սարկաւա-
գութեան, որ բան և արուեստ՝ զուսումն քահանայութեան և արուեստ

* Բնագրում՝ «Մուսաիտին»։
** Անվան տեղը բաց է թողնված։
*** Ուղղագիծ փակագծերում բերված անունը գրված է տողի վերևում, մանր տա-
ռերով։
**** Բնագրում՝ «զբարգբառս»։

237ա զրագրութ[ի]ւնս ուսոյց. յաշխարհի տանջանացս || և ցաւոցս ոչ ինչ
չեմ զիտացել, և յետ ժամանակիս, որ ծերացաւ և աչքն պակասեցաւ,
և ես ի չափ հասա, որ նմա աշխատանացն փոխարէն պէաք էր առ-
նել, բանսարկուն ընթացաւ և Ճհայն զիս ի նմանէ, զի աստուածն,
որ առատն է ի տուրս բարեաց, հատուսցէ նոցա միոյն հազարապա-
տիկ՝ աստ և ի հանդերձեալն։
Եւ զեղբայրն իմ զՈվանէս, և զմայրն իմ զՇնոհօր տիկին, և
հայր իմ, որ ոչ զանունն գիտեմ, ոչ զինքն տեսել եմ, յիշեցէք,
աղաչեմ։
Զմաճակալք տեղւոյս, զտնտես, զհովիւ, զաշխատաւորքս հասա-
րակաց՝ հանգուցեալ[ք]ն ի Քրիստոս և զկենդանիքս, որք բազում
և որ սակաւ աշխատեալ են յայսմ քաւարանիս, տացէ նոցա տէր
աստուած հարիւրապատիկ և հազարապատիկ աստ և ի հանդերձեալն,
ցաւզ կենաց իջցէ յոսկերս հանգուցելոցս, որք յայսմ [տեղւ]ոջս հան-
237բ գուցեալ են՝ [առ]աջի սուրբ Գրիգորի, և բուսուսցէ յա | | | և զտըն-
տես տեղոյս՝ զՏրեմ[ի]ա, որ փոքր հասակէ ի վէր տնտես կացել ի
վանքս, յիշել աղաչեմ։
Յիշեցէք և միաբանք վանից՝ Մեսրոբ քահանայ, զԻանիկ քա-
հանայ, յիշեցէք զԱւետիսն, որ բազում աշխատեցաւ, գնաց յԵզեկիա՝
քարտիսի ու վաներէց ե[կա]ց, ի վերա իմ կերակրոյ համար շատ նե-
ղացաւ հեմ | | | որ պրծաւ։ Յիշեցէք զՍիմէ[ո]ն Ծ]մակավանից հայրն,
որ ղաւրինակն շնորհեաց։
Յիշեցէք և զհոգևոր մայրն իմ զԱրքայն և զսիրական եղբայր
մեր զեզեկիէլ, որ անրաւ սիրով սիրեցին զմեզ և կամեցան զիս, և
բազում աշխատեցան ի վերա իմ։ Յիշեցէք զաշակերտ իմ զԳեղիկ,
որ զքարտեզս կոկեաց։ Որք կարդայք, կամ աւրինակէք, կամ զաղա-
փար առնուք, յերկնաբաց յաղաւթս ձեր յիշեցէք զՎարդան քահանա,
որ ի բազում աշխատանաց և ի զառն | | | *

## 292

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4217 (տես նաև 1650 թ.)

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Բզնունեաց զաւառ, զիւղ Ադէբ

270ա ... Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ ոմն
քահանայ անուն Սարգիս, որդի սուրբ և մաքուր քահանային Յոհան-
նէսին, որ բարի գործովք հանգուցեալ է ի Քրիստոս, նա ստացաւ
զսուրբ աւետարանս յիշատակ իւր, և կենակցին իւրոյ, և ծնաւղաց իւ-

* Ձեռագրից թերթ է ընկել, հիշատակարանը մնում է թերի։ 237 թերթի եզրը մաշ-
ված լինելու պատճառով մի քանի բառ կամ տառ մնում են անընթեռնելի, և կամ կար-
դացվում են երկբայաբար, վերջիններս տվել ենք ուղղագիծ փակագծերում։

րոց՝ Սուքիասին և Անդր[է]ասին, զոր վայել տացէ տէր աստուած խաղաղական կենաւք, ամէն։

271ա ... Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Յովանէսի՝ ‖ անիմաստ և տխմար գրչի. և իմ, անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարե[ա]լ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատասիրեալ իմ ի սմա, դրեցի անարժան ձեռաւք իմովք յընտիր և ի ստոյգ աւրինակէ՝ կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ, ի մեծ թուիս, ի յեղանակտն շրջագայութեան արեգական ստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով, ըստ արարչութեանցն չափեալ յելանելոյն Ադամա ի դրախտէն՝ ԶՌ. և ԶՃ. և Ա. ամ (6601), ըստ եւթանասնիցն, որում մեք վարիմք. և է ի մարդեղութենէ բանին աստուծոյ ժամանակ էին և փրկչին Յիսուսի Քրիստոսի ամս ՌՅԼ. (1330), իսկ ըստ թուոյ Խոսրովային Յաբեթեանս տումարի ՉՁ. (1331), և էր մեծ շրջանին ՄԽԵ. (245)։ Ի յառաջնորդութիւն տէր Աստուածատրոյ, և յաշխարհակալութեան մեծ ինքնակալին Բուսայիտ խանին, որ տիրէ բազում ազգաց, ունելով ի ծովէն Պոնտոսի մինչև ի ծովն Կասբից, և մինչև ի գետն Ջահուն կոչեցեալ, ի կաթողիկոսութեան հա[յ]կազանց սեռի տեառն Յակովբայ, և ի թագաւորութեան Լևոնի նստեալ ի գահն Կիլիկեցւոց, զոր տէր աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական և զթագաւորական, զի յիշել զանունս նոցա սասանել սաքրին և ոչ ևս երեւին թշնամիք ճըշմարտութեանն։

Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ի գաւառիս Բզնունեաց, ի գեղս առ ափն ծովու, որ կոչի Ադէք, ընդ հովանեաւ սրբոյ Կարապետին, ի վայելումն Սուքիասին և Անդր[է]ասին։

271բ Արդ, որք ճաշակէք յաստուածային ‖ բուրաստանէս և յամենալի սեղանոյս, որք պատահիք սմա՝ վայելողք կամ ընթերցաւղք, յիշեսջիք աղաւթիւք զստացաւղ սուրբ աւետարանիս՝ զՍարգիս քահանայ, և զծնաւղոն իւր, և զկենակից նորա, և զորդիսն իւր՝ զՍուքիասն և զԱնդրէասն, և զամենայն արեան մերձաւորսն ի տէր Յիսուս, ընդ նոսին զանպիտան գրիչ զՅովանէս, և զիմսն զամենայն. և որք զմեզ յիշէք սրտի մտաւք յիշեալ լիջիք յառատ ողորմութեանն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Զտուող աւրինակի զԹաթուլ և զհայր նորա զՊարոնշահ յիշման արժանի առնել ի Քրիստոս աղաչեմ։

ԶՄարտիրոս Բաղի որդին յիշեցէք ի Քրիստոս, ուր մեղացն թողութիւն հայցեցէք յաստուծոյ, զի բազում ծախաւք աւգնական եղև։*

* Մարտիրոսի մասին հիշատակությունը գրված է կարմիր թանաքով։

## 293

## ՄԱՇՏՈՑ

Բեռլ. Թնգ. 30 (Or. 2682), հոնիբ. Ցուց. էջ 58—60

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Արգելան մենաստան

ա

265բ ... Յամի Հայկազեան տումարի Արեգական տոհմի ՉՁ. (1331)-երրորդի, Թագաւորութեան Աբուսայիտ սուլտանի ազգի Նետողաց, և մերում Թագաւորի հայոց ազգի Լևոնի Թագաւորի, և Բուրթելի իշխանաց իշխանի, ի հայրապետութիւն տեառն Զաքարիայի, յեպիսկոպոսութիւն ստացողի գրոց տէր Վարդանայ, ի մենաստանին, որ կոչի Արգելան, ընդ հովանեաւ Աստուածածնիս, և սուրբ Նշանիս, և Յուսկայ որդոյ սուրբ գերեզմանիս, ես՝ Յովաննէս մեղապարտ և տնպիտան ի պիտանիս, հարկեալ յեղբարց, գծագրեցի զշնորհալից զտառս սրբարար և աստուածահրաշ, ըստ խնդրո և փափաղանաց նորակնքեալ եպիսկոպոսի տէր Վարդանա, ի ժամ հասեալ ծերութեանս, քանզի պատուհանք լուսարանաց պակասեալ և ձեռքս խաղանացեալ դողդոջէր վասն բազում ժամանակաց խափանելոյ ի գործոյս, և ոչ դոյր աւրինակ ըստ պատշաճի։ Բայց աղաչեմ զձեզ ի սէրն աստուծոյ չլինել մեղադիր, զի խանգարեալ էր յիշողականս <՟և>ի բազում հոգոց և տրտմութեանց անպատմելեաց, որ եհաս ինձ ի բանսարկուէն, ձեռնտու եղև Քրիստոս, և այսչափ յանգեալ շարագրեցաւ։ Այլ փծնութեան և սխալանաց և այլայլմանց բանիցս աղաչեմ չլինել մեղադիր...։ Աստուած առաջնորդեաց և գծագրեցի զսայ յաւուրս ԻԲ. (22), լալով և յոգոց հանելով, զի այն, որ կարողն էր ի նշանագրութեան յանկարծադէպ և յեղակարծ ժամու, ոստեալ ի գրկացն աստուծոյ, անգաւ ի գիրկսն Բէլիարա, արտաքսեալ յեկեղեցւոյ խառնեցաւ՝ որք բնակէին ի վրանս Կեդարու...

բ

30ա Զերից երանեալ, զերջանիկ և զաստուածահաճոյ, զպատուական հայրապետ զտէր Վարդան, և զծնողս իւր՝ զՅակոբ և զԱղբրաց յիշեսջիք..., և Մովսէս կր[աւնաւոր]՝ զմտերիմ եղբայր մեր..., ընդ նմին և զմեղապարտ գրիչ զՅոհաննէս և զծնողսն իւր... զի ի ծերացեալ ժամանակս այսչափ յանկեցաւ։ ՉՁ. (1331), մեհեկի ԻԲ. (22)։

գ

69բ ԶՏէր Վարդ[ան] և զհայրն նորին զՅակոբ, որ հաւատարիմ էր մենաստանիս, որ կոչի Արգելան, և փոխեցաւ ի Քրիստոս ի Թուականիս Հայոց ՉՀԹ.(1330)։...Ընդ նմին և զկենակիցն իւր՝ զԱղբրաց ընդ եղաբերից կանա[ն]ցն դասեսցէ և ընդ այլ սրբոց կուսանացն։

Դ

103ա Զստացող հողիալից տառիս՝ զարհիեպիսկոպոս զտէր Վարդան յիշեսջիք, ով կարդացողք և աւրինակողք, զի... ետ դրել զսա... ՉԶ. (1331), ի մեհեկի Լ. (30)։

Հետ. ստացող՝ Հիթում

Ե

37ա Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զվերջին ստացաւղ գրոց զաստուածասէր տանուտէր զՀիթումն և զխուր հայրն զՏղայպարոնն, կենակիցն իւր՝ զԱռան և զիւր հայր, ազատորդիքն՝ զԹաւրոսն և զՎարդն և զԿովճայն, և զհարսներն իւր՝ Մանուշակն ե զԱսլայն, և զմայր իւր զՄարուֆն, և զորդիքն Թորոսին՝ զՍուլթայն, և զԱկոբն, և զՍարգիսն, և Խաչուկն, և զԽազար, և զԻսկատարն, և զտուստր իւր՝ զՄարգրիտն, և զԿոկոնին որդիքն, և զՄաղխասուտն, և զՍւսուփն, և զդուստրն իւր՝ Հատիթային, և ամենայն արեան մերձաւորս իւր...։

294

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6527

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Պաւղոախի դաշտ. գիւղ՝ Ազպինար

Փառք... որ զաւրացոյց զտկարութիւնս մեր հասանիլ ի յաւարտումն սուրբ աւետարանիս։

Արդ, աւարտեցաւ քրիստոսահիմն ե առաքելախաւս սուրբ հողոյն
րխումն յառաքեալսն չորեք գետոյն նման ոոոգանել զա || մենայն հա-
230բ ւատացեալ ժողովու[ր]դս, և ի պայծառութիւն մանկանց սուրբ Սիո-
նի, և ի վայելումն քրիստոսապսակեալ և երջանիկ հայրապետաց և
քահանայից և սարկաւագաց. և զաւակիս մեր Իքնատոսիս, որ եղև ի
Թվականիս Հայոց ՉԿԶ. (1317), որ յիւր անուն եմ գրել զսուրբ աւե-
տարանս. վայելեսցէ զերկար ժամանակս՝ զաստիս և զհանդերձեալն,
առաքինի վարաւք և աստուածահաճոյ կամաւք։ Վասն որոյ աղաչեմ
զամենեսեան, որք կարդայք կամ աւրինակէք, յիշեցէք զՎարդան քա-
հանայ, և զհայրն իմ՝ զՍիմեոն քահանայ, և զմայրն իմ Ըռիթա, և
զեղբարսն իմ, և զքեւերս իմ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, ե զքարի
231ա ամուսինս* իմ, և զաւակս մեր՝ զԱռաքելն և Մելէք տիկին, որ վա-
զահաս մանկական հ || ասակին փոխեցաւ ի Քրիստոս և խիստ
տրտմութիւն եղև մեզ, և զԻքնատոս սարկաւագս յիշեցէք ի Քրիս-
տոս...։

Արդ, գրեցաւ սայ ի դաշտս, որ կոչի Պաւղոախի, ի դեաւղս, որ

* Բնագրում՝ ուամունիսա։

կոչի Աղպիճար, ընդ հովանեաւ սրբոյ Սարգսի ղաւթավարի, ի թվ. Հայոց ի ՉՁ. (1331)։ Խոշորութեան և սխալանացս անմեղադիր լերուք, զի չէի հմուտ այսմ գործոյ, զի մեր կարս այս էր, այլ զայսեղեալ ի մտի՝ լաւ է փծուն զ[ր]ել քան ունայն շրջել, ւցի զփափաքումն անձին իմոյ, և Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն։

295

ԱԻԵՏԱՐԱՆ

Վատպ. 90 Լալ. Ցուց. սյուն. 177—178

Գրիչ՝ Դիոսկորոս
վայր՝ Արճէշ

...[Գրեցաւ] յամի թուաբերութեանս Հայոց ՉՁ. (1331), ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, ի դառն և ի վշտաբեր ժամանակի, ի քաղաքիս Արճէշ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ցակոբայ, և սուրբ Գրիգորի։

Արդ, ես՝ ունայնս յամենայն բարեաց և տխմարս ի գրչաց Դիոսկորոսս, սկսա և կատարեցի ըստ իմում կարի զսուրբ զաւետարանս, ի խնդրոյ ամենիմաստ և բարիանուն, աստուածասէր և բարեպաշտ առն Դեղկան։

... Տէր Յիսուս, ողորմեա քաղցրութեամբ ստացողի սորա Դեղկան, և ծնողաց նորա, և Գրիգորուն, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և ննջեցելոց. ամէն։ Նաև սուտանուն գրչի, անարժան քահանայի Դիոսկորոսի, և իմ ծնողացն՝ Սիմեոն քահանայի և Աւագխաթուն (˝), և պատուական եպիսկոպոսին տէր Դանիէլի, որ ուսուցիչ և վարդապետ է մեզ և երախտաւոր։*

296

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4909

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Փոքր Ուռս

ա

268բ ... Գրեցաւ քառավտակ գետ յորդաբուխ սուրբ աւետարանս ի թուագրութեանս Հայոց ՉՁ. (1331), առ ոտս սրբոյ Աստուածածնին Ընծանեաց, ի տեղիս, որ կոչի Փոքր Ուռս, ընդ հովանեաւ սրբոցն Շմոնեկի և սուրբ Թագաւորի, ձեռամբ անպիտան ծառայի՝ մեղաւորի

* Ձեռագիրը պատկանել է Լիմ անապատի գրադարանին։ Հիշատակարանը որոշ կրճատումներով արտագրված է նաև Ղ. Փիրղալամյանի ձեռագիր ժողովածուում (Երև. 6273, էջ 138)։

քահանայի, որոյ անուն Աստուածատուր կոչի, հրամանաւ և արդեամբք Յովանիսի, յիշատակ հոգւոյ | | |

Բ

86բ Զստացող սուրբ աւետարանիս զՅովանէս և զկենակիցն իւր զՆորտիկին յիշեցէք ի Քրիստոս, և զմեղաւորս՝ գրիչս՝ զԱստուածատուր երէց, և զՅովանէս քահանայ և զՅակոբ՝ զընկերսն իմ, և աստուած յիշէ ի բարի գյիշաւղն։

## 297

### ՄԱՇՏՈՑ

Bibl. Nation. 56, Մակլեր. Ցուց. էջ 27

Վայր՝ Ապահունեաց գաւառ, գիւղ՝ Թոնրակ

... Ի վայելումն Խաչատուր կրաւնաւորի և եղբաւրորդւոյ իւրոյ Բարդաղիմոսի, ի թվականութեան Հայոց ՉՁ. (1331), և ի հայրապ[ետութեան] տեառն Յակոբայ, և յարհիեպիս[կոպոսութեան] տէր Աստուածատրոյ, գրեցաւ ի գաւառիս Ապահունեաց, ի գեւղս Թոնրակս, ընդ հովանեաւ սուրբ Ատոմոյ,

## 298

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7628 (տես նաև 1514 թ.)

Գրիչ՝ Երեմիա
վայր՝ Փերուժ քաղաք

159բ ...Յամի ԻՃ. երրորդի Ձ. երրորդի թու. Հայկազեան տոմարի (1331) աւարտագործեալ եղև աստուածախաւս և կենսատու սուրբ աւետարանս Քրիստոսի աստուծոյն մերոյ, զոր ընկալեալ յաստուածալուր վարդապետութենէ երկնաւոր հովուապետին սրբոց աւետարանչացն...։

Զոր իմ՝ մեղապարտ և սուտանուն քահանայի Երեմիայի, ցանկացող եղէ այսմ աստուածախաւս մատենի և ստացա զսա ինձ զանձ անկողոպտելի և փրկանս մեղուցեալ հոգւոյ իմոյ, ընդ Նմին և ծնաւղաց իմոց...

Արդ, ես՝ Թափուրս ի գործոց բարեաց և լցեալս ամենայն յանցանաւք, զերեսս ի մայրն եդեալ աղերսահայց մաղթանաւք խնդրեմ յամենեցունց, զի ո ոք և իցէ հանդիպեսցի սմա տեսութեամբ, կամ ընթերցմամբ, սրտի մտաւք և կարեկցաբար, իբրև եղբաւր սիրելոյ, աղաւթից և յիշման արժանի արասջիք և թողութիւն խնդրեսջիք առաջի մեղսաքաւիչ պատարագին։

Բայց արդ, գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ սուտանուն և փցուն և
160ա յետին գրչի Երեմիայի, || ի հռչակաւոր մայրաքաղաքս, որ կոչի Փերուժ,

*ի հանգստարանս Հայոց, առ դրան սուրբ առաքելոյս և աւետարանչիս սուրբ Մատթէոսիս։*

*Դարձեալ աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, որ հանդիպիք այսմ սուրբ կտակիս, մեզաց թողութիւն հայցեցէք ի պարգևողէն հասարակաց Քրիստոսէ աստուծոյ մերոյ գծողի սորա՝* Երեմիայի *և ծնողաց իւրոց. և որ լի սրտիւ յիշէ, յիշեալ լիցի ի Քրիստոսէ։ Եւ վասն խաշորութեան կամ սղալանաց չլինել մեղադիր, քանզի ժամանակս ձմեռնային էր, որ գրեցաւ, և գծողս ծերացեալ, և կար մեր այս էր, և որ առատն է յամենայնի՝ պարգևիչն տիեզերաց Քրիստոս՝ մեզ և ձեզ ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Դարձեալ աղաչեմ զամենեսեան, մեղաց թողութիւն խնդրեցէք հաւր վանիցս* Յակոբ *քահանայի, և* Վասիլ *քահանայի, և այլ միա[բա]ն եղբարցս, և Քրիստոսի աստուծոյ մերոյ փառք յաւիտ[եան]...։**

## 299

## ԱՆՍԻՋՔ ԱՆՏԻՈՔԱՑ ԵՒ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ՍՄԲԱՏԱՅ

*Վիեն. 439. Տաշ. Ցուց. էջ 900. Մատենադարան Հայկ. Թարգմ. էջ 307—308, Փիրղ. 6273, էջ 139. (տես նաև 1375 թ.)*

*Գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Կիլիկիա

64ր *... Գրեցաւ անսիզք Անտաքոյն և նամաւսո և կանոնք ընթանրական եկեղեցականաց և աշխարհայնոց և Փռանկաց և ամենայն ազգաց ի մի տեղ հաւաքեալ վասն իրաւանց և դատաստանաց, ի թուաբերութեանս Հայոց ՉՁ. (1331), ձեռամբ* Սարգսի *նուաստ և անարժան քահանայի և ոսկուղի։ Որ և հրամայեաց ամենաբարի թագաւորն Հայոց* Լևոն*՝ որդի ի Քրիստոս հանգուցեալ թագաւորին Հայոց* Աւշնի*, վասն գրոցս դատաստանաց, որ գրեցան ի յիշատակ* Յ*ալոյ յաւիտեան։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւկտիք ի սմանէ կամ աւրինակէք յիշեցէք ի բարին Քրիստոս զամենաբարի թագաւորն Հայոց զ*Լևոն *և ի Քրիստոս հանգուցեալ զծնաւղսն իւր՝ զսուրբ արքայն Հայոց* Աւշին *և զ*Զապել *թագուհին իւր, և զամենայն արեան մերձաւորսն իւր, ընդ նմին և զգրող և ոսկող այսմ գրոցս, և որ յիշէ՝ Քրիստոս աստուած զինքն յիշէ ամէն։*

* *Շարունակությունը ոտանավոր է, գրիչը խնդրում է հիշել իրեն և իր մերձավորներին. այդ մասը պատմական հետաքրքրություն չի ներկայացնում։*

## 300

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԱԿԵԴՈՆԱՑԻՈՅ

*Փիրզ. 6272, էջ 139ե*

*Գրիչ՝* Ներսէս
*վայր՝* Փոս անապատ

... *Ի թուականութեանս Հայոց* ՉԶ. *(1331), և ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *և թագաւորութեանս Հայոց Զոր[ր]որդ* Լևոնի, *գրեցաւ գործքս Աղեքսանդր թագաւորին ձեռամբ մեղապարտ ծառայի աստուծոյ* Ներսէսի, *ի սուրբ ուխտս* Փոս *կոչեցեալ*...

## 301

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետ. 97(16) Ցուց. հա. Ա. էջ 436—438.*

*Գրիչ՝* Թորոս Հռոմկլայցի
*վայր՝* Դրազարկ

ա

387ա ... *Երանելի քահանայս* Սարգիս, *բոցով սիրոյն աստուծոյ կենդանախարուկեալ, ստացաւ զսուրբ աւետարանս՝ անձին ի վայելս և յապագայն՝ յիշատակ իւր և որոց ծնան զնա։*

*Արդ, որք հանդիպիք և աւգտիք յիշեսջէք ի բարին Քրիստոս* զՍարգիս *և ծնողսն իւր՝* զՄարտիրոս *և* զՄամատիկին, *որք բարւոք ծնան և ուղղութեամբ սնուցին և աստուծոյ աւանդեցին*...

*Աղաչեմ և ես՝ մեղաւորս* Թորոս Հռոմկլայցի՝ *շարահիւսաւղ սորին, արժանի զանարժանս առնել և յիշել յաղաւթս, զի մեծ յուսով ակն ունիմ խնամոցն աստուծոյ, և այն՝ աղաւթիցն մեր միջնորդելովն*...։

*Գրեցաւ ի թու.* ՉԶ. *(1331), ի թագաւորութեանն* Լևոնի, *և ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *յերկնահանգէտ անապատս* Դրազարկ, *ի լաւ աւրինակէ, տէրամբ* Ցիսուսիւ, *որում փառք յաւիտեանս, ամէն։*

*Ծաղկող՝* Սարգիս

բ

19բ
*Սուրբըդ սբրոց անհասական,*
*Որ ծաղկեցար յազգըս մարդկան*
*Եւ ըզշնորհս քո շըթան*
*Հեղեր՝ աւրհնեալդ յաւիտեան։*

* *Ձեռագիրը, Փիրղալեմյանի ծանոթագրության համաձայն, պատկանել է վանեցի Խալֆայան Համբարձումին։*

Եւ ըստ իմում տըկարութեան
Զքոյս ընծայեմ քեզ սիփական,
Ընկալ զսա, տէր զթութեան,
Եւ յիս նայեա ողորմութեան,
Եւ զծաղկաւղըս անպիտան
Ցողաւթս ձեր առնէք արժան,
Հանուր սեռիւք և ծննդեան,
Սարգիս աբեղ[այ]

Գ

18ա Ամենաւրհնեալ աստուածածին.
Ընկալ զբանս աստուածային՝
Զաւետարանս քո միածնին,
Ինձ յիշատակ և իմ ազգին։
Զի ես՝ Սարգիս, ՚յերես անկեալ
Զքեզ աղաչեմ՝ զայս ուխտս ընկալ.
Ի տղայութեան եմ խոստացեալ
Եւ յոյժ սիրով եմ կատարեալ։

Դ

18ա Զձեզ աղաչեմ սուրբ ուխտիս առաջնորդք Թալ սուրբ աւետարանս յեկեղեցիդ, մինչև ի սպառուած ժամանակի. և մի ոք իշխեսցէ հանել զսա յեկեղեցւոյդ, վաճառել, կամ գրաւել, կամ տալ այլ ումեք. և որ յանդըգնի և հանէ՝ մասն զՅուդային առցէ ի Քրիստոսէ, այլ կացցէ սա ի սուրբ նշխարհքն մինչև ի կատարած բաբեխաւս մեզ, ամէն։

Գրիչ՝ Գրիգոր

Ե.

19բ Զմեղաւոր հողս Գրիգոր և զծնաւղսն իմ, որ զհամաբարբառքս և զգլխահամարքս և զնախագրութիւնքս գրեցի, յիշեցէք ի բարին Քրիստոս, զի և դուք ի նոյն յիշիք. ՉՁԱ. (1332)։

### 302.

### ԱՌԱԿՔ ՍՈՂՈՄՈՆԻ

Հալէպ, Անթիլ. և մառն. Սիւրմ. Բ, 126

Գրիչ՝ Կոստանդին
վայր՝ Մոլևոն դղեակ

Փառք... զի արժանացոյց զանարժանս և զաւբացոյց զտկարս, զբազմափորձ կեանս և զմըրկածուփ կամս անպիտան անձինս Կոստանդեա ի գործ հոգևոր գրչութեան՝ շարադրութեան գրոյ աստուա-

ծայինն Սողոմոնի։ Քանզի մինչ էի ի դղեակն Մոլեոն արգելեալ մեծաքան հրամանաւ՝ արժանապէս ըստ ոմանց կարծեալ իւրաւանց, ըստ որում նոյն ինքն Սողոմոն յիմաստութիւնն ասէ եթէ՝ ձգէր ղնոսա արժանն յայնր վախճանի սագնապ։ Եւ իմ անդր գոլով, ղսպեալ և ճնշեալ կամաւք բարուց նեղասրտութեամբ ղսա արարի սփոփանք մխիթարութեան սրտի իմ, ի ձեռս առեալ գրեցի համարձակութեամբ գրչի առաւել, քան թէ գիտութեամբ արուեստի։ Ի թուականին Հայոց ՁՁ. (1331), ի ժամանակս բարեպաշտին, ճշմարտասիրին ե. գլխեմախոհ պատանոյն՝ մեծի արքային Հայոց Լեւոնի և իշխողին Կիլիկեցւոց նահանգին, որդւոյ Աւշնի, որդւոյ Լեւոնին, ըստ անուանն չորրորդ գոլով ըստ կարգի։ Վասն որոյ սիրելի եղբարք մեր ի Քրիստոս, որք պատահէք աստուածիմաստ մատենին ընթերցմամբ կամ աւրինակաւ, արգասաւոր կամաւք խնդրեցէք յաստուծոյ ծնողացն իմ և ինձ մեղաց թողութիւն, ընդ նմին և եղբաւրն մերոյ Ակոբա վարդապետին՝ քաղաքակցին և համշիրակին իմ, ողորմութիւն ի տեառնէ խնդրեցէք, զի նիւթ թխտիս նա շնորհեաց։ Այլ և զնժդեհակից ընկերս մեր զերիս՝ զՅով[ան]էս ե զՅոհ[ան]էս և զՍտեփանոս, ի մասն բարի յիշատակեցէք։

Բայց և ի ձէնջ մի ծածկեալ լիցի այս, զի եթէ կարգագրութիւն բանից կամ բաժանմունք տանց գրոց ընդ այլ բնաբանս աւրինակաց ոչ համազուգի, մի կարծիս անկանիս եթէ թեւր է աւրինակն, և կամ ի գրելոյն է սխալն, զի վասն պատճառի անզուգութեան աւրինակացն, զի ոչ հետեէր մեկնչին աշխատանս, ի յանձն առի և զբովանդակ խնդրոցն Սողոմոնի, որ է ղրեալ ըստ կարգի՝ ղբնաբանն ի մեկնըչէն սրբոյն Ներսէսի, արտաքս կորզեցի ուղիղ ըստ իմում կարի, որպէս զի ընթերցողին դիւրանտս լիցի սովաւ զմեկնութիւն իմանալ։ Վասն որոյ, ով եղբարք, յաւժարութեամբ յիշեցէք զմեզ, զի և դուք յիշատակեսջիք ի բարեկամս Քրիստոսի, ընդ արդարսն ի կեանսն յաւիտենական, ամէն։

303.

## ՄԱՇՏՈՑ

*Փիրդ. 6273, էջ 140 (Կարին սբ. Աստուածածին եկեղեցի)*

Գրիչ՝ Կոստանդին
վայր՝ Աւագ անապատ

... Ես՝ Կոստանդին ծառա Քրիստոսի, գրեցի զսուրբ մատեանս ի խնդրոյ հոգեոր եղբարց մերոց՝ Յովհաննէսի և Գրիգորի...: Յիշեսջիք զտառապեալ գրիչս զԿոստանդին, և զծնողսն իմ՝ զհայրս իմ զՀեթում, և զեղբարս իմ զԹորոսեղ, հանդերձ Վահրամիւ և Դաւթիւ, և զամենայն ազգայինսն իմ...։

Բայց եզև զրաւ գրչութեան սորա ի սուրբ ուխտս կոչեցեալ Աւագ անապատ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և կենսակիր սուրբ

Նշանիս, ի Թուականիս Հայոց ՉՉ. (1331), հայրապետութեան տեառն Յակոբայ, և ի թագաւորութեան քրիստոսապսակեալ արքային Լևոնի։

304.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8116

Գրիչ՝ Դաւիթ
Վայր՝ Կիլիկիա

277ր ... Գրեցաւ սա ի կիլիկեցւոցս* աշխարհ, ի թուականութեանս Հայոց ՉՉ. (1331), ի հայրապետութեան տեառն Յակոբա, և ի թագաւորութեանս Հայոց Լևոնի, որդոյ Աւշնի արքայի, ընդ հովանեաւ** Աստուածաշինիս և այլ կենսակիր սուրբ նշանացս, ձեռամբ ամենաթշուառ Դաւթի, ժանտատես գրով և բազմաշփոթ մտաւք, ի յընդիր աւրինակէ։

Արդ, ես՝ տառապեալս ի բարեաց յորգիս եկեղեցւոյ Դաւիթս, զի յոր կոչում յոր կոչեցայ, զայն ծոյլ և վատթար*** գործովք աղտեղացուցի։

Ցերեսս անկեալ աղաչեմ զձեզ, ով սուրբ հարք իմ և եղբարք, որք հանդիպիք այսմ աստուածախաւս մա[տենիս] | | |

305.

## ՇԱՐԱԿԱՆՈՑ

Երևան 1601

Գրիչ՝ Սարգիս

... Գրեցաւ եղանակաւոր տառս ձեռամբ բազմամեղ և անարժան սուտանուն քահանայի Սարգսի, ի թուաբերութեանս Հայոց ՉՉ. (1331), ի թագաւորութեանս Լևոնի բարեպաշտի, որդոյ արքային Հայոց Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Յակովբայ. ի խնդրոյ պատուական և երջանիկ սարկաւագին Սարգսի, որ ստացաւ զսա յարդար վաս-
304ր տակոց իւրոց և ի յիշ || [ատ]ակ հոգւոյ իւր և ծնողաց իւրոյ Վասիլ և Թագուհէ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ և կամ ընդաւրինակէք, յիշեցէք ի բարին Քրիստոս զյառաջասացեալ պատուական սարկաւագն Սարգիս, և զհայրն իւր զՎասիլ, և զմայրն իւր Թագուհի, և զեղբայրն իւր՝ զպատուական քահանայն զԿոստանդին։ Ընդ նմին և զիս՝ զանարժանս՝ զՍարգիս նուաստ քահանայ, զգրիչ սուրբ տառիս, և զհանգուցեալ հայրն իմ՝ զԳրիգոր քահանայն, և զմայրն իմ Հեղինեի, և զքոյրն իմ Թեփանու՝ զգնացեալսն առ Քրիստոս, և զամենայն ազգայինս իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս. և որ յիշէ և սրտի մտաւք մեղաց թողութիւն խնդրէ, նա ընդ միոյն հարիւրա-

* Բնագրում՝ «կիլեկիցւոցս»։
** Բնագրում «հովուանաւ»։
*** Բնագրում՝ «վարթար»։

պատիկ առցէ ի Քրիստոսէ աստուծոյ, յուսոյն մերոյ, ամէն, և հազար ամէն։

### 306.

### ՄԱՇՈՒՆՔ ԱՇՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 149 (անս Նաև 1392 թ.)

Գրիչ՝ Կարապետ Տիւրիկեցի
վայր՝ Երուսաղէմ

277բ ... Ցամի ութնհարիւր և ութսուն թուականի մերոյ (1331), ի
հայրապետութեան տեառն Յակոբայ և ի թագաւորութեան դեռաբոյս
պատանեկին Լևոնի որդւոյ Աւշնի, գրեցաւ սուրբ և լուսափայլ և կեն-
սակիր, աստուածաւանդ, աստուածախաւս սուրբ նոր կտակարանս, ի
սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի դրունս սուրբ և փառաւորեալ տաճարիս
Քրիստոսի, ընդ հովանեաւ սուրբ հրեշտակապետացս, ձեռամբ իմով՝
անարժան և մեղսաթաւալ, փանաքի և անահեստ գրչի Կարապետի*,
բղսա մեծաւ փափագանաւք. և ես՝ ողորմելի գերիս, յանձն առի և
ըստ կարի իմում ջանացի։ Արդ, թէպէտ և անարհեստ էի գրչութեանս՝
փանաքի և անյարմար, այլ հանդիպեալ լաւ և ընդիր աւրինակի, և
ես՝ մեղաւոր հողս, յոյժ բաղձանաւք և յոգնատոչոր տենչանաւք, մե-
278ա ծաւ աշխատութեամբ ըստ կարի գծագրեցի զս || այ ի լուսաւորու-
թիւն մանկանց եկեղեցոյ։

Արդ, յերես անկեալ աղաչեմ... յիշեսջիք զերջանիկ և զհեզահոգի բաբունի՝ զառաջնորդ ուխտիս զտէր Վարդան եփիսկոպոս տեղոյս, զի յոյժ հանգուցեալ է զմեզ ի հոգևորն և ի մարմնաւորն։ Ցիշեսջիք ծնաւղաւք ի մեղաց թողութիւն և այլ մերեղէն եղբարքս զհրեշտակապետացս՝ զքահանայքս և զկրաւնաւորս, և զսուրբ Ցակովբայ զքահանայք և զմիանձունս, և զիս՝ զխաւարեալս մեղաւք զԿարապետ կր[աւնաւոր], և զծնաւղսն իմ՝ զպարոն Տատ և զձոշարե**, և զեղբարսն իմ՝ զկայսն և զհանգուցեալսն ի Քրիստոս՝ զԲանԾարգէսն, և զՅոհանՆէս, և զՆերսէս, և զՍարգիս, և քերց մերոց, և զիմսն ամենայն ողորմութիւն գտանել յահեղ աւուրն համատատի, ընդ կամարարս իւր ի տեառնէ մերմէ Ցիսուսէ Քրիստոսէ. և որ յիշեսցէ զվերոյգրեալքս Քրիստոս աստուած զինքն յիշէ ողորմութեամբն իւրով, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Ծնամով պահող աւրհնի յաստուծոյ։

Ցաւգոստոս ԺԷ. (17) սկսայ և դեկտեմբերի Ի. (20) աւարտեցի։***

* 254ր էջի հիշատակագրութեան մէջ գրիչն իրեն անվանում է «Կարապետ աբեղայ Տիւըրիկեցի»։

** Անվան «շ» տառը քերված է ու հազիվ է ընթերցվում, այլ թանաքով վրան գըրված է «հ», եթե ուղղագրությունը գրչինն է, ապա նրա մոր անունը եղել է «Ճոհար»—«Գոհար»։

*** 278 թերթանոց գիրքը, որի յուրաքանչյուր էջի վրա կա միջին հաշվով 550 տառանիշ, գրիչն ընդօրինակել է 123 օրվա ընթացքում, ուստի յուրաքանչյուր օր արտագրել է միջին հաշվով մոտ 2,5 թերթ (5 էջ)։





307.

## Ա Ս Տ Ո Ւ Ա Ծ Ա Շ Ո Ւ Ն Չ

*Վենետ. 12, Ալիշան, Հայապատում, էջ 545-550 (տես նաև 1378)*

*Ստացող՝* Ներսէս Տարօնացի

*Վայր՝* Գլաձոր-Քռնայ

ա

*...Աւարտումն եղեւ այսմ աստուածաշունչ հին և նոր կտակարանիս յորժամ էր թիւն ըստ շրջագայութեան ժամանակի՝ ի մարդեղութենէն Քրիստոսի ՌՅԼ. (1330), և ի թուականութեանն Հայկազնեայ տոհմին ՉՁԱ. (1332), և ի հայրապետութեան տեառն* Յոհաննէսի *մեծի Հռոմի պապին, և ի պատրիարգութեանն* տէր* Յակոբայ *Հայոց Նահանգի, և յեպիսկոպոսութեանն տէր* Զաքարիայի՝ *սուրբ առաքելոյն Թադէոսի վերադիտողի, և ի վարդապետութեան* Եռ[ա]իա *րաբունապետի, որ այժմ կայ ի* Գայլիձորի, *և յաշխարհակալութեան ղան* Պուսաիտի, *և ի թագաւորութեան Հայոց* Լեւոնի՝ *որդոյ* Աւշնի։

*Զսա սկսեալ ի դեկտեմբերի աւարտեցաւ ի հոկտեմբերի, ի ձեռն երկու քաջ քարտուղարի։ Ես՝* Ներսէս *անուամբ վարդապետ, բայց գործով վերջացեալ հող և մոխիր վարդապետաց, որդի* Վահրամա, *յաշխարհէն* Տարօնու *ի գաւառէն,* Սանոնու, *ի վանացն* Ղազարու, *ի գեղջէն, որ կոչի* Կոռ, *եղէ ցանկացող ուսման և ընթացայ յարեւելս ի գաւառն* Վառուձոր, *ի վանքն* Գայլեձոր, *և եօթն ամ աշխատեցայ ի վարժումն հին և նոր տառից և այլ բազում սրբոց բանից։ Յայսմ ժամանակի եմուտ ի հոգիս իմ ցանկութիւն մեծ վասն աստուածաշունչ գրոց. և ես էի աղքատ և ոչ ուն[է]ի և ոչ փող մի, բայց միայն զՔրիստոս։ Ապա ուխտ եդի ի մտի իմում, ասացի, թէ՝ տար ինձ աստուած իրք՝ նա ես յաստուածածնի անուն տամ գրել։ Յորժամ զայս խորհուրդս ի միտս իմ արարի՝ յայն դէմ եղեալ գնացի յերկիրն* Ուրծու** *գեղն, որ կոչի* Խաճակաճ, *առ եղբարքն իմ և առ ամենայն արեան մերձաւորքն, խնդրել օգնութիւն ի նոցանէ. իսկ նոքա շարժեալ սիրով, և լի սրտիւ՝ ողորմութեամբ սուրբ աստուածածնին ետուն ի ծախս աստուածաշնչիս՝ իւրաքանչիւր ըստ կարողութեան իւրում մասն յիշատակի.* Մլեհն *ՄԺ. (210) սպ[իտակ], եղբայր նորա՝* Լեւոն *Ղ. (90) գրամ.* Յովան *Ղ. (90) դրամ,* Թուրան *Լ. (30) գրամ,* Դամուր *Լ. (30) դր.,* Մխիթար՝ *իմ հօրեղբօրորդին ԽԲ. (42) դր.,* Մխիթար *հուսն Լ. (30) դր.,* Վարդան *ԼԳ. (33) դր.,* Հայրապետն *ԼԶ. (36)*

---

* *Իմա՝ «Ի կաթողիկոսութեանն»։*

** *Ըստ Ալիշանի՝ Աղահունեաց գաւառի մասին է խօսքը։*

դր., Մարտիր | | | Թադկան Լ. (30) դր., Լուսեր ներկարար Լ. դր., Ջաֆար ԺԸ. (18) դր., Ռամանոսն ե իւր մայր ԼԶ. (36) դր., Ֆաանգ Խլաթցին Ծ. (100) դր., Անտոն Ի. (20) դր., Ումեկն և իւր որդիքն Խ. (40) դրամ։

[Եւ] իմ առեալ զայն գնացի յաշխարհն Պարսից ի քաղաքն Թավրեժ, յաղագս քարտիսի, և բազում ահ և աշխատանք կրեցի ի ճանապարհն, և յոլով նախանձ և նեղութիւն յազահ և ի սնապարծ քահանայից և ի հակառակող աշխարհականաց. և անտի ոգորմութեամբն աստուծոյ յարուցեալ գնացի միւսանգամ ի Գայլիձորն, և կալայ միջնորդ զՅոհաննես Մշեցին՝ զեղբայրն իմ հոգեւոր, որ առնէր միջնորդութիւն ընդ իս և ընդ երկու գրագիր, ընդ Սիրեմ ե ընդ Դաւիթն, որ էին կուսան քահանայք. և ապա ի բազում աւուրս հազիւ կարացաք կտրել գրելն, առանց այլ խարճի ՌՇԾ. (1500) դր., բայց յետոյ զրկեց զիս Դաւիթն, քանզի խիստ ագահ էր և արծաթասէր. ԳԾ. (300) դր. այլ եւ յինէն, վասն որոյ թողցէ աստուած զ[յ]անցանս նորա։ Եւ ես յայնժամ յարեայ անտի և գնացի ի սուրբ առաքելոյն Թադէոս՝ առ տէր Ջաֆարէ արքեպիսկոպոս. և նա ետ ինձ Շ. (500) դր[ամ], և յետ բազում աւուրց դարձայ վերստին ի Գայլիձոր բազում նեղութեամբ, քանզի ձմեռն էր աւուրքն, և վճարեցի զմնացեալ պարտքն յաստուածաշունչ գրոցն. և դարձայ ի սուրբ Առաքելոյն և դադարեցի անդ սակաւ աւուրս։ Եւ կայր աստուածաշունչս անկազմիլ. և ես թշուառականս կայի հիւանդ հոգով և մարմնով. ապա խընդրեցի ի սուրբ աստուածածնէն, և նա զօրացոյց զիս, և յարուցեալ պնդեցի զմէջս իմ և ուղղեալ գնացի ի Բռնայ, առ սուրբ եպիսկոպոսն տէր Բարդուղիմոս և առ վարդապետքն Հայոց, [որ] առ նմա կային յայնժամ. և Մարգարէ՝ վարդապետն չէր անդ, որ կազմող էր գրոց, այլ գնացեալ էր ի Ծաղուկ. և ի ներգործութենէ չարին ես հիւանդացայ մերձ ի մահ զաւուրս ԽԵ. (45), և Քրիստոս յարոյց զիս. և գնացի ի Ծաղուկ առ Մարգարէ վարդապետն, և նա յանձն առեալ կազմեաց յաւուրս Խ. (40) և ետ ցիս։ Եւ իմ ուրախացեալ դէմ եդի գնալ յերկիրն Տարաւնո, և ամենեւին ինչ ոչ ունէի խարճ ճանապարհին. յայնժամ ծախեցի զփիլոն և զհոզաթափն վասն խարճի։ Ապա զայս գիտասջիք եղբարք, որ գնալս և գալս զոր ասացի՝ ի բազում տեղի էր, ի մէջ բարբարոս ազգաց. ...որ մահմետականք կոչին, որ բռնացեալ ունին զաշխարհս Հայոց վասն մեղաց մերոց. և յամենայն տեղիս օգնեց ինձ սուրբ աստուածածին և անվնաս հասցի. և զամենայն թերի զոր ունէի՝ ելից և կատարեաց։ Բայց խարճն, որ եղեւ այս աստուածաշունչ գրոցս՝ ընդ ամենայն միահամուռ ԲՌԲԾ. (2200) դրամ է...։*

---

* Հիշատակարանը հրատարակված է նաև «Մատենադարան հայկ. թարգմ.» աշխատության մեջ (Վենետիկ, 1889, էջ 147–149) և մասամբ՝ Բ. Սարգսյանի կազմած Ցուցակում (հտ. Ա. էջ 126–127)։ Բնագիրը կազմելիս նկատի ենք առել նաև այդ հրատարակությունները։

Գրիչ՝ Դաւիթ

Բ

...Արդ, խնդրեմ յամենեցունց՝ յերեսս անկեալ, զի որք պատահիք առ ի սմանէ օգտութեան՝ թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ ստացօղի սուրբ գրոցս Ներսես վարդապետի, և տառապեալ ոգոյ Դաւիթ գրչիս, և դուք յիշօղքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, նաև զպատուական քահանայ զՅոհաննէս սպասաւոր բանի, և զհոգեւոր եղբայրն իւր զտէր Ստեփանոս՝ զհանգուցեալն ի Քրիստոս, որ զօրինակն շնորհեաց այս երեք գրոցս։

Ծաղկող՝ Թորոս [Տարօնացի]

Գ

Վարդապետ Ներսես, յիշեա՛ յաղօթս զԹորոս ծաղկող, և զպապն իմ Սիար, և զհայրն իմ Սարգիս, և զմայրն իմ Մարիամ՝ ի քաղաքէն Մշոյ։

Դ

Զեղկասան Զարդրանեցին և զհօրեղբօրորդին իւր զՏօղանն յիշեցէք ի Քրիստոս աստուած յաւուրն դատաստանի, վասն զի ըստ իւրեանց կարողութեան օգնեցին։

308.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՐԱԳԻ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

Ալիշան, Սիսական, էջ 487

Վայր՝ Կուքոյ վանք

....Զոր ըղձիւ խնդիր արարեալ պատուական և բարեմիտ Մարկոս կրօնաւոր, և յետոյ գտեալ | | ¡ գրուագրեաց ըստ պատշաճին։ Եւ գրել ետ զսայ ի վանս Կուքոյ, ի տան մեծի սրբարանիս և աստուածարնակ տաճարիս Աստուածածնիս և սուրբ և ահեղ, հզօր Նշանիս՝ Հազա[ր] ու Բուրայս, ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց։

Արդ, գրեցաւ սա ի ժամանակս հայրապետութեան Հայոց տեառն Յակոբայ, և ի թագաւորութեանն Լևոնի, և ի բարունապետին Յեսախա, և ի յիշխանութեան նահանգիս մերոյ Թոռին Պոռշա, զոր ի յազգէն Վարդանանց՝ Վասակա, զոր աստուած յերկարասցէ զժամանակս նոցա։ Ի խաղ[ա]նութեանս Պուսախային, զոր ԺԸ. (18) էր ամ խանութեան նորա, և ի յառաջնորդութեան ուխտիս մերոյ տէր Սարկաւագին։*

* Այսքանը հրատարակված է վիմատիպ ընդօրինակությամբ, այնուհետև, Ալիշանը համառոտ պատմում է հիշատակարանի չհրատարակված մասի բովանդակությունը։ «Յիշէ գրողն և զվարդապետս իւր և զեղբօրն՝ զՍարգիս և զՅովհաննէս՝ (զհաքս նոցին Խոցադեղ և Մխիթար, և զմարսն՝ Հոռր և Թամամ. զեղբարսն՝ Շարան, Դաւիթ, Ճոճեր և Գրիգոր). և վասն գրչութեան իւրոյ անմեղադրութիւն խնդրելով՝ ծանուցանէ, «զի առաջինն է և այլ չէի գրեալ և օրինակն խիստ դժար էր»։

309.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4815 (առա Նաև 1438 թ.)**

Գրիչ՝ Կարապետ

279ա | | | եւ յառաջնորդութեան վանիցս՝ տէր Յակոբայ, եւ ի թուաբերութեան Հայոց ՉՁԱ. (1332) գրեցաւ և աւարտեցաւ սուրբ աւետարանս, ի խնդրոյ գերամաքուր և երից երանեալ Մխիթարայ և Սիմէոնի հարազատ եղբարցն, որ յոյժ փափագմամբ և սիրոյն, որ առ Քրիստոս ունէին, յիւրեանց արդար վաստակոցն գրել ետուն զաստուածախաւս աւետարանս ի վայելումն անձանց իւրեանց և յիշատակ հոգւոց իւրեանց և բարի ծնողացն՝ Յոհաննեսի և Խոխլիկի* | | | տա]*րաժամ փոխելոյն ի Քրիստոս, և հարազատաւրն Մարտամայ միակեցին, և այլ ազգայնոցն ամենի՝ կենդանեաց և հանգուցելոցն։

Ցեր[ես ան]կեալ աղաչեմ զ[ընթեր]ցողսդ և զսպասաւորսդ սուրբ աւետարանիս աստէնս և յապագայն, սերտ սրտիւ և լի բերանով ասէք Քրիստոս աստուած ողորմի ստացողի աւետարանիս Մխիթարայ, Սիմէոնի, ծնողացն, և եղբաւրն, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։

279բ ...Ի դառն և ի վիշտ ժամանակի գրեցի զաւետարանս, կարողութեամբն | | | փրկչիս և մաւր սոր[ա աստուա]ծածնին։

[Աղ]աչեմ զձեզ, ով սիրելի եղբարք, վասն սիրոյն Քրիստոսի, ձեր սուրբ բերանովդ ասացէք՝ Քրիստոս աստուած ողորմի անարժան և մեղսասէր Կարապետ գրչի [Աղթամարեցւոյ], և մեր ծնողացն՝ Ըռամշահի | | | կնեսի՝ փոխելոյն ի Քրիստոս | | |

ԶՄանուէլ և զՎարդան, որ յաւտարութեանս իմում մխիթարակից լինէին մեզ, այլ և զհոգևոր եղբայրն զԱռամ յիշելոյ արժանի առնէք, որ ի կոկ թղթիս աւգնական եղև մեզ։

Ցիշելոյ և աստուած-ողորմոյ արժանի առնէք զեղբայրն մեր ըստ մարմնոյ զԱւետիսն, որ է. (7) ամ է, որ չեմ տեսել, և զհաւատարիմ քոյրն՝ զԱւագ տիկին, որ յոյժ չարչարանաւք և աշխատութեամբ զուգէր զմար | | |, Քրիստոս աստուած անմահական հացիւն զինքըն կերակրէ և լուանայ և մաքրէ զմեղս իւր, ամէն։

Նաև զանապատաւոր, սրբազան մաքրազարդեալ ճգնաւոր հայրն մեր Կիրակոս, որ անսուաղ պահելով զանձն յամենայն կերակրոց պիտոյից, յիշելոյ արժանի առնէք։ Եւ յիշողացդ և յիշեց[եալ]ոցդ Քրիստոս աստուած ողորմեսցի յիւր յարքայութեան, ամէն։

---

* Թերթի աջ եզրի վերին մասը պատռված է, որի պատճառով անընթեռնելի է մնում 3 տող։

** 280ա էջի ձախ եզրի վերին մասից մաշվել ու ընկել է 2—3 տող։

Ո՜վ եղբարք, զ | | | իցին զԱզատշահ ող | | | ցին յիշեցէք ի Քրիստոս, որ զԹուղթս մեզ բերին և Քրիստոս աստուած զձեզ յիշէ։

310.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Երևան 7630 (տես նաև 1652 թ.)

Գրիչ՝ Մելքիսեդեկ
վայր՝ Ի ձորս Խաղտեաց, ի բանակետղս Լօրի

ա

...Այսմ աստուածագարդ բուրաստանի, լուսաշաւիղ տումարի, երկ-
319բ նաչու շաւղի, տիեզերածաւալ || վտակի... յաւարտումն ժամի յան-
բարի ամանակի և յանլոյս վայրի, որ յամենայն կողմանց նեղ
և զառն է ժամանակս, նա եւ առաւել տոհմի քրիստոնէ[է]ից, որ
բնաջինջ եղև աւանս մեր ի դառն և յաղղի ազգի պահանջողաց, յո-
բում և աստուածագարդ տումարս կատարեցաւ փանաքի և անմար
գրչութեամբ, ձեռամբ երկուց ապիկարաց՝ Վարդանայ և Մելքիսեդեկի,
ի ձորս Խաղտեաց ի բանակետղս Լօրի, ընդ հովանեաւ սրբոց տա-
ճարացս Աստուածածնի, սուրբ Սիովնի, և համայն սրբոցն, որ աստ
հաւաքեալ կան։ Յամի աբեթական տովմարի՝ հնգետասան [յ]ոբելինի
և եւթնեակ քառեկի և եզակ եռեկի (1332).* յամսեանն սեպ[տեմբեր]ի
յերկտասան և եռակի (23), ի վեցեակ Թշբինի, յաւր չորեքշաբաթի։
Արդ, որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ գաղափարաւ, յիշեսջիք ||
320ա ի մաքրափայլ յաղաւթս ձեր զաշխատաւորս սորա՝ զհայրն իմ զՎար-
դան քահանայ, և զմայրն իմ՝ զյոյժ սպասաւորաւղ, և զեղբարս իմ,
և զքորս, և զամենայն արեան մերձակայս։ Նաև թէ արժանի համա-
րիք՝ զյետնեալս ի բնաւին բարեաց և զառաջարկաւղս ամենայն չա-
րեաց, զթշուառս ի սննդակիցս և ի համայն տպակիցս՝ զՄելքիսեդեկ,
զսակաւ աշխատաւղս ի բնակս աւետեաց համայնս փրկութեան և խո-
շորութեանն և ամենայն սղալանացն զներելն խնդրեմք, զի կայր
մեր այս էր, և նուրբ և նեղ ճանապարհիս բնաւ անծանաւթ և մեր-
ժէաք տեղով և կրելով. և այժմ խնդրեմք զմի ինչ, զի ամենայն ոք,
ո և հանդիպեսցի, ըստ իւրում գիտութեանն զբարեաց ձիրս մեզ
շնորհեսցէ, զի բնաւից պարգևատուն ղանծախելին պարգևեսցէ ի
գալստեան յիշելոցս և յիշողացտ, ամէն։

բ

320բ Ի յաբեթական համարոյ Թուաբերութեան ՉՂԴ (1335), աստուածասէր ոմն յազատ տոհմէ Ազատ անուն... համեստ ամուսնաւ իւրով՝

* «Հնգետասան յոբելեան»-ը 750 տարի է,«Եւթնեակ քառեակ»-ը՝ 28, «Եզակ եռեակ»-ը՝ 3։ 551 գումարելով այս թվերին, ստանում ենք ընդօրինակության թվականը՝ 1332։

բարետոհմիկ Ծուխարի, և ստացաւ զանմուտ արեգակնս լուսատու ինքեան, և զարմից, և ծննդոց, համայն արեան մերձակայիւք։

Արդ, ով ոք ընթերցցի, կամ աւրինակէ, կամ շահեսցի յանմահական ջրոյս, յիշեսջիք զվերագրեալս ի սմա՝ զԱզատ և զԾուխար, զխրատեալս աստուծոյ՝ զԼալ, և զորդիսն՝ զՍարգիս ե զՍահակ, և
321բ զհայրն՝ զՍարգիս, և զմայրն, և զեղբարս՝ զԱւտրիկ և զՎարդազատն, ‖ և զամենայն արեան մերձակայս, հանդերձ ամենայն զարմիւ....։

Նաև զկենսակարաւտ և զվարդափթիթ պատանին, զեռաթառամ և վաղամեռիկ զբարբ գ·գիր՝ զԵլիմելէֆ փեսայն, որ և զծնաւղս իւր լացոյց անմխիթար, յիշեսջիք, և զծնաւղս Ծուխարին՝ զՎարդեր և զԹագեր, ե զեղբարսն. և վարձահատուցին փառք և ունողութիւն, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

գ

108ա Զստացուղ սուրբ և աստուածակեցոյց տումարիս ի յանբարի ժամանակս, ի նսամեցեալ մրդուզ ամայս, որ ամենայն զմարմնականս խորհին, և զհողի ամենայն ոք մոռացեալ է, և զհոգեկորոյսն խորհի զղնացս։ Ի յայսմ ժամու ուշաբերեալ ի յանլոյս վա[յ]րի, և իմացեալ զվաբթամութիւն և զամենակարաւղ ուժգնութիւն սորա, և ստացաւ զաւակ ի Սիոնէ և ընդանեակ յԵրուսաղէմ՝ յիշատակ ի ներկայս և ապաւէն յապառնին. և կարծիս և յոյս սորա և վասն յիմանէ։ Արդ, որ յիշէ յիշեալ լիցի յամենապարգևողէն աստուծոյ, որ է աւրհընեալ յաւ[իտեան]։

311.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6403 (տես նաև 1430 թ.)

Գրիչ՝ Յակոբ

Վայր՝ Եկեղեաց գաւառ, սուրբ Կիրակոսի վանք

ա

282բ ...Արդ, այսմ աստուածախաւս և աւետաքարոզ սուրբ աւետարանիս ցանկացող եղէ ես՝ Ղազարս և իւր(՞) որդիքն Հեթումն և Յովաննէսն, ի գեղջէ, որ կոչի Դեղնֆար։ Ես Ղազարս զսուրբ աւետարան գրել տուի յիշատակ ինձ և կենացին իմոյ Հեղինէի տիկնոջն, որ փոխեալ է առ Քրիստոս։

283ա ...Արդ, եղև աւարտումն գրութեան սուրբ աւետարանիս ի թուականութեան Հայկազեան տումարիս ՉՁԱ. (1332), ի սուրբ և հռչակաւոր վանքս, որ կոչի սուրբ Կիրակոս, ի գաւառիս, որ կոչի Եկեղեաց։ Բայց գրեցաւ սա ձեռամբ անարժան քահանայի՝ Յակոբի...

312.

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ

*Երևան 1347*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Մերձ յամրոցն, որ կոչի Անդրունին բերդ

ա

*Ի լրման տառատպութեանս՝ լիակատար գոհութիւն աստուծոյ...*

*Զոր տեսեալ զբբրոյ աւետարանին Թարգմանութիւնս, որ ըստ Յովհաննու, բազմամեղ և տրուպս* Գրիգոր, *գրեցի զսա և ստացայ ի վայելումն մանկանց նոր Սիովնի, և ի յիշատակ ինձ, և ծնողաց ի-*
418բ *մոց, և եղբարց, յոյժ ցաւած անձամբ հոգեկանաւք և մարմնակա* ‖ *նաւք, ոչ ոք ունելով ձեռնտու ի գրելն, այլ միայն զողորմութիւնն աստուծոյ և զաւգնութիւն աղաւթիւք սրբոց իւրոց։*

*Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա ընթերցմամբ կամ լսելով, յիշեսջիք աստուածահաճոյ աղաւթիւք զմիաբան եղբայրութիւն հրեշտակաբնակ ուխտին* Ակներոյ, *գհոգեւոր հարքն մեր, եւս առաւել զծերունի սուրբ վարդապետն զտէր* Վարդան *և զ*Ստեփանոս *փակակալն, որ զաւրինակն շնորհեցին, և զ*Ղուքէնն, *որ գրեալն էր զաւրինակն և զ*Վասիլ *ճգնաւորն, և զծնաւղս նոցին, և զեղբարս, զբեսցէ տէր զնոսա ի դիրն կենաց, ամէն։*

*Ցիշեսջիք ի տէր և զայնոսիկ, որ ի զին թղթոյս և հացկանն մերոյ երախտիք ունին, և զ*Անդպէտն, *և զծնաւղսն իւր, զի և նա եւ մեզ հաց, զբեսցէ զնոսա տէր ի դիրն կենաց զհացն անմահութեան, ամէն։*

*Եւս վերջոյ թէ արժանաւորէք յիշել ի տէր զբրիցս եղկելի և զժանտամիտ գրաւղս և ստացաւղս զ*Գրիգոր, *և զհայրն իմ զ*Վահրամ, *և զմայրն, և զեղբարսն՝ զ*Անդրէաս *կրաւնաւոր, և զ*Սարգիս, *և զ*Թորոս*՝ զյառաջնեալսն առ Քրիստոս, և զմիւս եղբայրն՝ զպատուելի քահանայն զ*Ստեփանոս, *և զ*Սիմէոն *երէց՝ զքեռի իմ, և զորդի իւր՝ զ*Կոստանդին *քահանայ, և զմանկունսն իւր, և զ*Մխիթարն, *և զորդիսն իւր, և զամենայն ազգայինսն մեր...*

*Գրեցաւ ի թուականութեանս Հայոց ՉՁԱ. (1332), ի թագաւորութեանն* Լեւոնի *աստուածասիրի՝ որդւոյ* Աւշնի, *ի կաթողիկոսութեանն տեառն* Յակոբու, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Նշանին, մերձ յաստուածապահ ամրոցն, որ կոչի* Անդրունին *բերդ, ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ աւրհնելոյն յաւիտեանս, ամէն, ամէն։*

*Ողորմեսցի Քրիստոս աստուած* Յովանէս *քահանայի, որ աշխատեցաւ ընդ մեզ յզորգել զբոցս աւրինակաւն, և կրաւնաւորացն* Ծաւփրունին, *և* Պաւղոսին, *և* Թորոսին *առ որովք հանգաք ի գրելն, և ամենայն հաւատացելոց՝ կենդանեաց և ննջեցելոց, և նմա փառք յաւիտեանս։*

Բ

180ա ...Զմուժկալ և զփոյթն յաստուածային բանից ընթերցումն և զհամբերաւղն ի խստակրաւն պահս և յաղաւթս, զերջանիկ ծերունի սուրբ վարդապետն զտէր Վարդան՝ զյորդորաւղն մեր ի գրել գրոց, աղաչեմ յիշել ի տէր, և զՍտեփաննոս փակակալ Ակնեց վանացն, որ զաւրինակս շնորհեաց, և զՄխիթար հայրն, և զայլ միաբան եղբայրութիւնն, որ կամակից եղեն ի տալն, յիշեսջիք ի տէր, քրիստոսասէր ընթերցաւղք և լսաւղք, և եղկելի գրաւղս, և աստուած զձեզ յիշէ։

Գ

194ա Ծգնազգեաց կրաւնաւորացն Վասիլին, և Թորոսին, և ծնողաց նոցին ողորմեսցի Քրիստոս աստուած, և գրողի գրոյս, և իւրոցն, և որք ասեն ամէն։

Դ

197ա Ողորմեսցի Քրիստոս աստուած հոգևոր եղբարց մերոց՝ պատուական քահանայիցն՝ Ստեփանոսի և Մարտիրոսի, և ծնողաց նոցին, և որդւոյ, և բազմասխալ գրողի գրոյս, և որք ասեն ամէն։

Ե

422բ Ողորմեսցի Քրիստոս աստուած պատուական քահանային՝ Մինասին և ծնողաց իւրոց, որ զայժմ նախերգան ճառիս թուղթն շնորհեաց, զի յայլ աւրինակ գտի զսա և գրեցի, և բազմամեղ գրողի գրոյս, և ծնողաց իւրոց, և եղբարց, և այնոցիկ, որ զաստուած-ողորմին ասեն, ամէն։

Կազմող՝ Մարտիրոս

Զ

422բ Եւս առաւել աղաչեմ յիշել ի տէր զՄարտիրոս մեղաւոր և անարժան ծառայս աստուծոյ՝ զկազմող սորայ, և մեղաց թողութիւն խնդրել ի Քրիստոսէ, որ յաղագս յիշման զսակաւս աշխատեցայ ի սմայ. և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոս, ամէն։

Ջեռնտու՝ Պաւղոս

Է

422բ Ո՛վ եղբայրք զիս՝ զանարժան աբեղայս զՊաւղոս, բազում մեղաւք լցեալ, յիշեցէք, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 313.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7664 (տես նաև 1548 Թ.)*

*Գրիչ՝* Գրիգոր Սուքիասանց
*վայր՝* Սուրխաթ քաղաք

436ա *Շնորհիւն աստուծոյ ամենակալի սկսայ և ողորմութեամբ խնամոց նորա կատարեցի զսուրբ և ցանկալի աւետարանս, յաւրինակէ սրբոյն* Սահակայ *հայոց թարգմանչի՝ երկրորդ լուսաւորչի Հայաստանեայցս։*

*Ի Հայ թուականիս ՉՁԱ. (1332), յաշխարհս* Դրիմ, *ի քաղաքս* Սուխաթ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *և ի թագաւորութեան բ[արեպաշտ] ‖ պատանոյն* Լևոնի։ *Գրեցաւ սուրբ և ցանկալի աւետարանս ձեռամբ իմով՝* Գրիգորի Սուքիասանց, *ի խնդրոյ աստուածարեալ սրբասէր բաբունոյն, որ* Աւետիք *[յ]որջորջի, զի ստացեալ ստացուածս աստուածային կենդանի յարդար ընչից իւրոց, յիշատակ բարեաց ինքեան և ծնաւղաց իւրոց։ Արդ, որ ընթեռնոյք և կամ ընդ աւրինակ գնէք, հաստատուն մտաւք հաւատացէք ստուգութեան բանիցդ և ցանկուցդ, և զսրբասէր բաբունին* զԱւետիս՝ *զստացօղ սորա և զծնաւղսն իւր յիշեսջիք ի տէր, ով սուրբ հարք և եղբարք։ Ընդ նոսին և զանարժան և զբազմամեղ գծաւղս՝* զԳրիգոր, *և զծնաւղսն իմ, և ‖ զեղբարս յիշեսջիք ի տէր...։*

## 314.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան Կերպ. Թանգ 69/244 (տես նաև 1341 Թ.)*

*Գրիչ՝* Յոհաննես

ա

342ա *...Որք աստուածային սիրոյն փափագեալ հետևին միշտ և հանապազ, ի տուէ և ի գիշերի, բարեպաշտ և աստուածասէր և իմաստուն պարոն* Յովաննես *և բարեհոգի կենակիցն իւր* Աւագ՝ *բոլորքէին ի սէր աստուածային գանձուցն՝ ի պայծառութիւն սուրբ եկեղեցոյ. և ի վայելումն մանկանց առաջաստի, և յետ աստի կենացս վճարելոյ՝ յիշատակ հոգոյ իւրոյ, և կենակցի իւրոյ, և լուսածաղիկ*
342բ *‖ զաւակաց իւրոց՝* Ամիրի *և* Մուղբիլի*, *և ծնողաց իւրոց* Տարվինայ, *և մաւրն իւր* Այամ *տիկնայ, և հարազատաց իւր՝* Յակոբայ, *փոխելոյ ի Քրիստոս, և պարոն* Աւագին, *և ամենայն արեան մերձաւորաց իւրեանց. զորոյ տէր աստուած ցուցեսցէ յոսկերս նոցա զցաւղ ողորմութեանն։ Եւս առաւել ի ժամ սոսկալի պատարագին, ցուցեսցէ ի*

---

** Մեկ ու կես տող գատարկ է թողնված, հավանաբար մյուս զավակների անունները գրելու համար։*

հոգի պարոն Յովհաննիսի և կենակց[ի] իւրոյ Աւագի, զի արժանասցին ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ հանգչել ի գոգն Աբրահամու, որ և ստացան զսա ի հալալ արդեանց ի մխիթարութիւն անձին և յոյս փրկութեան յապաղայի, յիշատակ բարի անջնջելի առաջի աստուծոյ։

Եւ ես՝ յոգնամեղս և փցունս ի գրչաց, յանձն առեալ ըստ իմում կարի յանկ հանեալ կատարեցի շնորհաւք և ողորմութեամբն աստուծոյ, յամի ՋՁԱ. երոր ։ զի Թուաբերութեանս Հայոց (1332), ի դառն և ի վշտաբեր ժամանակիս։

Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սմա՝ յիշեսջիք և զիս՝ զմեղռամած գրողս Յոհաննէս կրաւնաւոր և զծնողսն իմ։ Ընդ որս ողորմածն աստուած, ուրհնեալն յամենայն ազանց, ողորմեսցի առհասարակ ամհնեցուն, կրկին կենաւք և երկու աշխարհաւք, և ինքն եղիցի ուրհնեալ, դաւեալ և բարեբանեալ յաւիտեանս, ամէն։

Բ

344ա Դարձեալ աղաչեմ յիշել ի Քրիստոս զեղբարս մեր զշնորհ[ունակ] սկ. (սարկաւագունս), և զհարկի շինողս՝ զՄկրտիչ և զԱստուածատուր քահանայ,... և զհոգիացեալ քահանայ Թադէոս, որ զուարթ սրտիւ զկենցաղականս ի բաց դնելով, շնորհեաց մեզ զաւրինակն, շնորհեսցէ աստուած զերկնից արքայութիւն ի[ւ]ր և ծնողաց իւրոց, ամէն։

315.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Նշան 2829

Գրիչ՝ Յովանէս

ծբ *Յեւթնհարիւր Թուականին,*
*Յութսուն երկրորդ սկսեալ ամին (1333),*
*Ի Հայկան ազգի սեռին.*
*Ի Թորգոմա մեծի զարմին,*
*Ի նեղութեանց ժամանակին,*
*Զոր այլազգիքն նեղէին,*
*Զքրիստոնեայք նախատէին,*
*Զեկեղեցիսն քակէին,*
*Եւ ըղհիմունսն շարժէին.*
*Քահանայք նստեալ լային,*
*Եւ ժողովուրդք գումարէին.*
*Եւ այսպես է՞ր հանդիպէին.*
*Վասն մեղացն, որ գործէին,*
*Որ բազմացեալ էր առ նոսին,*
*Որպէս զջուր հեղեղուտին.*
*Որպէս և ես կամ ի նմին,*
*Զգայարանքս տասնեսին.*
*Բազում չարիք, որ գործեցին,*
*Զայրի հոգիս կողոպտեցին,*
*Վէրս ի վերայ սորա եդին,*
*Եւ կիսամահ Թողեալ գնացին,*
*Մինթէ գԹայ տէրն ամենին,*
*Նորոգեսցէ ղրկեալ այրին՝*
*Միայնակեցն ծերունին.*
*Յետոյ եկեալ նա ի մտին*
*Եւ զղջացեալ ըստ առակին,*
*Զոր և գործեաց կրասէր որդին,*
*Զոր հեռացեալ եղև նմին*
*Ի տար աշխարհ, որպէս պատմին,*
*Զինչս վատնեաց զհայրենին,*
*Եւ սովամահ լինէր հացին,*
*Եւ ոչ ոք էր, որ տայր նմին,*
*Եւ նա ցանկայր ի յեղջիւրին,*
*Զոր անբան խոզքն ուտէին.*

Յետոյ դարձեալ առ հայրենին,
Անկեալ ի գիրկս իւր ստեղծաւղին,
Թէ հայր, մեղա քեզ ի յերկին.
Եւ գթացեալ հայրն առ նմին,
Ի ձեռս նորա ետ զմատանին,
Զեզն եզեն զպատարկին,
Եգիտ զմեռեալն զիւր որդին։
Նոյնպէս գտաւ ծերունին,
Անուանակից Սիմէոնին,
Յաշխատանաց իւրոց չնչին,
Ի յարծաթոյ ժանկտհարին,
Ստացաւ զգանձս աստուածային
Ի յիշատակ հոգւոյ նմին։
Զսա ետ ի ձեռս քահանային,
Որ յանուանէ Դաւիթ կոչին,
Եւ հայրազատ որդեաց նորին՝
Սարգիս անուն քահանային,
Եւ Յոհաննէս սարկաւագին,
Եւ յետ նորա՝ Մարտիրոսին,
Զոր արժանի լինել նոցին,
Զսա ընթեռնուլ յեկեղեցին,
Յայնժամ յիշեն զգծող սորին,
Զտառապեալ անձն ի բարին,
ԶՅովաննէս անարժանին,
Զմեղաւք ծածկեալն ի մէջ տղմին։

316.

ՃԱՇՈՑ

Փիրզ. 6273, էջ 140-141 (Մարգուանի եկեղեցի)

Գրիչ՝ Հայրապետ
Վայր՝ Մերձ ի Սեբաստիայ

Փառք արդարև սեռն եռակն ադովնայութեան, անպար անիմանալի, անկցորդ պետականի հօր համալրարար որդւոյ տետեկեան հոգւոյն տառիղի (*) միասնական աստուածութեան։

Արդ, ես... տրուպ և մեղաւոր կրօնաւորս Հայրապետ՝ անուամբ և ձևով միայն, բայց ի գործոց թափուր և ունայն...։

Եւ եռափափագ սիրով և տենչալի ըղձիւ, մեծ յուսով ձեռն ի գիր արկեալ գրեցի զսա ի գառն և ի դժուար ժամանակի, որ ըստ ծովացեալ մեղաց իմոց յոյժ նեղին ազգք քրիստոնէից յանիրաւ հարկապահանջութենէ և ի զրկանաց և ի գաղտնի նենգութենէ այլասեռից, զոր անխընայ իբր գչար գազան խողխողեն զբանաւոր հօտս Քրիստոսի...։

Արդ, գրեցաւ տառս ի թուականութեանս ՉՁԲ. (1333), ձեռամբ

մեղաւոր և անպիտան գրչի Հայրապետի անարժան կրօնաւորի, ի գերահռչակ սուրբ ուխտս և ի հրեշտակարնակ սուրբ մենաստանս, որ բարձրակառոյց հաստատութեամբ շինեալ է յարքայէն հայոց Դաւթայ* յանուն աստուածունակ և լուսակիր սուրբ նշանին Քրիստոսի և սրբոյն Գէորգեայ քաջ զօրականին Քրիստոսի, մերձ ի մայրաքաղաքս Սեբաստիայ, ի հայրապետութեան Հայոց տեառն Յակոբայ, և ի թագաւորութեան Լեոնի, և յառաջնորդութեան մերոյ նահանգիս և սուրբ ուխտիս սրբազան մեծ արքեպիսկոպոսի տէր Սիմէոնի, արթուն հովւի և արի հեղինակի, զոր տէր Յիսուս պահեսցէ զսա ընդ երկայն աւուրս։ Արդ, յերես անկեալ աղաչեմ զսրբազան դասս մաքրագունիցդ, որք հանդիպիք սմա և օգտիք...յիշեսջիք սրտի մտօք և թողութիւն մեղաց խնդրեցէք յաստուծոյ բազմամեղ գրչիս Հայրապետի, որ մեծ յուսով դրեցի զսա ի յիշատակ ինձ, և ծնողաց իմոց սիր Ճուանի և Շնոփորի, և եղբարց իմոց՝ Ստեփաննոսի, Սէթի, Սիոնի, և քերց իմոց՝ Տովլաթի և Կիրայի, և ամենայն զարմից, և ի Քրիստոս հանգուցեալ հոգևոր հօրն իմոյ Յոհաննէս կրօնաւոր քահանայի...։

## 317.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5651*

Գրիչ՝ Կիւրիոն

վայր՝ Վայոցձոր, Վերի Նորավանք մենաստան

228բ Փառք Քրիստոսի աստուածութեանն, որ ետ տկար** մտաց և մատանց ջիլս և ժուժկալութիւն ժամանել յաւարտ աւետարանիս, ի թվաբերութեանս Հայոց ՉՁԲ. (1333), ի բռնակալութեան ազգին նետողաց Բուսայիտոյ, ի թագաւորութեանն Հայոց Լևոնա, ի կաթողիկոսութեանն տէր Յակոբա, ի գլրապետութեանն մեծ վարժապետին և իմոյ անլուսաւոր կենացս լուսաւորչի՝ Եսայեա, ի յիշխանութեան | | | Բուր] թելին, և երկեղագարդ ամուսնոյ Նորին պարոն Վախախին, և աստուածապարգև զաւակաց նոցա՝ Պէշքինին և Իւանեին, և ի յաթոռակալութեան սուրբ աթոռոյս Սիւնեաց տէր Սարգսի, ի գաւառիս Վայոձորոյ, ի մենաստանիս Վերի Նորավանս կոչեցելոյ, ընդ հովանեաւ Մօրս լուսոյ և սուրբ Սիոնիս, ձեռամբ մեղսամակարդ անձին Կիւրիոնի | | | ***

* 1022 թվին Վասպուրականից Սեբաստիա գաղթած Սենեքերիմ թագավորի որդին է։

** Մի բառ անընթեռնելի։

*** Հիշատակարանից թերթ է ընկած։ Ձեռագրում կան նաև հետագա շրջանի (1587 թ. և այլն) անարժեք հիշատակարաններ։



113—17

## 318.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. 6273, էջ 142 (Կարին)*

*Ստացող՝* Թորոս
*Վայր՝* Լիկանդոն գիւղ

*Արդ, ես նուաստ Թորոս [քահանայ] ստացայ զսուրբ աւետարանս,... մնասցէ այս սուրբ աւետարանս ի սուրբ յԱստուածածին, ի* Լիկանդոնն, *զոր ես իմով աշխատութեամբ և ծախիւք կանգնեցի... այնպէս մնայ ի գեաւղն* Լիկանդոն, *ի սուրբ Աստուածածինն, ի թվին Հայոց ՉԶԲ. (1333)։*

## 319.

### ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՅԼ ԲԱՆՔ

*Երևան 2557*

*Գրիչ՝* Ղազար

131ա *...Ցամի ՉԶԲ. (1333) ի խնդիր եղեալ աստուածունակ տառիս յոյժ փափագմամբ և համառաւտ եւ գրել զայս նուէր բարեաց ոմն հոգիացեալ և աստուածամերձ հայր՝ որբասէր և հաւատարիմ եղբայր* Սեթ *անուն յորջորջեալ, և մեծաւ փափագմամբ ստացեալ զսայ ի վայելումն անձին իւրոյ և ի մխիթարութիւն հոգւոյ, և յետ ելից յաստեացս՝ յիշատակ անջնջելի իւրն, և ծնողացն իւրոց, և ամենայն ազգայնոցն՝ զաւակ ի Սիոն և ընդանեակ յԵրուսաղէմ։*

131բ *Ես անպիտանս ի մանկունս եկեղեցւոյ* Ղազար *մակագրեալ անուն, տեսեալ զփափագ և զսէր սորա, յանձն առեալ ըստ իմում կարի և համառաւտ կատարեցի զբանս աստուածարեալ և հոգելից սրբոյն* Գրիգորի *վարժապետի* Նարեկա *վանից վանականի...։*

132ա *...Սղալանաց գրիս աղաչեմ մեղադիր չլինել, զի տեղիքս, որ կու գր[է]ի առանձին չէր, այլ և կար մեր այս էր։**

** 132ա, 130ա, 149ա, 149բ, 156ա, 156բ և 157ա էջերի ներքին լուսանցքներում ԺԴ. կամ ԺԵ. դարի ստացողներից մեկը, կարմիր թանաքով, թողել է այժմ խունացած և չափազանց դժվարընթեռնելի դարձած մի հիշատակություն։ Մեծ դժվարությամբ կարողացանք վերծանել այն հետևյալ կերպ՝ «Ո՛վ կուրացեալ եղբայրք* Ցավսէ *կարգուրի, որդիք* Ձաք[էո°]սի, *դարձէք ի չար սերտումանց սատան[այ]ի, և տուք զգր[ե]անքն մեր հայրենի զմեկն<կն>ոգ սուրբ պատարագի և տովմարի, եւ լուծմունք Ճ. [հարիւրա]ւորի, զըրժշկար‖<ար>ան, հին և նորի։ Գաւառապետք եղն այն որ ի, ‖ յիշեմք զրանն ձեռոյ հա[յ]ր եպիսկոպոսի* Առաքեալ *անուն* Վայոցձորեցի, *որ վշտացեալ էր ‖ հարկապահա[ն]նութենէ* Ցով[ա]էփ *որդոյն* Էսաի, *մեք այլ վշտացաք, ‖ և առաքեցաք զ*Գրիգոր *մեր հոգևոր որդի եր<եր>եսփոխան զորդի պարոն* Տարսաիճի *‖ և զ'*Իոհանեցին *արեղայդ, զինչ նայ հաղէք (°)...էդ* Ուռեփիս *եղն և կով կթոց, ‖ ամենոց վկայութիւնն մեզ է հասեալ, որ չէ նա տէր առք (°)»։*

## 320.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՑ

Երևան 4674 (տես նաև 1459 թ.)

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Աղթամար

511ա *...Այսմ հոգևոր և աստուածային գանձուցս եկեղեցոյ ցանկացաւ այր ոմն բարի շառաւիղ, և ընտրեալն ի տանուտէրանց, և աստուածասէրն ի քրիստոնէից, որոյ անուն* Յակովբ *ճանաչի. սորա...շարժեալ յազդմանէ սուրբ հոգոյն, ջեռեալ աստուածական սիրով, բորբոքեալ անծախական հրով. ախորժական կամաւք և մեծաւ տենչմամբ ելեալ ի խնդիր այսմ...աստուածական տառիցս, գեղեցիկ և պատուական մարգարտիս, զոր սուրբ և երանելի շնորհալից վարդապետն* Սարգիս *մեկնեալ, կեւթն Թուղթքն կաթողիկեայք...։ Զոր աստուածասէր տանուտէրս այս* Յակոբ *ստացաւ զսա զաւակ ի Սիոն և ընտանեակ յԵրուսաղէմ, անջնջելի արձան ի մխիթարութիւն անձին և ի յոյս փրկութեան։ Եւ ետ զսա ի տաճար սրբոյն Սահակայ, ի հռչակաւոր և յանուանի քաղաքն* Վան *կոչեցեալ։*

*Եւ ես՝ յոգնամեղս և փցունս ի գրչաց, բազմամեղ և դատապարտեալ ծառայս ծառայիցն աստուծոյ անարժան* Կարապետ, *տեսեալ զփափագ սորա և զսէր, յանձն առեալ ըստ իմում կարի, յանգ հանեալ կատարեցի իմով մեղսամած մատամբս, շնորհաւք և ողորմու-*
511բ *թեամբն Քրիստոսի, գրելով զսա ի կղզիս, որ կոչի* Աղթամար, *ընդ* || *հովանեաւ սուրբ Խաչիս, և սուրբ Նշանիս, և աստուածամուխ սուրբ Գեղարդեանս, ի թուականիս հայոց ՉՁԲ. (1333), ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի *և յաշխարհակալութեան նետողական ազգին, ի դառն և ի վշտաբեր ժամանակի։*

*Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, զհամաւրէն որդիսդ լուսոյ, որք լուսաւորիք աստուածային գիտութեամբ սորա ընթեռնլով և լսելով, վասն սիրոյն Քրիստոսի յիշեցէք ի սուրբ և յերկնաթռուցիկ յաղաւթս ձեր զստացող սուրբ դրոցս՝* զՅակովբ, *և զծնաւղսն՝* զՄատթէոս *քահանայ, և զկենակիցն՝* զԱւագ, *և զնորին ծնաւղսն, և զծաղկեալ զաւակ-քըսն՝* զՍտեփաննոս *և զայլն ամենայն, և զազգսն ողջոյն, զի արժանասցին ողորմութեան ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ և աւրհնեսցին յաւրհնութեանն պահու։*

*Ընդ նոսին և ես՝ ամենամեղս ի գրչաց* Կարապետ, *յերես անկեալ աղաչեմ յիշել և զիմ անարժանութիւն, վասն որոյ, յահէ և յերկիւղէ աններելի տանջանացն զարհուրեալ, զսուրբ գիրքս զայս արարի պատճառ փրկութեան և առ աստուած բարեխաւս հաշտութեան ինձ, և ծնաւղաց իմոց՝* Թումայի *և* Մամասի, *և եղբարցն, և ազգայնոցն ամենէցուն՝ կենդանեաց և հանգուցելոց, և ամենայն երախտաւորաց։ Յիշեցէք և զայնոսիկ, որք յուսով և հաւատով կամ բանիւ և արդեամբք յանձնե-*

ցին ի մեզ զինքեանս յիշել յաղաւթս մեր կամ գրել ի սուրբ գիրքս յայս. և որք աշխատեցան ի նիւթս սորա կոկելով և ի հարկաւոր պէտս մեր սպասաւորելով, որոց վարձս բարեաց հատուսցէ տէր աս-
ծ12ա տուած։ Այլ և բարեկամաց մերոց և սիրելեաց... || ... և զուսուցչին մեր և զհաւրեղբաւր՝ ղընտրեալ եպիսկոպոսի տէր Դանիէլի, և զիւր ծնողացն, և զսրբասէր կրաւնաւորի Ստեփաննոսի, որ եղև միջնորդ այսմ բարի գործոյ...

321.

ԱԻԵՏԱՐԱՆ

*Փիրզ. 6273, էջ 143 (Կարին, սբ. Աստուածածին եկեղեցի)*

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Լիմ Կղզի

Փառք եղակի անճառելոյ...եւ ես՝ ամենամեղս և փցունս ի գրչաց եպիսկոպոս Խաչատուր, յանձն առեալ կատարեցի [աւետարանս ի թուին] ՉՁԲ. (1333), ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, գրեցաւ ձեռամբ մեղապարտ գրչի, ի Լիմն՝ ի հռչակաւոր և ի մեծ անապատի, ընդ հովանեաւ Աստուածածնի և Գէորգեայ զօրավարիս... [ի խնդրոյ Ահարոն կրօնաւորի]։ Դարձեալ աղաչեմ յիշել զՇատլուս միայնակեացն և զընկերակիցն իւր զՇդիա, զՄխիթար և զայլս, որք միախորհ են և միակրօն, հանդերձ ծնողիւք։ Ընդ սոցին և ես՝ մեղապարտս ի գրչաց Խաչատուր եպիսկոպոս, յերես անկեալ աղաչեմ յիշել և զիմս անարժանութիւնս, և զծնողսն իմ զՅովհաննէս կրօնաւոր, որ միշտ և հանապազ մեզ կու սպասաւորէ։

32?.

ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

*Երևան 1270*

Գրիչ՝ Մարգարէ

ա

45ա Ո՜վ սուրբ և պատուական բաբունի տէր Ահարոն*, ընկալ զսակաւ գիրս և զիս յիշ[եա]։

բ

104ա Զմեղապարտ գր[իչ] զՄարգարէ աղաչեմ յիշել ի տէր Յիսուս Քրիստոս։

* Նախորդ հիշատակարանի ստացող «Ահարոն կրոնաւորի» հետ նույնացնելով սույն Ահարոն բաբունուն, այս անթվական հիշատակարանը տեղադրում ենք նրան առընթեր, 1333-ի թվաշարքում։





### 323.

## ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 9222,գ**

Գրիչ՝ Յունան
վայր՝ Գայլիձոր

*...Ընդ որս և ես՝ յետինս ի յաշակերտս բանասիրաց և կրսերս ի յընկերակցաց* Յունան *գծող ապիկար, եկեալ առ ոտս մեծիս ի վարժապետաց և առաջինս յիմաստասիրաց* Եսայիա *կոչեցեալ, որ յայսմ ժամանակի փայլէ իբրև զարեգակն, լուսաւորելով բանիւ իմաստից զազգս Հայկազեան, նաև զբոլոր տիեզերս շրջակայական. և եզէ ցանկացող այսմ սուիերի. և աշխատութեամբ երկոց մակագրեցի զգիրս յառաջասացեալ իմաստասիրացն, ի վայելս անձին իմոյ տկարի, և յիշատակ հոգւոյ իմոյ հիքականի, և ծնողաց իմոց, և վարդապետաց, և համօր[էն] երախտաւորաց։*

*Բայց գրեցաւ ի Թուի Հայոց ի յեԹ[ն]հարիւրորդի ուԹսունևերորդի երրորդի (1334), ի* Զորս Վայոց, *ի յանապատիս մեծափառ* Գայլիձոր *կոչեցեալ, ընդ հովանեաւ սրբոյն Ստեփանոսի Նախավկայի և ուգնականուԹեամբ մեծ վարժապետիս վերասացեալ* Եսայեա, *ի յիշխանուԹեան և տէրուԹեան համօրէն զաւառացս մեծ իշխանիս* Բուրթելի, *և որդոց նորին՝* Պէշքենի *և* Իւանէի, *իսկ ի տեղւոյս տէրուԹեան՝ Թոռանց մեծին* Պռոշայ՝ Ամիր Հասանայ *և* Ջումայի:

*Արդ, յաղերս անկեալ աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ինչ ի սմանէ, ընԹեռնլով կամ աւրինակելով, յիշեսՁիք առ Քրիստոս զիս՝ զանարժան գծողս և զամենայն երախտաւորքս, որք յիշեցան ի սմա, զի և ձեզ հասցէ մասն բարի ի բոլորեցունց աստուծոյ, որում փառք յաւիտեանս, ամէն։*

### 324.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Թորոս Աղբար, Բ. էջ 375 (Կէօք Թէփէ գիւղի եկեղեցի)*

Գրիչ՝ Ոսկան
վայր՝ Գլաձոր

*...Գրեալ[եղև աւետարանս այս ի Թվ. Հայոց]...ՉՁԳ.(1334), ձեռամբ* Ոսկան *վարդապետին, ի* Վայոցձոր, *ի վանս* Գլաձոր՝ *սուրբ Ստեփան-*

---

** Պահպանվել է միայն հիշատակարանը։ Պահվում է Երևանի Մատենադարանի պատառիկների ֆոնդից հանված հիշատակարանների ժողովածուի մեջ (Ջեռագիր, № 9222)։*

նոսին, ի թագ[աւորութեան] Հայոց Հեթմոյ ճգնաւորի եւ աստուածասիրի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի,* եւ յիշխանութեան այսմ նահանգի պարոն Բուրթէլի, եւ ի վերատեսչութեան հոգւոյ մերոյ տէր Յոհաննիսի, եւ ի դաստիարակութեան Հայոց դպրոցի Եսայի վարդապետին...։

Յիշեցէք եւ զՄխիթարեան.., զՏիրաւազն, զմայրն՝ զԽէրն, զաւակն՝ զԱնանցն, զերէցտիկինն եւ զհարազոյրն՝ զԱզզատիկինն..., զպարոն Եսաղարն, զՇորոթիկն եւ զՈւխտոնն, զտիկնայքն՝ զՎանենի եւ զՄամխոնն...:

325.

ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Ալիշան, Սիսական, էջ 20 (Վենետիկ)

Գրիչ՝ Աւագ
վայր՝ Սիւնիք

Մեծ և ամենաերջանիկ մետրոպոլիտն և արհիական գլուխն այսմ [Սիւնեաց] նահանգիս տէր Սարգիս խնդրող լեալ... ի վայելումն անձին իւրոյ սրբազանի և եղբօրորդւոյ իւրոյ Յովհաննիսի՝ կուսակրօն քահանայի, որ բազում ժամանակս գեղերի յուսումն աստուածաշունչ հին և նոր կտակարանաց և արտաքնոցն եւս ...Այլ և աղաչեմ... յիշել յամենայն սրտէ զարհիական գլուխն զտէր Ներսէս, և զազգայինս նորա զամենայն՝ զհայրն Գրիգոր և զեղբայրն նորա Սարգիս սարկաւագն՝ ի Քրիստոս։ Եւ դարձեալ կրկին աղաչեմ յիշեցէք և աստուածողորմի ասացէք Ներսէս րաբունապետին։

326.

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՉՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՂԹՈՑ ՊԱՒՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՑՆ, ԵՓՐԵՄԻ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Երևան 1379

Ստացող՝ Կիրակոս Ագրկցի
վայր՝ Երզնկայի գաւառ

ա

354բ ...Ազքանազեանըս զըրոհի
Թուաբերութեանս համարի
ՈւթՆհարիւր ընդ ութսուն և երրորդի (1334)
Ջրաւ եղև այսմ տառի.
Ի գաւառիս Եզնկայի,

* Թվականը՝ ՉՁԳ. (1334), անտարակույս սխալ է։ Հեթում Բ. թագավորը սպանվել է 1307 թվին, Գրիգոր կաթողիկոս Անավարզեցին գահակալել է 1293—1307 թթ., ուստի սույն հիշատակարանը գրված կարող է լինել մինչև 1307 թ., ամենայն հավանականությամբ՝ ՉԾԳ. (1304) թվին։

*Ի խանութեան* Բաւսախտի,
*Հայոց՝* Լեոն *թագաւորի։*
Կիրակոս, *մեղաւք մեռեալս ոգի,*
*Որ սպասաւոր գոլով բանի,*
*Ստացաւղ եղէ այս մատենի,*
*Ի յարգասեաց այլոց՝ ծրի,*
355ա *Ցերեսս || անկեալ միշտ ամենի*
*Մաղթեմ ղեկեալսդ մեր գլնի,*
*Ցիշել ի տէր յայսմ վայրի*
*Զերախտաւոր այս մատենի։*
*Եւ դուք լիջիք ի նոյն բարի,*
*Ցահեղ աւուրն աներեկի.*
*Եւ տէր աւրհնեալ յամենայնի,*
*Ամէն, ամէն և եղիցի։*

Բ

49բ *Ո՜հ հարք և եղբարք, վարժապետք և վարժողք, վարդապետք և աշակերտք, ուսուցիչք և ուսեալք, դասատուք և դասառուք, քննաւղք և քննիչք, խոհեմատուք և խոհեմառուք, հռետաւորք և հռետողք, յորժամ հանդիպիք, բանի սպասաւորք, փոքրոյս տարսոնականի, անաւթոյս ընդրելի տիեզերալոյս վարդապետի՝ երիսս երանեալ Պաւղոսի, որ գրեաց զթուղթս առ Գաղատացիս, շնորհաւք անուամբ Ցիսուսի, յիշատակեցէք զ*Մեծպարոն *ի բարի, որ ետ դրել զսա յաւժարական կամաւք ի լի, սիրահարուստ վարդապետի* Ազրկցոյ Կիրակոսի, *վարդապետաց վարդապետի, իւր և ծնաւղաց անջնջելի, մինչ ի գալուստն Քրիստոսի, ամէն, ամէն, և եղիցի։*

Ողբերգական նուէ պաղատանաց ի խոր սրտէ և աղաչանէ*

*Զմեզաւք դատապարտեալս և զանարհեստ գծող տառիս աղաչեմ, պաղատիմ, խնդրեմ, աղերսեմ, հառաչեմ, գոչեմ, ձայնեմ, մաղթեմ մեղաց թողութիւն խնդրեցէք ի հաւրէ մերմէ և ի տեառնէ Ցիսուսէ Քրիստոսէ, ամէն։ Եւ զերկուսին աշակերտքս իմ այլ յիշեցէք ի տէր՝ զ*Յովհաննէս *և զ*Գրիգորէս, *ինև հանդերձ։*

*Գրիչ՝* Թորոս

Գ

91բ *Զմեզաւք դատապարտեալ և զանարժան* Թորոս *յիշել ի տէր երկնահանդէս աղաւթիւք ձերովք, և ընդ նմին զարժանս յիշելոյ զ*նորբազագն՝ *հանգուցեալ ի տէր, զբարեսէր որդեակս նորա՝ զ*Մեծպարոն, *որ ետ գրել զսա յիշատակ ի փառս անեղին յաւիտեանս, ամէն, ամէն։*

* *Վերնագիրը գրված է կարմիր թանաքով։*

*Միւս գրիչ՝* Մանուէլ

Դ

354բ *Զստացաւղ գրոցս՝ զերջանիկ և զանհուն բարունապետն զԿիրա-*
*կոս, և զեղբաւրորդի իւր զՅովաննէս վարդապետ, և ծնաւղսն նոցա*
*յիշեցէք ի Քրիստոս. ամէն: Ո՜, աղաչեմ յիշել զմեղաւք մեռեալ հողի*
*զծողակրս զՄանուէլ, հանդերձ ամենայն զարմիւք ի տէր աստուած:*

327.

## ՉՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

*Երևան 78*

*Գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Թաւրէժ

ա

291ա *... Յամի ւթնհարիւրերորդի ութսներորդի երրորդի թուականու-*
*թեանս Հայոց (1334) գրեցաւ տառս աստուածային և երիցս երանեալ*
*սրբոյ առաքելոյն Պաւղոսի... որ չորեքտասանեքումբք թղթովքս պա-*
*րունակեալ համայն վարս բարեզարդութեան ծնելոց ամաց: Աստա-*
*նաւր յանդ ելեալ նորոգեցաւ գիրս այս Պաւղոսի առաքելոյ ի մայ-*
*րաքաղաքս Թավրէժ, որ կոչի Վրէժ ընդ հայք և ընդ պարսիկք, ընդ*
291բ *հովանեաւ սուրբ Աստուածածնիս մաւր լուսոյ և սրբոյ զինաւո ‖ րին*
*սրբոյն Սարգսի և յորդւոյ նորա Մարտիրոսի:*

*Այսմ աստուածազարդ սուրբ առաքելոյս ցանկացող եղեալ հա-*
*ւատարիմ և բարեպաշտ քրիստոնեայն* Յոհաննէս,* *և ստացաւ զսա ի*
*հալալ և յարդար վաստակոց իւրոց, զսա ունելով ապաւէն իւր և ծնո-*
*ղաց իւրոց:*

*Ի վերջնում գիշերին, ի ծագել մեծի և աններեկ առաւաւտին,*
*ընդ ամենայն արդարացեալսն հասանել լուսոյ փառաց որդւոյն աս-*
*տուծոյ, այցելութիւն գըտանել առաջի ահաւոր բեմին և անաչառ դա-*
*տաւորին: Ընդ նմին և զապիկար գրիչ զՍարգիս ս[ար]կ[աւագ], որ*
*կտրի տաժանմամբ և մեծաւ տառապանաւք ըստ կարողութեան իմոյ*
292ա *ըստքեցի, ‖ մանաւանդ և ի ջանս սաստիկ յածիլ, շրջիլ, աղերս մա-*
*տուցանել սակս զաղափար առնլոյ սրբաբանութեամբ ընտրեալ, մինչև*
*տենչման իմոյ ոչ զկնի գտանիլ, գտի զաւրինակս ի նմանս անհամե-*
*մատ ստուգութեան: Վասն որոյ ժտիմք պաղատանաւք, որ ընթեռ-*
*նուք, կամ աւրինակէք, կամ ուսանիք, աղաւթս անմոռացս յարաժամ*
*աւժընդակ տալ յաւգնականութիւն, յիշել ի մոռացումն յանցանաց:*
*Զի թերևս ողորմութիւն գտեալ յաներեկ աւուրն այց առնել փրկչին*
*գրեսցէ ի կենացն դպրութիւն զամենեսեան առհասարակ՝ զյիշողսդ և*
*զյիշեցեալսս, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն:*

---

* *Ստացողի անունը գրված է այլ ձեռագրով:*

Սրբագրող՝ Գրիգոր

Բ

292բ Առաջնորդ երախտաւորաց և աշխատողացդ յիշեսջիք և զաշակերտ բանի զԳրիգոր մականուն մեղուցեալ, որ բաղում աշխատանաւք փոքր ինչ նպաստ եղէ յուղղութիւն գրոցս՝ ի բանս, ի բայս, ի կէտս և յոլորակս, զորս թէ մանրամասնաբար և մտադրութեամբ ընթեռնուցուս՝ դտցես, և թողութիւն մեղաց խնտրեսցես բաղում և անթիւ սխալանաց իմոց. ընդ խնդրուածոց իմոց և ձեզ եղիցի մասն բարի յամենառատ պարգեացն Քրիստոսի, որում փառք յաւիտեանս, ամէն. ի թուի ՉՂԴ. (1345)։

## 328.

## ՃԱՌԸՆՏԻՐ

Վենետ. 232 Ցուց. հտ. Բ. էջ՝ 511—512

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Կաֆա

ա

207ա Զսրբասնեալ վարդապետն զԱւետիք խոտաճարակն, և հոգևոր երկամբք ծնեալ որդիքն իւր՝ Միխալ միայնակեացն, զՄարկոսն, զՎարդանն, զԹադոսն, զՆերսեսն, զԹորոսն յիշեցէք ի Քրիստոս, որ վասն արքայութեանն յուսոյն եղեն կրաւնաւորք և ետուն զինչս իւրեանց ի աէր վարդապետն. և նա, Թորոս վարդապետին ձեռամբ, ետ շինել զսուրբ Երրորդութիւնն յաստուածապահ քաղաքն Կաֆա, և եդ անդ զտաւնական դիրքս յիշատակ իւրեանց և ամենայն աշխատաւորաց։ Արդ, որք կարդայք և որք լսէք, յիշեցէք երախտաւորքս, որ ասա։

Բ

312ա Բարեխաւսութեամբ սրբոցն ևւթանասուներկու առաքելոցս, տէր աստուած, ողորմեա ստացողի սորա Աւետիք վարդապետի, և ծնողաց իւրոց, և ինձ՝ ապիրատ գրչի, և իմոց ամենեցուն, և սորին աշխատողի [Գրի]գորի, և լսողաց, և ընթերցողաց, և Թորոս կրաւնաւորի, և Մարկոս միայնակեցի, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։ Նաև այլ արդիւնաւորաց գրոցս՝ Յովհաննէս երիցու, և քւեր իւր Աննային, և Վասիլ երիցու, որ գյոլով մասն գրոյս ետ ի նիւթ սորա և ի գրիչն, Բահատուր բազազին, պարոն Նազրաթին, Սիմէոն չրախճուն, մանկաւագ Կազուրին, պարոն Ավրատին և այլ երախտաւորաց։

Գ

214բ Տէր մեր Յիսուս Քրիստոս... ողորմեա ստացողի սորա Աւետիք վարդապետի, որ յորդորեաց զրաղումս ի բարեգործութիւն և զարգարեաց զեկեղեցի սուրբ. շինեաց զեկեղեցի զմբեթ և յանուն սուրբ Աստուածածնին՝ ի Գամճակ վանքն, և մի եկեղեցի՝ յաստուածապահ

*քաղաքն Կաֆա, և ետ գրել տաւնական երկու, զմինն ետ ի Քամնակն և զմիւսն՝ ի Կաֆային եկեղեցին՝ ի սուրբ Երրորդութիւնն, եւ եղ աւրհնութիւն, զի խնամով պահեսցեն և մի ոք ձեռնամուխ լիցի, զի սոքա, որք աւգնեցին ի գին սորա՝ Վասիլ երէցն, և Յովհաննէս երէցն, և Միխայլն ասացին, թէ անէծք գրեցէք, որ ի մեր ազգականացն ոք ձեռնամուխ լիցի, նա չկամեցաւ վարդապետն [ասելով], թէ աւրհնութիւն լաւ է քան զանէծք։ Գրեցաւ գիրս ի Քրիստոսի մարդեղութենէն ՌԳՃԵ. (1305),* ամէն։*

*ՋՁԳ. (1334) հայոց թվին գրեալ է։***

## 329.

### ՄԱՇՏՈՑ

*Փիրզ. 6273, էջ 143—144 (Վան, Մանգան գիւղ)*

Վայր՝ Արճէշ

*...Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ գիրքս հօրն Մաշտոցի իստոյգ և յընտիր օրինակէ, ի քաղաքս Արճէշ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Գրիգորի, և սուրբ Յակորայ, ի հայրապետութեան տէր Զաքարիայի, և ի թուականութեանս Հայոց ՋՁԳ. (1334)։ Յիշեցէք ի Քրիստոս... զստացողք սուրբ գրոցս զկուսակրօն և զճգնաւոր միայնակեաց զեղբարքն չորեսին՝ զՍարգիս, և զՍէթ, և զՍիմէոն, և զԹումայ, որք շինեցին զսուրբ եկեղեցիս՝ զսուրբ Առաքեալքս յարդար վաստակոց իւրեանց, ի գիւղաքաղաքն Ակոռ, և եդին անդ զգիրքս մաշտոց յիշատակ հոգւոց իւրեանց և ծնողաց իւրեանց՝ Մարուրի և Արևտիկնայ, և զիմ անարժանութիւնս յիշելոյ արժանի արնէք ի տէր՝ զամէնամեղ գրիչս, և զմեր ծնողսն, և զերախտաւորն մեր և զուսուցիչն՝ զՍիմէոն քահանայ...։*

## 330.

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Վենետ. 164, Ցուց. հա. Ա. էջ 698*

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Կիլիկիա

346բ *...Գրեցաւ սա ի Կիլիկեցւոցս աշխարհ, ի թուականութեանս Հայոց ՋՁԳ. (1334), ի հայրապետութեան տեառն Յակոբայ, և ի թագաւորութեանս Հայոց Լևոնի որդւոյ Աւշնի արքայի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Նշանիս, ձեռամբ ամենաթշուառ*

---

** Թուցե պետք է լինի ՌԳԾ[Հ]Ե. (1335)։*
*** Վերջին տողը գրված է լուսանցքի վրա։*

*Գրիգորի, ժանտատես գրով և բազմաշփոթ մտաւք։ Ի խնդրոյ հոգևոր եղբաւր մերում, պատուական և սրբասնեալ քահանային Պօղոսի, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ բարի իւր, և ծնողաց իւրաց, և եղբարց։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք պատահիք սուրբ տառիս, յիշեսջիք ի տէր զպատուելի քահանայն Պօղոս, և զհայրն իւր՝ զԿարապետ, և զմայրն իւր, և զեղբարսն՝ զՄարտիրոս և զԳէորգ՝ զյառաջեալսն առ Քրիստոս, և զմիւս եղբայրն՝ զԿոստանդին, և զքոյրն՝ Ազբրաց, և զայր նորին՝ զԳրիգոր, և զհոգևոր որդին իւր՝ զՅովանէս, և զհայր նորին՝ զԱնդրէաս ոսկերիչ՝ զհանգուցեալն ի Քրիստոս, և զեղբայր իւր՝ զԿոստանդին, և զամենայն ազգայինս նոցա, որոց ողորմեսցի տէր Քրիստոս և շնորհեսցէ յարութիւն կենաց, ամէն...։*

## 331.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 3276**

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Մեծոփայ վանք

44ա *...Իսկ յետոյ մակագրեալ եղև* իմով ձեռամբ ի դէմս քարտիսի՝ Գրիգորի աբեղայի և սուտանուն կրօնաւորի, ի թվի Հայոց ՉՁԳ. երորդի (1334), ի լուսազարդ անապատիս Մեծոփայ վանք առձայնելոյ, ընդ հովանեաւ սուրբ մօրս լուսոյ Աստուածածնի, ի յիշատակ բարի հոգևորական օգտից Վնգենայ կուսակրօն միայնակեցին։*

* Խոսքը Մխիթար Սասնեցու աշխատությունների ընդօրինակության մասին է (տես՝ № 200 հիշատակարանի ծանոթությունը)։

# 332.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2776

Գրիչ՝ Գրիգոր երէց

...Այս ամենայն սքանչելիքս, որ սուրբ գրաւքս մեզ ցուցան,
Ի յԱդամայ եղև սկիզբն, մինչև ի յայս նոր Թուական՝
Ութն հարիւր ութսուն և չորս (1335), որ զաւրացան յազգն Հագարեան՝
261ա Իսմայէլեանք և մոգականք, որք ընդ իրար կան միաբան։
Ի յայսմ ամի էր զաւրացեալ Բուսայիթ ղան
Եւ ընդ իւրոյ իշխանութեամբ ունէր զաշխարհըս ամենայն,
Խորասան տիրել ուժգին, մինչև ի գետն Ամու անըւան,
ԶԱտրպատական և զՄիջագետն և զԲաբել աշխարհն ի լման,
ԶԿիլիկիայ և զՀոռոմ, նայ և զաշխարհն Պալեստեան,
Նայ և զաթոռ սաղմոսղին և զգաւառն վրացական:
Ժանտաբարու եղեալ ղազան քրիստոնէից ազգիս Հայկեան,
Է ծարաւի մերո արեան գազանաբըրու կարճի նըման,
Նայ մարտ եղեալ յեկեղեցիս և տապալէր զամէն սահման,
Եւ խորհուրդ չար միտս ունելով կապուտ կտաւ եղեալ նշան,
Կոփահարեալ յամէն դիմաց զմեզ առնէին հալածական.
Փրկչին հրամանքն աստ կատարի յաւետարանն, որ մեզ կարդան,
Ի ժողովոյն իւրեանց պղծի զձեզ արտաքսեն վարըստական,
261բ Մեծ բռնութեամբ լինէր տիրել ուրախալի անվրիպական։
Ի յայսմ ամի էր Թագաւոր ազգիս հայոց յոյժ գիտնական
Լևոն անուն, յազգէ մեծաց և հարազատ յոյժ աննման։
Այս ամենայն բանքս, որ աստի-անտի ի մի ժողովեցան,
Վասն միոյ պատուականի, որ յայս վայրի ներգործեցան,
Եպիսկոպոս մի հրաշալի, բազմաց պատուած և մեզ ցուցան,
Տէր Մաթէոս սա անուանի՝ որբոց 'ւ այրեաց եղեալ պաշտպան.
Հետևելով փրկչին ձայնի՝ հոգալ զաղքատս 'ւ ածել սեղան,
Ցոլով ազաւթս առանձնական սա կատարէր արիական,
Եթէ աստուած փրկեաց զաշխարհս ի խաբողէն իւրմէ սահման,
Բայց հիացումն զիս պատեաց, զինչ սա հոգայր զազգս մարդկան,
Զի հողեղէն մարդ յաշխարհի զանձն կամաւ տվեալ մահուան,
Ի յաշխարհէ չհրաժարելով և տիրելով երանութեան.
Ահա տեսաք նոր սքանչելիք և կատարեալ զփրկչին հրաման,

262ա Թէ վաճառէ, զոր ինչ ունիս, լեր իմ ղանձին վաճառական,
Ըղմեծութիւնն ոչ թողլով, ստացաւ զակունքն պատւական,
Դանձէ զզանձն իւր ի յերկինս, փառաւորեաց զաստուածըն բանս
Դառն և ի վիշտ ժամանակիս, որ քրիստոնեայք մեղաւք մեռան,
Ջավորական մեղքն չթողուն արհամարհել զպատւիրան,
Անուամբ կոչեալ են քրիստոնեայք, գործով հեռի յոյժ անպիտան,
Ջխոստովանեալ դծածուկ բան, լուկ հաղորդին յոյժ անարժան,
Ապիրատ 'ւ անբարտաւան, յեկեղեցոյ դուռն ոչ երթան,
Ոչ սրբոց տաւն մեծարեն, ոչ աւտարաց գնեն սեղան։
Տէրն ոչ արար ընդ մեր մեղացն, աստուածութեան կամք
քաղցրացան,
Ցարոյց կրկին կանկնող ընութեանս, բոտ առաջին մաթէոսեան.
Լուսաւորիչ սուրբ հաւատոյս, որպէս Գրիգոր Պարթևական,
Որ դշարժեալ թոյն մահաբեր իժիցն արար փախստական
Քաղկեդոնի [չաը] անգեղով՝ գՆեստոր առնէր թշւառական։
262բ Այլ և զալիս բռնաւորաց քաղցրացուցեալ յոյժ աննման,
Որք հանապաղ մեծ վիշտ կամին փոքրիկ գնգիս այս պետրոսեան,
Իսկ սայ նման սուրբ Գէորգայ՝ Թէոդորոս չարին սուգան,
Եւ սուրբ Սարգսի յոյժ դաւրութեամբ, Մեռկեռոսի խաչիւ նշան,
Եւս առաւել տէր Մաքեոս փայլեաց ի յաղգս հայկազան,
Որպէս զարծիւ սլանալով առ Թագաւոր և ընդ իշխան,
Շիջուցանէր զըարկութիւն, որ բորբոքէր բաբելական։
Յոյժ տրտմութիւն փարատեցաւ, ի խաւարէն դեբծեալ լուծան,
Ջտիւ և դդիշեր ոչ դադարեալ ղաղաւթս առնել, որ իւր սահման։
Ոչ թէ լսել եմ և գրել, այլ իմ տեսած է զինչ գրեցան,
Կամք ունէի յերկար ասել, թէ կարգացուգքն չձանձրանան։
Գիտէր ի յայս ժամանակիս սուրբըն Ներսէս աստուածաբան,
Որ նա պաավէր զինչ որ արժէր զիմ հոգևոր տէրս պատւական.
263ա Թէ չէ ես ե՞նչ արժան լինիմ ի դէմ մարդկանց խաւսել մէկ բան,
Եւ կամ շինել ոտանաւոր անճառիցս այս վիպասան,
Ջի մեղուցեալ և ապիկար, տկար ոգի անձն անարժան,
Այլ զի տեսի զայս բարութիւնս, որ յիմ աւուրս գործեցան,
Յայնժամ և զիս ստիպումն հոգոյս յագթեաց 'ւ ասել ետ ինձ
զայս բան։
Բայց թէ կամիս հարցող լինել չեմ յայս տեղեացս ես բնական,
Այլ և աւտար ի սահմանացս և անբնակ մոլորական,
Ջունիմ դադարք ի մի տեղի ոչ մի աւուր հանգըստարան,
Եւ թէ անունս հարցանես Գրիգոր չերէց եմ անարժան,
Որ կարգեցի յայսմ տառի տունքս թվով հարիւր և քսան։

## 333.

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երեւան 7599 (տես նաև 1604 թ.)*

Վայր՝ Կարին

281ա ...*Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, իմ մասնու չափ մեղացն, որ գործել եմ, թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, և մեր ծնաւողացն, հաւրն իմոյ* Վարդերեսի, *և մաւրն իմոյ* Հարկիէ *տիկնայ, և արեամբ նահատակեալ եղբաւրն իմ* Գրիգորոյ, *զոր և մեզ խնդրէք՝ տացէ ձեզ Քրիստոս։*

*Գրեցաւ ի նեղ և զառն ժամանակիս, ի ղանութիւնն ա[յ]լազգեաց* Բուսաիտին, *ի հայրապետութիւնն մեր տէր* Յակոբայ, *և ի հայոց թագաւորութիւնն* Լեւոնայ, *ի թվ. ՉՁԴ. (1335), և ինքն աստուած աւրհնեալ յաւիտե[ա]նս։*

281բ *Գրեցաւ ի* Կարնոյ *քաղաք, ըն[դ] հովանեաւ սուրբ Ստեփանոսի Նախավկայիս, աղաչեմ սղալանաց կամ պակասութեան մի մեղադրէք, ի զառնութեան ժամանակիս և ի նեղութենէս, ի սրտիս տրտմութենէս այս չափս գրեցաւ, մէկ բերանով հայր մեր յերկինս ասացէք և հառաչմամբ սրտի թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ, և աստուած մեր յիշողացս ողորմեսցի, ամէն։*

## 334.

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Վասպ. 115. Լալ. Ցուց. էջ 248—249 (Աղթամար)*

*վայր՝* Ուռնկար անապատ

*Գրեցաւ գերարփիս այս և գերալուրս... ի յանապատիս* Ուռնկար *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ և յաղթող և աստուածընկալ սուրբ Նշանի, և սրբոյն Ստեփաննոսի, և առաքելոյն Պետրոսի, ի յաշխարհակալութեանն* Բուսայիդ *ղանին, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *ի յառաջնորդութեան տեղոյս* Ղազար *կրաւնաւորի։ Յիշատակ ամենիմաստ, ամենազով, քաղցրահայեաց և արդիւնայկատար, սըրբայնեալ և աստուածահաճոյ, սրբասէր* | | |

## 335.

### ԱԻԵՏԱՐԱ՞Ն

*Ալիշան, Հայապատում, էջ 527*

...*Յայսմ ժամանակի երեւեալ քաջ և արի, յաղթող և բարձրաբազուկ իշխանաց իշխանն՝ յազգէ* Վաչէի, *որդի* Տայիրին, *որդւոյ բա-*

*ըեպաշտ և աստուածասէր* Քրդին, *որ և անուն նորա* Քուրդ* *կոչի, որոյ անուամբն և քաջութեամբն մնաց գաւառս մեր և վանսբայքս անշարժ և անվնաս յայսմ մեղսաշարժ և դառն ցասմանցս. զի յայսմ նուազեալ և զառնացեալ աւուրս, որ վասն մեղաց մերոց, երեւեալ մեծափառ և աստուածահաճոյ մեծ զօրավարն և երեւելի նախամարտիկ, պարծանաց և զարդու գաւակն Հայաստանեաց, ամենօրհնեալ* Քուրդն. *զի ոտնաձայնք երիվարացն նորա, և ճոճիւն նիզակացն, և փայլատակումն սուսերացն, ճայթմունք աղեղացն, և կուռ զրահքն և ասպարափակ լինելն, և այլ ահարկու կազմուածն՝ զարհուրեցուցանէին զթշնամիսն, թող զյաղթութիւն և զքաջութիւն, և բազում պատերազմաց վանումն ի ձեռն նորա, և ազատազօրաց նորա բազմութիւն, գեղեցկութեամբ՝ իբրեւ զօր երկնից, և քաջութեամբ՝ իբրեւ զառիւծ կամ իբրեւ քաջարծուի ի վերայ Հայաստանեաց, յամենայն պատերազմունս։ Այնու՝ առաջի այլասեռ թագաւորացն՝* Ղազանին *և* Ղարտպանդին *և* Պուսայիդի** *և մեծամեծ և սպարապետ նոյինացն մեծարգոյ և փառաւոր երեւեալ, և յամենայն շուք և պատիւ և խիլայ ընդունեալ, պահէր խնամօքն և ողորմութեամբն աստուծոյ զգաւառս և զվանորս ի խաղաղութեան, և այլոց գաւառակցացն բազում կարեկից և օգնական լինէր։ Որոյ՝ աջն անեղին և բազուկն հզօրին աստուծոյ հովանի և պահապան լիցի նմա ի տուէ և ի գիշերի, աստուածասէր և բարեսէր ամուսնաւն* Խոյան Խաթունին *և ամենայն հեծելազօրացն։ Տազցրասցի նմա աչք բռնաւորաց և մեծամեծաց, և թշնամիք նորա առաջի նորա յամօթ և նկուն լիցին, և իբրեւ զԿորխ և զԴադան յանդունդս իջցեն. և ձեռք նորա հանապազ ի վերայ թիկանց թշնամեաց իւրոց, ամէն։*

336.

## ՄԵԿՆՈՒԹՅՈՒՆՔ ԱՌԱԿԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՑ ԵՒ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ ՎԱՐԴԱՆԱՑ ԵՒ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

*Երևան 1141*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Գլաձոր

ա

331ա *...Ի թուականութեան հայկազեանս տումարի ՉՁԴ. (1335), և յաշխարհակալութիւն* Պուսաիտ *խանին, որ յազգէն նետողաց. յորժամ կատարեցօ մատեանս աստուածային ի գծելոյ, դոյժ տարածեցօ թէ* Պուսաիտն յօէլօ *(իմա՝ հաւելաւ) ի հարսն իւր։ Թագաւորութիւնն Հայոց* Ղևոնի *բարեպաշտի, նմանեալ նախնեացն սրբոց՝* Կոս[տանդնի և]

---

** Վաչուտյան Քուրդի բուն կալվածքն էր Արագածոտն գավառը Ամբերդ ամրոցով, ըստ Ալիշանի նրանք «թէ Այրարատայ կողմերը տուն տեղ ունէին, և թէ հայ Աղուանից կամ Արցախոյ»։*

*** Աբուսայիդ Ղանը վախճանվել է 1335 թվականին (տես հաջորդ հիշատակարանը), ուստի սույն և № 334 հիշատակարանի գրության վերջին հնարավոր եզրը 1335 թվականն է, ըստ այդմ էլ այդ հիշատակարանները տեղադրում ենք 1335-ի թվաշարքում։*

*Թէոդ[ոսի], ըստ այնմ պսակեալ ի հրեշտակ[աց], և ի հայրապետութեանն տեառն Յակովբա, և ի վարժապետութիւն մանկանց Սիոնի տեառն իմոյ՝ վսեմական անյաղթ հռետորին յՕտախա, որ բարի կամօք շնորհեաց զօրինակս գրել՝ զպիտութիւնս առակօք հանճարոյ աստուածայնոյն Սողոմոնի, զոր բացայայտեալ է Ներսէսի արքեպիսկոպոսի Լամռօնի տեառն և տիեզերալոյս վարդապետի։ Ի նահանգիս Սիւնեաց, ի գաւառիս Վայոյձոր, բարձրադիտակ մենաստանիս Գլաձոր, որ յանհմուտ և գնչու արանց Գայլաձոր ասի, յորս հօաքեալ հրճւին ի սմա հարազատ ծնունդք սուրբ եկեղեցոյ հայկազինս տոհմի, ի տարփումն սիրոյ անճառ խորհրդոյ տնօրէնութեան անմահ փեսային Յիսուսի, ըստ էլլադական սահման պայմանի, որք յոլովք ի սոցանէ աշխատեցան ի ծրագրութիւն սորա, հրամանօ Նախասացեալ առնն, ուստի յայտնագոյն հմտաբար տեսողաց յայլատարազ գրչացս։*

*Արդ, որ ոք պատահի յարձանս անշունչս, բայց բանօր իբր կենդան ընթերցեալ, յիշեսջիք ի բարի զստացօղ սորայ և զվաեւօղ՝ զՍարգիս քահանայ, որ հանդերձեալ է զօաղան առ[ն]ուլ բարունի, և զեղբայր իւր միայնակե[ց], և ամենայն մերձօորօք իւրաւք։ Ո ոք որ հանդիպիք մատենիս կարդալով, յիշեսջիք ի քաղցր յոյսն մեր Քրիստոս և ի հայր Նորին և ի հոգին սուրբ և երրորդութեանն անձնօորութիւն հասարակ միագադոյն՝ յիշելոցս և յիշողացդ, ամէն, ամէն։*

*Նաև զիս՝ զգծող մատինիս զԳրիգոր, թերևս արժանի առնէք յիշման, և զմերսն ամենայն ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որում փառք յօիտ[եանս] յօիտենից։*

Բ

44ա *Ջստացող սուրբ մատենիս՝ զատղոմոֆնեան առակիս, և զմեկնեալ և զպարզեալս ի Ներսէսէ եպիսկոպոսէ՝ զհամանունակի, ըզՍարգիս պատուական քահանայ և ընտիր կրաւնաւորս, զստացաւղ սուրբ տառիս դրեայ Քրիստոս ի գիր քո կենդանի, ամենայն զարմիւք իւրովք։ Այլ և զիս՝ զանպիտան և զանարհեստ գրիչ Գրիգոր սուտանուն քահանայ և զծնօղսն մեր։*

## 337.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վասպ. 117. Լալ. Ցուց. էջ 253-254 (Կաուց անապատ)*

Վայր՝ ի գաւառս Լոմպարտr (Իտալիա), ի վանս Սեն-Պենետ

*Ցամի [եւթնհարիւրերորդի]* ութսուներորդ և չորրորդի թուականութեան Հայկազեան տումարի (1335) կատարեցաւ սուրբ աւետա-*

** Հիշատակարանը յուղոտվելով փչացած է եղել և մեծ մասամբ դարձել է անընթեռնելի. «եւթնհարիւրերորդի» բառը լրացնում ենք մենք, որովհետև ԺԴ. դարում գրված լինելու համար 84-ով վերջացող թվականի հարյուրավորը միայն կարող էր «եւթնհարիւր» լինել (784+551=1335)։*

*բանս ձեռամբ յոքնամեղաւոր | | | * ի գաւառս, որ կոչի* Լոմպարտ*,
ի վանս որ է* Սան-Պետրո *ընդ հովանեաւ սուրբ եկեղեցւոյս, որ հան-
գըստարան [է] սուրբ և սքանչելագործ ճգնաւորի Քրիստոսի Սի-
մէոնի* | | |

338.

*ԺԱՌԸՆՏԻՐ*

*Վենետ. 222 Ցուց. հտ. Բ. էջ՝ 346—350*

*Գրիչ՝* Ներսես Կրակցի
*վայր՝* Երուսաղեմ

ա

466ա *...Արդ, գերապայծառ գիրքս ցանկալի և զանազան պտղով ի լի, գրախտ ախորժելի և ծաղկաւէտ բուրաստանի տէրունական տաւնից, և նահապետաց, և մարգարէից, և առաքելոց, և վկայից, և կուսից պատմութիւն ի սմա գտանի, որ ճառընտիր և տաւնակ[ա]նի ձագ սա կոչի։*

*Գրեցաւ ձեռամբ անարժանի և աներկեղի, որ* Ներսես *անուն կոչի, ստունգանող պատուիրանի և յանցաւոր տեառն աւրինի, սուտանուն աբեղայի և մեղաւոր յամենայնի. ի Հայկազեանս թուականի ՉՁԴ. (1335) համարի, ի վանս հրեշտակապետացն Միքայէլի և Գաբրիէլի, և ի տեղիքս տէրունի՝* Երուսաղեմի *սուրբ քաղաքի։*

*Բայց ժամանակս էր անբարի, զոլով տեղիքս տեառն գերի, աւերեալ հինյատակի, անակնկալ թէ այլ շինի։ Քրիստոնէից ազգք նախատի, անաւրինաց կոխան լինի։ Բայց լսեցաք համբաւ բարի, թէ ֆռանգ ազգն շարժի վասն տեղացս տէրունի՝ Երուսաղէմայ սուրբ քաղաքի. երանի թէ այս մեզ լինի, որ մեր բեկեալ սիրտս կանգնի, գլուխ անկեալ մեր ի գետն[ի]՝ մինչև յերկինս բարձրասցի, նշան խաչին պայծառասցի, եկեղեցի զարզարեսցի։*

*Բայց ըստ գործոցս, որ գեռ գործի, չեմ իմեալ թէ այդ մեզ լինի։ Բայց ամենայն ինչ կարելի տեառն աստուծոյ իմ՝ Յիսուսի։*

*Զայս դառնաշունչ ժամանակի, և ի նուազել հայոց ազգի, անաւրէն ազգն Իսմայէլի յարեան ի վերա երկրին* Կիլիկէ. *և զամէնն ի սուր մաշեցին սուսերի, և զայլն ի* Մըըր *վարեցին գերի, և զկէսն՝ ի յերկիրն* Խարամնի:

*Եւ Յիսուս Քրիստոս՝ տէրն ամենայնի, գերելոցն արասցէ բարի։*

*Եւ ի սոյն ժամանակի է թագաւոր Հայոց ազգի երիտասարդ ըստ հասակի, որոյ* Լևոն *անուն կոչի, պճնեալ թագիւ տեառն Յիսուսի. և ի հայոց ազգի հայրապետի տէր* Յակոբի, *և ի յաթոռակալութեան* Երուսաղեմի *սուրբ քաղաքի, որոյ տէր* Յովաննես *անուն կոչի, և իւր ծնողացն և քւերն* Մարեմթագի՝ *հայրազատի, որ արդեամբք յորդորեաց զիս ի գրել ճառի....*

---

* *Երկու տող անընթեռնելի*



113—18

*Ո՜վ, կարդացաւղք այսմ գրի և հանդիպիք սղալի, նա դուք ուղղեցէք սիրով և մի եպերեյի, զի ի վշտալից ժամս գրեցի, որ է աչքս պակասել ի լուսի, և ստամոքցաւ յամէն ժամի, և չունէի մխիթարաւղ ոչ եղբաւրէ և ոչ յընկերոջէ, բայց միայն յաստուծոյ ամենայնի։ Եւ էր տեղիքս յորում գրէի խիստ եղ և գարձ մարգի։*

*Արդ, տեսա զիս մեղաւք ի լի, զջան ի սրտի դրի, և ձեր աղաւթիւք սուրբ տառքս ի գլուխ [հանի], զի սա ինձ բարեխաւս լինի առ Յիսուս աստուածն իմ և ամենայնի, որ ինձ և ձեզ ողորմեսցի։ Այլ և հոգւով ցանկայի, որ յիմ ձեռացս գրի կենայր ի դուռն սուրբ Սիոնի և սուրբ քառասուն վկայիցն Քրիստոսի, զի յաւուրն աներեկի բարեխաւս լինին հոգւոյ իմոյ և մարմնի. այլ և ծնողացն իմոց՝* Աւտարշահի *և* Սնռեփորի, *և քուրն՝* Ավծի, *և իր տղայոցն ամենայնի, և* Սեթ *պարոնի, և քեռեցն իմոց՝ միակեց* Յովանիսի*՝ ի հետ աստուծոյ ինձ երախտաւորի, և ծեր* Հանիսին, *և տէր* Պապի, *և* Կոստանցի, *և* Աւետի, *և* Վասլի, *և մաւրքաւրեացն՝* Սիտայ, Ֆիմի, *և* Յրի, *և* Բուհարխաթունի, Մամախաթունի, *և* Կիրայի, *և* Գորգ *Մագնի, և իւր տղայոցն ամենայնի, և* Ստեփան *Խազանի, և* Լևոնին, *և* Հեթումին, *և իր տղայոցն ամենայնի, և* Կոստանդին *աբեղին, և իր ծնողացն և քերցն ամենայնի, և* Անխալասի, *և իր տղայոցն,* Տիկնացտիկնի, *և* Տնդնի, *և այլոց ամենայնի, և բնակչաց* Կրակոյն *ամենայնի, ես առաւել, որ են ի դուռն Սիոնի՝ առաջնոցն և վերջնոցն, որ են յայսմ ժամանակի, հոգևոր հաւրն՝* Մարտիրոս *քահանայի, և իրեցկնոջն, և իր տղայոցն՝* Թորոս *աբեղայի, և* Պաւղոսի, *և* Յովանէս *քահանայի, և* Հեթում *քահանային, և նորընծայ քահանայիցդ* Փոլոսի, *և իր եղբաւրն* Յովանէս *աբեղի, և Բ.* Սիմէոնին, *և* Ստեփանոսի, *և այլոց հարցն և մարցդ, որ կան ի դուռն սուրբ Սիոնի, զոր տէր Յիսուս յիշեսցէ ի բարի, և երախտաւորաց սուրբ Սիոնի՝* Պակէ *և* Սիրի, *և իր տղային տէր* Կոստանդնի, *որ հալածեալ է վասն սուրբ հարցն ուղիղ կանոնի, և ննջեցեալ քահանիցն* Թորոսի *և* Ճաւշլնի, *և իր տղային* Վասլի, *և սուրբ եղբարցս, որ բնակեալ են ի սուրբ քաղաքս* Երուսաղէմի...: *Եւ կուսակրաւն հոգևոր եղբաւրն մեր* Մատթէոսի*՝ գրոց կապողի, և իր ծնողացն, և եղբարցն ամենայնի..., և գրողիս և ստացողի այսմ տառի միշտ թողութիւն մեղաց խնդրի յարարչէն ամենայնի, որ ձեզ և մեզ շնորհէ ձրի, որ ոչ ստացայ այլ ինչ յերկրի, բայց զգիրս ցանկալի...։**

Բ

128բ *Ո՜վ եղբարք, յազգի յազգի խապրնոցս չգիտեմ թէ ինչ կու գրեմ, զի կու ասեն՝ թէ գլխատի մի տաճկնին այասցիք կոտրել են։*

Գ

144բ *Հազար վայ ինձ և ամէն Երուսաղէմացեց քրիստոնէից, որ գետ նինուէցիքն կու տապինք յահէ անաւրինացս, թէ ոչխարազինիս չար*

* Ամբողջ հիշատակարանը գրված է անկանոն տաղաչափությամբ։ Շարունակությունը չի բերված հրատարակչի կողմից։

տունն իւրեանց, զամէն հայ քրիստոնէքս ի մէկ տեղի պիտի ժողովեն և սպանեն, զի կու հաչեն՝ թէ ձեր տյասցիքն դխատին և զգանըշխներն սպանել են, ամմէնք զքէն ի ձեզ պիտի հանէք. և ամէնքս ի դող կանք. և բաժին մի փախեան դէպ ի հոռոմ գեղանն. և զառաջակայն՝ աստուծոյ յանձին է և իւր ծնողին։

Դ

166ա Ո՜վ եղբա՛րք, ի չար խապրնոյս, որ կու ասեն. թէ սուլտնայ տղայն բաղում ղաւբաւք ի վերայ Սռու կու երթայ. նա միտքս խաւըել է, իսկի չգիտեմ թէ ինչ կու գրեմ, և այլ, որ իսկի մխիթարիչ չունիմ եղբարց կամ յորդորող. և են ամէն ընկերքս հոռմցիք, և Քրիստոսի յուսոյն մերոյ փառք յաւիտեանս, ամէն։

Ե

382բ Ո՜վ եղբարք, յորժամ հանդիպիք սղալի, նա դուք ուղղեցէք սիրով և մի եպերելով, զի ըղուղս Կրակցի է։ Զի վարդապետ մի յղըրկեց զաշակերտն, թէ զնա ղլուխ դնէ. նա գնաց գնեց՝ ու կերաւ զականջն ու զլեզուն ու դըղուղն, ու երեր զգանգն առաջեն եղիր, նա [վարդապետն] հարցաւ, թէ ո՞ւր է ականջն. նա ասաց, թէ ականջ չունեը՝ խուլ էր, ո՞ւր է լեզուն, լեզու չունէր՝ լեզատ էր, ո՞ւր է ըղուղն, ի Կրակայն էր արծել, ըղուղ չունէր։

Զ

76բ Ո՜վ եղբարք, ի յայս ննջեցելոց ճառիցս գրելն, մեծ փորձութիւն հասաւ ի վերաս, որ ոմն անուն Գրիգորէս Խարտբերդցի, նման Յուլիանոսի և գործարար Յուդայի, որ գնաց առ տէր Ճաւշլին Ոսկերենցին, ու ասաց թէ Կարապետ փիլիսոփայն Խարտբերդցին և քո Ներսէս Կրակցին չեն այնել դտաւ[ն]քն ի յուրբաթին և ի չորեքշաբաթին, և ոչ պաշտեցին ի տանի սուրբ Կարապետին, որ էր տաւն ըստ Հոռոմին։ Նա տէրը շարժեալ յազդմանէ չարին և լսեց իւր չար խորհըրդակցին, յղրկեց չորս արեղայ նման լեգէոնին, որ էին նման չորս գինւորին, որ զԹովմաս առաքեալն աշտիշուք ի կողն խոցեցին։ Եկին ի գուռն Ներսիսին, ու զիմ ոտն ու զգիրգ ի յարեգակն հանին, և զդուռն փակեցին և զբալնիքն առին. և այլ յերջև գնացին ի տունն Կարապետին, և զհայսն տաշտոմն ի գուրսն դրին և զայլ ամէն ոտհնին. և առին զերկուքս և տարան ի վերի վանքն, ի դուռն Սուրբ Յակոբին, թէ այս են, որ ոչ հնազանդին կանոնաց քաղկեդոնին և նզովեն զտումարն Լևոնին։ Յառաջ մատուցին զԿարապետն ի դարպասին, և առանց հարցափորձին զվեղարն առին ու ձգեցին յերեսս տիրին, և տարան ի ղնդան բանդին։ Յերջեւ զմսկին Ներսիսուկս առին ու վերամբարձ տանէին, նա ջանցի թէ ի դուրս վազէի ի տանէ բռնաւորին, նա յերջեանց առին զվեղար վեղրգտակին, և զիս թողին զլխիբաց ի մէջ հրապարակին, և տարան առ ընկերն իմ ի բանդին, և պինդ զգուշացուցին, որ վաղւն տամ դնել ի յերկաթքն Մելէք Նասրին։ Նա եկին

ամէն շներն, որ հնազանդել էին չար հրամանին և աղաչեցին, որ խալըսեցաք ի տանէ բանդին, զոր հատուցէ նոցա տէր ըստ իւրեանց անիրաւ դատաստանին։* Ո՛վ եղբարք, զայլ աւելին չըկարցի գրել։**

### 339.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Օքսֆորդ, Ms. Arm. D. 4. Տէրայր վրդ. 52. Թղթ. 120, էջ 891—896 (տես նաև 1341 և 1606 թ.)*

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Եկեղեաց գաւառ,
սուրբ Կիրակոսի վանք

328ա ...Արդ՝ ես Նուաստ յամենայնի Մելիքշահս, ի գեղջէ Թիլուխարձէն, զմտաւ ածի զայս ամենայն և յիշեցի զայն, որ ասէ Թէ՝ երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընտանեակ յԵրուսաղէմ. և դրեալ ավի զսուրբ աւետարանս զայս ողորմութեամբն աստուծոյ յիմ հալալ արդեանց, յիշատակ ինձ, և զաւակի իմոյ Ստեփանոս քահանայի, և զաւակին իւրոյ Սարգիս տղային և ի վայելումն անձանց մերոց և յիշատակ ծնաւղաց իւրոց։

Արդ, գրեցաւ սա ի Թուաբերութեանս Հայոց ՉՁԴ. (1335), ձեռամբ սուտանուն աբեղայի Ներսէսի, ի Թագաւորութեանս Հայոց Լևոնի որդւոյ Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Յակովբայ, ի դառն և յամբարի ժամանակս, ի գաւառս Եկեղեաց, առ ստորոտով լերինն Բըթնոյ, ի վանքս սրբոյն Կիրակոսի և սուրբ Նշանիս։

Եւ արդ, աղաչեմք զձեզ, ո՛վ մանկունք նոր Սիոնի, որք հանդիպիք այս սուրբ գրոցս՝ կարդայք կամ աւրինակէք, յիշեցէք սրտի մտաւք յաղաւթս ձեր զՄելիքշահն, և զկենակիցն իւր զտիկին Վրացն, և զզաւակն նոցա զՍտեփաննոս քահանայն, և զերիցակինն իւր զՄարթայն, և զմիւս զաւակն զԱստուածատուրն, և զկենակիցն իւր զԹանխաթունն, և զմիւս այլ զաւակն զԹադէոսն, [և զկենակիցն իւր՝ զփոխեալն առ Քրիստոս զԱղբրացն], ծնաւղաւք և ամենայն նախնեաւք...

### 340.

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Թորոս Աղբար, Բ. էջ 449—450 (տես նաև 1617 թ.)*

Գրիչ՝ Մանուել
վայր՝ Թիւրքթի անապատ

Փառք քեզ, հոն արեգսազոն կիսազնդի եւ դեմեարի, արարիչ յամենայն արարածոց յիմանեալեաց եւ ի զգալեաց, ի մարմնաւորաց

---

* Այս միջադեպի նկարագրությունը նույնպես գրված է չափածո, բայց այնքան անկանոն տաղաչափությամբ, որ բարվոք ենք համարում հրատարակել արձակ ձևով։
** Վերջին տողը սարբին լուսանցքի վրա։

*եւ յանմարմնոց, ի հողեղինաց իմանալեաց ղուարթնոց եւ յամենայն գոյից, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Արդ, եղեւ [աւարտ] սորա ի Թվ. Հայոց ՉՁԴ. (1335), ի թագաւորութեան Հայոց չորրորդ* Լևոնի, *զոր պահեսցէ տէր աստուած պարագ[այց] ամաւք, ընդ երկայն աւուրս, ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *ի մեծ եւ ի հռչակաւոր անապատս, որ կոչի* Թիւրքի, *երգ աւրհնութեան, եւ ձայն սաղմոսաց, եւ լուցումն լապտերաց, եւ բուրումն անուշահոտ խնկոց մի պակասեսցի ի սմանէ մինչեւ ի կատարած աշխարհի։ Ի խնդրոյ պատուական եւ երջանիկ առաջնորդի սուրբ ուխտիս՝ տէր* Գրիգորու, *զոր տէր աստուած պահեսցէ ըստ կամաց իւրոց, ամէն։*

*Արդ, աղաչեմ զամենեսեանդ, որ հանդիպիք այսմ աստուածային մատենիս, յիշեսջիք յաղաւթս ձեր զստացող գրոյս զերիցս երանեալ եւ զծաղկեալ ալեաւք զհայրապետն զտէր* Գրիգոր՝ *ծնողիւք եւ բարեկամաւք հանդերձ, ամէն։*

*Նաեւ զիս, զմեղաւք մեռեալս եւ աշխարհի կենդանիս, զտառապեալ ոգիս* զՄանուէլս՝ *գրող սորա, եւ զծնողսն իմ. եւ զողալս եւ զխոշորութիւն սորա ուղղեցէք եղբայրաբար, զի ժամանակս ձմեռնային էր եւ հիւսիսայինն սաստիկ, եւ տեղիքս լեռնային, եւ ես անարհեստ էի քերականութեան...։*

**341.**

## *ԺՈՂՈՎԱԾՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ*

*Օքսֆորդ.* Ms. Arm. F. *6. Տիրայր վրդ. 99. Թղթ. 122, էջ 1776*

*Գրիչ՝* Մանուէլ
*վայր՝* Ուղագու վանք

40ա *...Փառք... որ ետ զօրութիւն տկարութեան իմոյ հասանել ի վերջ տառիս։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք զմատեանս փիլիս[ո]փայական արհեստիցս յիշեսջիք ի սուրբ աղօթս ձեր զմեծ հռետորն մեր* զՄեսրոպ՝ *քաղցրահոգի և հեզաբարոյ։ Տացէ տէր աստուած բազում վարձս աշխատանաց իւրոց յանբերեկ աւուրն։ Ընդ նմին և զանարժան գծողս՝* զՄանուէլ *սարկաւագ, փծուն գրիչ, սղասաւոր բանիս։*

*Գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՉՁԴ. (1335), յանապատս, որ կոչի* Ուղագու վանք, *ընդ հովանեաւ Նախավկայիս, ամէն։*

**342.**

## *Ճ Ա Շ Ո Ց*

*Ալիշան, Սիսուան, էջ 118-119*

*Գրիչ՝* Սիմէոն
*վայր՝* Մաշքեփի գիւղ

ա

*...Վասն դառնութեան ժամանակիս և վասն ծովացեալ մեղաց իմոց, որ ի յայսմ ամի ազգն, որ կոչի Խարտման՝ մտեալ էր ընդ*

երկիրս Կիլիկիոյ, և բազում վնասս գործեցին ի տեղիս տեղիս։ Եւ ես պանդխտեալ նստէի ի գեղակն, որ կոչի Գառնձէ, առ ստորոտով լերինն Տիւրոսի, և գրեցաւ մասն ինչ ի սմանէ անդ. և աւարտ սորա եղև ի գեղս՝ որ կոչի Մաւշրէֆի, ընդ հովանեաւ սրբոյ տաճարիս Կիւրակոսի։ Բայց գրեցաւ սուրբ տառս ի յընչից ճգնազգեաց միակեցին Ալեքսի, որ է եկեղեցապան այնմ գեղջի, որ ետ գրել զսա վասն յիշատակի հոգւոյ իւրոյ... և հօր իւրոյ Ամիրշահի... որ ստացաւ զսա ի յարդեանց իւրոց, և ետ ի գեղն Խոզկրտի, ի յեկեղեցին՝ որոյ անուն է սուրբ Հոգի։

Բ

Տեսեալ պատուելի քահանայիցն՝ բնակիչք գեղջն որոյ անուն Խոզկրտի յորջորջի, Բարսեղ և Յոհաննէս և ընկերք նոցին, և փափաքանօք խնդրեցին և ետուն գրել։

Գ

Յիշէ Սիմէոն գրողն և ծաղկով զարդարող՝ զքոյր իւր Ծօնար, և այլուր* «զստացող տառիս՝ զսրբասէր կրաւնաւորն զԳրիգոր և զհաւրաղատ եղբայրն իւր զպր. Հեթում՝ զհանգուցեալն ի Քրիստոս»։

## 343.

### ՆՈՒԱՍՏ ՅՈՎՀԱՆԻՍԻ ԱՐԱՐԵԱԼ ԵՐԳՍ ՈՏԱՆԱՒՈՐ, Ի ԴԵԿՏԵՄԲԵՐ ԱՄՍՈՅՆ ԵՂԵՒ ԲԱՆ ԽԱՒՍԵԼ ԸՆԴԴԷՄ ԵՐԿԱԲՆԱԿԱՑՆ, ԴԱՒԱՆՈՒԹԻՒՆ ՈՒՂՂԱՓԱՌ, ԸՍՏ ԽՆԴՐՈՅ ՀՈԳԵՒՈՐ ԵՂԲԱՒՐՍ ՄԵՐՈՅ ԱՍԼԱՆԻ ԵՒ ԱՅԼ ՔՐԻՍՏՈՆԷԻՑՍ ԹԱՎՐԻԺԻ, ԶՈՐ ՍԻՐՈՎ ԽՆԴՐԵԱԼ

Երևան 2776

Հեղինակ՝ Յովհաննէս Տարբերունի
վայր՝ Թավրէժ

...Ես Յովհաննէս Տարբերունի,
Որ զսակաւ բանքս երգեցի,
Ո՛չ զօրաւոր, այլ ըստ կարի,
Դէմ հոռոմոց և ֆռանկի.
ԶՔրիստոս աստուած դաւանեցի
Յերկուց բնութեանց լինելով մի,
227բ Որ չհաւատայ այսմ տառի
Ընդ Յուդայի դատապարտի։
Յերես անկեալ զձեզ աղաչեմ
Յիշման առնել զիս արժանի,
Զեղբայր Ասլանս փառաւք ի լի
Եւ զայլ եղբարսդ Թավրիժի.

* Ալիշանի խոսքերն են։

Յիշեսջիք ձեզ ղայս գրեցի
Եւ թողութիւն ինձ խնդրեցի.
Եւ Քրիստոսի մարգասիրէն
Փառք և պատիւ յամենայնի։*

## 344.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6504

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Փոս անապատ

ա

...Գրեցաւ սուրբ աւետարանս ի թուիս Հայոց ՉԶԴ. (1335), ի հայրապետութեան տեառն Յակոբա և ի թագաւորութեան Հայոց Լևոնի որդոյ Աւշինն թագաւորի, ի յանապատս, որ կոչի Փոս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ լուսաւորչին մերոյ Գրիգորի, ի խնդրոյ պատուական քահանային Մարտիրոսի, վասն զի բաղում փափաքանաւք և ըղձալի սրտիւ ետ զսա գրել ի յիշատակ իւր, և Ա եղբարց
324ա իւրոց քահանայիցն՝ Ստեփանոսի, Կոստանդնի, Գրիգորի և Իշխանի, և ծնաւղաց նոցին՝ հանգուցելոցն ի Քրիստոս, և ամենայն ազգականաց իւրոց։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք զսա, յիշեսջիք զՄարտիրոս քահանայն, և մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ իւր [ա̈] ամենայն զարմից իւրոց, ընդ նմին յիշեսջիք զհանգուցեալ քահանայն Կոստանդին, և զեղբայրն իւր Թորոս, և զհայրն իւր՝ զԳրիգոր, և զմայրն իւր, և զհաւրեղբայրն իւր զՅակոբ, և զորդիսն իւր՝ զՄարտիրոս և զՅովանէս, և զամենայն ազգատոհմն իւր։

324բ Աղաչեմ և Ա ես՝ Յովանէս մեղաւոր ծառայս աստուծոյ, որ զփծս գրեցի ըստ իմում կարի, չլինել մեղադիր, զի այս չափ էր կար մեր, և մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ և իմոցն ամենայնի և աստուած ձեզ ողորմեսցի, և այնոցիկ, որ ի լսելն զամէնն ասեն, ամէն։

Ծաղկող՝ Սարգիս

բ

Ընդ նմին և զիս՝ զանարժանս Սարգիս** սուտանուն քահանայ, և զծն[աւղսն] իմ, և զամենայն ազգայ[ինս] իմ աղաչեմ յիշել ի տէր, որ ծաղկիւ զարդարեցի զսուրբ աւետար[անս], և որ յիշէ յիշեալ լիցի, ամէն։

* Հմմ. Տարբերունս սույն ոտանավոր հիշատակարանի գրության ժամանակը հայտնի չէ։ Ձեռագիրը, որից քաղել ենք, 1335 թվի է, ուստի տեղադրում ենք 1335-ի թվաշարքում։
** Կարող է նշանավոր մանրանկարիչ Սարգիս Պիծակը լինել։

## 345.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՑ

*Երևան 1318*

*Գրիչ՝* Ստեփանոս

138ա *Ստացաւղ աստուածային մատենիս զպատուելի տանուտէրն և զբազմաց պիտանին՝ զպարոն* Յովանէսն, *և զիմաստուն և զհամեստ կենակիցն իւր* զՄարխաթունն, *և յերկոցունց կողմանց զծնաւղս նոցա՝* զԱւետշահն *և* զՄարիանէն, *և* զՍտեփանոսն *և* զՇնոփորն, *և զաստուածատուր զաւակս նոցին՝* զԿիրակոսն, *և* զՍարգիսն, *և* զՍտեփանոսն, *և* զՕղիսարքթն, զխարիպ խա[թունն], *և* զՆիկարն, զխեր խաթ[ունն], *և զմիւս* Աւետշահն, *և* զՆերսէսն, *և զեղբարսն նոցա՝* զՄկրտիչն *և* զՍարգիսն, *և* զՇնոփոր *տիկինն,* զՄայր խաթ[ունն], *և* զՀեղինէն, *նաև զսրբամաքուր քահանայսն՝* զՄխիթարն *և* զՍահակն, *որք միջնորդք եղէն տառիս և յորդորեցին զստացաւղն և զմեզ, ընդ նմին և զեղկելի գրիչս* զՍտեփանոս *և զիմսն ամենայն յիշեսջիք առաջի Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւիտ[եանս], ամէն։*

*

136բ *Այս գիրքիս թվական է էՃԶԴ. (1335)-ին գրվել է, այլ ուրիշ տեղ գրած էր, այստեղ ես նշանեցի, ով հարցանէ՝ այս է թիւվէն։**

## 346.

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Վիեն. 161, Տաշ., Ցուց. էջ 471*

*Գրիչ՝* Աւետիք

1ա *Հայոց թիվս. ՉԶԴ. (1335).* ¦ | |

ԶԱւետիք... *զգրաւղ... եւ զծաղկաւղ եւ զկազմաւղ յիշեսջիք... գրեցաւ...***

---

* *Թվականի ցուցմամբ այս հիշատակագրությունը գրված է հետագա ստացողներից մեկի կողմից։*

** *Հրատարակիչը հայտնում է, որ շատ բառեր մնում են անվերծանելի։*





## 347.

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 6257 (առս 1476 և 1557 թ.թ.)*

Գրիչ՝ Թումայ Արճիշեցի
վայր՝ յերկիրս Գողթան, յանապատիս Կռապատափ

*...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս բժիշկ հոգւոյ և մարմնոյ ձե-*
*ռամբ յոգնամեղ և փցուն գրչի* Թումայի Արճիշեցս, *ի յերկրիս* Գող-
268ա թան, *ի յանապատիս, որոյ անուն* Կռապ‖տափ *կոչի, որ յանդիման*
*գեղին* Բստոյ*։ Ի յայսմ ամի, որում* Արևելից *աշխարհս առանց թագա-*
*ւորի եկաց ամ մի, քանզի երեք թագաւոր փոխեցաւ, և մի ի նոցանէ*
*ժամանակ ոչ արար։ Առաջինն անչափ բարի էր քրիստոնէից և նայ*
*հաւատար զՔրիստոս աստուած, իսկ երկրորդն՝ պեղծ և անիծեալ, որ*
*անունն* Ալի փաշախ *կոչի, նման էր առաջի կռապաշտիցն, յաբոյց*
*բազում հալածանս ի վերայ քրիստոնէից, և զեկեղեցիսն փակեաց, և*
*զխաչերն խորտակեաց, և շատ չար արար Քրիստոսի հաւատացելոցս,*
*բայց յետոյ աստուած մատնեաց զնա ի սուր սուսերի և չարամահ*
*արար։*

*Արդ, եղբարք, այս ամէն, որ եղև յայսմ ժամանակի, վասն մե-*
*ղաց մերոց եղև։*

*Արդ, գրեցաւ սայ ի թուականիս հայոց ՉՁԵ. (1336)։*

*Աւրհնեալ արարիչն արարածոց, տէրն տէրանց և թագաւորն թա-*
*գաւորաց Քրիստոս աստուած, որ ետ զաւրութիւն տկարութեան իմոյ*
*հասանել ի վերջ սուրբ աւետարան[ի]ս։ Մեծատուն ոմն յաստուածա-*
*պահ գեղէն | | |*, որոյ անուն* Շախըճշախ *կոչի, ստացաւ զսայ ի*
խալալ *և յարդար վաստակոց իւրոց. յիշատակ իւր, և ծնողաց իւրոց,*
*և կենակցին իւրոյ, և ամենայն արեան մերձաւորացն։ Արդ, որք*
*աւգտիք ի սմանէ կարդալով, կամ աւրինակելով, կամ տեսանելով՝*
268բ *յիշեցէք‖զստացողս սորա՝ զհայր և զպարոն* Շախըճշախ*՝ ծեր և ծե-*
*րունի, հեզ և հնազանդ, բարիբարոյ և բարի ծնողաց զաւակ, նոյն-*
*պէս և զկենակիցն իւր զտիկին-մայր* Նուրըսթի*, և զբարի զաւակսն*
*իւրեանց՝* զխութլուշախն, *և* զԽազարբէկն, *և* զՍայիճրեկն*՝ աստուա-*
*ծատուր և ծաղկեալ զաւակ սոցայ, զորդիքս և զհարսունքս՝* զԽերիէ-
տիկին, *և* զՀռիփսիմայ, *և* զՆազեր, *և զթոռունքս՝* զԱնանիայ, զԱզա-
րիայ, զԱմիրբէկ, զԳորգ, զԹումանբէկ, զՋրղանբէք, զԲաղտատ, *և* զՄար-
գարիտ, *և զայլ զաւակ սոցա՝ զմեծ և զփոքր,* զՆարեր, *և զբարի զա-*
*ւակն իւրեանց* զՍիմոն*՝ զփոխեալն ի Քրիստոս։*

---

* Գյուղի անունը ջնջված է։

Արդ, ստացան զսուրբ աւետարանս պարոն պապ Շախընշախ և Նուրըսթի, ի յարդար վաստակոց իւրեանց, յիշատակ իւրեանց հոգւոյ և մարմնոյ, և ծնողաց, և ամենայն արեան մերձաւորացն, և ննջեցելոցն առհասարակ։

Արդ, յիշեցէք ի տէր զննջեցեալսն իւրեանց, զբարի զաւակն իւրեանց զՍիմոն, որ ի մարդկանէ եղև որողայթ մահու նորա, զմեծ պապն զԳորգ, և զմայրն զՆազն, և զՄարգման, զՎարթն, զԽայոց, զՆազն, զՇաքըռնազ, և զմեծ պապն զՄարգման, և զմեծ մայրն զՀա-
269ա յոց։ Որք աւգտիք ի սմանէ, եղբարք || իմ սիրելիք, յիշեցէք ի սուրբ և ի մաքրալուսաթոիչ յաղաւթս ձեր զորս յիշատակեցաք ի սուրբ աւետարանս, և խոշորութեան և փցուն սխալանաց անմեղադիր լերուք, քանզի ինքն տէրն միայն է անխալատ, և այլ՝ ժամանակս այնչափ դառն էր ի յանաւրինաց, որ մի ժամ չի կարեյի գրել, զամէն փախած և թաղած կու կայաք։ Ընդ նմին և զմեղապարտ և զանարժան գրիչս՝ Թումայ յիշեցէք ի տէր, և զծնողսն իմ, և զայլ արեան մերձաւորսն, աստուած ողորմի ամենեցուն առհասարակ, ամէն։

Կազմող՝ Սահակ Քաջբերունի

Բ

ԶԱկոբ խ[ա]ռատ սուրբ աւետարանի տախտակս զուգեց, յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

ԶԱնպիտան զՍահակ աբ[եղա] Քաջբերունի՝ զսուրբ աւետարանի կազմողս՝ յիշեցէք ի Քրիստոս, և իմ մեղացն թողութիւն խնդրեցէք, և աստուած զձերն ոչ յիշէ, ամէն։

## 348.

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 5968**

Գրիչ՝ Թումա
վայր՝ Թավրեժ

243բ Փառք... որ կարողացոյց զտկարս և զանիմաստ և փցուն Թումա անարժան և մեղաւք դատապարտեալ անարհեստ գրիչ հասանել յաւարտ աստուածազարդ... աւետարանիս, ամէն։

Եւ արդ, սկիզբն եղև գործառնութեանս այսմիկ նախայխնամութեամբ և ողորմութեամբ սուրբ հոգոյն, ի մայրաքաղաքս Թավրեժ, ընդ հովանեաւ մաւրն լուսոյ տիրամաւր Աստուածածնին և սրբոյն Սարգսի զաւրավարին, ընդ հովանեաւ սոցա ամրացեալ. յեպիսկոպոսութեան և վերադիտողութեան սրբոյ առաքելոյն Թադէոսի՝ աէր Զաքարիայի և տէր Տիրացուի՝ հեզոց, հանդարտաց և բարեսիրաց, որոց
244ա տացէ տէր աստուած ժամանակ սոցա ընդ երկայն աւուրս, ամէն։

Բայց ես՝ մեղուցեալ ծառայս աստուծոյ Նախաքունս, ստացայ զսուրբ աւետարանս...։

*Յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս զստացող սուրբ աւետարանիս զՆախաթուն՝ բարեսէր և աստուածասէր քրիստոնէ, և զբարի ծնողսն իւր, և եղբարսն, և զբարեզարմ տղայսն իւր՝ զԱզիզբէկն և զԹաւաքալին, զի երկար ժամանակաւ անցուցեն զկենցաղս, ամէն, ամէն։*

*Քրիստոս աստուած, յիշեա ի քում յարքայութեանդ զհոգի բարի քրիստոնէին Նախաթունին, և թող նմա զյանցանս իւր՝ զկամա և զակամա, ամէն։*

*Ի թվ. ՉՁԵ. (1336), յամսե[ան] արեգ ԺԷ. (17)։*

244բ *Բայց գրեցաւ սուրբ աւետարանս Քրիստոսի աստուծոյ մերոյ ի ժամանակս վերջինս, որ էր ազգս ամենայն խաչապաշտից ի բազում տառապանս և ի նեղութիւն, վասն բազում դառնութեան, որ վասն մեղաց մերոց յարուցեալ էր ի վերա մեր աններևոյթ աւսոխն մեր և բարիատեցն, որ բարբոքէր զսիրտ անզգամաց այլազգեց ընդզէմ քրիստոնէից, և ազգի ազգի վիշտս և հալածանս յարուցանէր ի ձեռաց անաւրէն և թախսուպ նետողականաց։ Յաւուրս սուրբ ե. մաքուր սուրբ քահանաին տէր Հայրապի՝ հեզի և հանդարտի և բարեսիրի, որ բազում զասնութիւնս կրէր վասն քրիստոնէից, այլ աստուած վերակացու լինիցի նախախնամ բարերարութեամբն իւրով ե. պահէ յամենայն փորձութեանց և ի նեղութեանց։ Այլ և ազգի ազգի հալածանս յարուցանէին ի վերա քրիստոնէից, կապոյտ տաւլպանդ ետուն փաթթել, և ի տեղիս տեղիս եկեղեցիք ի հիմանց տապալեցին*
245ա *անաւրէն չարագործեր, բայց մեր || յոյս և ակն ողորմութիւն ի Քրիստոսէ է, զոր հրամաէ թէ մի երկնչիք յայնցանէ, որ սպանանեն զմարմին և զոգին ոչ կարեն սպանանել, և ի վերա այսմ ամենայնի տէր Յիսուս ողորմեսցի կարդացողացն ե լսողացն, ամէն։*

## 349.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5786 (տես նաև 1601 թ.)*

Գրիչ՝ Սարգիս
Վայր՝ Սիս

ա

339ա *Շնորհիւ տեառն աստուծոյ իմոյ սկսայ և ողորմութեամբ նորա կատարեցի զչորեքեան աւետարանս, որ է բանն աստուածային և ամենայն տնաւրէնութիւնն Քրիստոսի, իմով տկարացեալ ընութեամբս՝ բազմամեղ և անարժան սուտանուն քահանայի Սարգսի, յանկ և յաւարտ հանեալ զարդարեցի զսա ծայրէ ի ծայր, գրոցն և գլխագրիւն, ծաղկոցն և ամենայն անաւրինական զարդիւքն, զոր այժմ տեսանէք դրոշմեալ ի սա։ Յայսմ դառն և չար ժամանակիս, զոր անաւրէն ազգն իսմայէլաց, տուննն փարաւոնի, ի մեծ նեղութիւն և ի վտանգի կալան զաշխարհս կիլիկեցւոց. և արշաւեաց զաւրաւք և էառ զամենազարդ և զաստուածապահ բերդն զՆղիրն, նստելով ի վերայ նորա բազում*

ժամ, և աւերեաց, և ապա եմուտ յերկիրս, և ոչ քաղաք և ոչ բերդ և
գեղ՝ լեռնային և դաշտային, վանաւրեայք և անապատք, զամենայն
միրսամիոջէ, և ոչ մնաց տեղ յերկիրս, որ անաւրէնքն թողին, որ
339բ չմտան, և յոյժ զարս բազ ‖ ումո սրով սպանին, և եկեղեցականս յո-
լովս՝ երէց ե աբեղայ, վարդապետ և եպիսկոպոս, սարկաւագ և դպիր,
ե անբաւ քրիստոնեայս՝ արք ե կանայք, տղայք և կուսանք տարեալ
գերիս, զոր տէր աստուած հատուսցէ նոցա ըստ իւրեանց գործոցն
զփոխարէնն. և այս բաւական է։

Արդ, եղև գրաւ գրչութեան սորա ի մայրաքաղաքս Սիս, ընդ
հովանեաւ սուրբ հոգոյն և այլ բազմահաւաք սրբոց, որք աստ են,
ի Թվաբերութեանս Հայոց ՉՁԵ. (1336), և աւարտեցաւ ի յամսեանն
դեկտեմբերի ԻԹ. (29) աւրն, որ էր կիրակէ, ձեռամբ Սարգսի սու-
տանուն քահանայի, ի Թագաւորութեանն Լևոնի Զորրորդի, որդոյ ար-
քային Հայոց Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Յակովբայ, քեռ-
բորդոյ տէր Գրիգորի, ի խնդրոյ և պաղատանաց կուսակրաւն և
պատվական քահանային, որոյ անուն Անդրէաս կոչի։ Զի սիրով և
փափագանաւք ստացաւ զսուրբ աւետարանս և զսայ յոյժ գեղեցիկ եւ
զարդարել ազգի ազգի պատկերնով և ոսկով և ամենայն զարդիւք,
340ա ի վայելումն անձին իւրոյ և ի յիշատակ հոգւ ‖ ոյ իւրոյ, և ծնաւղաց
իւր, և ամենայն զարմից՝ կենդանեաց և ննջեցելոց ի Քրիստոս։

Որք ընթեռնուք զսա ի յարկի
Կամ ի յանկեանս սուրբ տաճարի,
ԶՍարգիս լցեալ մեղաւք ի լի,
Մաղթեմ վասն տեառն բանի,
Թէ զոր թողուք՝ թողեալ լիցի
Եւ ձեր բանիւդ ջնջեսցի,
Եւ ամուսնոյն իմ Զալտունի
Երկեալն աւրհնէ աստուածունի(*),
Եւ մաւրն, և հօրն իմ Գրիգորի,
Եւ քոյրն իմոյ Խոյանդ խաթունի,
Որ են գնացեալ առ Քրիստոսի,
Թողուլ մեղաց խնդրէք յերկրի։
Եւ աներոջն իմ Յովսէփի
Եւ զոքանչին Թէփանէի՝
Հանգուցելոցն առ Քրիստոսի,
Որ զմեզ յիշէ յիշեալ լիցի
Ցաւքայութեանն Քրիստոսի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ կամ ընդաւ-
րինակէք, դուք անհոգաբար աւրինակեցէք, զի յոյժ շատ եմ աշխա-
տեալ ե ըղորդել ի Գորգոյ աւրինակէն, որ է բան բանի, և թէ զիր
պակաս կամ աւելի կենայ դուք անմեղադիր լէք, ապա զցանկքն
խիստ եմ ըղորդել։

Յիշեցէք զվերասացեալ ստացաւղ գրոցս զԱնդրէաս, ի գաւառէ

Այրարատոյ, *ի գեղջէ* Կողա, *և զծ[նաւղս] իւր, զհայրն* Քոքիք, *և զմայրն* Գոհար *խաթուն, և զհարազատ եղբարսն իւր* Առիւծ *և զ*Գա-
340բ զաՑ, ‖ *և զամենայն ազգայինսն իւր, ընդ նմին և զիմ անարժանու-թիւնս՝ զ*Սարգիս *սուտանուն քահ[անայ], և զծն[աւղսն] իմ, և զամենայն արեան մերձաւորս իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս, և որ զմեզ յիշէ սրտի մտաւք և մեղաց թողութիւն խնդրէ, նա Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս ողորմութեան ընդ միոյն հարիւրապատիկ պարգևեսցէ ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս ի միւսանգամ գալստեանն իւրոյ. և նմա փառք յաւիտեանս, ամէն, ամէն, հազար ամէն։*

*Կազմող՝* Խաչատուր

Բ

340բ *Ես* Խաչատուր *մեղաւք ի լի,*
*Որ զսուրբ տառըս կազմեցի,*
*Ըզձև ունիմ սարկաւագի*
*Եւ ի գործոյն եմ խիստ հեռի,*
*Ձձեզ աղաչեմ աղերսալի*
*Եւ պաղատիմ արտասուալի,*
*Որք հանդիպիք այսմ տառի*
*Առցէք աստուած իր ողորմի,*
*Հաւրն իմ* Ծերունց *քահանայի*
*Եւ իմ մաւրկանն* Խեղաւֆի։
*Զքեզ աղաչեմ սուրբ փակակալ,*
*Որ ամենայնց ես վերընկալ.*
*Զաւետարանս հրաշափառ,*
*Մի հանապազ ի ձեռն տալ,*
*Որ չաղտոտեն զանգին գոհար,*
*Աստուածամօր սիրոյն համար։*

350.

# ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5734 (տես նաև՝ 1423 թ.)*

*Գրիչ՝* Թարօեղ
*վայր՝* Թառեճոյ գաւառ, գիւղաքաղաք՝ Մըծծըճկերտ

ա

335ա *...Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց* ՉՁԵ. *(1336), ձեռամբ մեղապարտ և անարհեստ գրչի* Թարօեղի, *ի դառն և ի նեղ ժամտնակիս, որում ըռնացան ազգն Իսմայէլի ի վերայ ազգիս քրիստոնէից՝* Թամուր *անուն, աւերելով գրագում եկեղեցիս և զվանորայս, տարաշխ-[արհ]իկ լինելով սուրբ կրաւնաւորաց ի յերկիւղէ անօրինաց։*

*Արդ, գրեցաւ սա ի գաւառս* Բասենոյ, *առ հանարիկ գեղաքաղաքն, որ կոչի* Մընձրընկերտ, *ի հայրապետութիւն տէր* Վարդանայ... *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Ամենափրկչիս...։*

Բ

256բ *Աստանաւր կատարեցաւ սուրբ աւետարանս ի թվ. ՉՁԸ. (1339), յիշատակ է ղաւակ ի Սիոն։ Ստացաւ պատուելի կրաւնաւորն* Կիւրեղ *կոչեցեալ, յիշատակ հոգևոր որդոյ իւրոյ* Ներսէս *քահանաին, և եղբաւր իւրոյ* Յորդանճշին *և* Շահնշահին, *և ծնողաց մերոց* Ճորանին *և* Պեշգենին, ... *և ամենայն արեան մերձաւորաց մերոց, զորս ոչ կարացաք ըստ դրով արկանել։*

*Արդ, ես՝ նուաստ և ապիկար գծողս* Բարսեղ, *տրուպ ամենայն քահանայից, իմ կամաւ վաճառեցի զիմ աւ[ետարանս]* Ներսէս *քահանային, որ այլ մարդու հայ ու չէ չկա, և աէր շնահաւոր առնէ ընդ երկար ամաւք մինչև ի խորին ծերութեան, ամէն։*

*Կրկին աղաչանք առ ձեզ՝ պատուեալ քահանայք, զի յիշման արժան առնէք զպատուելի մանուկն զ*Սարգիս *կոչեցեալ, որ աւգնական եղև սուրբ աւետարանիս։*

## 351.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔԱՐՈԶԻՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

*Երևան 1654*

*Գրիչ՝* Տէրտէր Երևանցի
*վայր՝* Սուրխաթ

200ա *Փառք... որ ետ կարողութիւն նուաստութեանս իմո հասանել ի վերջին գիծ երգոյս* Վարդան *վարդապետի և* Աթանասի։

*Արդ, գրեցաւ ի թվականիս հայոց ՉՁԵ. (1336), ի մայրաքաղաքս ի* Սուրխաթս, *որ* Ղրիմ *կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս պարոն* Սահանշահի *շինած, ձեռամբ անպիտան և փցուն գրչի* Տէրտէր *սուտանուն քահանայի, [ի] խնդրոյ անձին իմոյ և յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝* Սարգիս *քահանայի և* Գոհար Մելիքին, *և քվերացն իմ՝* Խատերեսին *և* Մամախաթուն[ին], ||
200բ *և զ*Սարայ խաթունն, *և զամենաւրհնեալ զաւաքսն իւր՝ զպարոն* Ամիրն *և զ*Էլդիմիրն, *և զհայրն իւրեանց զպարոն* Սուլթանն, *և զպարոն* Շրվանն, *և* Զմրութ *խաթունն, և զսրբասնեալ հաւատ[աւ]որքն, որ հետ ինձ շատ աշխատեցան և մայրութիւն արին՝ զ*Հոռոմսիմէն, *և զ*Ջուհարն, *և զ*Տաւնիկն։ *Արդ, աղաչեմ զամենեսեն, որք կարդայք և աւգտիք ի սմանէ, աստուածածինն ձեզ բարեխաւս, յիշեցէք ի Քրիստոս և զուք յիշել լիջիք ի նմանէ։*

*Ես՝* Տիրացուս, *անձն անարժան,*
*Ծուլլ քահանայ թշուառական,*
*Որ եմ անկարգ խիստ ու անսահման*
*Եւ յաստուծոյ ամաւթական,*

Սատանայի ճորտ բանական.
Զծուլութիւնն տրի ինձ բան,
Զագահութիւնն խիստ անխոտան,
Հրոյն անզերծ ես կու ծնամ,
Հազար եղուկ անձինս ես տամ,
26լա Սաղմոս || չա[ս]ցի առանձնական.
Ոչ հետ ընկերացն միաբան։
Ցերկրէն եկի այն Վրացտան,
Ի քաղաքէն այն պատուական,
Որ իր անունն է Երևան,
Խոր Վիրապի նա հարևան։*
Ի ծովս անցայ այս անսահման
Ի քաղաքս եկայ ի Փռանկ Կաֆան,
Զգիրքս գրեցի դայս՝ դՎարդան.
Որք ուսման ելնիք արժան,
Ի քահանայութիւնն աստուածական,
Պատարագէք ի սուրբ սեղան՝
Ու դպրաւոխաւմէն ասէք ի լման,
ԶՏիրացուս յայս անպիտան,
Դուք յիշեցէք, թող չեմ արժան,
Եւ Քրիստոսի փառք յաւիտեան։

352.

ԺՈՂՈՎԱԾՈՒ ԽՐԱՏՈՒՑ

Երևան 8281 (տես նաև 1648 թ.)

Գրիչ՝ Տէրտէր Երևանցի

ա

176ա Ով որ կարդայք զգիրքս աննման,
ԶՏէրտէր գրիչս այս անպիտան,
Ծոյլ քահանայ թշուառական,
Որ եմ անարգ խիստ ու անսահման
Եւ աստուծոյ ամաւթական,
Դուք յիշեցէք, թող չեմ արժան։

բ

197ա Զստացող սուրբ դըպց Նարեկի՝ զՏէրտէր քահանա յիշեցէք ի Քրիստոս, և զծնաւղսն իմ՝ զՍարգիս քահանա, և զմայրն իմ Գոհար մելիք, եւ դուք յիշե[ա]լ լիջիք։**

* Գուցէ՝ «Խոր Վիրապին ա(=է) հարևան»։

** Տէրտէր Երևանցին ընդօրինակած ունի ձեռագրեր 1336 և 1341 թվականներին. նրա սույն և հաջորդ (№ 353) հիշատակարանները տեղագրում ենք 1336-ի թվաշարքում, որովհետև իրենց ձևով նրանք չափազանց նման են նախորդ՝ 1336 թվին գրված հիշատակարանին։

## 353.

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

*Երևան 6029 (տես նաև 1376 թ.)*

*Գրիչ՝* Տէրտէր Երևանցի

ա

139ա ԶՏէրտէր *գրիչս այս անարժան,*
*Որ զգիրքս գրեցի զայս զՎարդան,*
*Ծոյլ քահանայ Թշուառական,*
*Մեղաւք ի լի և պարտական,*
*Յերկրէն եկի այն* Վրացտան,
*Ի քաղաքէն այն պատուական,*
*Որ իր անունն է* Երևան,
Խոր Վիրապին *ու* Էջմիածնին *է հարևան,*
*Ի լեռն ի մաւտ* Սարարադ[ե]ան,
*Անդ ուր տապանն է մեծ Նոյեան,*
*Յերկիրս եկի հուսուական,*
*Ի Նոր քաղաքս* Կաւկասու *անուան,*
*Զգիրքս գրեցի զպատուական,*
*Ինչ որ կարդայք զինքս ի լման,*
*Զգրիչս յիշեցէք, թող չեմ արժան.*
*Գիթ ի դժողքն չգնամ։*

բ

171բ ԶՏէրտէր *գրիչս* Երևանցի,
*Ծոյլ քահանայ մեղաւք ի լի,*
*Որբևայրի, խեղճ ու լալի,*
*Ի մեծ գաշտէն* Էջմիածնի,
*Ի ստորոտէն* Սարարադի,
*Յաշխարհս եկ[ի] յայս մուղալի,*
*Զգիրքս գրեցի սուրբ Վարդանի,*
*Ինչ որ կարդայք զինքս յատենի,*
*Ի ժամատան ու յեկեղեցի,*
*Զիս յիշեցէք վանց Քրիստոսի,*
*Գիթ իմ մեղաց գիրն ջնջի։*

## 354.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փէրդ. 6273. էջ 146 (Վան, սբ. Տիրամայր եկեղեցի)*

*Գրիչ՝* Առաքել

*վայր՝* Մոկաց գաւառ, գիւղ՝ Դաշտ

*Փառք անսկզբանն... իսկ ըստ թուոյ խոսրովային յաբեթանս տումարի ՉՁԵ. (1336), ի կաթուղիկոսութեան Հայկազեանց սեռի*

տեառն Ստեփաննոսի Աղթամարցւոյ, և ի թագաւորութեան* նստեալ ի գահն, զոր տէր աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական և զթագաւորական, զի յիշել զանուննս նոցա սասանեալ սաքրին և ոչ ևս երևին [թշնամիք]։ Եւ գրեցաւ աւետարանս այս ի գաւառս Մոկաց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սրբոյն Յակոբայ, ի գեօղս որ Դաշտ կոչի, ձեռամբ յոգնամեղ գծողի Առաքելի, ի վայելումն խոջայ Յուսուփին, և յիշատակ ծնողաց նորին։

## 355.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վասպ. 95. Լալ. Ցուց. սյուն. 193—196*
*(Մոկսի Դաշտի թաղի ս. Յակոբ եկեղեցի)*

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Հիզան քաղաք

...Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Յովանէսի անիմաստ և ախմար գրչի։ Եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեանս և բազում մեղաց ցնոլիւք պաշարեալ, ըստ այնմ, որ ասէ՝ վիշտս յագգէս, վիշտս ի սուտ ի եղբարց, և թէ՝ յստից մինչև ցգլուխ չիք առողջութիւն։ Այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատասիրեալ իմ ի սմայ, գրեցի անարժան ձեռաւք իմովք յընտիր և ստոյգ աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազմադէմ ալեկոծ ծփանաւք։ Ի մեծ թըւիս, ի յեղանակ շրջագայութեան արեգական ընտրելոյիւք երկնաշու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով, ըստ արարչութեանն չափեալ, յելանելոյն Ադամայ ի դրախտէն՝ ԶՌ. և ՋՃԷ. (6607) ամ, ըստ եւթանասնիցն որում մեք վարիմք։ Եւ է ի մարդեղութենէ բանին աստուծոյ անժամանակ էին և փրկչին Յիսուսի Քրիստոսի ամս ՌՅԼԵ. (1335), իսկ ըստ թւոյ խոսրովանեան յաբեթեանս տոմարի՝ ՉՁԵ. (1336), և էր մեծ շրջանին ՄԽԵ. (245)։ Ի կաթողիկոսութեան հայկազանց սեռի տեառն Զաքարիայի Աղթամարեցւոյ և ի թագաւորութեան* նստեալ ի գահն, զոր տէր աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական և զթագաւորական, զի յիշել զանուննս նոցա՝ սասանեալ թաքչին և ոչ ևս երևին թշնամիք ճշմարտութեանն։

Եւ գրեցաւ աւետարանս այս ի գաւառս (՞), ի քաղաքիս Հիզան, ընդ հովանեաւ սրբոյն Աստուածածնին, և սրբոյն Սարգսին՝ զաւրավարին, և Գեւորգայ, ի վայելումն աստուածարեալ և պատուելի հայրապետին Մարկոսի։ Արդ. ո[ր]ք հաշակէք աստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, յիշեսջիք աղաւթիւք ստացող սուրբ աւետարանիս՝ զՄարկոս հայրապետ, և զծնողսն իւր՝ զհայրն Մարտիրոս, և զՅոհաննէս կրաւնաւորն՝ զքեռին իւր, և զմայրն իւրն Շնորհավորն։ Եւ զմիաբան կրօնաւորքն զԿիրակոս, և զՄկրտիչ, և զմիւս Կիրակոս,

* Թագավորի անունը գրված չի եղել։

և զՄովսէս յիշեսջիք ի Քրիստոս աստուած բոլորով սրտիւ, և զամենայն արեան մերձաւորոն նորա։

Ընդ նոսին և զիս, զանարժան գրիչս զՅովանէս, և զծնողսն իմ՝ զհայրն իմ զՄկրտիչ քահանայ, և զմայրն իմ, և զպառաւիկն մեր զԽաթուն, որ յոյժ աշխատեալ ե. սնուցեալ էր զմեզ և յորդորիչ ի գրելս, և չարքն, որ վիշտ հատուցին մեզ՝ չարաւ կորուսին...։

### 356.

### ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 1622

Գրիչ՝ Թորոս
վայր՝ Աւագ անապատ

316ա ...Գրեցաւ եղանակաւոր տառս ի թուիս Հայ[ոց] ՉՁԵ. (1336), ի թագաւորութեանն Հայոց Լեւոնի և ի հայրապետութեան տեառն Յակովբայ, ի զառն ժամանակիս, յորում նեղին ազգ քրիստոնէից յանաւրէն ազգէն Թուրքաց, զոր տէր խորտակեսցէ, ի յԱւագ անապատիս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և կենսակիր սուրբ Նշանիս, ձեռամբ մեղսաներկ և անարժան քահ[անայի] Թորոսի, ի լաւ և յընտիր աւրինակէ Գրիգորի դպրի, որ մականուն Խուլ կոչիւր։

### 357.

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Ալիշան, Սիսուան, էջ 201

Գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Կիլիկիա, Գալու անապատ

ա

Գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի մանրուսումն, ի թուիս Հայոց ՉՁԵ. (1336), ի թագաւորութեանս Հայոց Լեւոնի աստուածասիրի և բարեպաշտի, որդւոյ ի Քրիստոս աստուած հանգուցեալ թագաւորին Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Յակովբայ, ի սուրբ անապատս, որ կոչի Գալու*, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ սրբոցս որք աստ։ Ձեռամբ բազմամեղ և անարժան քահանայի Սիմէոնի։

Ծաղկող՝ Յակոբ

բ

...Ըղյետնեալս ի նկարիչսն զՅակոբ դպիր՝ զծառայ աստուծոյ և ձեր, զծաղկող գրոցս, ի ծունկս անկեալ աղաչեմ սրտի մտաւք յիշել

* Գտնվում է Դաշտային Կիլիկիայում։

*գիս և զծնողսն իմ. և որ յիշէ՝ յիշեալ լիցի ի Քրիստոսէ։ Աստուած ողորմի այս ծաղկողիս և իր ծնաւղացն հոգոյն, ամէն։**

### 358.

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 5019 (տես նաև 1648 թ.)*

Գրիչ՝ Թումա
վայր՝ Թավրեժ

*Փառք... որ կարողացոյց զտկարս ե զանարժանս հասանել յաւարտ գործառութեանս այսմիկ գծայգրութեան միայն աւետաքարոզ աւետարանիս, ամէն։ Եւ արդ,*
189ա *սկիզբն եղև գործառութեանս այսմիկ նախախնամու | | | մայրաքաղաքիս* Թավրեժ, *ձեռամբ անարժան և ղատապարտեալ նուաստ* Թումա *գրչի, յիշատակ բարեպաշտ և աստուածապաշտ քրիստոնէին* Սարգսին *և ամուսնոյ իւրոյ* Աղաւթ *խաթունին...։*

*Բայց գրեցաւ սուրբ աւետար[անս] ի թուականու[թեան] Հայոց ՉՁԵ. (1336)։ Տէր Յիսուս Քրիստոս աստուած յիշեա ի քում յարք[այ]ութեանդ զհոգի բարեպաշտ քրիստոնէին* Սարգսի, *և զամուսնոյ իւրոյ* զԱղութ *խաթունին, և զհոգի ծնողաց սոցա՝* զՄխեՑարգին, *և* զՎարդանեն, *և* զԽոցադեղին, *և ողորմեա հոգոց սոցա ի միւսանգամ քո գալստեանդ, ամէն։*

*Տէր Յիսուս ողորմի կարդացողացն և լսողացն, ամէն, ամէն։*

### 359.

### *ՀԱՐԱՆՑ ՎԱՐՔ*

*Մատենադարան Հայկ. թարգմ., էջ 553 (Վենետիկ)*

Գրիչ՝ Յովհան
վայր՝ Երուսաղեմ

*...Շնորհիւ տեառն կատարեցաւ... մատեանս աստուածային՝ վարք և խաւսք հարց սրբոց, ի լաւ և ընտիր աւրինակէ, ի սուրբ քաղաքս* Երուսաղեմ... *ընդ հարկաւ սրբոյն* Յակոբայ... *ի թվ. ՉՁԵ. (1336)... Ի թագաւորութեան հայոց* Լևոնի, *ի հայրապետութեանն* Յակովբայ, *ձեռամբ մեղապարտ և անարժան յիշման և ոչ գրչի, այլ* Տաթևեցի [Յովհաննու]...

** Այս հիշատակարանները հրատարակված են վիմատիպ նմանահանությամբ, Ալիշանը հայտնում է նաև, որ ձեռագրի կազմողն է Խաչատուր դպիր Երուսաղէմացին։*

ՉՁԶ 1337

## 360.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 212 (Տես նաև 1578 և 1631 թ.թ.)

Գրիչ՝ Աւագ
վայր՝ Ատրպատկան աշխարհ,
Սուլտանիա—Թավրէժ

309բ ... Ցոլոց միջի հասեալ աջողակութեամբ և դեր քան զընաւս
յընդրութիւն բարւոյն, գեղաղէշ և շնորհաշուք յորդիս Սիոնի անդ-
րանիկն և Հայոց Մեծաց թաղաղարմից ժառանկն, տէր տանն Սիսա-
կայ՝ մեծիմաստ պարոնաց պարոն Պեշգէն, սնեալն սրբութեամբ, սի-
րող եղեալ սրբազանից կտակարանաց, դիտելով խոհեամ ընդրու-
թեամբ զսնոտի կենցաղս անհաստատ բերուն, յաղագս որո զձեռն
յուսոյ ի գործ արկեալ մեծաւ տարփանօք, և ստացաւ զանհամեմատ
փարթամութիւնս, և որ պահին մշտնջենապէս տալով ընդ Աղալի յոլո-
վութեան զանձուցն և զանչափ յոժարութիւն ըղձից, և ստացաւ զպատ-
310ա ուակա || ն մարգարիտս զայս ի վարժումն և ի վայելս ներհուն և սրբ-
բազան մտաց իւրոց, և նորաբոյս ոսկեբողբոջ աստուածատուր հարա-
զատ ծիրան[ա]ծին և բարենշան զաւակին իւրոյ Էլիկումին, և աստ-
ուածապատիւ և մեծաշուք ձնողաց իւրոց աստուծով զօրացելոց՝ մեծ
իշխանաց իշխանին և մեծահաւատ բարեպաշտին պարոն Բուրթելին և
մեծուհոյն՝ պարոն Վախախին, նաև պարծանաց սիրալիր հարազատին
իւրո՝ պարոն Իւանէի, և ի յիշատակ մեծայոյս և երկեղաղարդ ամուս-
նո իւրո՝ փոխեցելոյն ի Քրիստոս։

Արդ, եղև սկիզբն և աւարտ տառատպութեան աստուածային մա-
տենիս յաշխարհն Ատրպատկան, յարքայանիստ քաղաքն Սուլտանիայ և
Թավրէժ, ընդ հովանեաւ սրբոյ մօրն լուսո և սրբոյն Սարգսի զաւ-
րավարի, ձեռամբ անիմաստ և անարհեստ փցուն դրչի և ոսկենկար ծաղ-
կի Աւագի՝ յետին կարօտի բանի, ի թվաբերութեան ամի մարդեղու-
թեան տեառն մերո և փրկչին Յիսուսի Քրիստոսի ի Ռ. և Գծ. և Խ. (1340)
310բ ամին, և ըստ գրոյս թվո ՉՁԶ. (1337), || ի բռնակալութեան ազգին նե-
տողաց կարճակեցին Արփայի, և յիշխանութեան զօրացելոյն Յիսուսի
և փառաց ի փառս բարձրացելոյն կրկին կենօք և աշխարհօք՝ մեծ իշ-
խանաց իշխանին պարոն Բուրթելին, հօր վերասացեալ դարդու զա-
ւակին պարոն Պաշգէնին՝ ստացողի աստուածային գանձուս, և ի վե-
րատեսչութիւն եպիսկոպոսութեան տեառն Սարգսի մետ[ր]ապոլտի,
ի գլխապետութեան մեծ հռետորին Եսայեա։ Այլ և, որք օգտիք և

վայելէք աստուածային բուրաստանէս ընթերցմամբ կամ գաղափար ունելով, յիշեսջիք ի սրբամատոյց և աստուածահաճոյ աղօթս ձեր զտէրն մեր ըստ մարմնոյ. զայրն զուարթնոց ցանկութեանց զխոհեամ խորհրդանն զմեծայոյս պարոնաց պարոնն զՊեշգէն, բարեյաղթ ծնողօք, զարմօք, հարազատօք, որ մեծաւ սիրով և կատարեալ հաւատով զաւակ ի Սիոն ստացաւ զսա և եւ նուէր արձան անմոռանալի ընդ
311ա այլ բազմութեան արդեանցն և զոսկեծաղիկ բազմածախ, անգին և անհամեմատ աւետար || անս յիւր սեփհական և գերահռչակ մեծ ուխտն Տաթևոյ, ի յիշատակ գերեզմանի աղախնոյն Քրիստոսի և յոյժ չքնաղագեղոյն Փաշային, որ էր ամուսին նորին և աղա հասակաւ փոխեցաւ յաստեացս։ Զոր և աղաչեմք զամենեսեան խնդրել ի Քրիստոսէ նմա և վերոյգրելոցդ և մեզ տալ զանվաղխճան զկեանսն, և ուրախութեամբ վայելել զաստիսս, և զմշտնջենաւորն՝ ընդ Քրիստոսի յանըսպառ յաւիտեանսն։ Այլ և ոք մի իշխեսցէ զսուրբ աւետարանս գողանալ, կամ թուղթ կտրել, կամ հանել ի սուրբ և ի գերամաքուր յուխտէ Տաթևոյ մեծի եկեղեցոյն, մասն և բաժին զԿայենին, զՅուդային և զխաչահանուացն առցէ և անէծս ցաւագինս ժառանգեսցէ, ամէն։

Դարձեալ, մեծաւ աղերսանօք կրկին աղաչեմ զհանդիպողսդ սուրբ աւետարանիս, միով տէր-ողորմայիւ յիշել զիս զԱւագս կարօտ բանի և զծնողսն իմ, զի յոյժ սիրով, փրցփրցուն գրչաւ և տարտամ ձեռամբ գրեցի, ոսկեցի ծաղկերանդ* և կազմեցի։ Եւ որպէս յիշէքդ՝ յիշեալ լիջիք։

## 361.

### ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 3787

377ա Զստացող սուրբ գրոցս զՊարոնիկ ոսկիսն և զպարոն Տուածոն՝ տամբ և տղայիւք յիշեսջիք ի սուրբ տաճարի աստուածաղաւր վկայիս, և զԳրիգոր քահանայ կամեցող բանիս, և զհանդիպեալս սոսո՝ զտէր Աւագ գրիչ,** և զամենայն աշխատեալքս ի սմա, և որ յիշէ յիշել լիցի յարարչէն ամենեցուն։

## 362.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ, ՆԵՐՍԷՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՑ

Երևան 3606 (տես նաև՝ 1303 թ.)

Ստացող՝ Աւագ
վայր՝ Գայլիձոր

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ աստուածա-

* Ձեռագիրը զարդարված է բարձրարվեստ մանրանկարներով։

** Ամենայն հավանականությամբ նախորդ հիշատակարանի գրիչ և ծաղկող Աւագն է, ուստի հիշատակարանը տեղադրում ենք նրան աղընթեր։

*շունչ մատենիս երկոտասան մարգար[է]իցս վերտառութեանս և Դա-ն[ի]էլի մարգ[ար]էին, յիշեսջիք* զանարժան և նուաստ Աւագէր սպասաւոր բանի, որ անուամբ միայն եմ վ[արդա]պ[ետ] և ոչ ելով*
277ա *զարգինական, սրով տեսական աւրինի, ‖ որ բազում ժամանակս աշ-խատեցայ առ ոտս մեծ րաբունապետացն Յեսայի և Տիր[ատր]ոյ. և գնեցի զսայ ի հալալ ընչից իմոց՝ ի Ճ. (100) մթխալ արծաթ, ի Գայ-լիձորին, ի թվ[ին] հայոց ՉՁԶ. (1337)։ Արդ, երես առս (այսպէ՛ս) անկեալ աղաչեմ զարձեալ կրկին, որք ընթեռ[ն]ույք զաստուածային տառս, յիշման արժանի արարէք զԱւագէր վարդապետ[ս], մեր ծնաւղաւքն հանդերձ. և ով գիրքս անկանի տարէն ինձ Բ. պատարագ մատուցանէ։*

363.

ԱԻԵՏԱՐԱՆ

*Ս. Ջալալ. Ճանապարհ. մասն Բ. էջ 158–160 (Ն. Նախիջևան սբ. Լուսաւորիչ եկեղեցի)*

*Ստացող՝* Վասիլ
*վայր՝* Կիլիկիա Այա՞ս

*... Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ* Ստեփաննոսի *գրչի ի թուականիս Հայոց ՉԽԶ. (1297), ի թագաւորութեան Հայոց* Սմբատայ, *ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *ի յիշատակ մեղուցեալ քահա-նայ* Մանուէլի, *և կողակցի իւրոյ* Իշխանաւրի, *և ծնողաց իւրոց, և ամենայն զարմից, ի վայելումն որդւոյ իւրոյ* Յովհաննէս *դպրի։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք օգտիք և ընթեռնուք զսուրբ աւետարանս, յիշեսջիք զգրօղս սորա* զՍտեփաննոս *քահանայ, և զծնօղս իւր, և զա-մենայն զարմս իւր, զմեզօք զատապարտեալ ծառայս աստուծոյ* զԳրի-գոր *քահանայ, և զծնօղսն մեր, և զկողակիցս մեր* զՀեղինէ, *և զորդիս մեր, զի ոսկւով զարդարեցի զսուրբ աւետարանս այս առ ի յիշատակի հոգւոց մերոց։ Եւ որ յիշենն զմեզ՝ յիշեալ լիցին ի նոյն ողորմածն աստուած, որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Արդ, յետ կատարելոյ զսուրբ աւետարանս ամենայն օրհնու-թեանց արժանիքն, զորս յիշեալ են յիւրեանց յիշատակարանն, ան-կեալ էր սուրբ աւետարանս ի հանգուցեալ հոգին՝ ի տէր* Սիրունին, *որ էր զռնապան արքային Հայոց* Լևոնի։ *Եւ նա շնորհեալ էր ի յԱ-*տանայ *խէչ (=մօտ) իւր տնոյն, որ կոչի Անհամբեբ Աստուածածին։ Նա, ի բազմանալ անօրէնութեան մերոյ՝ վասն բազում մեղաց մերոց անօրէն նայիպն Հալպայ* Ալթուն Պուղայն, *իբրև զափսակ և զանձն առաջին, խարեալ զարքայն Հայոց* Լևոն *բազում բանիւք և անհոգ ցուցեալ, և էր արքայն անհոգ նստեալ* յԱտանայ, *և աշխարհն ամե-*

* Բնագրում՝ «յիշեսցէջ»։

նայն անհող. ամէն մարդ ի յիւր տուն ու յիւր գործն, վստահ ի սուլտանին ամանաթն, և ի յայն, որ մեր դեսպաններն Թալոֆն առ սուլաանին և առ անօրէն ամիրայս։

Եւ սա խաբէութեամբ առեալ զՀալպայ հեծեալն, անուանելով թէ յԵփրատ ի ճանապարհ կու երթամ, ու յիշուից յերկիրս ի ԻՁ. (26) մայիսի, ի հինգշաբաթի, յաւուր համբարձման փրկչին։ Եւ Էրէկ զորդ ի Մլուճն, ի յԱտանայ ու ինչվի Տարսուս, և առեալ բազում լուղակս, ու մարդ, ու անասուն, ու արար ուժով սպանումն, ու արար բազում աւէր ու այրեցումն։ Եւ արքայն հազիւ զերծեալ յԱտանայ, ու գնացեալ իմու Լեոնին առջև։ Եւ կեցաւ ինն օր յերկիրս ու ելաւ, և վարեցաւ գերի սուրբ աւետարանս ի Հալապ. հետ այլ անօթից եկեղեցւոյն։ Եւ դտեալ զսա օրհնութեանց արժանին, պատուելի իշխանն՝ պարոն Պետրոս Խպահանց, որ առաքեալ էր դեսպան առ անօրէն ամիրայս, և վասն աստուծոյ սիրոյն և գիտելոյ, որ մեր եկեղեցւոյն էր՝ գնեալ զսա և բերեալ յերկիրս, և ետ յանարժան ծառայս աստուծոյ և ձեր ի վայելս, որ եմ Թղթագիր արքայիս, և առեալ զգինն, զոր գնեալ էր յանօրինացն։ Եւ ես մեծաւ սիրով և յոյժ փափագանօք ընկալայ զսա ի վայելս սուրբ եկեղեցեաց և սուրբ տաճարին տիրամօր Աստուածածնի։

Եւ յետ աւերելոյ զերկիրս անօրինացն, դարձեալ խաբէութեամբ, թէ՝ այն զոր եղաւ՝ եղաւ, սուլտանն ընդ ձեզ սէր է, տուք զմալն. ու առ խասատ մի մալ՝ ի մէնէ, որ էր ՋՃՌ. (600,000) դր[ամ], ու տարի մի ի բուն, ինչվի մէկ այլ ապրիլն, ծեծելով ու հարամով անցոյց զերկիրս։ Եւ յետ մալին առնելոյն սուլտանին ուզեց զբերդերն, զգետին այն դեհին, զոր այլ էր տուած։ Նա արքայն Լեոն առաքեաց զպարոն Պաղտին մարաջախտն ու զիս՝ զանարժանս զՎասիլս առ սուլտանն Եգիպտոսի Նասրն, ուզելով ամանաթ, որ ինքն՝ արքայն երթայր առ ինքն վասն փրկութեան երկրիս։ Նա տնօրէնս այս Ալթուն Պուղայս արգել զմեզ ի Հալպայ բերդն ի գնդան։ Եւ ինքն մտաւ հեծելով յերկիրս և էառ զՆդիրն։ Եւ յետ բազում տանջանացն ի զընդանն, հետ է. (7) ամսոյն հասեալ վախճան [Պաղտին] մարաջախտուն, որոյ ողորմեսցի տէր Յիսուս և տացէ իր պսակ մարտիրոսական, և բերեալ մարմինն ի Հայք։ Եւ զիս արգել անօրէն ամիրայն բոլոր տարի մի։ Ու կուզէր սուլտանն, զոր Ջահան կտրէր, ու շատ ջանաց արքայն վասն փրկութեան երկրին ու չկարաց։ Եւ երկրորդ տարին մտեալ նոյն ամիրիս այլ վայր յերկրիս, բազում հեծելով արաբնով (այսպէս), ու աւերեցին զերկիրս՝ զլեառն ու զդաշտս, ու արին բազում սպանումն, ու առին անբաւ ծառայս ու առ, ու կու կորսնէբ երկիր։ Նա անճար կեցաւ Թագաւորն ու կատարեաց զսուլտանին կամքն, ու Էրետ, զոր կտրէր Ջահան՝ բերդերոն ու զերկիրն ու զպանծալին այս Այաս, զոր բազում ծախիւք շինեալ էր։

Եւ հասեալ ի յանարժանս խնամքն աստուծոյ բարձրելոյն, բարեխօսութեամբ իր սուրբ մօրն սուրբ կուսին Մարիամայ, ազատեաց ի բանտէն ու եկի յերկիրս։

Եւ ի սոյն ամի տագնապ մեծ էր յերկիրս Վրկրոյ յաՀէ անօրինացն, ի սրոյ, ի գերութենէ և ի սովոյ, որ չմնաց շէն յետ ի բերդերոյն, զոր մնացին, ոչ մարդութիւն յետ այնոց. որ ի բերդերն ի փախուստ էին ակն ունելոյ ողորմութեան աստուծոյ։

Արդ, աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, որք օգտիք ի սուրբ աւետարանէս կարդալով կամ օրինակելով, յիշեցէք առաջի Քրիստոսի և մեղաց թողութիւն խնդրեցէք, նախ և առաջին ստացողաց սուրբ գրոցս, և երկրորդ ստացողին զսա՝ սիր Սիբուեին, և իշխանին պարոն Պետրոսին, որ ազատեաց զսա յանօրինացն, և յետոյ անարժանիս Վասիլի, և ծնողացն իմոց Ստեփաննոսի և Մարիամու, և Ալեծին, և ամուսնոյն իմոյ Սպլի, գեռաբոյս որդեկին իմոյ անդրանկին՝ Յակոբայ, որպէս զի ընդ միոյ հարիւրապատիկ հատուսցէ աստուած աստ և ի հանդերձեալն։ Գրեցի զսա ի դառն և ի յետին ժամանակիս, ի մարդեղանալոյն Քրիստոսի աստուծոյ, յուսոյն մերոյ ՌԳՃԼԷ. (1337), և ի հայոց թվ. ՉՁԶ. (1337), և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

364.

ԱՒԵՏԱՐԱՆ

Ազգ. Հանդէս, Բ. գիրք. 1897 թ. էջ 284 (Ջաւախք, Վաչիան գիւղի եկեղեցի)
(տես նաև 1349 թ.)

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Բզնունեաց գաւառ, գիւղ՝ Ագեք

...[Գրեալ] ի յստոյգ աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ։ Ի մեծ թուիս ի յեղանական շրջագայութեան արեգական ստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով, ըստ արարչութեանցն չափեալ՝ յելանելոյն Ադամայ ի դրախտէն ԶՌ. և ԶԾԱ*. (6601) ամ, ըստ եօթանասնիցն, որում մեք վարիմք, և է ի մարդեղութենէ բանին աստուծոյ անժամանակ էին և փրկչի Յիսուսի Քրիստոսի ամս ՌՅԼԹ. (1339), իսկ ի թուոյ խոսրովային յաբեթեանս տոմարի ՉՁԶ. (1337), և էր մեծ շրջանին ՄԽԵ. (245)։ Ի յառաջնորդութեան տէր Ջաֆարիայի, և ի յաշխարհակալութեան մեծ ինքնակալին Մահմուտ խանին, որ տիրէ բազում ազգաց, ունելով ի ծովէն Պոնտոսի, մինչև ի ծովն Կազբից և մինչև ի գետն Ջահուն կոչեցեալ։ Ի կաթողիկոսութեան հայկազանց սեռից տեառն Յակոբայ, և ի թագաւորութեան Լեւոնի՝ նստեալ ի գահն կիլիկեցւոց, զոր տէր աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական և զթագաւորական, զի յիշել զանուանս նոցա սասանեալ սաքրին և ոչ ևս երեւին թշնամիք ճշմարտութեան։

Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ի գաւառիս Բզնունեաց, ի գեղս

* Տպված է «ԶՌ. և ԶՃՌԱ».

առ ափն ծովու, որ կոչի Աղեք, ընդ հովանեաւ սրբոյ Կարապետին, ի վայելումն եղբաւրորդոյն իմոյ Պետրոս քահանայի։

### 365.

## ԳԻՐՔ ԵՒԹՆ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆՑ ՊԵՏՐՈՍԻ ԱՐԱԳՈՆԱՑՒՈՑ

*Երևան 46*

*Թարգմանիչ՝* Յակոբոս
*վայր՝* Քռնայ

335ա *Արդ, յամի ծնընդեան փրկչին մերոյ հազարերորդի երեքհարիւրերորդի երեսներորդի իններորդի* թարգմանեցաւ գիրքս եւթն առաքինութեանց, եւթն պարգևաց հոգոյն սրբոյ և եւթն երանութեանց ի լաթին բարբառոյ ի հայս, հաւաքեալ ձեռամբ ֆրա Պետր[ոս]ի ազգաւ լաթին և աշխարհաւ* Արագոնցի*, ի կարգէ քարոզողաց սրբոյն Դոմինիկոսի, որոյ թարգման էր* Յակոբոս *ազգաւ հայ, և սա դարձեալ ի կարգ[է]ն Դոմինիկոսի։*

### 366.

## ԱՒԵՏԱՐԱ՞Ն

*Ալիշան, Սիսական, էջ 95***

*Վայր՝* Սիւնիք

*... Ի տէրութեան տանն Սիսակայ մեծի սպարապետին Հայոց և Վրաց՝ թագազարմ իշխանին* Բուրթելին*, և լուսընծայ ծիրանածին զօրու և գամիր քաջ զաւակաց նորին* Պեշգենի *և* Իւանէի*, որ ամենայնիւ նման զոյ հօրն բարեպաշտի, այսինքն խոհանակութեամբ և մատակարարութեամբքն զաշխարհս և զզօրս, նաև յառաջադէմ յարքունիս և մեծափառ, զի մեծարանս արար տէր երեսաց սոցա։*

### 367.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6151*

*Վայր՝* Կայոց-ձոր, Բոլորաձոր անապատ

395բ *Փառք ամենակարող և անբարժանելի սուրբ երրորդութեանն, որ հասոյց զմեր տկարութիւնս ի յաւարտումն և ի վերջին գիծս սուրբ աւետարանիս։*

---

** ՌՅԼԹ. (1339) թվականին համապատասխանում է հայկական ՉՁԶ. (=1337) թվականը (տես, օրինակ նախորդ հիշատակարանը), ուստի տեղադրում ենք 1337-ի թվաշարքում։*

*** Ձեռագրի բովանդակության մասին հրատարակիչը տեղեկություն չի տալիս։*

Արդ, գրեցաւ. սա ի Թվականիս Հայոց ՉՃԶԶ. (1337), ի Զօրիօ Վայօյ, ի յոնապատիս, որ կոչի Բօլօրաճօր | | |

368.

## ՄԱՍՈՒՆՔ ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ

Վիեն. 274. Տաղ. Ցուց. էջ 695—696

Գրիչ՝ Մարգարէ
վայր՝ Բերդճօր դղեակ

373ա Փառք... գրեցաւ աստուածային հոգեբուխ գիրք առակաց իմաստնոյն Սողոմոնի, աստուծոյ պատուեալ Թագաւորին, ի Թու. Հայոց ՉԶԶ. (1337), ձեռամբ անարհեստ եւ մեղսասէր գրչի Մարգ[արէ] կոչեցեալ, հրամանաւ սրբասնեալ քահ[անայի] Ղազարու, ի դղեակս, որ կոչի Բերդճօր. ընդ հովանեաւ սուրբ առաքելոցն եւ բարեխօսութեան եղբ-նաւորացն Դանիէլի եւ Ղազարու։ Արդ, ես նուաստ գրիչս աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք յայսմ հոգէաբուխ աղբերէս ընթերցմամբ կամ ընդաւրինակելով, յիշեսջիք ի Քրիստոս զսրբասնեալ եղբայր մեր զՂազար քահանա, եւ Թողութիւն հայցեցէք հանգուցելոցն մերոց՝ հաւրն մերում Դանիէլի եւ մաւրն Մարթայի, ընդ նմին յիշեսջիք զննջեցեալ քորքն մեր՝ զՀօփփսիմէ եւ զՆորխաթունն...։

369.

## Մ Ա Ն Ր Ո Ւ Ս Մ Ո Ւ Ն Ք

Երևան 767 (տես նաև 1511 Թ.)

Գրիչ՝ Ներսէս

... Եղև զրաւ գրչութեան սորա ի Թվաբերութեանս հայոց տումարիս ՉԶԶ. (1337), ձեռամբ յոգնամեղ և սուտանուն քահանայի, որ և Ներսէս անուն կոչի, ի խնդրոյ սրբամաքուր քահանայի, զոր և Մկրտիչ անուն կոչի։ Այլ և տացէ տէրն ամենի ժառանգել զսա ուրա-
112ա || խալի, շնորհաւք տեառն Յիսո[ւ]սի. և լիցի իւր ե զաւակաց իւրոց յիշատակ անջընջելի, այժմ և յաւէտ յապագայի և յանսպառ յաւիտենին։ Գարձեալ աղաչեմ ես՝ Ներսէս մեղաւք ի լի, յիշման առնել զիս արժանի, Թողութիւն խնդրել անթիւ մեղացն, զոր գործեցի. և յիշողացդ Թողցէ տէրն բարի, այն՝ որ առատն է յամենայնի, և նմա փառք յաւիտեանս յամենայնի։

Կատարեցաւ ի յամսեանս. ի հոկտեմբերի ԺԳ. (13), աւուր երկուշ[աբաթի],*

* Գրված է անկանոն տաղաչափությամբ։

## 370.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7928 (տես նաև 1304 Թ.)*

*Ստացող՝* Իազուպ

237բ *Ես՝ ծառայս աստուծոյ* Իազուպս, *և* Մեծ-խաթունս, *որ ի մեր հալալ արդեանցն տվաք յիշատակ ի սուրբ Ամենափրկիչն շուրջառ մի ծիրանի խաւուն (*), որ քահանա, որ սպասաւոր լինի ի յաղաւթքն յիշէ զմեզ և յամենայն տարի Դ. (4) պատարագ առնէ. Բ.* Մեծ-խաթունին *և Բ. իւր մաւրն՝* Հիլալին։ *Եւ մի ոք իշխեսցէ հանել զշուրջառն ի սուրբ Փրկչէն։ Եւ թէ յանդգնի ոք, մասն և բաժին զաստուածասպանիցն առցէ, այլ մնացէ մեզ յիշատակ և մեր ծնաւղացն, և կատարաւղքն աւրհնին յաստուծոյ, ամէն։*

*Ի թվ. ՉՁԶ. (1337)։*

## 371.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2844*

*Գրիչ՝* Աստուածատուր

176բ *Թվ. ՉՁԶ. (1337) Խ[նդրեմ զմեղա]պարտ դպիր զ*Աստուածատուրն *և զծնողսն իմ [յիշման] արժանի առնէք, աղաչեմ. և Քրիստոս զձեզ յիշէ, ամէն։*



ՉՁԷ 1338

372.

**ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԻՆՆ ԵՐԱՆՈՒԹԵԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՅ**

Երեւան 740

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Գլաձո՞ր

122բ Վիմարդեան գլուխ բանի,
Իննեակ թուով յաւէտ խօսի,
Տէրն է քարոզ բարձր ի վիմի,
Աշակերտացն տեառն Յիսուսի։
Ահա ասել զտեառն ձայնի
ոյժ աղքատացն երանելի,
Հոգով լինել իբր զոսկի,
Մաքուր մարմնով մինչ ապակի.
Րախ լինել, հեզ և բարի,
Ժառանգ վերինն կայանի,
Հաւատ և յոյս է կենդանի,
Միշտ ելանել յերկիր բարի։
Դիտումն է լոյս զգայականի,
Սգաւորք լինել ի յաշխարհի,
Յորժամ հոգի տեառն հնչի
Մխիթարիչ հոգոց լինի։
Ահա քաղցեալքն երանելի,
Որ ի սեղան հօրն բազմի,
Ատել զսէր այս աշխարհի
Եւ ճաշակել բան կենդանի.
Նախկնաբար մեզ քարոզի
Յաստուածային բանն և հոգի,
Թէ ողորմածն երանելի,
Տէր մարդասէր առ նա ձայնի,
Հաց քաղցելոյն ճաշակողի,
Յառաջընթա ի յատենի,
Յորմէ Յիսուսն այն սոսկալի,
Հատուցանէ զգործ բարի՝
Եսայիա վարժապետի,
Զիմանալի հաց ծասկողիս

Ի Վարդանա աշակերտի,*
Որ մեղ հայցէ առ տէրունի
Զթողութիւն յաւիտենի,
Եւ ինքն գտցէ յամենայնի։**

## 373.

## ԳՐՈՒԹԻՒՆՔ ԳԻՈՆԻՍԵԱՑ ԱՐԻՈՊԱԳԱՑՒՈՑ.

Երևան 167

Գրիչ՝ Յովանէս Հռոմկլայեցի

Ա

337բ ... Այս տառս սրբազան մեծին Դիոնէսիոսի Աթենացւոց եպիսկոպոսի գրեցաւ ի ստոյգ և յընտիր աւրինակէ. ի հռչակաւոր ուխտէն Հաղբատայ, հրամանաւ և արդեամբք եռամեծի և անյաղթ վարժապետի և ժրաջան հռետորի Եսայեայ։

Արդ, որք աւգտիք ինչ յաստուածազարդ տառէս և կամ աւրինակ առնոյք, յիշեսջիք զսրբազան բաբունապետն իմ զԵսայի, հանդերձ ծնողաւք և վարդապետաւք։ Ընդ նմին և զիս, զամենաթշուառ գրիչս Յովանէս Հռոմկլայեցի, աղաչեմ յիշել ի տէր, և յիշողքն յիշեալ լիցին, ամէն։

Ստացող և մեկնիչ՝ Եսայի Նչեցի.

Բ

Զնուաստ և մեղապարտ ոգի Եսայի մի մոռանայք յիշել ի բարի, որ ուղղեցի ի սա զտառս, զկէտ, և զբան, և զտուն։ Եւ ի տեղիս դժուարալոյծ բանիցն գրեցի լուծմունս իմով ձեռաւք, որպէս տեսանէք, զի ի ձեռն սակաւուս շահեցայց ի ձէնջ յիշել միշտ ծնողաւք և վարդապետաւք։***

---

* Առաջին վեց քառյակների սկզբնատառերով հոդվում է գրչի անունը՝ «Վարդան», որ հավանաբար Եսայի Նչեցու աշակերտ, նշանավոր գրիչ ու ճաշակով գրված մի քանի ոտանավորների հեղինակ Վարդան Բարձրբերդցին է։

** Եսայի Նչեցու անվան հիշատակությամբ որոշակի տարեթիվ չունեցող հիշատակարանների գրության մերձավոր ժամանակը որոշելու համար կարևոր է պարզել նրա մահվան ճշտված տարեթիվը։ Տարաբախտաբար, այդ նշանավոր գործչի կենսագրության հետ կապված շատ հարցեր, որոնց թվում նաև մահվան թվականը, մթության քողով են պատված։

Հիշատակարանների սույն ժողովածուի նյութերով Եսայի Նչեցին 1337 թվականին դեռևս կենդանի էր (տես գրիչ Աւագի № 360 և ստացող Աւաքտէրի № 362 հիշատակարանները), և շարունակում էր իր գործունեությունը, որպես «գլխապետ» կամ «րաբունապետ»։ Սակայն հաջորդ՝ 1338 թվականին արդեն, Վայոցձորում գրված հիշատակարանների մեջ, նրա փոխարեն որպես վարժապետ «ընդհանուր հայկազեանս սեռի», հիշատակվում է նրա փոխանորդ Տիրատուրը (տես հիշատակարան № 377)։ Այսպիսով, Եսայի Նչեցին պետք է մեռած լինի կամ 1337-ի վերջին, կամ՝ 1338-ի սկզբին։ Ուստի և նրա անվան հիշատակությամբ, որոշակի տարեթվեր չունեցող սույն և հաջորդ հիշատակարանները տեղադրում ենք 1338-ի թվաշարքում, որը նրանց գրության վերջին հնարավոր տարեթիվն է։

*** Եսայի Նչեցու մեկնությունները, ինչպես և սույն հիշատակարանը, գրված են ձեռագրի լուսանցքներում, տողերի միջև, խասն գաավորությամբ։

## 374.

### ԳԻՐՔ ՊԻՏՈՅԻՑ

*Երևան 1681 (տես նաև 1553 և 1757 թ.թ.)*

Գրիչ՝ Կիւր[ակոս]
վայր՝ Գլաձո՞ր

ա

233ա *Ո՜հ, աղաչեմ, զողորմելի դերիս յիշել՝ զԿիւր[ակոս], և զծնաւղսն իմ ի մեղաց թողութիւն, և որք յիշեն յիշեալ լիցին ի Քրիստոսէ, ամէն։*

բ

259բ *Զգերաբուն բանի սպասաւոր և զբարեաց արժանաւոր յիշատակի՝ զրաբունապետն մեր զՆոայի [Նչեցի] աղաչեմ յիշել ի մեղաց թողութիւն, հանդերձ զարմիւք իւրովք. Նաև զգրող սորին և զծնաւղսն իւր աղաչեմ առնել յիշատակի արժանի, և յիշողքն յիշեալ լիցին ի Քրիստոսէ, ամէն ամէն։*

գ

*Թէ գրելոցդ հաւանիս՝ ընկալ և թէ ոչ՝ ի կամս քո է, այլ զգըրողս իմ աղաչեմ յիշել ի Քրիստոս։**

## 375.

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Վենետ. 9, Սարգ. Ցուց. Ա. էջ 100*

Գրիչ՝ Եզեկիէլ

ա

105ա *Զմեղապարտ գրիչ Եզեկիէլ ս[ար]կ[աւագ], բարի մտօք յիշել ի տէր, յերեսս անկեալ աղաչեմ զընթերցողդ։*

բ

190բ *Մեծ դիտապետն սրբազան*
*Եւ քաջապետն արհիական,***
*Որ զօրինակս ետ մեզ ի բան,*
*Քրիստոս պահէ զինքն անսասան՝*
*Հանդերձ իւրովք միաբան,*
*Այժմ և յաւէտ և յապագայն։*
*Նաև գրիչս արէք արժան*
*Բարի կամօք ի տէր յիշման։*

---

* Այս հիշատակագրությունը գրված է 259բ էջի ստորին լուսանցքում՝ կարմիր թանաքով։

** Սույն «սրբազան դիտապետի» անունը չի պահպանվել։ Հավանաբար Նոայի Նչեցին է։

## 376.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

*Երևան 1183*

Գրիչ՝ Մաքեոս Սեբաստացի

*Ո՜վ վարդապետ սուրբ և բարի*
*Եւ պուետիկոս մեծ բարունի,**
*Յորժամ, որ գիրքս առ քեզ լինի,*
*Որ է մատեան մեծի Դաւթի,*
*Յիշման առնես զիս արժանի*
*Ըզ*Մաքեոս Սեբաստացի,
*Ըզսևացեալ մեղաւք հոգի*
*Եւ զունակցեալ այծից նմանի.*
*Ի յահեղ աւուր մեծի,*
*Յորժամ զործիք մարդկան յայտնի,*
*Ուր ամենայն բանք սպառի,*
*Լեզուս ճարտար անդ պապանձի,*
*Ի հարցանել դատաւորի*
*Ոչ ունենամ պատասխանի։*
*Յայնժամ հալիմ ողորմելի,*
*Զաչերս ածեմ արտասուալի,*
*Լամ 'ւ հառաչեմ կողկողալի,*
*Ծողորմածացն ոք չողորմի,*
*Զի մինչ յաշխարս 'ի կենդանի*
*Զողորմութիւն ոչ սիրեցի.*
*Ի քէն խնդրեմ սուրբ բարունի*
*Եւ աշակերտաց քոին բանի*
*Իմ հոգիս ձեզ յանձն եղիցի,*
*Յիշման առնէք զիս արժանի։*

## 377.

### ԳՐՈՒԹԻՒՆՔ ԴԻՈՆԻՍԵԱՑ ԱՐԻՈՊԱԳԱՑՒՈՑ

*Ալիշան, Սիսական, էջ 125*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Վայոց-ձոր, Հերմոնի վանք

*...[Գծագրեցաւ] ի նահանգիս* Վայոցձոր, *ի վանս* Հերմոնի, *ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի... յիշխանութեան և ի տէրութեան տեղւոյս մեծ և բարեպաշտ իշխանին* Բուրթելի, *և զաւակաց նորին՝* Պէշքէնի *և* Իւանէի, *և ի վարժապետութեան ընդհանուր հայկազեանս սեռի*

---

** Ակնարկված է Եսայի Նչեցին, ուստի գրված պետք է լինի վերջինիս կենդանության օրոք, այն է՝ 1338-ից առաջ։*

երջանկի, մեծի և երիցս երանեալ հռետորի Տիրատուր առձայնելոյ,
առ որ կամք ղեգերեալ ի վարժս կրթութեան... որպէս զաւակ առ
ծնօղ, որ սփոփէ զկեանս մեր՝ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ։*

378.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7643 (տես Նաև 1521 թ.)

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Եզնկա—Ծլիմոն

ա

313ա ... Ի շրջագայութեան ժամանակաց յամի եւթնհարիւրերրոր[դ]ի
Ձէ .Հայոց թուականի (1338), ի թագաւորութեանն Հայոց Լևոնի որդ-
ւոյ Աւշնի, և ի հայրապետութեան տեառն Յակովբայ, և ի յեպիսկո-
պոսութեան մերոյ տէր Սարգսի. գրեցաւ Դ. գլուխ աւետարանս այս՝
Մատթէոս, Մարկոս, Ղուկաս և Յոհաննէս։
Արդ, ստացաւ եզեն սուրբ աւետարանիս Մարխաթուն հաւատ-
վորն ի հարսնայղուստր Մուվարի, և Հերթիկն ի Կեռսենուրէն, որդի
313բ Վահրմին, որ են այժմ ի գ[եղս. որ]** կոչի Խարաբուշ. ‖ և եղին զսա
յիշատակ իւրեանց և իւրեանց ծնաւղացն ի գեղս, որ կոչի Խարաբուշ,
ի մեծ և ի հռչակաւոր եկեղեցիս, որ յանուն սուրբ Աստուածածնին։
Արդ, որք ընթեռնուք զսա յիշեսջիք զստացաւղքս սորա զՀերթիկ ժամ-
կոչն և զծանաւգսն իւր՝ զհայրն իւր զՎահրամ և զմայրն իւր զՇու-
շան տիկին, և զՄարխաթուն հաւատվորն, և զծնաւգսն իւր՝ զհայրն
իւր զՍուրվա[ր և զ]մայրն իւր զՍովեար, և զայլ ամենայն զարմ
իւրեանց՝ զկենդանի և զհանգուցեալ։ Ընդ նմին և յիշեսջիք և զիս՝
զբազմամեղ գրողս զՅովաննէս, և զծնա[ւ]գսն իմ, զհայրն իմ զՄար-
տիրոսն հիւսն, և զմայրն իմ՝ զՄեծտիկին՝ փոխեցեալսն առ Քրիս-
տոս, և զմիւս մայրն իմ հոգևոր՝ զՇամիրամ, և զայլ ամենայն զարմ
իմ՝ զկենդանի և զհա[ն]կուցեալ։
Արդ, գրեցաւ սա ի յԵկեղեց գաւառս, ի յԵզնկայս, և վասն
զառնութեան ժամանակիս ի հինգ տեղիս փոխեցեալ եղաք ի գրել։***
314ա Ո՛վ եղբարք, խ[ոշոր]ութեան գրոյս և [սխալա]նաց մի մեղա-
դ[րէք]****, զի ի դառն և ի նեղ ժամանակի գրեցաւ։ Զի յայսմ ամի[ն],
որ Տամուրտաշ յայտնեցաւ, և եկն ի վերայ աստուածապահ քաղաքիս

---

* Հիշատակարանի սույն հատվածից հետո Ղ. Ալիշանը ղրում է. «Ցայլմէ գրչէ ի նմին մատենի՝ առաջին գրիչն մեծն Գրիգոր կոչի, և աշակերտ նորա Սարգիս մեծ րաբունապետ»։ Գրված է 1338 թվին։

** Պատռված է։

*** Էջի ներքին լուսանցքում գրչի կողմից գրված է «և ղՆիրակոս միակեցն յիշեցէք, որ զգրողիս մուշտակն կարեց»։

**** Ջնջված և խունացած տողեր են, փակագծերով առաջարկված տառերը չեն ընթերց-

Եզնկայիս, և ժողովեց զամենայն շուրջակայիցս զքուրթ և զթաթար, և պաշարեաց զքաղաքս։ Եւ նստաւ ի վերայ սորա ամիսս Դ. և ի զառն նեղութիւն հասոյց, բայց քաղաքին ոչինչ կարաց վնասել, զի | | | բութիւնն* պահէր զս[ա], ապա զերկի[րն] խիստ դառ | | | ի սուր ս[ուսեր]ի մաշեց, և ոմանց զինչս և զստացուածս յափշտակեց, և ոմանք փախեան՝ և ի ձիւն և ի սառն մեռան, զի ձմերային էր ժամանակն։ Զի որ ի տան բնակէր՝ ի ձեռս նոցա մատնէր, և որ փախչէր՝ ի ցրտոյ տոչորէր. և ի յետին շունչն հասաւ երկիրս այս։ Եւ իմ լսէի և տեսանէի զայս և ի բազում տրտմութենէն ոչ կարէի գրել զգիրս.

314բ | | | եղև աւարտումն սորա ի Ճլիմռնիս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գէորգեա զաւրավարին, և սուրբ Կաթուղիկէիս և այլ սրբոցս։ Եւ արդ, յիշեսջիք և զեղբայրն իմ՝ զդեռաբոյս արեղայ զՍարգիս, որ զԹո[ւ]զԹս կոկեց և սպասաւոր էր գրողիս։ Ընդ նմին յիշեսջիք և զհայր վանիցս Ճլիմռնոյս՝ զԳրիգորես արեղա, և զայլ միաբանքս զՍոսթենես ծերունի արեղա, և զՍեթ արեղա, և զՅ[ով]աննես արեղա, և զԿարապետ արեղայ, և զՍարգիս արեղա, և զՅովաննես սուտանուն աբեղա՝ զգրող սորա։ Եւ արդ, յիշեսջիք և զքահանայքս զգեղ Խարաբշոյ՝ զՅովաննես քահանայ, և զԴաւիթ քահանայ, զՆերսես քահանայ, և զՍտեփաննոս քահանայ, և զաւագ տանուտէրքս՝ զՍողոմոնն և զՓերոն ("), և զայլ պաղի զմեծ և զփոքր, և ինքն, որ առատն է ի տուրս բարեաց և ողորմութեան, ձեզ յիշողացս և մեզ՝ [յիշ]եցելոցս առհասա[րա]կ ողորմեսցի, և նը[մա] փա[ռք] յաւիտ[եանս], ա[մմէն]։**

Բ

2բ Զնկարաւղ պատկերիս, զՅովաննես անվամ[ր] եպիսկոպոս և ոչ գործաւք, յիշեսջիք ի Քրիստոս։***

---

* Այս և հաջորդ չորս տողերը խիստ եղծված են և մասամբ պատռված։ Սույն բառը գուցե հնարավոր լինի վերականգնել «[ամ]բութիւնն» կամ «[ղաւ]բութիւնն» ձևով։

** Հովաննես գրիչը մանր հիշատակագրություններ է թողել նաև 1բ, 89բ, 148բ և 244ա էջերում, որոնք, սակայն, նոր բան չեն ավելացնում գլխավոր հիշատակարանի վրա։

*** Շատ հետաքրքիր ու ինքնատիպ են Հովաննեսի նկարած ավետարանիչները, նրանց առաջ դարսված են գրչության և նկարչության համար անհրաժեշտ բոլոր իրերի ու գործիքների շատ բնորոշ պատկերները, իրենց անուններով։ Այսպես 2ա էջում, Մատթեոս ավետարանչի աջ կողմում, վերից վար դարսված են «քանոն», «թղթի կոկիչ», «կաղ[ա]մար» (2 հատ), «դրիչ» (2 հատ), «մկրատ», «ձևիչ», «դանակ» (մեծ և փոքր), «սնտուկ» (ըստ երևույթին փայտից, փորագրված զարդաքանդակներով. միջից երևում են երկու՝ կարմիր և սև, ներկի ամաններ), «խուփն» (սնտուկի կափարիչ, նույնպիսի զարդաքանդակներով)։ Ղուկաս ավետարանչի առջև (էջ 149բ), բացի վերոհիշյալ առարկաներից, նկարված է նաև «մարմար» (մարմարյա տախտակ, հավանաբար ներկերի պատրաստման և փորձարկման համար)։

379.

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4813

Գրիչ՝ Մելքիսեդեկ

ա

... Արդ, գրեցաւ չորեքվտակեան գետս աստուածահոս՝ ձեռամբ
187բ մեղաւոր և փցուն դրչի Մելքիսեդեկի, ‖ ի խնդրոյ պատուական քահանայի Հայրապետի յիշատակ իւրն և ծնաւղաց իւրոց՝ Աստրոյ և Նազխաթունի, և զաւակաց իւրոց*, և եղբարց իւրոց՝ Ախշիբէկի և Տալիթայի և Էմնայի, զոր վայելել տացէ նմա տէր աստուած ժամանակս բազումս, և յետ աստի կենացս բարեխաւս ընդունելի առ աստուած, Ընդ որս աղաչեմք առնել արժանի յիշման զվերագրեալս ի սմա և մեղաց թողութիւն խնդրել, զի և ձեզ թողցէ տէր աստուած զյանցանսն ձեր։

Այլ աղաչեմք, զի և զիս՝ ըղփցուն գրիչ զՄելքիսեդեկ, և զծնողսն իմ՝ զՍտեփաննոս քահանայ և զԽաթուն, և զեղբարսն իմ զՆերսես քահանայ, և զՍիրախաթուն, և զԹանկխաթուն, և զՄարեմ տիկին, և զամենայն արեան մերձաւորսս յիշել ի Քրիստոս. և ինքն աստուած, որ առատն է ի տուրս, որ հաքըստանայ ընդ տալն քան թէ ընդ առնուլն, և բազմանան զանձք նորա ի ցրուելն քան ի ժողովելն, տացէ ձեզ զզանձն անկապուտ և զկեանսն անկողոպուտ։ Եւ խոշորութեան գրոյս անմեղադիր լինել, զի ամենայն մարդ սխալի ի գործս, և ես առաւել քան զամենայն ոք, զի աշխարհս աւտար էր, և աւուրքս չար, և ժամանակս դառն, և ես պարտական եւս առաւել հոգւով։ Ընդ որս աղաչեմ խնդրել թողութիւն սխալման մերոյ, զի և ձեզ թողցէ տէր զյանցանս ձեր։

ԶՎարդան քահանայ՝ զհոգևոր եղբայրս մեր, և զՑոհաննես, և զՍտեփաննոս, և զՇնոխվոր, և ծնողսն իւր՝ զՄերուն, և ըզՄարթայ, և
188ա զԴուդէշ, և զամենայն երախտաւորսն մեր յիշեցէք ‖ ի Քրիստոս, և յորս յիշէք զմեզ և դուք ի նոյն լիջիք, ամէն։

Գրեցաւ ի թուականի հայոց ՋՁէ. (1338), ի ժամանակս որ ոչ ղան կայր և ոչ սուլտան, և աշխարհս էր իբրև զնաւ յծբերման, և քրիստոնեայք էին հալածական և փախստական.

Զի ել ոՖ անուն Դամուրտաշ
Եւ արար զազգս մեր ի մաշ,
Եւ Քրիստոս ետ նմա մահու ճաշ,
Եւ եղև յաչս մեր հրաշ.
Քրիստոսի անմահին վաշ,
Որ արար զնա լաշ։

բկին աղաչեմք յիշել զՀայրապետ քահանայ, և զկենակից իւր զԳինոց և զքուերս իւր՝ զՄիլա, և զՍիրմա, և զՔաւչիկ, և զհոգեսէր տա-

նուաէրն զԿիրակոս, և զՆազիկ, և զՏիրամերն, և զԱմեն տիկինն, և Աբ-րահամ ի Քրիստոս, և զձեզ Քրիստոս յիշէ յիւր արքայութիւնն և նմա փառք։

ԶԳուման զհոգեսէր աղախին յիշեցէք ի Քրիստոս և մեղաց թողութիւն խնդրեցէք, և Քրիստոս զձեր մեղքն թողու և զմերն ոչ յիշէ, ամէն։

ԶՄամախաթուն՝ զհոգևոր քոյր մեր յիշեցէք ի Քրիստոս։

բ

147ա ... Գրեցաւ ի դառն ժամանակիս, որ էր թիւն ՉՁԷ. (1338)։ Յայսմ ժամանակի ել ոմն անաւրէն անուն նորա Դամուրտաշ և աւար եհար զազգս Քրիստոնէից. և Քրիստոս զինքն կորոյս յետոյ, հետ Ալիտաշին։*

գ

147բ Յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք Ազարիային, որ ի կազմել սուրբ աւետարանիս խաղող եբեր կերանք, աստուած ողորմի ասացէք, ամէն։

Թղթի կոկող՝ Սրբխմ

դ

89բ ԶՍրբխմ սարկաւագ, որ զթուղթս կոկեցի, յիշեցէք ի Քրիստոս, և զծնողսն իմ՝ զՍիմեոն քահանայ և զՍիրախաթուն, և Քրիստոս զձեզ յիշէ, որպէս դուք զմեզ, ամէն։

380.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 4429

Գրիչ՝ Մխիթար Անեցի
վայր՝ Սուլթանիա

ա

148բ [Հ]ասրաթ ունիմ ի յիմ սրտիս,
Միշտ տագնապիմ վասն այս բանիս,
Որ մինչ հոգիս է ի մարմնիս
Ես տեսանեմ զթամամ գրքիս։
Ոսկով զուգած այս խորաննիս
Եւ զանազան այս ծաղկնիս
Զքնազազեղ այս սուրաթնիս,
Գարպէ Աւագն, հայնց որ կամիս,
Նաև կազմեմ ըստ իմ սրտիս
Եւ յաւանդ տամ յիմ սիրելիս,

* Անվան «տ» տառը պարզ չի ընթերցվում, կարող է լինել նաև «Ալիբաշին»։

Որ և զմեզօք մեռեալ հոգիս,
Ցիշման առնել միշտ արժանիս։
Մինչ այլ տղայ ['ի 'ւ] ուժս առ իս,
Ես փոյթ չարի այսմ բանիս.
Ի զանազան զրազման սրտիս.
Այս յուր լինէր ի յիմ մրտիս։
Երր գնաց ուժս, երեկ ալիս,
Եւ ի լուսո վատեց աչվիս,
Այս իմ յիմար խելքս եկն առ իս
'Ի ապա սկիզըն ածի գործիս
Այս, որ պիտէր գործս բարիս
Ու խիստ հմուտ այսմ արհեստիս.
Որ զԹարկն առէր զաստընվորիս
'Ի ապա հպէր նա յայս գործիս։
Ես ոչ ունիմ գործս բարիս,
'Ի ոչ հմուտ եմ այսմ արվեստիս
Եմ կապել սէր աստընվորիս,
Միշտ Թաւալիմ ի մէջ տղմիս,
Ապա այս մէկս յաղԹեց ղիս,
Եւ հանգգնիլ երեա լրրբիս,
Թէ ոչ ունիս գուստր ու սրգիս.
'Ի ոչ յիշատակ յեկեղեցիս.
Քեզ պատշաճ է, որ աշխատիս
'Ի այն պատճառաւըն Թէ յիշիս.
Արդ, Թէ գովիս, Թէ քամահիս,
Լուր մէջ յեղբարցն Թող յիշիս։
Արդ, համբուրեմ ըղձեր ոտվիս
Մեզ մի ղընէք անլի ըանիս,
Մի բանբասէք զայս եղկելիս,
Թ' ինչ կու հաջէ այս անհարկիս։
Մինչ դեռ էի ի մէջ բանիս
Նա կու նեղէր ցաւըն կշտիս,
Ես զայս եղի ի յիմ սրտիս՝
Լինի չհասնիմ յեզըր գըծիս։
Արդ, փուք է կեանք աստընվորիս,
Մահու կասկածըն նեղէ զիս,
Ջառնէք անտես զաղերս ծերիս՝
Ցիշման առնել միշտ արժանիս,
Թէ հաւանիս, Թէ չհաւանիս,
Թէ բանբասես կամ սիրտ ելնիս,
Թէ բարկըն բարկըն ծիծաղիս,
Թէ ինչ կու ասէ այս աղտեղիս։
Եւ Թէ խղճաս այս անմրտիս
Եւ ողորմիս այս յիմարիս,

Անտես առնես ըզկարդ բանիս,
Միայն ի սիրտս դու հայիս.
Աստուած բարի՝ ինձ ողորմիս
Եւ հայրաբար խնամ տանիս
Այս մեղաւոր տառապելիս,
Որ է մեղօք մեռեալ ոգիս,
Ինձ՝ անարժան փծուն գրչիս՝
Ողորմելի Մըխիթարիս,
Որպէս յիշէքդ յիշեալ լիցիս,
Առնուք միոյն հազար բարիս,
Եթէ ոք խէթ ունի ընդ իս,
Զի ձեզ արել եմ շատ չարիս,
Ես ձեզ մեղա, ողորմելիս.
Թողէք զ[յ]անցանս մեղապարտիս,
[Դ]արձեալ կրկնեմ ծունր կրկին,
Միշտ աղաչեմ անլռելին,
Ցիշման առնել միշտ արժանին,
Ըզվեհագոյնքս, որ հեմ յիշին,
Ըզհանգունակ իմոյ փրկչին,
Ըստ չափոյ տեառըն խնամողին,
Մեր երջանիկ գլխոյ վեհին,
Առաջնորդաց այս նահանգին,
Տէր Սարգսի, տէր Գրիգորին,
Որ միշտ Յիսան անգրդւելին.
Բազում աւուրք յաւրս սոցին
149ա Ես զովացա յիւրեանց շըքին.
Մեծ օժընդակ այսմ գործին,
Արի և քաջ քարտուղարին
'Ի անհամեմատ նկարողին
Շնորհաց Աւագ սարկաւագին,
Այնչափ վերայ ինձ հոգ տանին,
Որպէս տանի ոք զաւակին,
Արդ, զտրիտուր փոխարինին
Զբարին առցեն յօրըն վերջին.
Եւ բազմերախտ հանգոյն ծնօղին,
Մեղաւորիս զաւառակցին՝
Գրիգորու քահանային,
Սընընդակցին իմ պարոնին,
Նայ և Սարգիս սարկաւագին,
Մարտիրոսի և Սարգսին,
Եւ Տրդատա քահանային,
Եւ այլ ընդրեալ քահանայիցն
Սուլթանիու յեկեղեցին,
Ստեփաննոսըն՝ Բարերդցին՝

Սիրով զմեզ ընդունողին,
Նայ և Թադեոս կրօնաւորին՝
Քաղցրաբարբառ երգեցողին,
Եւ Յովհաննէս փակակալին,
Եւ Հայրապետ քահանային.
Անկեղծ եղբաւրն իմ Ներսէսին,
'Ի Աստուածատուր ոսկերչին,
Նայ և Շնաւոր սարկաւագին,
Եւ Պետրոսին, և Մծղնին,
Պարոն Սարգսի, և Խօրիշին,
Եւ Մարտիրոս իւր անդրանկին,
Քաղցրիկ եղբօր մեր Փոլատին,
Առ մեզ շատ սէր ցուցանողին։
[Յ]իշեմ զգաւառն իմ հայրենին,
Զմայրաքաղաք ամուրն Անին.
Եւ ըստ մարմնոյ իմ ծնօղին՝
Տէր Յակոբա և Սեդային,
Եւ իմ եղբարցն հարազատին՝
Գէորգա և Գրիգորին,
Նայ և քվերն իմ՝ Ջալալին,
Որք են ննջել ի տապանին.
Սարգսին և Լիպոտին,
Եւ փեսային իմ Գրիգորին
'Ի իւր ամուսնուն՝ Խեր Խ[ա]թ[ուն]ին,
Թաւաքալուն՝ իւր անդրանկին,
Զոր հավանի լիցի սոցին
Ամենակալ աջն անեղին.
Զոր ծնողաբար խնամէին,
Երէց եղբօրն իմ Գէորգին,
Ըղկնի իմ շատ աշխատողին
Եւ առաջին իմ ուսուցչին,
Եւ որք առ մեզ սէր ցուցուցին
Եւ ըղտնանգըս հանգուցին,
Եւ որք մի օր կերակրեցին,
Կամ բաժակաւ ջուր արբուցին,
Ոչ կորուսցէ զվարձըս նոցին,
Վասն Նսուտ տեառըն հրամանին,
Այլ հատուսցէ հարիւր՝ մէկին,
Աստ և յաւուրն աներեկին.
Յիշողացս և յիշողին,
Առհասարակ ի միասին։
Յիշող[ք]ն մեր յիշեալ լիցին
Այն աներեկ յօրըն վերջին,

Որպէս յիշեն այնպէս յիշին
Առջև ահեղ Թագաւորին.
Ինքն, որ կարող յամենայնին,
Ներող, գթած, քաղցր ու բարին
Հայի ի սիրտս հայցողին
Եւ տայ առատ զփափաքելին՝
Մեզ՝ յիշողացս և յիշողին,
Կարդացողաց և լսողին,
Եւ ինքն աւրհնեալ յամենայնին
Ցարարածոցս ի բնաւին։
[Ե]ւ աշակերտքն իմ աստ յիշին՝
Արտօրուղին և Թաքոսին,
Սայինբէկին և Գրիգորին,
Լինին արժան իւրեանց կարգին։
. . . . . . . . . . . . . . . .*
Նայ և Կոստանդ քահանային,
՚Ի Աբրահամու՝ իւր անդրանկին,
Զոր բարերար կամաւ փրկչին
Զա[ր]ն ոչ կարէ յաղթել սոցին։
Ցեօթնհարիւր ՚ւ ութսուն թվին
Եւ եօթներորդ աւելորդին (1338)։**
Աշխարհս հայնց է ի վշտին,
Որպէս պատմեն վասն Նեռին,
Զի չէ լուեալ ամենևին,
Թէ թագաւորք լեալ եկին,
Աջապ թէ չէ օրըն վերջին,
Որ սրով միմեանց կոտորեցին։

Բ

247բ Մեծ վտանգի կամ յայս նեղուս,
Զի խիստ յաղթեց ցաւ.ն մարմնոյս
Եւ. ի ձեռացս ի գողալուս,
Այլ չեմ կարել տալ շար գրոյս.
Եւս առաւել ի յայլ շաղուս
Ու ի թանաքի թանձրանալոյս,
Եւ մանաւանդ ի յայս քնուս,
Զաւր հասարակ մրափելուս.
Եւ յանիծեալ այս ճանճերուս
Ի սնավաստակ ա[յ]ն կենդանուս,

* Մի տող ջնջված է, հաջորդ տողերը գրված են 148ր և 149ա էջերի ներքին լուսանցքներում։

** Բնագրում՝ «Ցեօթն Չ. ՚ւ Ձ. թվին և Է. երորդ աւելորդին»։

*Որ միշտ նստին ի վերա գրչուս,*
*Ծրծեն զԹանաքն գրերուս,*
*Կելնեմ ի սիրտ այս ոչընչուս,*
*Զգիտեմ Թ'ինչ առնեմ նզովծնուս*
*Եւ ի քԹիս միշտ հոսելուս*
*Եւ հանապազ ի ծորալուս,*
*Այլ երբ կու տա իմ աչքս լուս,*
*Որ ես այլ շար տամ գրերուս,*
*Եղբար, մեզ մի դնէ ցգերուս.*
*Այս տառապեալ 'ւ ողորմելուս,*
*Ինչ հնացաւ տարիք մարմնուս*
*Գէս-պէս ցաւեր յայտնի ծերուս։*
*Օ՜խ, Թէ լինէր ճար այս նաւուս,*
*Որ հասանէր յեզր ի ծովուս,*
*Որ ես տեսնում զվերջք գրուս*
*Ու ապա հասնի մահն հողուս։*
*Աստուածածին, անարատ կոյս,*
*Միշտ բարեխօս լեր առ Յիսուս,*
*Զառնել անտես զիմ արտասուս,*
*'Ի ոչ ի յուսոյդ առնել անյուս*
*Այլ տա զհայցւած փոփաքելուս։*

Գ

319բ *Զկնի իմոյ վայելողք, անմեղադիր լերուք խոշորութեան գրոյս և սխալանաց սորա, զի էի տկար մարմնովս և մեռեալ հոգովս. աղաչեմ անտրտունջ զորգել և զմեզ անրամբրասանս արձակել. յօժարութիւնս հայեաց և մի յարհեստն։*

381.

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Վասպ. 97. Հալ. Ցուց. սյուն. 195—198*
*(Մոկսի Դաշտի Թաղի ս. Յակոբ եկեղեցի)*

*Գրիչ՝* Առաքել
*վայր՝* Մոկաց գաւառ՝ գիւղ Դաշտ

*Այլ գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Առաքել գծողիս, անիմաստ և ախմար գրչի, և իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, ըստ այնմ, որ ասէ՝ վիշտս յազգէ, վիշտս ի սուտ եղբարց, և Թէ՝ յոտից մինչև ցգլուխ չիք առողջութիւն, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին աստուած, բազում աշխատասիրեալ իմ ի սմայ, գրեցի անարժան ձեռաւք իմովք յընտիր և ի ստոյգ աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազմադէմ ալէկոծ ծփանաւք։ Ի մեծ Թուիս, ի յեղանակ շրջագայութեան արեգական ըստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հա-*

յելով, ըստ արարչութեանցն չափեալ՝ յելանելոյն Ադամայ ի դրախտէն ՉՌ. և ՉԾ. և Ե. (6605) ամ ըստ եւթանասնիցն, որում մեք վարիմք։ Եւ է ի մարդեղութենէ բանին աստուծոյ անժամանակ էին և Փրկչին Յիսուսի Քրիստոսի՝ ՌՅԼԸ. (1338) ամս, ըստ Թուոյ խոսրովային յաբեթեանս տումարի՝ ՉՁԷ. (1338), և էր ի մեծ շրջանին ՄԽԵ. (245)։ Ի կաթողիկոսութեան հայկազանց սեռի տեառն Ստեփաննոսի Աղթամարեցւոյն, և ի թագաւորութեան Նստեալ ի գահն (*), զոր տէր աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական և զթագաւորական, զի յիշել զանունս նոցա, սասանեալ թաքչին և ոչ ևս երևին թշնամիք ճշմարտութեան։

Եւ գրեցաւ աւետարան[ս] այս ի գաւառիս Մոկաց, ընդ հովանեաւ սրբոյն Յակոբայ և Անջողոց սուրբ Աստուածածնին, ի գեաւղս, որ Դաշտ կոչի, ձեռամբ Առաքել անպիտանն գծողիս, ի յիշատակ հոգւոյ իմոյ և ծնաւղացն իմոց՝ հաւրն Կարապետին, և մաւրն Թագուխին, եղբարցն՝ Մկրտչին, Մարտիրոսին և Ստեփաննոսին, քուերն՝ Թուրուանդին, և որդոցն իմոց՝ Կարապետին և Յովանիսին, մաւրն Խերմելէքին, և հաւր պապուն իմ՝ Ստեփաննոսին, և եղբայրն՝ Յովանէս քահանային, Ատոմին, Գրիգորին, Թումին, և Կարապետ սարկաւագին, և ամենայն արեան մերձաւորացն մերոց, ամէն։

382.

ԱՒԵՏԱՐԱՆ

Վասպ. 128, Լալ. Ցուց. էջ 275—276 (Վանի Արարուց եկեղեցի)

Ծաղկող և գրիչ՝ Առաքել Մոկացի

Ես մոլորեալ մըտօք գերի,
Որ ցընորեալ կամ յաշխարհի,
Վայ ե եղուկ յամենայնի,
Առաքել հողըս Մոկացի*,
Դառըն ցաւօք շըրջիմ յերկրի.
Որպ[էս] ըզըրու յաւերակի,
Կամ տատանեալ բեկեալ նաւի,
[Որ] հանապազ հանգիստ չունի։
Զաւետարանըս ծաղկեցի
Մատամբ իմով մեղսամածի։
Ըզձեզ աղաչեմք եղբարք բարի,
Ինձ ասացէք տէր-ողորմի.
Յորժամ կանգնէք ի յատենի,
Յիշման առնէք զիս արժանի,
Զի և փըրկիչն ձեզ ողորմի
Յաւուր մեծի դատաստանին։

* Առաքել Մոկացին նախորդ հիշատակարանի գրիչն է։ Ըստ այդմ, սույն անթվական հիշատակարանը հրատարակում ենք նրան առնթեր, 1338-ի թվաշարքում։

## 383.

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Երևան 8570 (տես նաև՝ 1815 թ.)*

Գրիչ՝ Առաքել
վայր՝ Զորովանք

198բ ... *Գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի մանրուսումն և առընթեր՝ կցուրդ փոխման աստուածածնի, ի թվին ՉՁԷ. (1338), ի թագաւորութեան հայոց* Լեոնի, *որդւոյ արքային* Աւշնի, *և ի հայրա[պետութեանն] տեառն* Յակոբա, *յանապատս, որ կոչի* Զորոյվանք, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և կենսաբեր սուրբ Նշանիս, ձեռամբ բազմամեղ, եղկելի և անիմաստ գրչի* Առաքելի, *ի խնդրոյ սրբասընունդ, սրբասէր և պատուական սարկա[ւագին]* Ներսեսի, *ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ բարի հոգւոյ և ծնաւղաց իւրոց։*

199ա *Արդ, աղաչեմ զա || մենեսեան, որ աւգտիք ի սմանէ կամ աւրինակէք, յիշեցէք զյառաջասացեալ ստացաւղ սորա՝* զՆերսէս *և զամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանիքն և զհանգուցեալքն, ընդ նմին՝ զբազմամեղս* Առաքել *և զիմսն ամենայն. և որ զմեզ յիշէ, յիշեալ լիցի յառաա ողորմութիւնն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտէնից, ամէն։*

## 384.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Հալէպ. սբ. Մնկ. 33. Սուրմ. Ցուց. Ա. էջ 72—73. (տես նաև՝ 1631 թ).*

Գրիչ՝ Յովան
վայր՝ Արծկոյ վանք

ա

604 ... *Յամի ՉՁԷ. (1338)-երրորդի հայկազեան տոհմիս տումարի... գրեցաւ աստուածայինս այս մատեան... յանապատիս* Արծկոյ վանս *առձայնելոյ, ընդ հովանեաւ սուրբ մաւրս լուսոյ Աստուածածնի, և սուրբ Նշանի Սքանչելագործի, և այլ հաւաքեալ սրբոցս. յառաջնորդութիւն տեղւոյս* Յաւհաննես *հաւր։ Ի ստացումն սրբազան քահանայի* Հայրապետի *կուսակրաւն աբեղայի...։ Ձեռամբ անպիտան գրչի* Յովանի *մեղապարտ քահանայի. ի դառն և ի վշտաբեր ժամանակի, յորում վիշտս վտանկի և աղէտս տարակուսանաց յոքունս հասուցանելով քրիստոսական ոճոյս ազգաց անաւրինաց՝ ուրացելոց ի փառաց որդոյն աստուծոյ, նեղութեամբ և տառապանօք, հարկապահանջութեամբք և այպանման ձաղանօք, որոց հատուսցէ նոցին ըստ գործոց նոցին հզաւր թագաւորն Քրիստոս ուժնապատիկ ի ծոցս նոցա...։ Ընդ նմին և* զՅորդանան *կուսակրաւն աբեղայ և զծնաւղսն իւր, և զիս՝ զանպիտան գրիչ, և զծնաւղսն իմ յիշման արժանի արարէք...։*

Ծաղկող՝ Կիրակոս

բ

20 ԶԱնպիտան ծաղկող սուրբ աւետարանիս՝ զնուաստ և սուտանուն Կիրակոս... Զիմ զանարժան երեսս ի գետինն պագանեմ, յիշման արժանի արարէք զիս և զվարդապետն իմ Ուռհա քահանայ, և աստուած յիշողացդ ողորմի. անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր...։

### 385.

### ԶՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ

Երևան 260

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Մեծոփայ վանք

217ա Գրեցաւ մատեանս աստուածային ի փառս համապատիւ և միանական սուրբ երրորդութեանն, հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, ի թուի հայոց ՉՁէ. (1338)-երորդի, յառաջնորդութեան Մեծոփայ վանս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ձեռամբ Ստեփանոսի՝ պիտականուն և անարուեստ և փցուն գրչի։ Ի Քրիստոս աստուած յիշել զմեզ հայցեմ, զի բազում աշխատութեամբ գրեցի զգիրքս զայս ի սուրբ և յընտիր աւրինակէ բաբունոյն մերոյ՝ [փոխ]եցելոյն ի Քրիստոս, որ զաւրինակս, այլ | | | անս* եթող ի վանքս յիշատակ իւրն և | | | աղաչեմ զամենեսեան յիշեցէք ի Քրիստոս | | |

217բ ԶԿարապետ պարզամիտ կրօնաւոր, ստացող աստուածային գրոցս յիշեցէք, որոյ տէր աստուած վայելել տացէ ընդ յերկայն աւուրս խաղաղական կենաւք։

### 386.

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Հալէպ, ար. Մկն. 7. Սիւրմ. Ցուց. Ա. էջ 24

Վայր՝ Կոպիտառայ դղեակ

ա

400 ... Գրեցաւ տետրակս այս մանրուսման ի թուիս Հայոց ՉՁէ. (1338), յանառ դղեակս, որ կոչի Կոպիտառայ, ընդ հովանեաւ սուրբ Դաւթայ և կենսակիր սուրբ Նշանիս Վասլի, ի հայրապետութեան տեառն Յակովբայ և ի թագաւորութեան Լևոնի բարեպաշտի, ձեռամբ բազմամեղ և անարհեստ գրչի, ի խնդրոյ սրբասէր և պատուական սարկ[աւագի] Թորոսի, ի վայելումն անձին իւրոյ, և յիշատակ բարի

* Ձեռագրի կարկատման ժամանակ վերջին երեք տողերի աջ եզրին փակցված է թուղթ, որոշ բառեր, մնալով թղթի տակ, չեն ընթերցվում։

*հոգւոյ և ծնողաց իւրոց, որք բարիոք սնուցին և աստուծոյ նուիրեցին...։*

*Ծաղկող՝* Սարգիս

Բ

400 *Զ*Սարգիս *անարժան քահանայ՝ ծաղկօղ և զոսկւոյ սուրբ տառիս, և զծն[ողքն] իմ, աղգայնաւք իմովք, աղաչեմ յիշել ի տէր։ Եւ որ զմեզ յիշէ ի մեղաց թողութիւն՝ Քրիստոս զինքն յիշէ, ամէն։*

387.

*ՄԱՇՏՈՑ*

*Ալիշան, Սիսուան, էջ 203*

*Վայր՝* Գոտոամ գիւղ, սուրբ Հռոմանոս անապատ

*Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՁՁէ. (1338), ի սուրբ և փառաւորեալ անապատս, ի սուրբ Հռոմանոս, մերձ ի գեաւղն* Գոտոամ։*

388.

*ԹՈՒՂԹԳ ՊՕՂՈՍԻ*

*Գ. Սրվանձտ. Թորոս Աղբար, Բ. էջ 402*

*(Զնքուշի Սիհրահայեաց սբ. Աստուածածնայ վանք)*

*Գրիչ՝* Սարգիս

*Եղբայրս մեր* Ներսէս *սարկաւագ... ստացաւ զսա զաւակ ի Սիոն... յիշատակ իւր և ծնաւղացն...։ առ ի բարեխաւս լինել յաւուր որոտընդոստ գալստեան փրկչին...։ Յիշեցէք զ*Սարգիս *ապիկար գրիչս...։ Ի թվին ՁՁէ. (1338)։*

389.

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 7049 (տես նաև 1308 թ.)*

*Հետ. ստացող՝* Աբրահամ

*Ես՝* Աբրահամ *երէցս, գնեցի զաւետարանս յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց և ազգականաց, և աւգնական եղեն ի գին | | |* Յով[]հաննէս: *Արդ, որք կարդայք կամ աւրինակէք յիշեսցիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սորայ, և յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս առհասարակ, ա[մէն]։ Գրեցաւ ի թվականիս ՁՁէ. (1338)։*

* *Տպված է «Ջաւլի»։*

** *Գտնվում է Դաշտային Կիլիկիայում։*

## 390.

### ԲՐԵՎԻԱՐ (ԺԱՄԱԳԻՐՔ)

Բրիտ. թնգ. (Add. 16,408), Կոնիբ. Ցուց, 158—160
(Տես նաև 1450, 1505, 1517 և 1552 թ.թ.)

Թարգման՝ Յակոբոս Քռնեցի
վայր՝ Քռնայ

| | |
|---|---|
| Ցամի ծննդեան* փրկչին մերո | Յ |
| Որ և հազարն ընդ նմին Թ. վեր | Ա**, |
| Հայկազան գշրջանա | Կ |
| Այլ և ընդ նոյն միաց | Ո,** |
| Ներարհեստիւ Թարգմանութեամ | Բ |
| Վարժեա ուսմամբ Լաթինաց | Ո, |
| Արդասանեալ ֆրաթ Պետրոս | Ս |
| Րոտեմ ընդ այս գթեթգու | Թ, |
| Դասեալ ի կարգ եմ ընդ սմ | Ա, |
| Արգասաւոր մատեանս յարմա | Ր, |
| Գաագատ ի Քռնայ վան | Ք, |
| Եւ [գ]շինողք սորա, որ համադա | Մ |
| Տիա պարոն Գորգ ի Քըռն | Ա, |
| Ներհուն հռետոր ոճն իմաստու | Ն, |
| Որ և Ցռնաճ իսկ յորջորջ | Ի, |
| Րամեաց գրաբունս երբնագունա | Կ, |
| Կորովամիտ և ուշիմ | Ա, |
| Որ ըստ յԵսուա խոստմանց յերկի | Ր |
| Զնաշխարհի*** յիմաստ և կար | Գ |
| Եւ զգիրս սուրբս Թարքման | Է |
| Ցօղով շնորհաց հոգոյն լցեալ | Ք, |
| Եւ արգ գըրեվիար ազգին Լաթին | Ա, |
| Առ արգասիւք սորին յարմա | Ր |
| Լինել ի գարգ եկեղեց | Ո, |
| Քան[գի] օրհն[եալ] եղբայր և թե | Ջ, |
| Ռետոր հմուտ ազգին իւր | Ո, |

---

* Թարգմանության թվականը տրված է անորոշ և անհասկանալի։ Այս ժամագրքի մի այլ ընդօրինակություն պահվում է Փարիզի Ազգային Գրատանը (Bibl. Nationale, № 105)։ Ըստ Ֆ. Մակլերի այն թարգմանված է 1330 թվականին։ Ալիշանն իր «Սիսականի» 375 էջում թարգմանությունը կատարված է համարում 1338-ին, իսկ 385 էջում՝ 1333-ին։ Մեծ կասկածանքով հիշատակարանը տեղադրում ենք 1338-ի թվաշարքում։

** Տպված է «Ց», ուղղում ենք «Ա» և «Ո», որովհետև տողերի սկզբնատառերով ու վերջնատառերով հոգվող նախադասությունները այդ են պահանջում։

*** Տպված է «Զնա աշխարհի»։

Նա հայրապետ ժիր աղերսս Ղ*
Եւ արդ, ի կիր առնողք զս Ա**
Ցակաք (՞) զՈհաՆ ուղ[ղ]ից հոգս Ց
Իսկ Յակոբոս Թարգման սորի Ն։
Ցեռ հարիւրից և երեսնո Ե
Որ և զօթնեակն ընդ նմին յետ Ա,***
Համ ութսուն էր և ութա Կ,
Առ զվեցհարիւրն և զասե[ց] Ո։
Նպաստ եղև միջնորդութեամ Բ
Վասն ինքեան յազգէ այնմ զոլ Ո.****
Առեալ իւր հայր զՏօմինկո Ս.
Րաբուն Թարգման Թէպէտ եմ բ[ո]ւ Թ
Դաղմատ աղքատ և ազգաւ հ Այ,*****
Առեալ զաւարտ և զկոպլա Ր,
Պարապ ածեալ եղբարքս, որք կան Ք։
Են ամուսինք զոյգ համերա Մ,
Տիկին Նյքիկն, որ ընդ նմ Ա,
Նոյն և ըստ հողոյ որդի սոցու Ն,
Որոյ անուամբն վանքս չին Ի,
Րամեաց զհաթինս ընդ Հայս հասա Կ,
Կամաւ դիմեաց յաթոռ Հռոմ Ա,
Ուզապետեաց մեզ անբոյսի Ր,
Զքնաղս փոխեցի հայս նուա Գ։
Եւ զհայկազանս լուսաւոր Է,
Ցանկան, որ բանն սորա լուեալ Ք։
Ես, որ տրուպ եղբայր սոր Ա,
Անսխալ եղի ի հայս բառբա Ր,
Լուսաւորել զաչս հոգ Ո******,
Փարակատող եղեալ ընդ մե Զ,
Ռէմին հնազանդ հռոմաց Ո*******,
Նա բանին տեառն է քարոզո Ղ,
Եղէք մաղթողք մեզ յարակ Ա,
Ցանկ զասեսցէ տէրն սրբո Ց,
Ի ձէնջ յիշեալ լիցի ընդ սմի Ն********,

---

* Տպված է «Ց»։
** Տպված է «զսայԱ»
*** Տպված է «յետ Ց»
**** Տպված է «այն ՆմգլՈ»
***** Տպված է «Ազգաւ և Ա»։
****** Տպված է՝ «Հոգո Ց»։
******* Տպված է՝ «Հոոմաց Ց»,
******** Տողերի սկզբնատառերով երկու անգամ հոգվում են «Ցոհան վարդապետն, որ կոչեցեալ Քռնեցի», իսկ վերջնատառերով՝ «Ցակոբոս Թարգման ի կարգէ քարոզողացն» նախադասությունները։

## 391.

## ՀԱՄԱՌՕՏ ՀԱՒԱՔՈՒՄՆ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԱԼԲԵՐԹԻ ԱՐԱԳՈՆԱՑԻՈՑ

Երևան 3640

Գրիչ՝ Մաթէոս*

ա

119բ Զտառապեալ ոգի՝ գրող և ստացաւղ տառիս՝ զՓրա Մատթէոս յիշեցէք ի Քրիստոս, որպէս յիշէք եղիջիք և դուք յիշեալ ի նոյնն։

բ

Տէր Ներսէս շատ աշխատեցաւ։

* Ամենայն հավանականությամբ Մատթեոս Երզնկացի գրիչն է, որն ընդօրինակել է լատիներենից 1338 թ. (*) թարգմանված Բրեվիարը (Manus. Bibl. Nation. 46), ուստի և ապրել է շուրջ 1338 թվին։ Այս նկատառումով անհայտ տարեթվով սույն հիշատակարանը տեղադրում ենք 1338-ի թվաշարքում։





## 392.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7637 (տես նաև 1666 թ.)*

Գրիչ՝ Նատեր

ա

281ա ...*Զի յայսմ աւուր որում գրեցաւ || աստուածաբան աւետարանս էր թվական Հայկազանց տումարի ՉՁԸ. (1339) և կենարարին ՌՅԽԱ. (1341), և էր յոյժ նեղ և նուրբ ժամանակ ի վերայ Քրիստոնէից, և այն՝ վասն մեղաց ամենայն մարմնոյ, զի վասն խստութեան ժողովրդեան Թագաւորէ այր կեղծաւոր։ Եւ լաւ էր եթէ մի այր էր Թագաւոր և կեղտ, այլ ամենայն իշխան ե ապարասն, զոր ընգ գրով ոչ մարթացի բաւանդակել։*

*Արդ, յայսմ ամի գրաւ եղև իմով ձեռամբ՝ նուաստ և յետին և անարհեստ գրչի* Նատեր *մեղապարտի, կամաւ հեզահոգի հոգևոր եղբաւր մերոյ և յաւէտ սիրելոյ՝* Առաքելոյ *շնորհազարդ նկարչի, որք գիտլիք այսմ աստուածահոտ վտակացս...յիշեցէք զգրչիս և զնկարիչս ի նոյն ինքն ի տէր մեր Յիսուս Քրիստոս...։*

բ

*Աւետարանս խիստ հաստատ է, ապա օրինակն ի Մրսցուն է։*

## 393.

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Երևան 764*

Գրիչ՝ Ներսես Կելընցի
*վայր՝* Եկեղեաց գավ.առ, սուրբ Կիրակոսի վանք

246ա ...*Գրեցաւ եղանակաւոր տառս ի թիւս արեթական գրո՞ի ՉՁԸ. (1339), ի թագաւորութեանս Հայոց* Լևոնի *որդւոյ* Աւշնի, *և ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *ի գաւառիս* Եկեղեաց, *առ լերամբն* Բքնոյ, *ի յանապատիս սրբոյն Կիրակոսի, ձեռամբ* Ներսէս *գրագրի, եղբաւրորդեկիս մերոյ* Սարգիս *տղայի, ի վայելումն անձանց մերոց և*
248բ *յիշատակ ծնաւղաց մերոց։ || Արդ, աղաչեմք զամենեսեան, ով դասք լուսերամից և մանկունք սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք այսմ եղանակաւոր տառիս ուսանելով, կամ աւրինակելով, կամ զաղափար*

գնելով, յիշեսջիք ղանպիտան գրիչս՝ զՆերսէս Կելընցիս, և զեղբաւր-
որդիակս՝ մեր զՍարգիս տղայն, և զծնաւղսն մեր, և զքոյր մեր զՇնո-
վորն, և զծնաւղսն իւր, որ շատ բարութեամբ առ մեզ աշխատեցան՝
տալով և աւգնականութեամբ, տէր աստուած վարձս հատուցանէ ըստ
247ա գործոց նոցա, և աստուած յիշողացդ և յիշ || եցելոցս ողորմեսցի, ամէն։

394.

ԱՒԵՏԱՐԱՆ

Վաստ. 99, Հալ. Ցուց. սյուն. 201-202, Ջուլամերիկի Փոկան գյուղի եկեղեցի (տես նաև 1388 Թ.)

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Տարօն, Ղազարու վանք

...Գրեցի յընաիր ե ի ստոյգ աւրինակէ, ի թուականիս Հայոց ՉՁԸ. (1339), ի գաւառիս Տարաւնոյ, ի հռչակաւոր ուխտիս Ղազարու վանք կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Առաքելոյս, ի հայրապետութեան տեառն Յակոբայ, և ի թագաւորութեան Կիլիկեցոյց նահանգին՝ Լեւոնի, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս Ղազարու վանից տէր Յովհաննեսի՝ հեզոյ և հնազանդոյ։

Արդ, աղաչեմք զամենեսեան, որք աւգաիք ի սմանէ յիշեսջիք ըզգրող սորա՝, զսուտանուն կրաւնաւոր զՍտեփանոս, որ զայս մագաղաթս ի չահ ածի։ Զի յառաջն աւետարան էր, և անկեալ էր ի ձեռս այլազգեաց, և թուխթ թուխտ էր արած, ես լուացի գինքս ու շատ աշխատեցայ, այնոր համար, որ ըզգիրն դժար կու առնէր ու զզծայնեբ | | |

395.

ՔԱՐՈԶԳԻՐՔ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

Ճանիկյան, Հնութիւնք Ակնայ, էջ 81

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Ագոխ

Ցանկացող եղէ ես ՝ նուաստ ծառայ աստուծոյ Սարգիս Լոռեցի և եսու գրել զսա ի վարժումն և ի կրթութիւն անձին իմոյ...։Արդ, գրեցաւ սա ի քաղաքս Ագոխ, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի, ձեռամբ անիմաստ և անարժան սուտ քահանայի, անուամբ միայն կոչեցեալ Մկր[տչի]...։

ՉՁԸ. (1339), դեկտ[եմբեր]։

## 396.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 7511*

Գրիչ՝ Առաքել Բաբերդացի
վայր՝ Վախանշէն գիւղ

ա

38բ *...Շնորհիւն աստուծոյ սկսայ, և ողորմութեամբ Քրիստոսի և կարողութեամբ սուրբ հոգոյն կատարեցի զՅհան գլուխ աւետարանս* և զգործք առաքելոցն, որ կոչի յինունք, ՉՁԸ. ի թվակ[ան]ութիւնն Հայոց (1339), գրչաւ և աշխատութեամբ նուաստ և անարժան քահանայի* Առաքելի Բաբերդացոյ. *ի գեղ* Վախանշինոյ։

բ

150բ *Աստուած ողորմի ստացողի սորա* Առաքելի *մեղապարտ քահանայի։*

## 397.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Վասպ. 98. Լալ. Ցուց. սյուն. 197-200 (Շատախ, Թաղ գյուղ)*

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Երուսաղէմ

*...Շնորհիւ ամենակալին աստուծոյ աւարտեցաւ սուրբ աւետարանս յաստուածակոխ քաղաքս* Երուսաղէմ, *առ դրան սրբոյն Յակոբայ։ Ձեռամբ մեղապարտի* Յոհանիսի, *ի թուականութեանս Հայոց ՉՁԸ.(1339)։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ, յիշեսջիք տէր-ողորմայիւ ի թողութիւն մեղաց զծաւղ և զկազմաւղ սորա զ*Յոհաննէս, *որպէս զի և զձեզ ողորմեսցի Քրիստոս աստուած, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Վ Մ Ե** Թ Բ Ի Ռ Է Ր Դ Ռ Ե Ռ Խ ։***

---

* *Իմա՝ «աւետարանս Յովհաննու»։*

** *Սխալմամբ տպված է «է» փխ «ե»-ի։*

*** Փոխարինագիր *ծածկագրով կարդացվում է «գիրքս է աւետարան»։ Շարունակությամբ* գծակետային *ծածկագրով գրված է մեզ համար անհասկանալի հետևյալ տողը՝* | | :: : | •• | | | | • | | | • | | : | :• | | | | :: | | | ••• | • | | | •

## 398.

### ՃԱՇՈՑ

**Երեւան 5320**

Գրիչ՝ Աւետ[իս]

339ա *Տէր աստուած, ողորմեա յոգնամեղ և անարհեստ գրչի* Աւետ[իս] *անարժան քահանայի, և ծնողաց մերոց, և երախտաւորաց, և ամենայն արեան մերձաւորացն, և ստացողաց սուրբ գրոցս՝* Ոհսի *և ծնողացն, և եղբարց, և ամենայն ազգայնոցն, և գծողին։ Եւ որք մեզ յիշեն աւրհնութեամբ և սիրով, աստուած ողորմի ասելով, նոքա յիշեալ և աւրհնեալ եղիցին ի Քրիստոսէ աստուծոյ, ամէն։*

*ՋՁԸ. (1339), մեհեկանի ի ԻԵ. (25)։*





## 399.

### ՃԱՇՈՑ

Գողթն, Ազգ. հնդ. գիրք XII, 1905 թ., էջ 165

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Ագուլեց վանք

Գրված է Սարգիս կրոնաւորի ձեռքով ՉՂԹ. (1340) թուին ի վանս Ագուլեց, ի հայրապետութեան Ստեփաննոսի,* որ և ազատեաց զազգս քահանայից ի հարկէ հալածչեաց, և նոյն ինքն տեսանէ զազատութիւն իւր ի թագաւորութեան, զոր ոչ գոյ, այլ բարձեալ է թագաւորութիւն, քանզի իշխանք են խռովարարք և տատանեալք, ի վերայ միմեանց ազմկեալք։ Զոր ոչ կարէ բերան պատմել, զոր յայսմ ամի տեսին աչք մեր զաղէտ տարակուսանաց ի հեծելեաց, զորս երեսուն հազար մարգագէմ գազանաց ի վերայ երկրիս մերում։ Եւ ո՞վ կարէ պատմել զանաւրէնութիւնս նոցա, զոր արարին և գործեցին. քանզի բազում գաւառս գ[ե]րեցին և աւերելով կործանեցին, և զինչս արգիւնաց զամենայնն յափշտակեցին, և զամենեսեան զքրիստոնեայք կողոպուտ արարին, մերկ և բոկ, և ոչ թողին և ոչ մի ինչ ի վերայ անձանց քրիստոնէից, այլ զանասունս տաւարաց ջոկս ջոկս առեալ տարան՝ ոչխարաց և զեզանց, զկովուց և զցլուց, զիշուց և զերիվարաց, և զհանդերձս ի յանձնէ մերկացուցին և մերկս արարին ի տեսիլս խայտառակաց. քանզի ո՞ր աչք բաւէ տեսանել զաղիողորմ տարակուսանաց, և կամ ո՞ր անձն բաւէր տեսանել և տանել այնմ չարչարանաց. որ յերեկ տան տանուտէր և ամենայն իրաւք լի և այսաւր բեկեալ սրտիւ և տրտմեալ և մերկ, ի վերայ մոխրոյ նստեալ։ Քանզի այնպէս լի էր երկիրս ամենայն բարութեամբ և յանկարծակի այնպէս արարին, որ շունք ի սովոյ սատակէին, քանզի զխորս ամբարաց հացից հանէին. և այնպէս բարկութեամբ և սրտմտութեամբ ի վերայ բոլոր երկրիս արձակեցան, որ և հարիւր անձն սրով խողխողեալ նահատակեցան, որ և ծաղկողի սորա մայրն նետով խողխողեալ փոխեցաւ ի Քրիստոս։

* Մինչև այստեղ հրատարակիչ Ե. Լալայանի խոսքերն են, բուն հիշատակարանից մեջ բերված հատվածը սկսվում է «որ և ..» բառերով։

## 400.

## ԾԱՌԸՆՏԻՐ

Վենետ. 207 Սարգս. Ցուց. Բ. էջ 173—175

Գրիչ՝ Գրիգորիս
վայր՝ Եզընկայ

277ա ...Արդ, աւարտեցաւ հոգէպատում տառս ի շրջագայութեան ժամանակիս՝ յայս ամի, յորում էր յելանելոյն Ադամայ ի փառակենցաղ դրախտէն ամք ԶՌԷՃԿԶ. (6766), եւ ծնընդենէ կենարարին մերոյ ամք ՌԳՃԽԳ. (1343), եւ ի թուականութեանս հայկազեան տումարիս Չ[ՁԹ]. (1340), յամսեանն Հռովմայեցւոց սեպտեմբերի Ա. աւրն. յԵկեղեաց գաւառս, ի մայրաքաղաքս աստուածապահ Եզընկայ։ Ընդ հովանեաւ սուրբ երկնանման տաճարիս սուրբ Կաթողիկէի, և սուրբ Առաքելոցն, և սրբոյն Սարգսի, և սուրբ Աստուածածնի։ Ձեռամբ դեռաբոյս և անիմաստ քահանայիս Գրիգորիսի, որ զքահանայութեան անունն միայն ունիմ և զգործն ոչ, զոր տէր Յիսուս անտես արասցէ զյանցանս ծառայի իւրոյ, ամէն։

Արդ, ես՝ անարժանս Ծատուրս, ստացայ զսայ ի վայելումն և ի մխիթարութիւն անձին իմոյ, և ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեացն և ննջեցելոցն։ Արդ, ով սուրբ մանկունք նոր Սիոնի...յիշեսջիք ի մեղաց թողութիւն զԱստուածատուր մեղաւք մեռեալ ոգիս, յիշեսջիք և զծնաւղսն իմ...։

Յիշեսջիք և ի սրբամաքուր աղաւթս ձեր զիս՝ զանպիտան զհողս հաւասար, զանարժան և զանիմաստ, զփցուն և զյետնեալ գրիչ սորա զԳրիգորիս, և զծնաւղսն իմ՝ զՄկրտիչ քահանայ և զՏալիք երիցկինն, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս...։ Եւ արդ, աղաչեմ չլինել մեղադիր սխալանաց և անարհեստութեան դրիս, զի ի գառն և ի յանհանգիստ ժամանակիս գրեցաւ, զի վասն ծովացեալ մեղաց մերոց դաւրացեալ են ազգն նետողաց ի վերա քրիստոնէից, և ի սուր սուսերի մաշեն, և յաւարի հարկանեն, և ի գերութիւն վարեն զբազում գաւառս, և բազում և անիրաւ հարկապահանջութեամբ դատեն զամենեսեան, և այլ բազում չարիս լինի ի ժամանակիս մերում, զոր ոչ է կար մի ըստ միոջէ պատմել կամ ընդ գրով արկանել։ Իսկ մեք ոչ ունելով հանգիստ, այսր անդր շրջելով և փախստական լինելով, էաք որպէս գառինս ի մէջ գայլոց, զոր տէր Յիսուս պահեսցէ ·ընդ ամրածածուկ աջոյ իւրոյ զհաւատացեալս անուան իւրոյ, ամէն։ Եւ որ ս[ր]տի կամաւ և յաւժարութեամբ արժանացնեն զմեզ միոյ տէր-ողորմայի, Քրիստոս աստուած զինքն իւր անճառ բարեացն արժանացնէ, ամեն։*

* Հրատարակիչը հիշատակարանի թվականի մասին գրում է. «Թուական աշխարհի կամ ելքեն Ադամայ ի դրախտէն, որ կը նշանակուի գրչէն սոյն յիշատակարանիս մէջ ԶՌԷՃԿԶ. (6766), կը ցուցնէ թէ ամ տեառն պարտին լինել 1342 և թուական Հայոց ՉՂԱ, ըստ ժամանակագրութեան Անդրէասայ տումարագրի, որ աշխարհի սկզբէն մինչև ծնունդն

401.

## Մ Ա Ն Ր Ո Ւ Ս Մ Ո Ւ Ն Ք

Վիեն. 183, Տաշ. Ցուց. էջ 409

Գրիչ՝ Մկրտիչ

227բ *Ցամի ՉՂԹ. երորդի (1340) Թուաբերութեանս Հայոց գրեցաւ տառըս եղանակաւոր ծախիւք եւ արդեամբք Ներսէսի քահանայի՝ որդւոյ Գրիգորէս քահանայի, եղբաւր Թորոսի՝ բանի սպասաւորի, զարդարելոյն իմաստիւք հոգւոյն, որ եւ յայսմ ամի ընկալաւ զաւազան ի մեծ րաբունւոյն՝ խոտաճարակ յԱւետիսէ։ Աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա, յիշեցէք ի Քրիստոս զՆերսէս քահանայն եւ զշնորհազարդ որդիսն իւր՝ զՂազարն, զՌստակէսն, զԳրիգորէսն, զԱնաստասն, եւ զհանգուցեալսն ի Քրիստոս՝ զՅոհաննէս կրաւնաւորն, եւ զբարեսէր մայր սոցա Թագուհին, եւ զքըւերսն,* ընդ նմին եւ զապիկար աշխատողս զՄկրտիչ երէց յիշեցէք։*

402.

## Շ Ա Ր Ա Կ Ն Ո Ց

Երեւան 1603

Գրիչ՝ Ստեփանոս

294բ *Գրեցաւ եղանակաւոր տոոս ի մարդեղութենէն Քրիստոսի աստուծոյ մերոյ ՌՅԽ[ ]. (1340*)**, ի հայրապետութեան տեառն Մխիթ[ա]րա, ի թագաւորութեան հայոց Լևոնի, ձեռամբ Ստեփանոսի, ի վայելումն կուսակրաւն կրաւնաւ | | |*

---

*Քրիստոսի կը գնէ 5420 կամ 5424 ամս...»։ Սակայն մենք հիշատակարանը դասում ենք 1340 թվականի շարքը հիմք ունենալով ձեռագրի 185ա էջի տվյալը, ուր փրկչական ՌՑԾՀԵ. (1275) թվականի դիմաց գրված է հայոց ՉԻԴ. (721) թվականը, այսինքն հայոց ու փրկչական թվականների տարբերությունը հաշված է ոչ թե 551, այլ 553 տարի։ Այս տվյալի հիման վրա հայոց թվականի վերջին երկու՝ քերված թվանշանները վերականգնում ենք՝ «ՁԹ» (80)։ Իսկ ՉՂԹ. (789) հայոց թվականը համապատասխանում է ոչ թե 1343-ին (ինչպես գրել է գրիչը) կամ 1342-ին (ինչպես նշանակում է հրատարակիչը), այլ 1340-ին։*

** Մի տող դատարկ է թողնված։*

*** Գրչի ձեռքով գրված թվականը քերված է և ավելացված այլ ձեռագրով։ ՌՅԽ. թվանշաններից հետո, աջ կողմով նկատվում է միավոր ինչ որ թվանշանի հետք, որը կարող է եղած լինել «Ե»։ Այդ դեպքում ձեռագրի գրության ժամանակը կլինի 1345 թ.։*

ՉՂ 1341

## 403.

### *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Երևան 2653 (տես նաև 1566 Թ․)*

*Գրիչ՝* Նատեր
*վայր՝* Տայոց գաւառ, գիւղ Վարդցշէն

226ա *Այս աւետարեր հրամանս փրկչին... յանդ ելեալ կատարեցաւ ձեռամբ անիմաստ և յետին գրչի* Նատեր *մեղապարտի, ի Թվիս Հայոց ՉՂ. (1341), յապրիլ Բ.* (2), *ի գաւառիս* Տայոց, *ի գեղս, որ կոչի* Վ,արդնշէն։

*Այլ և Բ. գլուխն առաջինք յառաջ գրեալ էր ումեմն* Ստեփանոս *իրիցու, որ էր ի* Կանու *քաղաքէ, և ոչ էր ժամանել ի կատարումն սորա, ի ձեռն հասարակաղիր հայրենական հնչմանն հողմոյն մահու, և փոխեալ էր յաստեացս առ Քրիստոս. և զկնի ամաց իբրև*, Թոռն նորա* Գէորգ *սարկաւագ ետ զսա աւարտել մերոյ նուաստութեանս, և մեք կարողութեամբն աստուծոյ յանդ հասուցաք։ Եւ էաք եկք յանուրկ ղզեկէն* Բաբերդոյ *գաւառէն, բնակեալ ի գեղն, որ կոչի* Կան,

226բ *սկսաք ‖ անդ ի գրել մասն ինչ։ Եւ եղև փախուստ ամենայն գաւառին, նա և քաղաքին միահամուռ՝ քրիստոնէից և իսմայելաց[ոց] և ամենայն բնակչացն ի ձեռաց Բ. իշխանաց, որոց ոչ է պարտ գրել զանուն նոցա։ Եւ ամենայն ոք փախաւ, և չուեցին յերկիր ատար. և եղև ի լերինն* Վանակտ *հողմ ձիւնաբեր, և հեղձան անդ սակաւ մարդ և անասուն յոյժ, և յայլ լերին, որ կոչի* Տեռետնց՝ *բազում մարդ և անասուն յոլով, զոր աղէտ խղճոյ ո՛ կարէ գրել. և յաւուր քառասներորդ պահոց, տաւնի Քառասնիցն։ Եւ այս ամենայն եղև վասն մեղաց և բազում սխալանաց մարդկան։*

*Արդ, որք հանդիպիք այսմ լուսաւոր աստուածախաւսութեանս յիշեցէք ի տէր աղաւթիւք ձերովք և առաջի զենլոյն Քրիստոսի Թողութիւն խնդրեցէք առաջին գրողին՝* Ստեփաննոս *քահանային, որ իւրով ձեռամբն գրեալ էր և ոսկով զարդարեալ՝ յիշատակ իւր, և բարեխաւս առ Քրիստոս, և զաւակ ի Սիոն, և զանձ յերկինս, և ի ժառանգութիւն իւրոց զաւակաց և ազգականաց։ Ցիշեցէք ի տէր և* զԳէորգ *սարկաւագ, որ է ժառանգ նորա, որդի որդւոյ նորա, որ նորոգել ետ, և ի կատարումն յանդել և հաստատել զմեծանձնութիւն հաւուցն իւր, յիշեցէք և զմայրն նորա, որ կամակից եղև և աւժն[դ]ակ լրման սորա, և զեղբայր մօր նորա՝* զԱւագ *դալալն, նաև զմեզ՝ զծրողքս՝ ամենայն եղբարբ և ազգաւ, և որք յիշէք՝ յիշիք ի Քրիստոսէ։*

---

* *Տարեթվի լրացման համար տեղ է թողնված։*

## 404.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Վեննա. 8. Ցուց. Ա. էջ 93—95 (տես նաև 1355 թ.)*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Սուլտանիայ

ա

2ա *Զստացող աստուածագումար տառիս՝ զամենբրջանիկ և զճոխացեալս ամենայն իմաստութեամբ՝ զերանաշնորհ քահանայն զԳրիգոր, ծնողօք, զարմօք և զաւակօք աղաչեմ յիշել ի տէր...*

*Նաև զնկարակերտող սորա՝ զԱւագ դպիր, ծնողօք հանդերձ յիշեցէք ի Քրիստոս, և զայլ աշխատողսն։ Ընդ նոսին և զփցուն զրչիկս զԿարապետ յիշատակի արժանի արարէք։*

բ

448ա *...Աստուածային ճոխութեանս անձկացեալ փափագմամբ ...վեհիմաստ քահանայն աստուծոյ Գրիգոր, որ և ինքն իսկ ունէր զշնորհս վարդապետութեան՝ զօրեղ բանիւ լեզուաց և վկայութեամբ սուրբ գրոց, և լիապէս զարդարեալ առաքինութեամբ և իմաստութեամբ զմասունս հոգւոյ իւրոյ և մարմնոյ, և բազում աշխատութեամբ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ իւր և ծնողաց իւրոց և ի ժառանգութիւն զաւակի իւրոյ՝ պատուական քահանային* Եփրեմի, *ի թվականութեանն Հայոց ՉՂ. (1341), ի յաշխարհակալութեան փոքր* Շեխ Հասանի, *և հիւպատոսութեանն և սպարապետութեանն Հայոց* Բիւրքելին, *ի քաղաքն* Սուլտանիայ, *ի քորեպիսկոպոսութեանն օրտուի տէր* Սարգսի, *և եպիսկոպոսութեան տէր* Գրիգորի....։

*Նուիրող՝* Եփրեմ

գ

*Եւ արդ, ես՝ Նուաստ* Եփրեմ *քահանայ, որ ունէի զգիրքս աստւածաշունչ ի հօրէ իմմէ* Գրիգոր *քահանայէ, նուիրեցի և ետու զսա ուխտին* Վարագայ *սուրբ Նշանին, յիշատակ ինձ և ծնողաց իմոց։*

## 405.

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

*Երևան 8030*

*Գրիչ՝* Տէրտէր Երևանցի
*վայր՝* Ազախ քաղաք

327բ *...Արդ, գրեցաւ ճառընդիրս ի սուրբ և ընտիր աւրինակէ ձեռ[ամբ] ամենայմեղ սուտանուն քահանայի* Տէրտիրի, *ի խնդրոյ ինձ,*

և ծնողաց իմոց՝ Սարգիս քահանայի, և մաւրն իմ՝ Գոհար Մելիքին, և ամենայն ազգականաց իմոց յիշատակ, որ կամաւքն աստուծոյ յաւժարացա գրել փափաքանաւք, ի թուականութեանս Հայոց Չ. ու Դ. (1341), ի թագաւորութեանն Հայոց Լևոնի՝ որդոյ Աւշընտրի և ի կաթողիկ[ոս]ութեանն տէր Մխիթարայ։ Գրեցաւ գիրքս յաշխարհիս ամենաւրհնեալ խան Աւզպէկին և բարեհամբաւ որդոյ իւրոյ Դինիպէկին, ի քաղաքս յԱզախս, առ դրան սուրբ Գրիգորիս Լուսաւորչին, ի յայ-
328ա պիսկոպոսութեանն տէր Ստեփաննոսի՝ որդոյ Գրիգոր քահանայի Սուգտացոյ, և յաւագերիցութեանն տէր Սարգսի՝ որդոյ Մանու || իկ քահանայի։

Ես՝ Տիրացուս անձ [ա]նարժան,
Ծոյլ քահանայ թշուառական,
Սատանայի ճորտ բանական,
Զծուլութիւնն արի ինձ բան,
Զագահութիւնն խիստ անխոտան.
Սագմոս չա[ս]ցի առանձնական
Ու ոչ հետ ընկերացն միաբան.
Հազար եղուկ անձինս ես տամ,
Որ ի դժոխքն կու գնամ։
Զոչ ով ունիմ անդ աւգնական,
Քաւեալ զմայրն փրկչական,
Որ աղաչէ զաստուածն բան,
Թափէ ի հրոյն անշիջական,
Խառնէ ի հաւաքն սրբազան
Այս մոլորեալս և անպիտան։
Ցերկրէն եկի այն Հայաստան,
Ի քաղաքէն այն պատուական,
Որ իր անունն է Երևան
Ու Վիրապին ու Էջմիածնին է հարևան,
Ի լեռն ի մաւտ Սարարադեան,
Անդր, որ տապանն է մեծ Նոյան,*
328բ Ու նշխարն ի նեսն է մեր նախ || նեան։
Ի ծովս անցայ այս անսահման,
Ի քաղաքն եկայ՝ ի ֆռանկ Կաֆան,
ՅԱզախս եկի այս աննման,
Գիրքս գրեցի զայս՝ դՎարդան։
Որք որ ուսման ելնիք արժան,
Ու պատարագէք ի սուրբ սեղան,
Ու զման վերցնէք զքրիստոսական,
Ու զպրաւսխումէն զոչէք միաբան,
ԶՏէրտէր գրիչս այս անպիտան
Դուք յիշեցէք, թող չեմ արժան։

---

* Բնագրում «Նոյենն»։

## 406.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Օքսֆորդ,* Ms. Arm. D. 4 *Տիրայր 52 թղթ. 120, էջ 801—806*
*(տես նաև 1335 թ.)*

*Հետ. ստացող՝* Դաւիթ երեց

331ա *Ես՝* Դաւիթ *երէցս, ի գեղջէ՝* Վարդենեցս, *որ վերստին գնեցի զաւետարանս ի* Ստեփանոս *իրիցու յիմ հալալ արդեանց, ի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց և զաւակաց իմոց, և տուի զին | | | * սպ[իտակ]։ Ո՛վ բարեմիտ ընթերցաւղ, աղաչեմ զձեզ յիշեցէք սրբափայլ աղաւթս ձեր զիս՝ զ*Դաւիթ *քահանայս և զերիցակինն իմ զ*Մանանայն, *և մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ...։*

*Գրեցաւ գիրս ի թուականիս Հայոց ՉՂ. (1341), ի մայիս ամսոյ ԺԵ. (15), ի փառս Քրիստոսի աստուծոյ, յուսոյն մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Դարձեալ աղաչեմ յիշեցէք յաղաւթս ձեր զ*Մարտիրոս *միայնակեցն և զծնաւղս իւր, աղաչեմ։*

## 407.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան, Ներպարվ. խնդ. 69/244 (տես նաև 1332 թ.)*

344ա *Զայս աւետա[րա]նս ձեզ** եմ ի գնել, Շ. (500) սպ[իտակ]։ Ես* Տրգիրն *վկա եմ՝* Ասպրգործի *որդ[իս], ես* Խտպիս Պխդրաւս *(*) վկայ եմ, ես* Մահմատս վկան *(*) վկայ եմ, ես* Տիրապետ՝ *Հրպետի որդիս վկա եմ, ես* Հրենիսն Թոգորշախ[ի] *որդիս վկա եմ, ես* Սուլտանշին Լուսկայ *որդիս վկայ եմ, թվ[ա]կան ՉՂ. (1341), մարգաց։*

## 408.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վիեն. 434. Տաշ. Ցուց. էջ 885 (տես նաև 1319, 1600 և 1644 թ.թ.)*

*Ստացող՝* Նասխաթուն
*Վայր՝* Ազախ քաղաք

443բ *Ի թվին Հայոց ՉՂ. (1341), ես՝* Աֆենտի *դուստր* Նասխաթունս, *գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց Ռ. սոմ. եւ տվի ի սուրբ Գր[իգոր] յ*Ազախ *քաղաք՝ եկեղեցին տէր* Մանուէլի, *յիշատակ հոգոյ իմոյ եւ հանգուցեալ որդոյ իմոյ* Սիրպէկի, *զոր տէր աստուած յարութիւն պարգեւեսցէ նմա։*

* *Բանակի տեղը ծակած է, սակայն մի թվանշան է միայն եղել։*
** *Իմա՝ «եսս»։*

## 409.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Փիրղ. 6273, էջ 151 (Կարինի եկեղեցի)*

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Թավրէժ

*...Ընդ նմին յիշեսջիք զփծուն և զանարհեստ գրիչս զ*Սարգիս *երէցս... Արդ, աւարտեցաւ լուսապարփակ և աստուածային սուրբ մատեանս այս ի թուականութեան Հայոց տումարի ՉՂԱ. (1342), ի թագաւորութեան նետողական ազգին* Սուլայիման Բահադուր *խանին և ի մեծ նոյինին* Սեխ Հասանին՝ *որդւոյ* Թամուրթաշին, *զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ զինքն, ամէն. և ի թագաւորութեան Հայոց աստուածասիրին և բարեպաշտին*, և ի հայրապետութեան տեառն* Մխիթարայ, *և ի յառաջնորդութեան աստուածապահ նահանգիս* Թավրիժու *քաղաքիս տէր* Տիրացուի *եպիսկոպոսի։ Արդ, մեք՝ ամենամեղ անձինք և տկար ողի* Հունար *խաթունս և* Սիոն, *ստացօղ[ք] սուրբ աւետարանիս, նուէր ընծայեցաք զսուրբ աւետարանս սուրբ Սարգսի՝* Թավրիժոյ *եկեղեցւոյ։*

## 410.

### ՏՈՄԱՐԱԳԻՏԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1973*

Գրիչ՝ Գրիգորիս
վայր՝ Եզնկայ

ա

327բ *...Գրեցաւ դիրքս այս, որ է տաւմար, ի Հայոց թուականիս ՉՂԱ. (1342), ի դեկտեմբերի Դ. (4), ձեռամբ մեղուցեալ և անարժան հոգւո հաւասար ծառայի՝* Գրիգորիսի *սուտանուն քահանայի, անուամբ միայն և ոչ գործով, ընդ հովանեաւ սուրբ և երկնանման տաճարիս սուրբ Կաթողիկէի և այլ բազմութեան սրբոցս, որ կան ի սմա հաւաքեալ, ի քաղաքիս* Եզնկայի, *ի խնդրոյ սրբամաքուր և առաքինազարդ, շնորհաշուք քահանային* Աբրահամու։ *Արդ, աղաչեմ զամենեսեան դհանդիպաւղսդ յիշել ի սուրբ յաղաւթս ձեր զստացաւղ սորա զ*Աբրահամ *քահանայ և զծնաւղսն իւր* | | |

---

* *Թագավորի անունը գրված չի եղել, ըստ Փիրղալամյանի «Թերևս յետ մահուան Լևոնի դեռ չէր նստեալ Կոստանդին Գ.»։*

Հետ. ստացող Յովանէս

Բ

1ա Ես՝ Յովանէս երէցս սուրբ Ծհնայ, որ տվի զաւումա[ր] գիրքս յիշատակ ի յԷրանին վանքն, ի դուռն սուրբ Գէորգայ և սուրբ Աստուածածնին յիշատակ իմ հոգւոյս և իմ ծնողացն՝ Կարապետին և Քարամ խաթունին, և իմ հաւրեղբաւրն՝ Առաքել երիցուն, և Ներսէսին, և տէր Պապուն, և այլ ամենայն մերձաւորաց մերոց. ոչ ով չունի իշխանութիւն, ոչ ի զաւակաց, և ոչ յազգականաց, և ոչ յաւտարաց, որ զայս սուրբ գիրքս հանէ, որ թէ յանդգնի և հանէ ծախելով կամ գրաւելով, ի յահեղ դատաստանին Քրիստոսի պարտաւոր լինի սուրբ Գէորգայ։ Աստուած աւրհնէ զխնամաւղ-պահաւղն, ով որ սէր ունենայ ուսանելով կամ աւրինակելով։ Թող Ներսէս արեգին կամաւքն լինի, որ զխընամքն ի վերայ կալնու։

## 411.

## ՃԱՌԸՆՏԻՐ

Մատենադարան Հայկ. Թարգմ. էջ 730

Վայր՝ Եզնկայ

...[Գրեցաւ] ի թուականութեան Հայկազեան տումարիս ՉՂԱ. (1342)... յԵկեղեաց գաւառս, ի մայրաքաղաքս աստուածապահ Եզնկայ, ընդ հովանեաւ սուրբ ե երկնանման տաճարիս սուրբ Կաթուղիկէի, ե սուրբ Առաքելոցն, ե սրբոյն Սարգսի, ե սուրբ Աստուածածնին։

## 412.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԳՐՈՑ ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑԻՈՅ

Երևան 2102

Ստացողք՝ Կիրակոս և Յովհաննէս

154ա Զստացաւղ աստուածային մատենիս, զերանաշնորհ եռամեծ բուրունապետն Կիրակոս և զնուաստ ծառայ նորին՝ զՅովհաննէս պիտականուն վարդապետ՝ ստացաւղք սուրբ տառիս Փիլոնի Մեծի, յիշեցէք ի տէր Յիսուս Քրիստոս, և հայցեցէք թողութիւն մեղաց մեղ և ծնողաց մերոց, և յիշողքդ յիշեալ լիջիք յողորմութիւն բարերար փրկչին, որում փառք յաւիտեանս, ամէն։ Գրեցաւ ի թվ. ՉՂԱ. 1342), ի մարտի յէ. (7), սահմի ի ԺԲ. (12)։

## 413.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7642 (տես նաև 1657 թ.)*

Գրիչ՝ Սիմէոն

ա

387ա *Ի թու. Հայոց ՉՂԱ. (1342) յանկ ելեալ կատարեցաւ սուրբ աւետարանս տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի շարադրեալ ի չորից ամոլաց, ի ստոյգ և ընտիր աւրինակէ կոչեցեալ Մուրղանեցոյ, զոր ստացաւ ի հալալ արդեանց մեծաւ փափաքանաւք <ի> սրբասնեալ քահանայս* Գէորգ, *յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց և աշխատողացն ի սմա, եթէ ոք յանդգնի | | |ով կամ հատանելով ինչ ի սմանէ, տարամերժի ի կենացն յաւիտենից և ջնջեսցի ի դպրութենէն...:*

բ

386բ *Զմեղաւք լցեալ գրիչս զ*Սիմէոն երեց *և զծնաւղսն իմ յիշել աղաչեմ:*





## 414.

### ՇԱՐԱԿՆՈՑ

Վիեն. 173, Տաշ. Ցուց. էջ 489

Գրիչ՝ Ներսէս

ա

231ա ...Գրեցաւ շարակնոցս ձեռամբ մեղաւոր եւ սուտանուն սարկաւագ Ներսէսի, ի լաւ եւ յընտիր աւրինակէ, որ կոչի Խըլկցի, ընդ հովանեաւ սրբոյ Յակոբայ, Կապոսի։ Ի դառն ժամանակի էաք, որ երեկ Սուլայիման ղանն ու գնաց ի Թաթարին վերայ՝ ի Սեբաստիայ, նայ աստուծով յաղթեց Թաթարին ու փախստեայ արար զնոսայ. ի թվ. ՉՂԲ. (1343)։ Արդ, աղաչեմ զձեզ եղբարք, անմեղադիր լերուք...։

Յիշեսցիք զհեզահոգի վարդապետն իմ զՅովաննէս փիլիսոփայն եւ զկրաւնաւոր եղբայր իւր զՄովսէս ծաղկողն, որ բազում աշխատեցան ի հետ ինձ եւ խնամս տարան ի վերայ իմ...։

ստացող՝ Պաւղոս

բ

231բ Զստացաւղ սորին զՊաւղոս սարկաւագ և զծնաւղս իւր, զպատուեալ ծերունին զԹագուոր մանկտաւագն, եւ զմայր իւր զփոխեցեալն առ Քրիստոս՝ զՄէն տիկինն, եւ զեղբարսն իւր՝ զՍիմէոն եւ զայլսն յիշեսջիք, եւ զՀարպետն, եւ նոցա մեղաց թողութիւն խնդրելով։ Տէր աստուած վայել[ել] տացէ զսա Պաւղոսին ընդ երկայն աւուրս, ամէն։

## 415.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5505 (տես նաև՝ 1321 և 1504 թ.թ.)

Վայր՝ Խլա՞թ

222բ Ի թվ. ՉՂԲ. (1343), որ Ղարայ Հասան զԽլաթ թախթանեաց, ու աւետարանս պարոն Զարուխն պահել էր. աղաչեմ զձեզ յիշել զպարոն Զարուխն ի մաքրափայլ յաղաւթս ձեր, և զկենակիցն իւր զՍնոռեվորն, և զորդին իւր զէվատն, որք յիշէք զոսքայ և դուք յիշել լիցիք ի բարեց տվողէն աստուծոյ, ամէն։

## 416.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ԲԱՆԻՑ ԵՒԱԳՐԵԱՑ

Երևան 1981

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Գլաձո՞ր

ա

91ա …Երջանիկ և զբազմաշնորհ գերիցս ե[րանեալ րաբու]նապետն Դ[ավի]թ* յիշեցէք ի Քրիստոս, և զիս՝ զՅով[աննէս] նուաստ | | |**

բ

131բ Ո՜վ հայր հոգևոր և տէր մարմնաւոր, ընկա՛լ զսակաւ ծրեալս ի քո մեղապարտ աշակերտէս Յովաննիսի քո յառանձինն յաղաւթս, և աստուած զձեզ յիշէ, և նմա] փառք։

## 417.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

Բրիտ. Թնգ. 74(Add. 19,729). Հանհր. Ցուց. էջ 189

Գրիչ՝ Շմաւոն

ա

189բ …Եւ ընդ նոսին պսակաւորեալ…բերկրեսցի… ստացող մատենիս՝ գործնական և արդիւնական վարդապետ Դաւիթ***, իւրովքն ծնողաւք և հարազատաւք, և զմեղուցեալս աստուծոյ զՇմաւոն գրիչ, այլև զՎարդան, զՄխիթար, զՍարգիս, վասն սիրոյն Քրիստոսի յիշեցէք առ տերամբ։

բ

63ա Զարժանապատիւ րաբուն Դաւիթ և զծերողս Շմաւոն, այլ և զՎարդան, և զՄխիթար, զՍարգիս, վասն աստուծոյ յիշեցէք ի Քրիստոս։

---

* Ամենայն հավանականությամբ Գլաձորի համալսարանի նշանավոր վարդապետ Դավիթն է, որը դեռևս կենդանի էր 1340—43 թ.թ. (տե՛ս «Խաղբակեանք», էջ 208)։ Ուստի սույն և հաջորդ հիշատակարանների գրության ժամանակագրական վերջին եզրը մերձավորապես կարելի է համարել 1343 թվականը։

** Հիշատակագրությունը գրված է կարմիր թանաքով, մի քանի բառեր մաշված են և անընթեռնելի։

*** Տես նախավերջին ծանոթությունը։

## 418.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետ. 181, Սարգս. Ցուց. Ա. էջ 755*

Գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Սուրխաթ

327ա *Շնորհիւն աստուծոյ ամենակալի սկսայ և ողորմութեամբ խնամոց նորա կատարեցի զսուրբ աւետարանս յաւրինակէ սրբոյն Սահակայ Հայոց թարգմանչի և երրորդ լուսաւորչի Հայաստանեայցս, ի հայ թուականիս ՉՂԲ. (1343), յաշխարհ Ղրիմի, ի մայրաքաղաքս* Սուրխաթ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան Հայոց տեառն* Մխիթարեա, *և ի թագաւորութեան* բարեշնորհի* Սարգսի, *ձեռամբ իմով՝* Սիմէոնի՝ *մեղուցեալ յետին և անարժան երիցու և ապիրատ գրչի, [ի] խնդրոյ աստուածարեալ սրբասէր կրօնաւորի* Աստուածատուրի, *զի ստացեալ զստացուածս աստուածային կենդանի յարդար ընչից իւրոյ, յիշատակ բարեաց ինքեան և ծնաւղաց իւրոց...։*

## 419.

### ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 4709*

Գրիչ՝ Յովանէս

ա

431բ *Քրիստոս աստուած, ողորմեա ամենայն հաւատացելոց, ես առաւել ստացողի սուրբ գրոցս* Էլմէլէֆին, *և ծնողացն իւրոց, և ինձ՝ մեղաւոր գրողիս* Յովանեսիս, *և իմ ծնողացն, և քեզ փառք յաւիտեանս։*

Գրիչ՝ Դէոսկորոս

բ

413ա *Քրիստոս աստուած ողորմած, ողորմեա ամենայն հաւատացելոց քոց, ես առաւել ստացաւղ սուրբ գրոցս* Էլմէլէֆին, *և ծնողաց իւրոց, և ինձ՝ մեղաւոր գրողիս* Դէոսկորոս *սուտանուն քահանայիս, և իմ ծնողացն, և կարդացողաց և լսողացն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։***

* Պետք է լինի՝ «յառաջնորդութեան»։

** Նման հիշատակագրություններ պահպանվել են բոլոր գլուխներից հետո։

Հետ. ստացող՝ Յարթէն

Գ

612ա Ի թուականութիւնս Հայոց ՉՂԲ. (1343), ի դառն և ի վըշտալից ժամանակիս, ի հայրապետութեանն տէր Ստեփաննոսին [գրեցաւ մատեանս]...*

420.

ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 1523 (տես նաև 1668 Թ.)

Գրիչ՝ Յովանէս

182ա Քրիստոս աստուած, քո սուրբ և հրաշալի յարութեանդ բարեխաւսութեան յարո] զամենայն մեղաւք մեռեալ հոգի հաւատացելոց քրիստոնէից, եւ առաւել զհոգի Էլմէլէքին՝ ստացողի սուրբ գրոցս, և զծնաւղացն իւրոց, և զամենայն արեան մերձաւորաց, և զիս՝ զմեղաւոր գրչիս զՅովանէսի, և ըիմ ծնողացն, և զազգականացն, և զկարդացողաց, և զլսողաց, և քեզ փառք յաւիտ[ենսն]։**

421.

ՔԱՀԱՆԱՅԱԹԱՂ

Երևան 7784

183բ ...Շնորհիւ տեառն շարադրեցի զհիւսուածս հոգեզան [խնդ*]րուածութեանս աստուածազարդ կտակիս ի թելադրութենէ հոգոյն սրբոյ, զյոքնակից իմաստից զի[ւ]տըս յաւրհնութիւնաբեր ցուցակէս սակաւ բանիւք բովանդակեալ՝ զնահապետացն [աս]եմ, և որ ի նոցանէ մարգարէական պարք զե[ւոր]եա[լք] ի Քրիստոս, զառաքելոցն, զսրբոց հարցըն՝ նոցին հետևողաց, ուղղափառ քարոզչացն, վսեմաբան վարդապետաց, զի արքեալ ի հոգւոյն սրբոյ նախնիքն մեր ե յարմարեալ աստուածային գանձարանս հասուցին առ մեզ, որով և սովա[ւ] զամենայն դասս քահանայից առ Քրիստոս յուղարկե[աց] ազգս Հայաստանեաց և ծնունդս Լուսաւորչին։

Արդ, գրեցաւ քահանայաթաղս ի | | | աստաւք լի և անթերի [յ]երկոտասան աւու[րս], ի թուականութեանս Հայկազեան տումարի ի ՉՂԲ. (1343), յամսեանն մայիս ԺԳ (13)։ Արդ...***

* Ձեռագրի գրության տարեթվի մասին սույն հիշատակագրությունը թողել է ձեռագրի հետագա ստացողներից «մեղաւոր Յարթէն»-ը, 1795 թվին։

** Գրիչն ու ստացողը՝ Հովաննես և Էլմելեք, նույնանում են նախորդ հիշատակարանի Ա. հիշատակագրության գրչի ու ստացողի հետ։ Այս տվյալի հիման վրա սույն հիշատակարանը տեղադրում ենք նախորդին կից՝ 1343-ի թվաշարքում։

*** Հիշատակարանի շարունակությունը չի պահպանվել։ 185 թերթի աջ եզրը ծածկված է, որոշ բառեր լրիվ չեն կարդացվում, ուղղագիծ փակագծերում տալիս ենք հավանական ընթերցումներ։

## 422.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ ՊԵՏՐՈՍԻ ԱՐԱԳՈՆԱՑԻՈՅ

Վիեն. 293, Տաշ. Ցուց. էջ 720

Թարգմանիչ՝ Յակոբ Քռնեցի
վայր՝ Քռնայ

227ա ...Արդ, ի յամի ծննդեանն փրկչին մերո հազարերորդի երեքհարիւրերորդի քառասներորդի չորրորդի (1344), եւ ի թուականութեանն հայոց՝ եւթնհարիւրերորդի [ի]նսներորդի երկրորդի (1343) թարգմանեցաւ վերլուծութիւն ի վերայ շարադրութեանցն Պորփիւրիոսի, եւ տասն Ստորոգութեանցն Արիստոտելի, Վեցից Սկզբանցըն, եւ Պէրի արմէնիասին, ի յատին բարբառոյ ի հայս՝ հաւաքեալ ձեռամբ ֆրա Պետրոսի՝ ազգաւ Լատին եւ աշխարհաւ Արագոնացի, ի կարգէ քարոզողաց սրբոյն Դոմինիկոսի, որոյ թարգման էր ֆրա Յակոբոս ազգաւ Հայ, և նա ի կարգէն Քարոզողաց սրբոյն Դոմինիկոսի, ի վերին վանս Քռնո, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, որոյ առաջնորդ եւ հոգաբարձու էր Յոհան վարդապետն, որ մականուն կոչի Քռնեցի, յորոյ անունն շինեցին զսուրբ ուխտս աստուածասէր եւ բարեպաշտ. պարոն Գորգն եւ ամուսինն իւր տիկին Ելթին. եւ սոքա երեքեան՝ Յոհան վարդապետն եւ պարոն Գորգն եւ տիկին Ելթիկն, ինքնայօժար կամօք նուիրեցին զվանքս կարգին քարոզողաց սրբոյն Դոմինիկոսի տուրք յաւիտենական։ Արդ. վերոասացեալ վարդապետն Յոհան եղեւ պատճառ բազում բարութեան, զի ժողովեաց՝ աստ վարդապետք Լատինացոց եւ ի Հայոց, տածելով զամենեսեան ըստ հոգո և ըստ մարմնո, եւ թարքմանեաց եւ թորքմանէ գիրս բազումս օգեշահս եւ լուսաւորիչս...։

Արդ, որ ի կիր առնոյք զօգէշահ գիրքս զայս, զողորմութիւն խնդրեցէք յաստուծոյ վերոասացեալ աշխատողացս եւ նոցին երախտաւորացն, եւ աղաչեմ զի որք օրինակէք զգիրքո՝ զսակաւ յիշատակարանս գրեցէք, եւ դուք գրեալ լիջիք ի գիրն կենաց, ամէն։**

* Օգտագործել ենք նաև հիշատակարանի Երևանի № 1646 ձեռագրի մեջ պահպանված ընթերցվածները։



ՉՂԳ 1344

## 423.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7637 (տես. Նաև 1583 թ.)*

Գրիչ՝ Նատէր

209ա *Ց[ունի]ս ամսոյ տասն և հնգի*
*Ո| | | ի կէտ հասի**
*Հ| | | , ինձ ողբալի*
*Ա| | | գուգոց կսկծալի,*
*Նուաստ* **Նատէրս** *ողորմելի,*
*Է ինձ եղուկ յայս կենցաղի.*
*Սուգ ժամանեաց ողորմ ադի*
*Որով ողբոց եմ արժանի։*
*Րամեալ ժողովք այս Նահանգի*
*Դասք լուսերամ պաշտաւնէի,*
*Եկէք տեսէք արտասուալի*
*Այս թշուառիս, որ նուաղի.*
*Կամ և հառչեմ ի խոր սրտի,*
*Ինձ մխիթար խնդրեմ բարի,*
*Մաղթանք առ տէրն մեր բարի,*
*Վասն բարոյն, որ դուրկ ելի՝*
*Այս* **Յովանէսն** *էր իմ որդի*
*Ցաւուրս հասեալ քսան ամի,*
*Էր ամենայն շնորհիւ ի լի*
*Ջարթ և պարծանք մերոյ սեռի,*
*Րասգուն մտաւք և հոգելի,*
*Կարդացողաց էր ցանկալի,*
*Ունէր ճաշակ եղանակի*
*Ղորդ ի յարհեստ երաժշտի։*
*Արդ, գգրչին գովասանի*
*Ծուցմանն ի գիրս դտանի,*

---

** Սույն հիշատակարանը գրված է գրչի որդու մահվան ծանր տպավորության ներքո, և, չնայած թվականին վերաբերվող երկրորդ տողը եղծված է, հնարավոր է հաստատապես որոշել գրության ժամանակը՝ 1347 թ. ընդօրինակած ավետարանում (տես), Նատեր գրիչն իր Հովաննես որդու մասին գրում է՝ «Վախճանեալ է Գ. (3) ամաւ յառաջ», ուստի՝ մահը, ինչպես և սույն հիշատակարանի գրությունը տեղի է ունեցել 1344 թվականին։*

*Սարաս յաւուրս ոչ ոք գտուի*
*Ի հոյլս արանց գրչկանի։*
*Քանի գովեմ բան չհասնի.*
*Էին շնորհիւն էր ծաղկալի,*
*Նա ամենայն գեղեցկալի,*
*Անձն և պատկերն ցանկալի։*
*Ցիմաստն մարդ սակաւ հասնի,*
*Վարքն գործաւքն գովելի։*
*Աւաղ հազար բերան ի լի*
*Ցայսմ ժամու, որ ես հասի,**
*Զունիմ ճարակ ապաւինի,*
*Այլ ղ՚ոգին սուրբ թէ ինձ հասնի,*
*Խաւարելոյս թէ յոյս ծագի,*
*Մխիթարեկիս թէ ույժ շնորհի,*
*Նմա դիւրին է թէ կամի.*
*Թէ ձեր աղաւթք աւժնդակի,*
*Քրիստոս գթով մեզ ողորմի,*
*Առ իմ ողբեակն յուսով տանի։*

**424.**

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 7048*

*Գրիչ՝* Գրիգոր Սուքիասանց
*վայր՝* Սուրխաթ

212r *Շնորհիւն աստուծոյ ամենակալի սկսայ և ողորմութեամբ խնամոց Նորա կատարեցի զսուրբ և ցանկալի աւետարանս բազում ջանիւ և մեծաւ աշխատութեամբ, յօրինակէ սրբոյն Սահակայ հայոց թարգմանչի և երկրորդ լուսաւորչի Հայաստանեայցս, ի հայ թուականին ՉՂԴ. (1344), յաշխարհս* Ղրիմի, *ի մայրաքաղաքս* Սուրխաթ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան Հայոց տեառն* Մխիթ[ա]րայ, *և ի թագաւորութեան* Կոստ[անդեայ]։

*Գրեցաւ սուրբ և ցանկալի աւետարանս ձեռամբ իմով՝* Գրիգորի Սուքիասանց *մեղուցեալ, յետին և անարժան գրչի, յիշատակ բարի ինձ և ծնողաց իմոց։*

213a *Արդ, որք ընթեռնոյք և կամ ընդ օրինակ գնէք, հաստատուն մտօք հաւատացէք ստուգութեան բանիցդ և ցանկուցդ, և զմեղուցեալ գրչակս* զԳրիգոր, *և զծնօղսն իմ, և զեղբարս յիշեսջիք ի տէր, և Քրիստոս աստուած յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

---

** Մինչ այստեղ տողերի սկզբնատառերով հոդվում է՝ «Յոհանէս որդեակ իմ վայ է գրկողացս ի Քէն, այլ վայ»։*

*** Ձեռագիրը մեզ հասած սակավաթիվ կրկնագրերից* (палимпсест) *մեկն է։*

## 425.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Սեբաստիա, Ս. Նշան, № 72, ՀԱ. 1920, էջ 237—238 (տես նաև 1407 թ.)*

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Կաֆայ

580 *... Արդ այժմ... աստուածապարգև տառիս փափաքող եղև հոգիապարդ կուսակրաւն քահանայն* Մկրտիչն՝ *բնական* Բաբերդցի, *և եա գրել զսա ի վայելումն կենաց իւրոց և յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց, հաւրն՝* Իշխանին *և մաւրն՝* Հռարին, *փոխեցելոյն առ Քրիստոս յոյսն մեր, և եղբարցն՝* Մեհրազին, Աստուածատրին, Վրթանեսին, Աստուկեսին, *և փոխեցեալ եղբարցն՝* Ասքանիսին *և* Յովանիսին, *և քուերցն՝* Մամախաթունին *և* Գոհարխաթունին, *հանգուցելոցն առ Քրիստոս։ Եւ միւս քւերն* Վարդեթփին, *և հաւրքուրոջն* Նամամին, *և զաւեր իւրոյ՝* Փոյրազատին, *որ յայժմ ամի հանգեաւ առ Քրիստոս և մասն ինչ ունի ի գիրքս...։*

*Բայց եղև զրաւ. գրչութեան սորա ի Թուականութեանս Հայոց ՉՂԳ. (1344), ի դառն ժամանակիս, ի պաշարմանն* Կաֆային։ *Յիշեսջիք* զՄխիթար *քահանայն՝ զուսուցիչն իմ՝ զփոխեալն առ Քրիստոս, և* զԱւետիք *քահանայն, և զծնողսն իւր, զփոխեցեալսն ի Քրիստոս, և զհաւրաքեռն իմ* զԽածիկն *և զորդիսն... ամէն։*

## 426.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7588*

Գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Սուրխաթ

279ա *Շնորհիւն աստուծոյ ամենակալի սկսայ և ողորմութեամբ խնամոց նորա կատարեցի զսուրբ և ցանկալի աւետարանս բաղում ջանիւ և մեծաւ աշխատութեամբ, յաւրինակէ սրբոյն Սահակայ Հայոց թարգմանչի և երկրորդ լուսաւորչի հայաստանեայցս, ի Հայ թուականին ՉՂԳ. (1344), յաշխարհս* Ղրիմի, *ի մայրաքաղա[քս* Ս]ուրխաթ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, [ի կաթողիկոս]ութեան Հա[յոց* Մխի]թրայ *և թա[գաւորութեան]* Կոստան[դեայ] | | |*

279բ [*Ձեռամբ*] Սիմէոնի *մեղուցեալ, յետին և անարժան գրչի, ի խնդրոյ* Սէթ *քահանային, որ բաղում փափագանաւք ստացաւ զսա ի վայելումն մարմնոյ իւրոյ և յիշատակ հոգոյ։*

*Արդ, որք ընթեռնոյք և կամ ընդ աւրինակ գրէք՝ հաստատուն*

---

** Թերթը ներքևից մաշված է և մասամբ պատռված, ուստի վերջին տողերը չեն պահպանվել, իսկ որոշ տողեր պահպանվել են թերի բառերով։*

մտօք հաւատացէք ստուգութեան բանիցդ և ցանկուցդ, և զվերոգրեալ զսրբազան քահանայն զՍէթ, և զհայրն իւր Պօղոս, և զմայրն իւր Գրոց, և զեղբայր՝ զՄարտիրոս, և զքոյրն [յիշեցէք] | | |

## 427.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Թորոս Աղբար, Բ էջ 354—350 (Խարբերդի Տովք գիւղի սբ. Նշան եկեղեցի) տես նաև 1470 թ.*

Գրիչ՝ Կարապետ

*Եւ արդ, յայսմ տարտարոս ե ի զառն ե ի վշտալից ժամանակիս, որ էր ՉՂԳ. (1344)...։ Այցելու* *որբոց և այրեաց պարոն* Յովաննէս *մեծ սիրով և յոյժ փափաքմանաւք ետ գրել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողացն՝* Կիրակոսին *և* Շողտիկնոյ, *և կենակցին՝* Թագուհւոյն, *և զաւակացն... և* Հռիփսիմի *հաւատուորի...։ Յիշեցէք զանյիշելի գրիչս...* զԿարապետ *կրաւնաւոր...,* *զմայրն՝* Աւլմէլիք, *և զքոյրսն* զՍուլթանմէլիք *և* զՋանմէլիք, *և զզաւակսն՝* զՅոհաննէս *և* զԳուռջիհերէկն..., *և զբարի յիշատակն իւր՝* զԲոյս *որդին...։*

## 428.

### ՃԱՇՈՑ

*Երևան 936 (տես նաև 1450 թ.)*

Գրիչ՝ Թումա

222ր *Ըզզատապարտելս մեղաւք, զանարժան* Թումա *փցուն գրիչ յիշեսջիք ի տէր Քրիստոս Յիսուս, աղաչեմ, և* զՆերսէս *սրբասնեալ քահ[անայ], ստացող գրոց, և զընտրեալ պատանեակն իւր՝* զԳրիգորիս, *սիրուն ուսումնասէր և վարժող իմաստութեան և հանճարոյ, տէր աստուած վայելել տացէ ընդ երկայն աւուրս, և ողորմեսցի կարգացողացն և լսողացն, ամէն։*

*Թվ. ՉՂԳ. (1344), յամիս արաց։*





## 429.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. 6273, էջ 151—152 (Հայաստանի լրագիր 1851, թիւ 73*)*

*Ստացող՝* Կոստանդին արքայ

*Ի թուականիս Հայոց ՉՂԴ. (1345) ես՝* Կոստանդին *Հայոց արքայ, ստացայ զսուրբ աւետարանս, որ էր կազմեալ արծաթեղէն և ոսկեղէն նկարակերպ գեղեցկութեամբ զարգարեալ, որ և ստացա զսա յարդար արդեանց իմոց, զոր յառաջին նախնեաց մերոց հասեալ եղև առ մեզ նշան բարեաց, և նովաւ ետու զսուրբ աւետարանս ծածկել գեղեցիկ կերպարանօք և շնորհեցի զսա սրբոյ եկեղեցւոյ, ըստ փափագանաց սրտի իմոյ և մեծ յուսոյ, միշտ յիշատակ լինել ինձ և ամենայն զարմից իմոց, և հօրն իմոյ տէր* Պաղտին *մարաջախտուն՝ հանգուցելոյն առ Քրիստոս, այլ և վասն երկար կենդանութեան մերոյ և աստուածապարգև որդւոցն իմոց* Աւշնի *և* Լևոնի։

## 430.

### ԳԻՐՔ ՏՆՕՐԻՆՈՒԹԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԹՈՎՄԱՅԻ ԱՔՈՒԻՆԱՑԻՈՅ

*Երևան 68*

*Թարգմանիչ՝* Յակոբ Քռնեցի
*վայր՝* Քռնայ

276ա *... Արդ, յամի ծննդեան փրկչին մերոյ հազարերորդի երեքհարիւրերորդի քառասներորդի հինգերորդի (1345) և ի թուականութեանս հայոց եօթնհարիւրերորդի [ին]նս[ու]ներորդի չորրորդի (1345) թարգմանեցաւ գիրքս տնօրէնութեանն Քրիստոսի, որ է առաջին հատոր եր[րոր]դ մասին երանելոյն* Թոմաի, *ի լատին բարբառոյ ի հայս, ձեռամբ ֆրա* Պետրոսի *ազգաւ լատին և աշխարհաւ* Արագոնացի, *ի կարգէ քարոզողաց սրբոյն Դոմինիկոսի, որոյ թարգման էր ֆրա* Յակոբոս *ազգաւ հայ, ի կարգէն քարոզողաց սրբոյն Դոմինիկոսի, ի վերին վանքս* Քռնոյ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, որոյ առաջնորդ և հոգաբարձու և վերախնամող կարգին միաբանելոց՝* Յո-

* *Մեզ չհաջողվեց գտնել Կ. Պոլսում 1846—52 թ.թ. հրատարակված «Հայաստան» շաբաթաթերթի համարները, ուստի հիշատակարանը մեջ ենք բերում Փիրղալեմյանի ժողովածուից։*

եան մականուն կոչեցեալ Բռնեցի, ի յորս անուն շինեցին զսուրբ ուխտս աստուածասէր և բարեպաշտ պարոն Գորգն և ամուսին իւր տիկին Էլթիկն։

Եւ արդ երեքեան՝ վերախնամողն և պարոն Գորգն և տիկին Էլթիկն ինքնայօժար կամօք նուիրեցին զմանքս կարգին քարոզողաց սրբոյն Դոմինիկոսի սուրբ յաւիտենականս։

Արդ, վերստացեալ խնամողն եղև պատճառ բազում բարութեան, զի ժողովեաց աստ վարդապետս լատինացւոց և ի հայոց, տածելով զնոսա ըստ հոգւո և ըստ մարմնո, և թարգմանեաց և թարգմանել ետ գիրս բազումս օգտակարս և լուսաւորիչս...։

431.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԴԱՒԱՆԱԲԱՆԱԿԱՆ ՆԻՒԹԵՐԻ

Երևան 731*

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Դուրէժ

ա

... Զոր հրամայեցիր, քոյր, և արի, բարի ծառայս աստուծոյ Ներսէս, ունելով զաստուածայինն աստուծոյ և հաստատեալ ուղղափառ հաւատով, լցեալ սիրովն Քրիստոսի, ոչ կամելով ոչչարախօսութիւն ի ճշմարիտ հաւատս, որ ի Քրիստոս Յիսուս, և յաղագս այսր սիրոյ
251բ աստուածային տալոյ փափաքանօք և աղաչանօք ետ գրել զսուրբ գիրքս, զի առաւել յանդիմանեսցէ զհերձուածողսն, և յամօթ արասցէ զհակառակամարտսն երկու բնութեան ի Քրիստոս, և հաստատեսցէ զուղղափառսն ի հաւատս անսասանելի և հաստատուն։

Արդ, ով դասք լուսաւորեալք՝ քահանայք և սարկաւագունք և ամենայն ուխտք եկեղեցւոյ, յորժամ հանդիպիք ի վայելումն աստուածաշունչ սուրբ տառիս կարդմամբ կամ օրինակելով, յիշմամբ արժանի արարէք զընդրելոյս ի դասս սարկաւագաց և սիրեցելոյս յաստուծոյ ըստ սրբո նախասկզբային, զամենագանձս և զաստուածասէրս և զհաւատարիմ ծառայս աստուծոյ՝ զՆերսէս։ և ծնողսն իւր՝ զաէբ Յովանէս և...։**

252ա Եւ զիս՝ զեղկելիս և զամենամեղս և զչարաչար և զանպիտան ծառայս աստուծոյ զՆերսէս երէցս, որ զանունս ունիմ և զգործս ոչ ունիմ, և զվարդապետն իմ զՍտեփանոս ռաբունապետն՝ զվախճանեալն ի

---

* Ձեռագրի գրչության տարեթիվը (1345) կասկածելի է։ Ձեռագրի 6բ—7ա էջերում կա Տոնացույց ցանկ, որ սկսվում է ՉՂԴ. (1345) թվից և ավարտվում ՊԺ. (1361) թվով։ Կարծում ենք, որ գրիչը արտագրել կամ կազմել է այդ ցանկը որոշակի նպատակներով, ուստի ցանկի առաջին թվականը համարում ենք ձեռագրի գրչության հավանական տարեթիվը։

** Տեղ է բաց թողնված անունների լրացման համար, գրիչը ներքևի լուսանցքում մանր տառերով գրել է՝ «զո կամիս յիշատակի՝ յիշեա և գրեայ»։

Քրիստոսի, և ծնողսն իմ զՈվաննէս, և զմայրն իմ զԳոհար Տիկին՝ զփոխեալսն ի Քրիստոս, աղաչեմ յիշել ի տէր. և զսղալանացն մի մեղադրէք, զի հարի յոյժ զօրինակն կու յիշատակնէին*, և եթէ սղալ գտանիս՝ ողորմելոյ և զաստուած-ողորմին հանապազ ասա. և աստուած ամենատատոն և ձեզ ողորմեսցի յիւր միասնղամ գալուստն, ամէն։ Արդ, գրեցաւ] և կատարեցաւ ընդ հովանեաւ զօրավարիս Քրիս-
252բ տոսի սուրբ Սարգսի, ի մայրաքաղաքս || Դաւրէժ, ընդ Հայս և ընդ Փարսիս։

ՈՑՆ Կարապետ

Բ

253ա Որ զշնորհս զայս աստուածային և անպարագիծ պարգևաց սիրելեաց խրատ, զոր և ընկալեալ ամենարգանիկ և բազմ հանճարն, ըստ հոգոյ եղբայրն մեր պարոն Բանէրէզէսն, որ և Նորօզէոն, ի յիւր վաստակոց և ի յաստուծոյ շնորհեալ հոգևոր եղբօրէն՝ ի տէր Ներսէսէ քահանայէն, ի լուսաւորութիւն մտաց իւրոց և մանկանց եկեղեցոյ, ընդ որ և դանդաղեցուցեք այսմ աստուածաշունչ տառիս՝ զյիշեալքս ի սմա յիշեցիք ի Քրիստոս և զանարժան Կարապետս։

432.

ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետ. 123, Բ. Սարգս. Ցուց. Ա. էջ 514*

Հմտ. ստացող՝ Աստուածատուր

2ա Կամաւն աստուծոյ ես՝ անարժան քահանայ Աստուածատուր, գնեցի զսուրբ քառավաւանս եղեմարուլի աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, ի վայելումն զաւակաց իմոց, ի քաղաքս սահման Սարգսի,*** [որ] փոքր կոչի Յոհաննէս Բաւշայկերանցոյ։ Արդ, որք ընթեռնոյք և աւգտիք ի սմանէ, յիշեցէք ի Քրիստոս զհայրն իմ զՍարգիս և զմայրն իմ զԱէֆարքի(՞) և ... տէրտէր զԱստուածատուրս, և աստուած զի ողաց և յիշեցելոցս ողորմեսցի։ Ի թվ. ՉՂԴ. (1345)։****

* Ուզում է ասել «տառադարձնում էին»։

** Ավետարանն ըստ Բ. Սարգսյանի գրված է Թ—Ժ դարում։ 4ա էջում, համաձայն նրա ավյալի, կա մի մանրագիր՝ «ի Թ. Ծ.Կ.», որ նա թողնում է առանց մեկնության։ Այն մեր կարծիքով պետք է կարդալ «ի ԽուԿն ԾԿ.» (360+551=911), ուստի, Վենետիկի № 123 ձեռագիր ավետարանը գրված է 911 թվականին։

*** Ձեռագրում՝ «Սգէ» (հապավված)։

**** Հնարավոր է կարդալ նաև «ՇՂԴ.» (1145), բայց անհավանական է։



ՉՂԵ 1346

## 433.

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՀԱ, 1926, էջ 344

Նորոգող՝ Յովհաննէս Նաղաշ
Վայր՝ Խաղտեաց գաւառ, դղեակ Բաբերդ

Արդ, ցանկացող եղեալ այսմ... աւետարանիս պատուելի այրն աստուծոյ Խոսրովշահն, եւ ետ զսա վերստին նորոգել, զոր տէր աստուած նորոգեսցէ զմանկութիւն նորա, ամէն։ Ի նեղ եւ ի դառն ժամանակիս, յորում մեծ մայրաքաղաքն Թէոդուպալիս անապատ եղեւ ի մարդոյ եւ յանասնոյ ի յազգէն հագարու եւ իսմայելացոցն։ Նաեւ արեւելեանքն ամենայն, տուն Վրաց. որ յոլովք ի սուր սուսերի մաշեցան եւ այլք ի սովոյ մեռանէին, որ ոչ ոք կարէ պատմել զանցս աղետիցս, զոր եկն ի վերայ ազգիս քրիստոնէից, եւ այն վասն առաւել յաճախ մեղաց մերոց։ Որ բաղում տանուտեարք եւ քահանայք մուրողք տարաշխարհիկ շրջէին ի հայրենի գաւառաց...։ Երեմիայ պիտէր, որ լայր զանըմբռնելի վիշտս քրիստոնէից, եւս առաւել ազգիս Հայոց։ Արդ, ստացաւ զսա ղաւակ ի Սիոն... եւ աստեացս ի վարժումն ուսումնասիրաց, ի յիշատակ իւր, եւ եղբաւրն իւրոյ Շերինշահին, եւ ծնաւղացն՝ Ումիկին եւ Թագուհէ, Պարոնշահին, եւ Սիրատիկնայ՝ փոխեցելոցն ի Քրիստոս, զոր տէր աստուած բարձակից արասցէ զնոսայ նահապետ[ի]ն Աբրահամ[ու]ն, ամէն։

Արդ, եղեւ վերջին նորոգումն սուրբ աւետարանիս ի թուականութեանս Հայոց ՉՂԵ. (1346), ի գաւառիս Խաղտեաց, ի յանառիկ գղեակս, որ կոչի Բաբերդ, ձեռամբ սուտանուն մահտեսի Յովհաննէս նաղաշի եւ կազմողի, առ դրան սրբոյ Աստուածածնիս եւ սրբոց Հրեշտակապետացս, ի Հայոց վերադիտողութեան տեառն Մխիթարիա, եւ ի հայրապետութեան այսմ գաւառիս տէր Սահակայ եւ տէր Ստեփաննոսի, եւ ի թագաւորութեան Հայոց Կոստանդնի, եւ յիշխանութեան աշխարհին Հոռմաց Յորաքնային, որ էր այր բարեպաշտ, զի յոլովք ի յաշխարհի նորա լնուին հազիւ զսովեալ անձինս, զոր տէր աստուած յերկար առնէ զպետութիւն նորա, ամէն։

Արդ, որք աւգտիք ի սմանէ՝ քահանայք եւ ժողովուրդք, յիշեսջիք ի սըրրնթաց եւ ի մաքրամատուց աղաւթս ձեր զբարեմիտ այրն զԽոսրովշահն եւ զայլ ամենայն համացեղս՝ իւր՝ զվերագրեալսն, եւ Քրիստոս յոյսն ամենեցուն... յիշողացդ եւ յիշելոցս ողորմեսցի առհասարակ, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։*

* Հրատարակչի ծանոթագրության համաձայն Մատեանս է աւետարան, որ կը գտնվէր Սոֆիայի Գուլկար Ազգ. Մատենադարանին մէջ։

### 434.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7656 (տես նաև 1547 թ.)*

*Հետ. ստացող՝* Աւագ
*վայր՝* Այրերուաց գիւղ

81ր *Ի թվիս Հայոց ՉՂԵ. (1346), ես՝ անպիտան ծառայս աստուծոյ*
Աւագ՝ Այրերուաց* *ծեռնաւոր, գնեցի զսուրբ աստուածաբան աւետա-*
*րանս՝ պարգևս և պահապան աստուածապատիւ պարոնին իմոյ պա-*
*րոն* Ջումին, *և տեառն որդեացն իմ՝ պարոն* Արղութին *և պարոն* Զար-
խիկին, *և ի պատճառ խաղաղութեան և շինութեան գեղիս մերոյ* Այ-
րերուաց: *Քրիստոս աստուած իւր սուրբ աւետարանիս միջնոր[դ]ու-*
*թեամբն և բարեխաւսութեամբ զիմ պարոնն* զՋումայն *և զիւր աստ-*
*ուածատուր զաւակքն խաղաղութեամբ պահէ և փրկէ յամենայն փոր-*
*ձութենէ։ Եւ ես՝ մեղուցեալ ծառայս աստուծոյ* Աւագս, *յերեսս անկեալ*
82ա *աղաչեմ զամենեսեան, որք կարդայք և որք լսէք ‖ իմ շատ մեղաց*
*և յանցանացն թողութիւն խնդրեցէք. յիշեցէք ի Քրիստոս ե*
*զծնողն իմ՝ զհայրն իմ* զԳերգ *և զմայրն իմ* զԱմեն *տիկին, և*
*զկենակիցն իմ* զՀուրիայ, *և զորդին իմ* զԱստուածատուր, *կենդանեացս*
*մեղաց թողութիւն խնդրեցէք և մեռելոցն հանգիստ և ողորմութիւն*
*հայցեցէք. և որ ուղեղ մտաւք և լի սրտիւ մեր մեղաց և յանցանացն*
*թողութիւն առնէ, աստուած իւր մեղաց և յանցանացն թողութիւն*
*արասցէ, ըստ անսուտ բանին Քրիստոսի, որ ասաց՝ եթէ թողցուք*
*մարդկան զյանցանս նոցա, և հայրն երկնաւոր թողցէ ձեզ զյանցանս*
*ձեր...։***

### 435.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7636 (տես նաև 1602 թ.)*

*Գրիչ՝* Նատեր
*վայր՝* Սուրխաթ

ա

275ր *...Արդ, յամի ՉՂԵ. (1346)-երորդի թվականութեանս Հայոց գրե-*
*ցաւ սուրբ աւետարանս ի խնդրոյ քրիստոսասէր և ողջախոհ քահա-*
*նայի* Աբրահամ *իրիցոյ, որ յուսով ստացաւ զսա յարդար ընչից իւրոց՝*
*բարեխաւս վասն հոգւոյ իւրոյ, և յիշատակ աստի կենացս, և որդի*
*յաւիտենականին, և ընտանի ի վերինն Երուսաղէմ։ Որք հանդիպիք*
*այսմ աստուածաբան մատենիս յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ*
*աղաւթս ձեր* զԱբրահամ *երէց, և զորդի իւր՝ զժառանդաւղ սորա* զԿա-

---

* *Դուցե «Երերոյք» գյուղանվան հնագույն ձևը լինի։*

** *Հիշատակարանը Ավանի անունից գրել է* Սեդեկ *գրիչը, որն իր մասին, 81ր էջի վրա, թողել է հետևյալ հիշատակագրությունը. «Եւ զիս՝ ղանարժան ծառայս աստուծոյ* զՍեդեկ *յիշեցէք ի բարին»։*

բացկա արեգայ, և զՎարդապետն, և զՍիմէոնն, և զծնողսն իւր՝ զԱստուածատուրն և զԹագուհին, և զեղբարսն իւր՝ զփոխեցեալսն, նաև զկրկցակիցն իւր՝ զփոխեալն, և զորդիսն, և զամենայն արեան մերձաւորսն, որք անուոն են պաշտաւնեայք, և ճանաչել զնոսա, որք կան և որք գնացին [առ] աէր, որում ողորմեսցի նոցա և սոցա ըստ մեծի ողորմութեան իւրում։ Ընդ նոսին և զմեղապարտ գրիչս զՆատերս, և զորդին իմ զԱւետիք, որ ծաղկով զարդարեաց սոա և կազմեաց, և զամենայն եղբարսն իմ, և զծնօղսն, և զզաւակսն, և որք աղնեցին ի սուրբ աւետարանս և մասնակից եղեն սորին բարեաց հատուցման ողորմեսցի յիշեցոցս և ընթերցողացդ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Արդ, գրեցաւ սա յաշխարհս ի հիւսիսոյ, որ կոչի Խրիմ, ի քաղաքս, որ ասի Սուրխաթ, յաշխարհակալութեանն Ճանիպէկ խանի, ի վերադիտողութեանն տէր Ստեփաննոսի, և յաթոռակալութեանն Յովհաննէս կրաւնաւորի։

Յայսմ ամի շինեցաւ սուրբ Աստուածածինն մերձ ի վանքն սուրբ Ավքսենտի, ձեռամբ Աւետիս խոտաճարակ բարունոյ և Աբրահամ իրիցու, որ երկուց բարեաց եղև գործակից՝ սուրբ աւետարանիս և սուրբ տաճարին, որ յանուն սուրբ յաստուածամօրն շինեցաւ, և յայսմ աւուր վիրաւորեալ խո[տա]ճարակն [Աւետիս] գնաց աստի։

Բ

84ա Զստացաւղ աստուածապատում հրամանիս զԱբրահամ երէց, և զծնողսն իւր, և զեղբայրսն իւր, և զորդիսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն և զերախտաւորսն, և որք աղնեցին ի գին սորա՝ թէ շատ և թէ սակաւ, ամենեցուն ողորմութիւն և թողութիւն խնդրեցէք, ով սուրբ ընթերցողք, զի և դուք գտջիք ողորմութիւն յաստուծոյ։ Ընդ նոսին և զապիկար գրիչս զՆատեր, և զծնաւղսն իմ, և զեղբարսն, և զքուերսն, և զորդիսն՝ զԱւետիս ծաղկաւղ և կազմաւղ, և զՅոհաննէս սարկաւագ, որ տղա հասակաւ ել աստի և եմուտ առ Քրիստոս, իսկ մեզ սուգ անմխիթար և վիշտ անմոռանալի եթող, և քոյր նորա զկնի նորա գնաց. ողորմութիւն գտցին նոքա յողորմածէն աստուծոյ ձերով սուրբ աղօթիւք. և մեզ վճատելոցս յիշող լերուք ի թողութիւն, զի և ձեզ լիցի թողութիւն յաստուծոյ՝ յաւրհնեալսն յաւիտեանս, ամէն։

ԶՄարան Խաթունն յիշեցէք ի տէր և զքոյր նորա զՄայրապետն և աստուած զձեզ յիշէ։

Ծաղկող՝ Աւետիս, որդի Նատերի

Գ

214ր Ո՜վ սուրբ ընթերցող աւետարանիս սրբոյ, յիշեա զբազմամեղ Աւետիսս՝ զնկարող և զսանտրող այսմ, և խոշորութեան արւեստին մի մեղադրեք։

Կրկին աղաչեմ յիշեա և զզովելի անձն, զցանկալի տիպն, զեղբայր թշուառութեանս իմոյ՝ զՅովաննէս սարկաւագ, որ ի մանկու-

*թեան հասակ փոխեցաւ ի կենացս և զիս եթող ի մէջ բազմածուփ ալեաց, զոր և հայցեմ զսուրբ մանկունսդ խնդրել աղաւթիւք, զի տէր մեր արասցէ դասակից արդարոց զեղբայրն իմ, և ինձ՝ մեղաւորիս շնորհեսցէ զթողութիւն, զի և դուք գտջիք զողորմութիւն ի Քրիստոսէ։*

Դ

*Որք հանդիպիք այսմ աստուածարան մատենիս յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս զձեր* զՇահենը, *և զկենակիցն իւր,* զՓոքր տիկինն, *և զաւակսն իւրեանց՝* զԿարապետն *և* զԱմիրքայն, *որ աւգնական եղեն աւետարանի ծախսն և որք արեանն [Քրիստոսի] են պաշտաւնեայք, և հատոյ զպարտս նոցին ըստ ընդարոյս առատ ողորմութեան քում աստ և ի հանդերձելումն, և Քրիստոսի փառք յաւիտեանս։*

## 436.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Թորոս Աղբար. Բ, էջ 426–427 (Տիգրանակերտ)*

*Գրիչ՝* Նատեր
*վայր՝* Սուրխաթ

*Յամի ՉՂԵ. Թուականիս Հայոց (1346) եղեւ գրաւ գրչութեան աստուածաշունչ տառիս ձեռամբ մեղաւոր* Նատերի*, *ի խնդրոյ պատուական եւ մաքուր կրաւնաւոր եւ հեզահոգի աբեղայի* Գրիգորի *եւ եղբայր իւրոյ* Վահան *աբեղայի, յաշխարհս հիւսիսոյ, ի մայրաքաղաքն* Ղրիմի, *եւ հոյակապ եւ ի հռչակաւոր բազմաժողով տեղիս, որ կոչի* Սուրխաթ, *յառաջնորդութեան առաքելական իշխանութեան տեառն* Ստեփաննոսի, *եւ յաթոռապահութեան հանճարեղ հռետորին* Յոհաննես *աբեղային, յաշխարհակալութեան* Ջանիբեկ *ղանին, եւ ի քաղաքապետութեան* Ռամատնայ, *որ այժմս արժանի յիշատակելի է վասն իրաւադնացութեան ի վերայ սահմանի ըստ աւրինի քաղաքականութեան...։*

## 437.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7353*

*Հետ. ստացող՝* Հայրանուն
*վայր՝* Միխիվա՞նք

ա

1ր [*Կամա*]*ւն աստուծոյ ես՝* Հայրապետ *քահանայս՝* [Հ]այրանունցայ *որդիս* Միխիվանեցի, *որ փափաք ունայի պատարագի եւ սուրբ աւետարանի, որ նոր կարգ առի, ամ աստուած չէթող, որ պատարագ ելի կամ զաւետարանս կարդացել, սիրովն լցել Ո՜վ սուրբ քահանայք, աղաչեմ զձեզ, ի հալալ ընչից իմոց դրամ տվի ու առի* իշատակ *ինձ*

* *Տպված է «Նատերե»։*

եւ ծնողաց իմոց՝ Հայրանենոյ, և եղբարց իմոց՝ Մանանիսի, Ովանիս[ի] եւ այլ եղբարցս։ Ես Հայրանուն Գերգու պտուղ, ու մեր հաւրն Գրիգորոյ, ու մաւրն Հազրեւարդայ, ու Աոլան խաւթունայ եւ ամենայն ազգականաց, գնեացաք զաւետա[րա]նս մեզ, մեր աղայոցս իշա[տա]կ։ Ամ աղէն աստուած փոխեցաւ, մեք սրտայրեկ ու լալագին աչաւք ի վայր մնացաք, ով սուրբ վարդապետք և քահանէք. ով կարդէք և զաստուած փառայրանէք, աղաչեմ զձեզ վանց սիրին Քրիստոսի իշէք զմեզ՝ զմոլորեալքս ի սուրբ աղօթս ձեր, եւ աստուած ողորմի ասէք որդոյ մերոյ Հարապետայ Նորայկնուք Երիցին և ծնողացն և ազգականացն իւրոց. սուրբ աստուածածին, բարեխաւսութեամբ սուրբ առաքելոցն, մարգարէիցն, մա[ր]տիրոսացն, սուրբ հնգայաւորացն սոցա մեզն | ! |*

Թ[ու]. ՉՂԵ. (1346)։ Աւրհնել եւ փառաւորել է աստուած, ամենազորին աստուած ողորմի | | |**

Բ

210ր Երբ Վարդանն ընձայեցաւ՝ թիւս ՉՀԲ. (1323), ի յամսեն տրէ։

Երբ Աւծել ընձայեցաւ՝ թւին ՉՁԳ. (1334) էր, ի յամսէն տրէ. և Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս, ամէն։

## 438.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Կերլա. ժա. ՀԱ, 1895, էջ 304

Գրիչ՝ Կիրակոս
Վայր՝ Սուրխաթ

... Յամի եւթնհարիւրերորդի [ին]նսուներորդի հինգերորդի, թուաբերութեանս Հայոց նոր տումարիս (1346), ի գաւառիս Խրիմի, ի մայրաքաղաքիս Սուրխաթ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ աստուածածնի եւ սուրբ Գրիգորի Լուսաւորչի, ի հայրապետութեան տեառն Մխիթարայ եւ յեպիսկոպոսութեան ամենայն հիւսիսային կողմանցս տէր Ստեփանոսի արհիեպիսկոպոսի, ի յայսմ ժամանակի գրեցաւ ամենագովելի եւ դերհոչակելի եւ գերապանծ, պաշտելի եւ երկրպագելի սուրբ աւետարանս, ձեռամբ մեղօք լցեալ եւ անպիտան հոգւոյ՝ Կիրակոս սարկաւագի, յամսեանն աւգոստոսի ի ԺԵ. (15), ի փառս Քրիստոսի՝ աւրհնելոյն յամենայն բերանոյ յաւիտեանս, ամէն։ Արդ, աղաչեմ զամենեսին զգասս լուսերամիցդ, որք հանդիպիք այսմ աստուածախաւսութեան սուրբ աւետարանիս, յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր զԿիրակոս աւաճ սարկաւաճ եւ զծնողս իմ՝ զԿարապետ քահանայ, եւ զմայրն իմ զԱննայ՝ զփոխեցեալն առ Քրիստոս, եւ զկուսակրօն քահանայ զՄինաս՝ զեղբայրն իմ, եւ զսոցին հարսն զԽաջայ՝ զփոխեցեալն առ Քրիստոս՝ զուգակից իմ։ Արդ, կրկին աղաչեմ

* Մի տող կտրված է։ Շարունակությունը գրված է լուսանցքի վրա։
** Երկու բառ անընթեռնելի։

ձեզ, սրտի մտաւք յիշել զվերոյգրեալսդ, եւ դուք յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Նայ եւ զԳրիգոր քահանայ յիշեսջիք ի տէր մեր, որ զօրինակն շնորհեաց, եւ անմեղադիր լերուք, ո՞վ սուրբ հարք, վասն անտրուեստ գրոյս եւ սղալանացս, որ ի ժամ, զի կայր իմ այս չափ էր, եւ չէի տեղեակ այսմ արհեստի, այլ հարկէ եւ փափաքանաց սրտիս համարձակեցայ ի սմա եւ նոյն ինքս պարգեւեաց ինձ ի կատար ելանել սմա, ի փառս սուրբ երրորդութեան, որ է աւրհնեալ յամենայն բերանոյ, ամէն։

## 439.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2187

Գրիչ՝ Թորոս Տարոնեցի

ա

162բ Զծրօղ Թորոսս յիշեա և ասա միշտ տէր ողորմեա, ի թվ. Հայ[ոց] ՉՂԵ. (1346)։

բ

245ա Զստացօղ սուրբ աստցուածոցս՝ զՄարտիրոս քահանայ Սանահնեցի և զծրող Թորոս Տարոնեցի, աղաչեմ զձեզ, յիշեցէք զմեզ մաքուր աղօթիւք, ի թուիս Հայ[ոց] ՉՂԵ. (1346)։

## 440.

## ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

Երևան 4166*

142բ Շինեցաւ սուրբ և հռչակաւոր բազմաժողով մեծ մենար[ան]ն Հայոց Թառ ի սուրբ թարգմանչացն՝ ի Սահակ հայրապետէ Հայոց և ի Մեսրոփ վարդապետէ ԴԺ. և ԻԳ. (426) ամի ծնընդեանն Քրիստոսի, ի թագաւորութեանն Հայոց Վռամշապ[հ]ոյ, ի թագաւորութեան Հոռոմոց Արկադիոսի և Ոնորիոսի, և ի պատրիարգութեան Յոհաննու Ոսկեբերանի:

ԲՌՀԺ. ե ԺԷ.** (2717) ամով յառաջ քան զհայ թուականն (իմա, 2166 թ. ն. մ. է.) շինեցաւ գեղաքաղաքն Գառնի ի Գեղամայ և ի Գառնկայ: ԳՌԵԺ[ԺԲ.] (3512)*** տարի է մինչ ի յայս, որ է թիւս ՉՂԵ. (1346)։

* Ձեռագիրը, ըստ հնագրական տվյալների, գրված է ԺԳ դարու վերջին, Սարգիս գրչի կողմից, ում Թաղադինի հիշատակին (էջ 35ա-ի հիշատակագրության մեջ կարդում ենք «զԹաղադիև արեամբ ներկեալն, յիշեա»)։

** Սույն թվականը հետագայում, գուցե նույն գրչի կողմից, փոխված է, և «ԲՌՀԺ. ե ԺԷ.»-ն դարձված է՝ «ԲՌԹԺ. և ԿԱ.», այսինքն՝ 2961։ Լուսանցքում կան անընթեռնելի բառեր, որոնք, համաձայն թվականից առաջ գրված՝ ⊕ նշանի, վերաբերելու են բնագրի այս մասին։

*** Փոխված է նաև այս թվականը, և վերը բերվածի փոխարեն գրված է «ԳՌԷԺՀԴ.»։ Մեծ դժվարությամբ միայն հնարավոր է լինում վերականգնել նախկին գրածը։

*Ի Հայոց թուին ՃԼ. (681)* շինեցաւ սուրբ Սիոն ի Կուրապաղատին, ի վերայ Գառնոյ հողահատին**, տէր Ներսէսի հրամանաւ։*

*Գառնոյ մին կողմն այս է, մինն՝ Շաղուաքոյ***, մին[ն]՝ Կոտուայ**** Շախառանն,***** մինչ ի ծովն։*******

---

* Նույնպես փոխված է, «ՃԼ.»-ի փոխարեն այժմ կարդացվում է «ՄԽԴ» (=795)։

** Սույն բառն այնքան մաշված է, որ առաջարկված ընթերցվածքի («հողահատին») ճշտության վրա կարելի է կասկածել։

*** Հնարավոր է կարդալ նաև «Շոսլուաքայ»։

**** Մաշված է և դժվարընթեռնելի, կարելի է կարդալ նաև՝ «Կոտռայ», «Կոտուց» և այլն։ Եթե ճիշտ լինի վերջին («Կոտուց») ընթերցվածքը, ապա, անշուշտ, հիշատակված է «Կոտայք»-ը։

***** Կամ գյուղի անուն է (հմմտ. «Շահրիար»), և կամ, առավել հավանականությամբ՝ ճանապարհի («առևտրական ճանապարհ», «արքունի ճանապարհ»)։

****** Ծով ասելով հիշատակագիրը, անտարակույս, նկատի է ունեցել Սևանա լիճը։

ՉՂՁ . 1347

441.

ՃԱՇՈՑ

Պրոֆ. Դ. Գ. Գոբդեկի ձեռագրերից (Թբիլիսի)

Հետ. ստացող Կիրակոս
վայր՝ Անի

*Ընդ նմին յիշեսջիք ոյետի սասցաւղ գրոց զԿիրակոս եր[էց] և զամուսին իմ զԴայիանէ յաղաւթս ձեր, և աստուած յիշողացդ ողորմեսցի յիւրում գալըստեանն։ Բայց գրեցաւ սայ ի յԱնի, ի թվ. ՉՂԱ. (1342), ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ, և իբեցկնոջն, և ծնողաց իմոց՝ հաւր իմոյ Շահպատէին, և մաւր իմո Նուրայ խաթունին, և եղբարց իմոց՝ Սիմէոնին, և Ստեփաննոսին, և Աստուածատրին, և քուերոջն՝ Թանկ Ազիզին։ Ի թվ. ՉՂՁ. (1347),*

*Ի յՆզընկան եկի խաղաղութեամբ և եղև մահ տարաժամ, և Քրիստոսի փառք յաւ[իտեան]։**[*]

442.

ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ, ԲԱՌԱԳԻՐՔ

Երևան 1136

Ստացող՝ Մխիթար
վայր՝ Սիս

ա

417ա *... Զոր և ոմանք սրբամաքուրք և գերիմաստ քաջ րաբունիք Հայոց, իբր զաշխատասէր մեղու քրտնաջան աշխատութեամբ բարձրաբերձ լերանց գլոյժ քաղցրաճամ և զլուսատու մոմս հաւաքեալ, ծաւկեալ ի յագումն մանկանց եկեղեցւոյ ուսումնասիրաց՝ համառաւտեալ և պայծառացուցեալ բացայայտեցին [աստուածաշունչ քնարս հին և նոր կտակարանացս]**, որոց յիշատակ նոցա աւրհնութեամբ եղիցի։*

*Զոր և ոմն վանական և կուսակրաւն քահանայ, որոյ անուն Ստեփաննոս վերակոչիւր՝ Կաննցի, բազում աշխատութեամբ ի մի տուփ հաւաքեալ զնախկի բացայայտեալսն ի սրբոց հարցն աստուածազգեցիցն։ Զոր և ես՝ նուաստ ծառայ Քրիստոսի և տրուպ ամենեցուն, սպասաւոր բանի տեառն Մխիթար կոչեցեալ, ի կողմանց Արևելեան, յաղագս տառապանաց և չքաւորութեան տարաշխարհիկ լինելով եկի*

* Կան նաև հիշատակարաններ ՌՁԴ. (1634) և ՌԺԲ. (1663) թվականներից։

** Փակագծի մեջ առնվածը մեջ ենք բերում հիշատակարանի սկզբի մասից, որը ոչ մի հետաքրքրություն չի ներկայացնում։

*ի Նահանգս* Կիլիկւոյ, *ի զառն և յանբարի ժամանակի, ի մայրաքաղաքս* Սիս: *Եւ տեսայ զցանկալի մատեանս զայս, և յոյժ տոչորմամբ սրտի իմոյ վառեցա ի սէր սորա, և ցանգայի՝ թէ լինէր հնար զսա գաղափարել։ Եւ վասն զի ոչ էի կարաւղ անձամբ ի կիր արկանել, զի անտեղեակ էի գրչի, և փանաքի մարմնով, և կարի աղքատ ի գոյից. և վասն այսր մեծաւ ցաւաւք տարակուսեալ կայի, և տրփմամբ ըղձիւ այրէի ի սէր սորա։ Իսկ սփոփիչն ամենայն տարակուսելոց ոչ եթող զիս ի բաց, այլ ոմն բանիւ յորդորելով, և ոմն տրաւք, և ոմն անձամբ աշխատութեամբ, և աւգնականութեամբն աստուծոյ սկսաւ։ Եւ արարի զաւրինակն յերկուս հատուածս, և ետու զառաջին հատորն ի վանական ոմն դպիր* Մկրտիչ *անուն, զոր և մեծաւ աշխատանաւք և շնորհիւն աստուծոյ փութով յանկ հանին և լցին զփափագ սրտի իմոյ։ Արդ, եղև սկիզբն և աւարտ սորա ի յաստուածապահ մայրաքաղաքս* Սիս, *ոչ իմոյ կարողութեամբ, այլ շնորհիւն աստուծոյ և աւգնականութեամբ բարի արանց, ի թուականութեանս հայոց ՉՂՋ. (1347), ի հայրապետութեան տեառն* Մխիթարա, *և ի թագաւորութեան Հայոց* Կոստընդեա, *և յառաջնորդութիւն քաղաքիս տէր* Բասիլիոսի: *Արդ, որք*
*վայելէք յայսմ սեղանւոյ յոգնահամ •բարեաց, աղերսարկու մաղթանաւք աղաչեմ յիշել ի տէր զհոգևոր և զմարմնաւոր երախտաւորսն*
417բ *մեր, ես առաւել ‖ զայնոսիկ, որ ի գրաւզչէքն մասնակցեցան, ընդ*
*որս և զպարոն* Հանէս Զագուկն, *որ զմեզ յոյժ հայրաբար կու խնամէ.*
*նաև աւրինակին շնորհողին, և իմոյ անարժանիս* Մխիթարայ, *և ծնողացն իմոց՝ հոգևորաց և մարմնաւորաց, և եղբարց և ազգայնոց,. զոր և հայցեմ յամենառատ փրկչէն, զի զյիշաւղքդ և զյիշեցեալսն առհասարակ գրեսցէ ի գիրն կենդանի, ի մատեանսն վերին դպրութեանն, և վարձ զանճառելին տացէ յորժամ գայցէ փառաւք հաւր փառաւոր լինել ի մէջ սրբոց իւրոց, ամէն։*

*Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ, կամ կարդալով, կամ աւրինակելով, աղաչեմ մաղթանաւք և բոլորով սրտիւ յիշեսջիք ի Քրիստոս միով տէր ողորմաիւ զիս՝ զսուտանուն գրիչս* զՄկրտիչ *դպիր, որ զանուն միայն ունելով և գործս ոչ, և զհարազատ եղբայրն իմ զտէր* Յոհանէս *մականուն* Դանիլձագ, *և զծնաւղսն մեր, և որ յիշէքդ, յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի, ամէն։*

*Եւ արարի զսկիզբն հատորոյն իմոյ ի մարգարէէն Յունանու, որ է մինչև ցայժմ քսան տետր։ Սխալանաց և խոշորութեան և անարհեստութեան, որ ՚ի սմա, անմեղադիր լերուք, զի այս չափ էր կար մեր, և յոյժ նեղեաք յազգէն սմայէլեան։*

Գրիչ՝ Դաւիթ

Բ

101ա *Անմահ թագվորն, որ է աստուած,*
*Հաստատ է իւր գործ արարված,*
*Փառք իւր վայել է միշտ, զորս է երգած,*
*յժմ և յաւէտ միշտ զարդարած։*

Ո՜վ, սուրբ անբիծդ ըրաբունի,
Ի յայս ի պեղծ ժամանակի
Դու այր արդար ես ի յերկ[ր]ի,
Զոր դու բնակիս ի Սիս քաղքի,
Նա իւր Թշնամին շոյտ կործանի.
Յորժամ կարդաս, զոր աստ գրեցի,
Ցիշման արժան գծրիս լինի,
Որ եմ հմուտ պատվիրանի,
Եւ չեմ գործել ըստ արժանի,
Սուրբ աղօթիւք քո զայս գրեցի,
Շնորհէ առատն, որ ձրի կոչի։
Ես եմ յուսով հաւատալի,
Որ զոր խնդրես յոլով կատրի,
Քո ծառայիս՝ Դաւիթ կոչի
Եւ մականուն՝ Խօրին գրոցի,
Հօրն իմ՝ Յակոբ իրէց առի,
Որ էր վարպետ այսմ արհեստի,
Ցիւրմէ փոքր ինչ ես մասն առի,
Զնոյնն և զնայ յիշատակէ,
Որ իմ երկրորդ ստեղծող նայ է,
Դու զվարձն առնուս ի Քրիստոսէ,
Որպէս իւր բանքն հրամաէ,
Միոյն հարոյր ինք պարգևէ։

Սակաւ և տխմար բանիս, զոր սղալնել լինիմ ի գիրն, մի մեղադրէք, զի ատորնօք էր, և զկատարել յիշատակարանն ի յերջքն* տեսէք։

Գ

183ա ...Նայ, ի ժամանակիս յայս, յոր ի մեծ վիշտ կա երկիրս Կիլիկիոյ յանօրինաց, և ի մեծ նուազութիւն հասեալ, յոր և ի յերկիրն ամենայն ոչ գոյ գեա[ւ]ղ քան քաղաք միայն, որպէս մեղուի, որ անցեալ են և ի տեղիս տեղիս ճիռ է մացեալ, նայ խնդիր եղեալ բարի շառաւեղ դրոցս որբասնեալ և պատուական քահանայս ճշմարիտ սուրբ ըստ կարգի Մելքիսեդեկի Մխիթար աբեղայն, որ է բաբունի և ինք ոչ առնու յանձն, զորոյ աստուած իր վայելել տացէ և փոխեսցէ զվարս իւր և զդոր[ծ]ս փառաց ի փառս, հաճոյ լինել աստուծոյ հօր և որդոյ և սուրբ հոգոյն, յոր և եկեսցէ առ ինք աստուածութիւն և հանգիցէ և աւթեանս առ նմա արասցէ, և յետ աստից փոխելոյ զվերին հանգիստն տայ իր ընդ ք[ւ՞ր] հաճոյացեալ սրբունքն, և զծնաւղս իւր՝ զհայրն զԱնդրիաս և զմայրն զԼիբանան, և զեղբայր իւր Մկրտիչ, և զամենայն ազդատոհմսն իւր։

Նայ ես աղաչեմ զամենաբարի հեզտ, զխոնարհդ, զնմանող արարչին մերոյ, զի և տառապեալս և զմեղօոր գրիչս, որ չեմ արժան

* Իմա՝ «վերջքն»։

գրել զաստուածաշունչ գիրս զայս, որ կատարեցի զխնդրուածս քո և գրեցի զպատվական գիրքս զայս, նայ յառանձնական աղօթս ձեր
183բ յիշես, թերևս ‖ ողորմութիւն գտցեմ ի Քրիստոսէ սուրբ աղօթիւք ձերովք, և դուք միոյն զհարիւրօրն առցէք ի յայն, որ պարգևօղն է բարեաց առատ՝ ըստ կամաց խնդրողին, որպէս հրամաէ ինք՝ փրկիչն, թէ բախեցէք և բացից, հայցեցէք և գտչիք, խնդրեցէք և տացի ձեզ. նա ըստ սոյն յուսոյ և ես բախեմ, հայցեմ, խնդրեմ ողորմութիւն ի ձէնջ և յաստուածոյ տառապել գերոյս Դաւիթ թխթագրիս, որ աղաաէք ի մեղաց, զի զոր դուք աստ թողոյք և ոէր յերկինս, ըստ իր անսուտ հրամանին։ Կատարեցօ գիրքս ի բաղժին գիրս ի յամսեանն օգոստոսի ժէ. (17), որ տօն էր ամէնօրհնեալ սուրբ տիրուհոյն Աստուածամօրն, ի մեծ թվին ՉՂՁ. (1347), և վասն այսր գրեցի զյիշատակարանն, որ ի դէմս էր վերջք գրոյս։

## 443.

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 5736**

Հետ. ստացող՝ Ստեփանոս
վայր՝ Տարօն, սուրբ Կարապետի վանք

314բ Ի թվ. Հայոց ՉՂՁ. (1347) զողացան զսուրբ աւետարանս ի սուրբ Կարապետէս և տարան ի գեղն, որ կոչի Լսւսորմ։ Զոր տեսեալ պատուական քահ[անայն] Կիրակոս, և գնեց զսայ ի յարդար ընչից իւրոց, և ետ վերստին ի սուրբ Կարապետս, ի յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց։

Արդ, որ կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԿիրակոս քահանայ, և զամուսին իւր՝ զՄարթայն, և զհայրն իւր՝ զԹորոս քահանայ, և զմայրն՝ զփոխեցեալ ի Քրիստոս, ընդ նմին և զպարոն Սերավբեն և զծնողս իւր։

Ես՝ Ստեփանոս հայրպետս, ու այլ միաբանք, որ ուխտեցաք ի սուրբ Կարապետս, որ յամէն տարի ի սուրբ Կարապետի տաւնին զպատարագն իւրենց առնենք։*

---

* Գնված և նվիրաբերված ձեռագիրը մի փառահեղ, խորաններով, գլխատառերով ու լուսանցազարդերով հարուստ ավետարան է, գրված 1290 թվականին, Դրազարկում, Թորոս գրչի և ծաղկողի կողմից։ Ձեռագրի մանրանկարչական գործերը կարծել են տալիս, որ վերոհիշյալ Թորոսը կարող է նույնանալ մեծահռչակ Թորոս Ռոսլինի հետ։ Եթե հաստատվի այս ենթադրությունը, ապա գրչի կողմից գրված ընդարձակ հիշատակարանից հնարավոր կլինի պարզել Ռոսլինի անհայտ կենսագրությունից որոշ դրվագներ. ա) Հայրը եղել է Շատախցի («Յիշելով իմ զպատմութիւնս ծերունի հաւրն իմո զհայրենի գաւառէն Շատախ կոչեցելո»). բ) Լևոն Բ. թագավորը եղել է նրա հովանավորն ու խնամածուն. Նա գրում է՝ «Բ. ամաւ յառաջ տէրն իմ և խնամողն, և անընդմիջելի սիրով սիրողն և սնուցողն զիմս նուաստութիւն, բարեպաշտ և աստուածասէր թագաւորն Հայոց հանգեաւ ի Քրիստոս ՉԼէ. (1288), յամսեանն փետրուարի Զ. (6). յաւուր շաբաթու», գ) Սույն ձեռագիրը գրել և նվիրել է Տարոնի սուրբ Կարապետի վանքին, որի միաբանները ի դիմաց այդ նվիրաբերության, խոստացել են Թորոսի և նրա ծնողների հոգու համար տարին մի օր պատարագ անել. («մի աւր զպատարագն ժամարարքն ինձ և իմ ծնողացն արասցեն»)։

Թորոսի ընդարձակ հիշատակարանը գտնվում է ձեռագրի 310բ—314ա էջերի վրա։

## 444.

### ՄԱՆԿՈՒԹԵԱՆ ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5509*

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Ուրկլ գիւղ

177բ ...Գրեցաւ աստուածային... խորհուրդ սուրբ տնաւրէնութեանն Քրիստոսի... [ձեռամբ] մեղաւոր և անարժան սուտանուն քահանայի Ստեփաննոսի, ի գեղս, որ Ուրկլ կոչի, ընդ հովան[ե]աւ սուրբ Աստուածածնի և սուրբ Թորոսի, ի թուական Հայոց Մեծի ՉՂԶ. (1347), ի թագաւորութեանն Կոստանդեայ, որդոյ պարոն Պաղտնի, ի նեղ և ի դառն ժամանակի | | |.** Որք կարդայք կամ աւրինակէք անարժան և մեղօոր անմար գրողիս մեղաց թողութիւն խնդրեցէք, և որք յիշէքդ՝ յիշեալ լիջիք յանսպառ ողորմ··թիւնն Քրիստոսի։

## 445

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7742 (տես նաև՝ 1466 և 1480 թթ.)

Գրիչ՝ Նատեր
վայր՝ Սուրխաթ

ա

250ա Աստանաւր աւարտեցաւ աստուածախաւս մատեանս...

...Այլ և մտաւք սլացեալ և նկատեալ զգերակայիցն կայանս՝ այրս աստուածահաճոյ, սրբասնունդ և սրբագործ քահանայ Մկրտիչ.... կամեցաւ ըստ ազնիւ ծառայիցն արկանել զարծաթն իւր ի տրապէզս դործոյ...

Արդ, որք հանդիպիք այսմ փառաւոր և գերազարդ տէրունական պատգամացս, յիշեցէք ի սուրբ և ի մեղսաքաւիչ մաքուր աղաւթս ձեր, նաև առաջի դենլոյն Քրիստոսի զճշմարիտ և զհեզահոգի քահանայ՝ զՄկրտիչ երէց, և զհայր նորա՝ զՍարգիս երէց, և զմայր՝ զՄարոց, և զերկու եղբայր նորա, զգեղեցկատիպ պատանիք՝ զՀամազասպ և զԳրիգորն, որ աղայ հասակաւ և մատաղ տիաւք յայս ամ փոխեցան յերկրէ, և ելին յերկինս, և խառնեցան ի դասս անմարմնոցն՝ յանխառվ խաղաղութիւնն, ըստ ասելոյ իմաստնոյն, եթէ՝ հոգիք արդարոց ի ձեռին աստուծոյ, և ոչ մերձենայ ի նոսա մահ, և եթէ այդպէս է, որպէս և է իսկ ճշմարիտ, այլ սուգ անմխիթար մնաց սիրելեաց և ծնողաց, որոց լիցի մխիթար հոգին սուրբ աստուած։

250բ Ցիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զՄկրտիչ երէց, ամենայն զարմաւք և արեան մերձաւորաւք, ի պապանց մինչ ի թոռունս, նաև զբարեմիտ ամուսին նորա՝ զիրիցկին Կիրակկան, այլ և զծնաւղսն

---

* Ձեռագրի 219ա—221բ էջերում պահպանվել է շատ հետաքրքիր ժամանակագրություն՝ «Ժամանակագրութիւն ըստ եւթանասնիցն թարգմանութեան», ուր գրանցված են հիմնական անցուդարձերը մինչև ՉՂԳ. (1344) թվականը։

** Մի բառ չի կարդացվում։

*նորա, և զեղբարսն՝ զգովելիքն և զցանկալիքն բազմաց, որք երիտասարդ և մանուկ տիաւք, յայս ամ միահամուռ եհաս վախճան, և թողին սուգ անմխիթար և տրտմութիւն անբերելի, որոց ողորմեսցի նոցա տէր Քրիստոս, և թողցէ զամենայն յանցանս նոցա և յերկնայինսն դասեսցէ ընդ ամենայն սրբոցն դասսն, զյիշատակքն մխիթարեսցէ սուրբ հոգին՝ ամենայն աինզերաց մխիթարիչն։ Ընդ ամենեցուն հուսկ յետոյ յիշեցէք ի Քրիստոս, ով սրբազան դասք լուսերամից, զմեղապարտ և զանիմաստ գրիչս* զՆատեր, *և զծնաւղսն իմ, և զեղբարսն, և զքուերսն՝ զփոխեալքն ի կենցաղոյս, և զողայսն իմ* զՅովանէս *սարկաւագ, որ քսանամեայ և նա վախճանեալ է Գ. (3) ամաւ յառաջ, և զստրիկն իմ* Տիկինն, *որոց ողորմեսցի և նոցա Յիսուս Քրիստոս՝ հայր և հոգւով։ Այլ և զնկարիչ սուրբ աւետարանիս՝ զորդի իմ* զԱւետիս *սարկաւագ,* և զմիւս Բ. (2) որդիսն՝* զՍտեփաննոս *և* զԳրիգոր*՝ պատանիքն, և* զՀեղինէն, *և զմայր նոցա՝* զՄլքուանն, *և որք յանձնեցին ի մեզ յիշատակել ի գիրս աւետարանիս մերոց՝ զբարի հոգին և զխնդրաւղն արքայութեանն աստուծոյ* զՄարգան *խաթունն, և զքոյր նորա* զՄայրապետն. *և որք յիշէք թողութիւն խնդրեցէք ամենայն յիշեցելոցս, զի բան ձեր առատ է և տէրն բազումողորմ լուիցէ աղաչանաց ձերոց և գթացեալ կեցուսցէ, զի նմա վայել է փառք, իշխանութիւն և պատիւ յաւիտեանս յաւ[իտենից, ամէն]։*

*Ի ծագմանէ յատնութեան որդւոյն աստուծոյ էր թիւ ամաց ՌՅԽԹ. (1349), ի դեկտեմբերի Ժ. (10)։*

*Այլ գոյ բան յիշելոյ և յոյժ զարհուրելի. զի մինչև ցայժմ ԺԵ. (15) ամիս է, որ անպատմելի և անթուելի մեռան տարաժամ մահուամբ, սկսեալ յարևելից՝ հիւսիսական կողմամբք մինչև աստ, և գնաց մինչև յարևմուտս, զոր ոչ ոք կարէ ընդ գրով արկանել, զի վասն մեղաց մերոց եկն ի վերայ ամենայն աշխարհի, և դեռևս մինչև ցայսաւր, և ոչ ոք է որ անցուցանել կարէ զբարկութիւնս եկեալ, այլ յոյս մեր և ամենայն հաւատացելոցս առ ինքն է, որ է ողորմած և գթած, բարերար և բազումողորմ, որ է աւրհնեալ յամենայն արարածոց, յաւիտեանս։*

Բ

281ա *...Ի թվ. Հայոց ՉՂՋ. (1347) կատարեցաւ սուրբ մատեանս՝ աստուածախաւս յաշխարհս* Հռնաց, *որ այժմ* Ղրիմ *ասի, ի մեծ և ի հոյակապ քաղաքս* Սուրխաթ *կոչեցեալ, ի հոգետնեաս վերի, առ ոտն սուրբ Խաչին, ի հայրապետութեանն տէր* Մխիթարայ, *և յեպիսկոպոսութեան տէր* Ստեփաննոսի, *յաթոռակալութեանն* Յոհաննէս *իմաստուն և սուրբ կրաւնաւորի, ձեռամբ ամենամեղ և անարհեստ գրչի* Նատերի, *ի խնդրոյ սրբազան քահանայի* Մկրտիչ *երեցու. որք աւգտիք կարդալով կամ աւրինակելով յիշեցէք յաղօթս ձեր զստացօղն և զգրողս, և դուք յիշիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ, յաւիտեանս։*

* Ձեռագրում պահպանված նկարները վկայում են Ավետիս սարկավագի բարձր արվեստի մասին։

## 446.

## ՃԱՌԸՆՏԻՐ

**Երևան 3797***

Գրիչ՝ Նատեր
վայր՝ Սուրխա՞թ

ա

30ա *Ով սուրբ ընթերցողք, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զստացողք տառիս* զԹադեոս Երկարարն, *և զորդին իւր* զՄուրատն, *և զնախնիս նոցա՝ զննջեցեալսն, և զիս՝ զանիմաստ գրիչս* զՆատեր՝ *իմովք ծնողիւք. և որք յիշէք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ...։*

բ

37բ *Քրիստոս որդի աստուծոյ, քո սուրբ ծննդեամբդ յամենամաքուր ծնաւղէն մաւր քո աստուածածին Մարիամու, ողորմեա ստացողի սորա* Աբիմելէքայ *և ծնողաց իւրոց և քւեր, զի յուսով և սիրով քո ետ գրել զսա. և տուր ի քո անճառ բարեացն մասն և բաժին ընդ սուրբս քո, և զիս մի մոռանար, այլ յիշեա ի քում արքայութեանդ, և քեզ փառք։*

գ

40բ *Զստաց[ող] ճառիս, զբարեմիտ ծառայն աստուծոյ* զՏալիբն *յիշեշեցէք ի Քրիստոս...։*

դ

46ա *Տէր աստուած, քո սուրբ մարդեղութեամբ ողորմեա ստացողի սորա* Մարգւին, *և թող զմեղս նորա, զի դու տէր կամեցող ողորմութեանց ես և կեցուցիչ հոգւոց. և դքո մեղաւոր գրիչս* զՆատեր *յիշեա ի քում արքայութեանդ, և. սաս՝ թողեալ լիցին քեզ մեղք քո։*

ե

50ա *Զհեզահոգի և զխոնարհամիտ ծառայն աստուծոյ զծերունի* կաշ[կա]կարն զՊարոնշան *յիշեցէք, ով քրիստոսասէրք, ծնողաւք, և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ...։*

---

* *Սույն ձեռագրի ընդօրինակության մերձավոր ժամանակը և վայրը որոշվում է հետևյալ կերպ. Կէ. (57) հիշատակագրության մեջ Նատերի կրտսեր որդի Գրիգորը հիշատակվում է որպես «պատանեակ»։ Այդպիսին է Գրիգորը նաև 1347 թվականին (տես Նախորդ հիշատակարանը)։ Իսկ 1357 թվականին այդ պատանին արդեն վարպետ գրիչ է և իր ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում (Երևան 8388, էջ 165ա), գրում է «Զհայրն իմ զՆատեր, զպատուական ծերունին, զբազմաց զովելին, յիշեցէք»։ Ուստի սույն ձեռագիրը գրված պետք է լինի մերձավորապես 1347 թվականից մեկ-երկու տարի առաջ կամ հետո։ Այդ ժամանակ Նատերը բնակվում և աշխատում էր Սուրխաթում, այսպիսով, մեծ հավանականությամբ, որոշվում է նաև գրչության վայրը։*

դ

52բ *Զհամազասպն և զԳրիգորն՝ զփախեալն յաստեացս մատաղ տիօք ի տարաժամ մահուանէ, և զծնօղս նոցա՝ զՍարգիս քահանայ և զՄարոցն յիշեցէք ի տէր, ո՛վ սուրբ ընթերցողք։*

ե

54ա *Զտրեմիտ և զքրիստոսասէր տիկինն՝ զՆոխատուէթն. ծնօղաւք և և զաւակաւք յիշեցէք ի Քրիստոս, և զմեղաւոր գրիչս մի մոռանայք յիշել և թողութիւն հայցել ի Քրիստոսէ, զի և ձեզ եղիցի թողութիւն։*

ը

56ա *ԶԿարապետ բազազն՝ ծնողաւք և ամենայն զարմաւք, յիշեցէք ի Քրիստոս, ո՛վ սուրբ ընթերցողք և ունկնդիրք, և զմեղսամակարդ գրողս միով ողորմայիւ ի տէր, և տէր զձեզ յիշէ յիւր փառսն։*

թ

60բ *ԶՆեփսէ աստուածասէր ծերունին իւր ծնողաւքն յիշեցէք ի Քրիստոս, և ողորմութիւն խնդրեցէք և թողութիւն մեղաց, և ձերն թողցի աստուծով։*

ժ

71ա *Բարեխաւսութեամբ սրբոյն Վահանայ զթա՛ Քրիստոս աստուած ի հոգի...* և թող զմեղսն նորա, և ժողովրդեանս, որ կան և լսեն զնահատակութիւն սրբոյն Վահանայ [Գողթնացւոյ], և զմեղաւոր գրիչս մի մոռանար ի քո արքայութեանդ։*

ժա

74ա *Զծերունի և զքրիստոսասէր բարեմիտ տիկինն...** յիշեցէք ի Քրիստոս, ո՛վ սուրբ քահանայք և ժողովուրդք, և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ և ինձ՝ գրողիս, և աստուած թողցէ զձերն և զմերն։*

ժբ

85բ *Զցանկացաւղն տեսոյն աստուծոյ զքրիստոսասէր այրն [զտէր Աւաֆ եկեղեցպանս]*** յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր...։*

ժգ

92բ *...Յիշեցէք ի Քրիստոս զփոխեալն ի կենացս Խ. (40)-ամեայ զՄարտիրոս կնքաւորն իմ, և զմեղաւոր դրիչս զՆատեր, և դուք յիշիք ի Քրիստոսէ...։*

---

* Մի տող դատարկ է թողնված, հետագայում ստացողի անունը լրացնելու համար։

** Անվան տեղը դատարկ է թողնված։

*** Փակագծի մեջ առնված նախադասությունները լրացված են այլ ձեռագրերով, հետագայում, գրչի կողմից դատարկ թողնված տեղում։

ժդ

100բ Հայցմամբ սրբոյ վկայիս, Քրիստոս աստուած, ողորմեա ստացողի սորա [Կիրակոս ճոնի] և իւրոցն ամենայն՝ կենդանեաց և մեռելոց, և զմեղաւոր հողս զՆատեր գրիչս յիշեա ի քո բարի յիշումն...։

ժե

104բ Սրբոյ վկայիս բարեխաւսութեամբ, Քրիստոս աստուած, ողորմեա ստացողի սորա [Կիրակոսի և որդւոյ նորա Աստուածատրին և Թադուլին], և ինձ գրողիս, և տուր ողորմութիւն։

ժզ

119բ Բարեխաւսութեամբ սուրբ վարդապետացս գթա Քրիստոս աստուած ի հոգի ստացողի սորա [Թորոս ջուլհակին, և տուր զքո արքայութիւնդ], և ամենայն ժողովրդեանս՝ արանց և կանանց ողորմեայ...։

ժէ

140ա Բարեխաւսութեամբ սրբոյն Սարգսի զաւրավարի, և որդւոյ նորա Մարտիրոսի, և ամենայն սրբոց վկայիցս, ողորմեա Քրիստոս աստուած ստացողի սորա Սարգիս բազազին, և հաւր իւրոյ Խաղութեն*, և եղբաւր իւրոյ Խաչատրին, և մաւր իւրոյ, և ամենայն զարմից նորա... և զմեղաւոր գրիչս զՆատեր ընկալ ի քո սուրբ արքայութիւնդ՝ իմով ծնողաւք, և եղբարբք, և քուերբք, և տղայիւք, և քեզ փառք յաւիտ[եան]։

ժը

148ա Բարեխաւսութեամբ սքանչելի վկայիցն, Քրիստոս աստուած, ողորմեա ստացողի սորա [Վարդերեսին որդւոյ Նիրասցին, որ է մականուն], և արա արժանի պսակակից լինել նոցա...։

ժթ

150ա Բարեխաւսութեամբ սրբոց Ոսկեանցն և սուրբ Լուսաւորչին Գրիգորի ողորմեա, Քրիստոս աստուած, ստացողի սորա [Մելքիսեդ ոսկերչին և եղբաւր նորա Առիլին], և Թող զմեղս նորա և զիւր ամենայն ազգացն...։

ի

161ա Քրիստոս աստուած, որդի աստուծոյ, բարեխաւսութեամբ քաջ նահատակացս, որք վասն անուան քո չարչարեցան, ողորմեա ստացողի սորա [զՈւռումպէկի ոսկերիչն] և իւրոցն ամենայնի...։

իա

177ա Բարեխաւսութեամբ սուրբ Վարդանանցս ողորմեա Քրիստոս աստուած ստացողի սորա [Սարգիս սարկօագի, և ծնողաց նորա՝ Գորզուլ], և գրողիս, և ամենայն ժողովրդեանս, և քեզ փառք յաւի[տեանս]։

* «Խաղաղութիւն» անվան աղճատված ձևն է։

### իբ

198բ Տէր աստուած...զստացող ճառիս զՄելիքն և զբարեմիտ ամուսին իւր զՌակին արա արժանի միում յաւթեվանաց տան հաւր քո երկնաւորի...։

Սուրբ ընթերցողք այս մատենի
Ցիշման արէք զմեղ արժանի,
Ի յետ ելիցս այս կենցաղի,
Ցորժամ մտեմ ի մէջ հողի,
Ի նեղ 'ւ ի նուրբ անել բանտի,
Առանց ուրուք աւգնականի,
Կարաւտ լինիմ ես մաղթողի
Եւ բարեկամ բարեխաւսի.
Ի սէր փրկչին մեր Քրիստոսի,
Վասն միոյ ողորմայի
Հայցեմ ի ձէնջ աղերսալի՝
Տէր ողորմեա Նատեր գրչի,
Աղաչանաւք սուրբ Գրիգորի
Հայաստանեայց լուսաւորչի
Եւ Ցոհաննու Ոսկիբանի,
Եւ յիշողացդ ողորմեսցի,
Այն, որ միայն բնութեամբ բարի,
Եւ նմա փառք յաւիտենի։

### իգ

205բ Քրիստոս աստուած...ողորմեա ստացողի սորա [Ներկրար Գորգու, և կողակցին նորա Գոհար տիկնայ, և ղօակի], և գրողիս...։

### իդ

209ա Զաւրինակին տուօղն՝ զՅովանէսն, և զհայրն նորա զՅովասափ քահանայ, և զեղբարք նորա՝ զՍարգիս քահանայ և զՍիմեոն կրաւնաւորն յիշեցէք ի տէր։

### իե

270ա Զստացաւղ ճառիս՝ զԳրիգոր ծերունին յիշեցէք ի Քրիստոս, ով սուրբ ընթերցողք...։

### իզ

287ա Զստացաւղ ճառիս զԹագուորշան և զամուսինն իւր յիշեցէք ի Քրիստոս, և թողութիւն մեղաց հայցեցէք, և որք յիշէք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ։

### իէ

293ա Քրիստոս աստուած... մաքրեա և տաճարացս զհոգի ստացողի ճառիս [զՇղիսերին], և զգրողի՝ մեղապարտ Նատերի, և զօրինակիս շնորհողին՝ Յովանիսին...: